# ԿԵՆՑԱՂ

կամ

# ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹԻՒՆ

ՏՊԱՐԱՆ, ՎԻՄԱԳՐԱՏՈՒՆ ԵՒ ԿԱԶՄԱՏՈՒՆ
Յ. ՄԱՏԹԷՈՍԵԱՆ
Կ. Պոլիս, Ջիճճաճճըլար Եօգուշու, Թիւ 27

معارف عموميه نظارت جليله سنك رخصتنامه سيله طبع اولنمشدر

ՀԵՐՊԷՐԴ ՍԲԷՆՍԸՐ



# ԿԵՆՑԱՂ

ԿԱՄ

# ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹԻՒՆ

ԹԱՐԳՄԱՆԵՑ
Ե. Գ. Մ.





Կ. ՊՈԼԻՍ
ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Ե. ՄԱՏԹԷՈՍԵԱՆ

1894

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ







# ՄՈՒՏՔ

Ներքին իմաստասիրութենէ զուրկ հայոց համար, որոնց մէջ դժուար մուտ կը գտնեն ազնիւ գաղափարներ, հարկաւոր երեւցաւ մեզի տպագրել տալ Սպէնսըրի Դաստիարակութեան սոյն թարգմանութիւնը, որուն ձեռնարկած էինք մենաւոր վիճակի մը մէջ։ Հարկաւոր մանաւանդ անոնց համար, որոնց արժանաւոր պարտքն է կենցաղի զործերը վարել, այսինքն՝ որ զերծ են սովորական մտահանութիւններէն՝ մէկ մասն իրենց նիւթական վիճակին եւ միւս մասն իրենց բարոյական ազդեցութեան բերումով։

Եթէ այսպիսիներն յօժարին պէտք եղած կերպով պարզել հեղինակին իմաստուն գաղափարները, յուսալի է որ այս գիրքին թարգմանութիւնն արդի առատ բայց յախուռն գրականութեան վրայ ալ լաւ ազդեցութիւն մը ընէ։ Դաստիարակութեան անունին տակ՝ Հեղինակը կենցաղական ամէն նիւթ իր հատուն խորհրդածութիւններով մաղած ու զտած է, որով գիրքին հանրական զնացքն համաշխարհական դրոշմ մը ունի. եւ այս է պատճառն որ Սպէնսըրի այս գործը թարգմանուած է՝ Ֆրանսերէնի, Գերմաներէնի, Իտալերէնի, Ռուսերէնի, Հունգարերէնի, Տանիմարքեան ու Դանիական լեզուներու, եւ վերջերս ալ՝ Սպաներէնի, Շուետերէնի, Պոհեմերէնի, Յունարէնի, Ճաբոներէնի եւ Չիներէնի։

Մեր այս թարգմանութիւնն եղած է Ֆրանսերէն ժողովրդական այն թարգմանութեան վրայ, որ Կենցաղօգուտ մատենադարանին (Bibliothèque utile) վաթսուներորդ թիւը կը լեցունէ՝ հեղինակին սրբագրութեամբ 1893ին տպած (Edition Williams and Norgete) բնագիրին հետ բաղդատելով։

Գիրքն Անգղիացիներէն կուգայ մեզի, եւ՝ մանաւանդ Հեղինակին ոճէն ալ կերեւայ թէ՝ բարեկեցիկ անձերու համար գրուած է. սակայն ինք Հեղինակն իր հոգեբանական բացատրութեանց մէջ անգամ պարզախօս է, որով կրնայ մատչելի ըլլալ նաեւ միջնորեարին։ Մենք՝ իր վերացական բացատրութեանց անգամ՝ ջանացինք պարզ եւ գրեթէ կանոնեալ աշխարհաբառ մը յարմարցունել. այնպէս որ ուսանող պատանիները, փորձ դաստիարակները, բանասէր ընթերցողներն ու փիլիսոփայ խորհողները՝ եթէ ուշ դնեն լեզուին՝ պիտի տեսնեն որ այս թարգմանութեան մէջ, չնայելով մեր հիւանդագին վիճակին, աշխատած ենք թափուն ձուլուած մը տալ մեր աշխարհաբառին՝ առանց աչքի զարնող կերպով շեղելու մայրաքաղաքին լրագրական անցուկ աշխարհաբառէն։

Գալով մեր ծանօթութեանց բանաքննական մասին (որոնք բնագիրին ծանօթութիւններէն Թ. «թարգմանիչ» նշանագիրովը զանազանելու է) կը յայտարարենք՝ որ Սրէնսըր մեծ գիտուն մը ըլլալովն հանդերձ՝ իբրեւ մարդ սխալական եւ մանաւանդ մեզի համար իբրեւ օտարազգի՝ կրնայ սխալած ըլլալ իր խորհուրդներուն մէջ, մանաւանդ այնպիսի անմահ խնդիրներ լուծել փորձած ատեն, որոնք լուծելու ձեռնարկելն անգամ թերեւս մեծ սխալ մըն է մահացուներուն։ Ուստի մենք զարմանալով հանդերձ իր գաղափարներն արտայայտած ատեն՝ վսեմի մօտ ռոշնութեան մը (clairvoyance) եւ հզօր միակերպութեան մը հետ ցուցած փիլիսոփայական խարոխեալ շաղածին վրայ, որ միշտ ծանր խոր ու պարզ է — մանաւանդ հոն ուր իր առարկաներն են կրօնքն ու հոգեբանական պրուեստախօսութիւններ — իբրեւ միամիտ խորհող մը ազատ ենք ըսելու՝ թէ շատ տեղ համամիտ չենք իրեն։ Բայց շատ քիչ տեղ համարձակեցանք յայտնել մեր տարաձայնութիւնը մեր ստորագիր դիտողութիւններով, մանաւանդ անոր համար որ արուեստէն ալ չէինք. իմաստասէր մանկավարժներուն եւ ընտանիքի տէր ընթերցողներուն կը թողունք աւելի փորձառական դատաստան մը ընել Հեղինակին միւս շեղումներուն վրայ։ Եթէ մենք մեր ակնարկութեանց մէջ սխալած ենք՝ բան է ընթերցողին իւրովի ուղղել մեզ թէ Հեղինակին թէ իր դատումին միջոցով. դարձեալ՝

եթէ կային ուրիշ դիտելի կէտեր ու մեր շրջակայրին պատկանաւոր ծանօթութիւններ ու մենք զանց ըրած ենք՝ ուզողն ազատ է գործել իր խորհրդածութեանց ու դիրքին համեմատ, միշտ անդրադառնալով սակայն Հեղինակին գաղափարներուն, որ յար ընդոստուցանելու կնիք մը ունին։ Վասն զի Սպէնսըր ալ այն կարգի փիլիսոփաներէն է, որոնց ներուած է Քորէճիոյ նկարիչին հետ գոչել վստահութեամբ «Ես ալ ա՛յր նկարիչ եմ» «Ed io anche son pittore»։

Վերջին խօսք, տիրապէս խորհող գլուխներու համար գրուած ըլլալով՝ պիտանի բաւական պաշար կայ այս գիրքին մէջ, որ համէ աւելի հոյզ եւ հոտէ աւելի հիւթ ունի, ու այս հանգամանքով միայն լուրջ գործ մը ածանցած ըլլալու մխիթարութիւնը կուտայ

ԹԱՐԳՄԱՆԻՉԻՆ (*)



*(*) Մեր մէջ իմաստասիրական գիրք համեմատաբար քիչ են. եւրոպական լեզու գիտցող գրագէտներ դիւրութիւն կ'ունենան ըստ հաճոյս կարդալու, ու քանի՛ներ ալ՝ ոչ գովելի դիտումով մը՝ պէտք եղած պաշարն անոնցմէ քաղելով՝ իրենց անունովն հրատարակելու, ինչպէս վկայած է մեզի հմուտ Վարդապետ մը։ Ներելի կ'ըլլար այս՝ երբ պատճառն երիտասարդութեան անհամբեր անձնասիրութիւնը միայն եղած ըլլար, զոր սակայն խրախուսելու ժամանակն անցած է ա՛լ։ Ընթերցող ժողովուրդը կարող է դատել այդպիսիներն՝ իրենց գրածներն իրենց խօսքին ու վարքին հետ բաղդատելով։ Պէտք է քիչ մը երկայնամիտ ըլլալ, թարգմանել. մեր մէջ թարգմանութիւնն աւելի ապահով արժանիք մը կրնայ տալ, եւ անձնացուցութեան պարծանքն՝ հեռանկաս ու պատուաւոր մարդու համար՝ յայտնութեան ամօթը չարժեր։*

# ԿԵՆՑԱՂ

ԿԱՄ

# Դաստիարակութիւն

---

## ԳԼՈՒԽ Ա.

---

### ՈՐՈ՞ՆՔ ԵՆ ԿԱՐԵՒՈՐԱԳՈՅՆ ԳԻՏԵԼԻՔ

*ԴԻՏՈՒԱԾ եւ ճիշդ է՝ որ մարդիկ հագուելէ առաջ զարդարուելու սկսած են։ Այն ցեղերն, որ չքեղ վէտերով զարդարուելու համար սաստիկ ցաւերու կը տոկան, անտանելի ցուրտի մէջ կը կենցաղին սակայն՝ առանց փոյթ ընելու մեղմացունել զայն։ Հիւմպոլտ կըսէ՝ թէ Օրէնոքցի (1) Հնդիկ մը, որ նիւթական բարեկեցութեան համար բնաւ միտք յոգնեցուցած չէ, մտադիւր կ'աշխատի տասնեւհինգ օր՝ ձեռք բերելու համար այն ներկերն, որոնցմով կը կարծէ թէ պիտի աքանչացունէ ամէնն իր վրայ. եւ այն կինն, որ առանց հագուստի անտառէն դուրս ելնելն ամօթ չպիտի համարէր, վայելչու-*

---

(1) Օրէնոք հարաւային Ամերիկայի մէջ մեծ գետ մըն է, եւ կը թափի Ատլանտեան Ովկէանն. երկայնութիւնն է 2500 մղ.։

թեան դէմ մեծ մեղք մը կը համարի առանց ներկուելու մարդու երեւիլն։ Ամէն ճանապարհորդ կը վկայէ՝ թէ ապակեակներ ու պաճուճանք՝ վայրենի գրոհներու մէջ բամպակեղէններէ ու հաստ չուխաներէ հարիւր անգամ աւելի դիւրութեամբ կը ծախուին։ Անոնց՝ շապիկներ եւ ուրիշ հագուստներ գործածելու անճոռնի կերպերուն վրայ եղած զրոյցները կը ցուցընեն՝ թէ զարդարուելու գաղափարն հագուելու գաղափարէն ո՛րչափ աւելի ՚բուռն է իրենց մէջ։ Ասոր աւելի հզօր օրինակները կան, որոնց մին է Սբէք (1) նաւապետին պատահածը. երբ օդը բաց ըլլար՝ Սբէքի սպասաւորող Ափրիկեցիները՝ վրանին այծեմորթներ առած խրոխտաբար կը ճեմէին, բայց երբ քիչ մը խոնաւ ըլլար, այս հագուստնին շուտ մը հանելով կը ծալլէին խնամով, եւ անձրեւին տակ այնպէս մերկ կեցած կը դողային։ Նախնական կեանքին վրայ գիտցածնիս կը ցուցընէ՝ որ հագուստը զարդէն յառաջ եկած է, եւ այսպէս ըլլալուն հաւատալու այնչափ իրաւունք ունինք, որչափ որ մեր մէջն անգամ շատերն աւելի՛ պերճանքի քան կարեւորին փոյթ կը տանին, աւելի՛ շքեղութեան քան հանգստութեան, աւելի՛ հագուստին իրենց տուած տարազին քան անոնց տուած հարկաւոր նպաստին։

Նոյն երեւոյթն իմացական աշխարհին մէջ ալ կայ, որ զարմանալի է. ինչպէս մարմնի այնպէս ալ միտքի բաներուն մէջ՝ օգտակարը տեղի տուած է զարդականին։ Մեր օրերն ալ ինչպէս առաջ՝ փայլ տուող արհեստները՝ բարեկեցութեան նպաստաւոր արուեստէն նախապատուեն։ Հին Յունաստանի դպրոցներուն մէջ՝ գլխաւորաբար կը տրուէին երաժշտութիւն, բանաստեղծութիւն, հռետո-

(1) Անգղիացի նշանաւոր աշխարհագրիչ մըն էր. մեռաւ 1864ին։ Սա ինքն եւ իր ուղեկիցը եղան գտան Նեղոս գետին աղբիւրները։

րութիւն եւ փիլիսոփայութիւն մը, որ մինչեւ Սոկրատ վարժապետութեան ատեն մարդու գործերուն վրայ քիչ ազդեցութիւն ունեցաւ. ճարտարարուեստներու զոր- ծածուած գիտութիւնը շատ վար տեղ մը կը բռնէր։ Նոյն ներհակը դեռ կը կենայ մեր համալսարաններուն եւ դպրոց- ներուն մէջ, ու մենք ալ մեր մանուկներուն իմացակա- նութիւնը կը զարդարենք այնպէս ինչպէս կը հագուեցու- նենք անոնց մարմինը՝ տիրող ձեւին համեմատ։ Ինչպէս որ Օրէնոքցի Հնդիկ մը հիւղէն դուրս չելնէր՝ մինչեւ որ իր մարմինը գունաւոր վէտերով չզարդարէ (եւ. այսպէս կ՚ընէ նա՝ ոչ վասն զի այդ վէտերն անհրաժեշտ օգուտ մը ունին իրեն, այլ վասն զի ամօթ կը համարի առանց այդ ներկուածներուն մարդու երեւիլ), այնպէս ալ երի- տասարդ ուսանողներէն կը պահանջեն կատարեալ հմտու- թիւն մը Յունարէնի ու Լատիներէնի՝ ոչ վասն զի այդ հին լեզուներն իրապէս ներքին արժէք մը ունին, այլ անոր համար որ այդ երիտասարդները ձախողաբար ամօ- թահար չըլլան անոնք չգիտնալնուն. աշխարհիկ մարդու կրթութիւն մը տալ կուզեն անոնց, եւ այնպէս համարուած է՝ որ այդ լեզուներն ալ գիտցող անձ մը՝ ընկերութեան մէջ աւելի կը մեծարի։

Այս զուգակշիռն ա՛լ աւելի ճիշդ է միւս սեռին մէջ. մարմինի եւ միտքի համար զարդական տարրն՝ աւելի կիներուն մէջ դեռ չարունակ եւ չափազանց կը նախադասի։ Առջի ժամանակներն՝ երկու սեռին մէջ ալ մարմինի զարդարանքը նախամեծար էր. բայց քանի քա- ղաքակրթութիւնը զարգացաւ՝ այր մարդերու հագուելու կերպին մէջ՝ բարեկեցութեան գաղափարն առաջին տեղը բռնեց։ Նոյնպէս իրենց կրթութիւնն ալ՝ ետքի ատեններն աւելի օգտակարին քան գեղեցիկին համաձայն երթալ սկսաւ. սակայն կիներու մէջ այս փոփոխութիւնն՝ ոչ

հագուստի ոչ կրթութեան մասին նոյն յառաջդիմութեան չէ հետեւած. տանց մէջ զարմացում գրգռելու տենչը՝ ջեռուցիչ ու կազմիկ հագուստներ ունենալու տենչէն սաստիկ է ։ Այս մեր ըսածին ապացոյց են՝ իրենց գինդերը, մատանիներն, իրենց ապարանջաններն ու մնգոյլներն, յանձն առած ահագին նեղութիւններն՝ ուշադրութիւն հրապուրող արդուզարդերու տէր ըլլալու համար, եւ իրենց քաշած կամաւոր տառապանքը՝ նորաձեւութեան հասնելու համար ։ Նոյնպէս իրենց դաստիարակութեան մէջ ալ «տաղանդի» տրուած յարգը կը ցուցընէ՝ թէ օգտակարն ո՛րչափ ետ կը մնայ փայլուն երեւելու պէտքէն ։ Տես ո՛րչափ կարեւորութիւն կուտան՝ պարի, դաշնակի, երգի, գծագրութեան եւ ակումբներու մէջ սօս երեւելու կրթութեան ։ Ինչո՞ւ կը սորվին Գաղիերէն Գերմաներէն. ինչ պատճառանքով ալ պատրուակին՝ ասոր ճշմարիտ պատճառն այն է որ աշխարհիկ կինի մը համար այս երկու լեզուներուն ուսումը կարեւոր համարուած է՝ ոչ վասն զի Գաղիերէն կամ Գերմաներէն գրուած գիրքերն իրեն օգուտ մը կը բերեն (եւ բնաւ իսկ օգտակար չեն այդ գիրքերն անգլիաբար մտածելով), այլ վասն զի պիտի կրնան երգել Գաղիերէն կամ Գերմաներէն, եւ իրենց աղէկ երգելուն չափով պիտի կրնան յաջողիլ ու սքանչացում կորզել ։ Աղջիկներու յիշողութիւնը կը խճողեն՝ ծնունդի մահու հարսնիքի թուականներով ու պատմական կարգ մը ունայն բաներով՝ ոչ վասն զի թերեւս երբեմն պէտք պիտի ունենան անոնց, այլ մանաւանդ անոր համար որ մարդիկ այս ուսումները լաւ դաստիարակութեան մաս համարած են. եթէ չգիտնան ասոնք՝ ուրիշներէն պիտի արհամարհէին ։ Գործնական կենցաղի համար իրրեւ կարեւոր՝ երիտասարդուհի աղջիկներուն ուսանելի բաներն են՝ գրեթէ միայն ընթերցանութիւն, գիր..

ուղղագրութիւն, քերականութիւն, թուաբանութիւն, կար. բայց տես որ ատենցմէ շատերն ալ՝ ուրիշներու կարծիքն յարգելու դիտումով քան իրենց օգուտին համար կը սորվին։

Աւելի կատարեալ կերպով ցուցընելու համար սա ճշմարտութիւնը՝ թէ իմացական ու նիւթական աշխարհին մէջ հաւասարապէս զարդականին ճաշակն օգտակարի ճաշակէն շատ առաջ կար, հարկ է որ անոր գոյութեան պատճառն ուսումնասիրենք։ Գիտութեան բուն արժէքին համար չէ որ մենք կը գիտնասիրենք, այլ անոր համար որ մեր շահուն պատճառ պիտի ըլլայ, պիտի բերէ մեզի՝ պատիւ, յարգանք, եւ մէկ խօսքով՝ պիտի ընծայէ մարդու իրեն ծանօթին վրայ տիրապետելու պատճառ մը։ Այսպէս մեր բովանդակ կեանքին մէջ՝ առհասարակ կաշխատինք ոչ թէ բան մը ըլլալ այլ բան մը երեւիլ։ Դաստիարակութեան մէջ ալ՝ գիտութեան բուն արժէքին վրայ այնչափ չենք մտածեր, որչափ կը մտածենք անոր ուրիշներուն վրայ ընելիք ազդեցութեան համար։

Եւ երբ զօրանայ մեր մէջ իրերն այսպէս դատելու եղանակը՝ գիտութեան ճշմարիտ օգտակարութիւնը մեր աչքին աւելի արժէք մը չունենար, քան ա՛յն վայրենիին՝ որուն միակ հոգն է ականներն յղկել եւ եղունգը ներկել։

Եթէ կուզէք աւելի բացայայտ գիտնալ՝ թէ մեր դաստիարակութիւնն ո՛րչափ անհարթ ու պակասաւոր է, կրնանք դիտել տալ ձեզի՝ որ այլ եւ այլ գիտութեանց համեմատական արժէքն որչափ քիչ ուսումնասիրուած ու քննաքննուած է՝ կանոնաւորապէս եւ որոշ եզրակացութեանց հանելու դիտումով։ Դեռ ձեռք բերած չենք այս տեսակ քննութեանց քանոն մը (criterium). աւելին կայ՝

ոչ իսկ որոշապէս հասկցած ենք այսպիսի քանոնի մը գոյութիւնը. հազիւ հասու եղած ենք՝ թէ այդպիսի քանոն մը կարեւո՞ր է։ Նիւթի մը վրայ գիրք մը կը կարդաս, ուրիշ նիւթի մը վրայ բան իմանալու համար լսարան կերթաս, մանուկներուդ այս ինչ գիտութիւններէն աւելի այն ինչ գիտութիւնները սորվեցունելու որոշում կուտաս, եւ այս ամէնը կ'ընես՝ միայն ըստ անցուկ սովորութեան, նախըմբռնումով մը, քեզի սեպհական միտումով մը. միտքէդ չես անցուներ անգամ՝ որ ի՞նչ աստիճան կարեւոր է՝ կարելի եղածին չափ իմաստութեամբ՝ առաջ որոշել թէ սորվելու իրապէս արժանի բաներն որո՞նք են։ Այդ ուսումը մինչեւ ո՛ր աստիճան պիտի հատուցանէ այս կամ այն ճիւղը սորվելու համար գացած ժամանակը. Թէ աւելի կարեւոր բաներ չի կա՞ն, որոնք պէտք է գիտնալ, եւ աւելի լաւ է անոնց յատկացունել այդ ժամանակը։ Ասոնց վրայ բնաւ չես մտածեր, կամ եթէ մտածես ալ՝ շուտով կարճ լուծում մը կուտաս՝ անձնական մտահաճութեանդ անսալով։

Մենք կ'ըսենք՝ թէ այնչափ կարեւոր չէ գիտնալ այս ինչ ծանօթութեան բուն արժէքն, որչափ անոր յարաբերական (relative) արժէքը։ Երբ մէկը կը յաջողի ցուցընել՝ թէ այս ինչ չափ օգուտներ քաղած է առաջադրած այս ինչ ուսումին երեսէն, կը կարծէ որ կատարելապէս համոզեց մեզ՝ թէ ինք քաջ դատելու կարողութիւնն ունի. Նա բոլորովին կանգիտանայ՝ որ խնդիրն այն է թէ այդ օգուտները ճի՛շդ կը փոխարինե՞ն թափուած աշխատութիւնը։ Ուսանելի ամէն բաներու մէջ չի կայ իր մը, որ մինչեւ սահման մը օգտակար չըլլայ. եթէ մէկն երեք հարիւր վաթսուն օր ժրութեամբ աշխատի կնքագիտութեան՝ հաւանաբար բաւական տեղեկութիւն կը ստանայ հին բարքի եւ սովորութեանց վրայ։ Ուրիշ մէկն՝ եթէ

գիտնայ Անգղիայի ամէն քաղաքներուն իրարմէ հեռաւորութիւնն՝ օր մը կրնայ օգուտ քաղել իր ուսած չափ մը բաներէն՝ թէ որ, օրինակի համար, ուղեցոյց մը յօրինել հարկ ըլլայ։ Դարձեալ ուրիշ մէկն, որ աշխատելով կրցած է հաւաքել գաւառի մը բոլոր տապանագիրներն՝ այս անպէտս աշխատութեանն ատեն անպատճառ պատեհ պիտի ունենայ կարեւոր եղելութեան մը ճշգրտութեան նպաստելու, նշանակելով օրինակի համար՝ յաւագիմութեան (atavisme) հետաքրքրական դէպք մը․ բայց եւ այնպէս ամէն մարդ պիտի ըսէ՝ թէ տուած արդիւնքն աշխատութեանը ճիշդ փոխարէնը չէ։ Յիրաւի, արտառոց բան է առաջարկել երիտասարդի մը՝ որ զոհէ իր կեանքին մեծ մասն՝ այսպիսի ծանօթութիւններ առնելու համար, փոխանակ աւելի օգտակար բաներ սորվելու։ Արդ՝ ինչպէս որ այս պարագային մեր դատումի քանոնը ծանօթութեանց յարաբերական արժէքն է, պէտք է որ նոյն կանոնով դատենք միշտ եւ ամէն տեղ։ Այն ատեն անմիջապէս կըլլար գիտութեանց մէջ ընտրութիւն չընելն՝ երբ բովանդակ գիտութիւնները սորվելու չափ երկար ըլլար մեր կեանքը։ Ասոր համար ճիշդ է հին երգին ըսածը.

Եթէ մարդիկ առաջ հասուն գիտնային,
Թէ օրերնին նահապետաց պէս կենային
Գիտէ հազա՛ր իսկ տարիներ տեւէին,
Որչա՛փ բաներ պիտի ուսնէին բարիքին,
Եւ կատարէին որչա՛փ գործեր ահագին՝
Անհոգ, անխռով, առանց փոյթի տագնապին։

Բայց մենք գիտենք՝ որ կեանքը րոպէի մը չափ կարճ է համեմատաբար, եւ ասոր համար պէտք է մենք ճանչնանք միշտ՝ որ սորվելու ժամանակնիս քիչ է։ Կեն-

ցաղական հազար ու մէկ զբաղումներ՝ ա՛լ աւելի կը կարճեն ժամանակնիս. ուրեմն պէտք է ջանանք ամէնէն շահաւոր եղանակով գործածել զայն։

Նորաձեւութեան ու քմայքի թելադրած բաներն ուսանելու համար այնչափ տարիներ վատնելէն առաջ՝ խելացութիւն է այս ընթացքով ստանալի արդիւնքը բաղդատել այն արդիւնքին հետ, որ պիտի կրնանք ձեռք բերել նոյն ժամանակն ուրիշ կերպ գործածելով։

Այս է ահաւասիկ՝ դաստիարակութեան մէջ տիրող խնդիրն, եւ բուն ժամանակն է անոր վրայ կարգով ու մէթոտով վճռաբանելու։ Ամէնէն կարեւոր խնդիրն (որ սակայն մարդիկ յետաձգած են) անոնց ուշադրութեան ներկայացած պէսպէս խնդիրներուն մէջ ընտրութիւն ընելն է։

Մեր բանաւոր ուղեցոյցը գտնելու համար՝ պէտք է նախ քննենք թէ որո՛նք են գիտնալու ամենէն կարեւոր բաները, կամ՝ Պաքընի մէկ խօսքին համեմատ՝ որ դժբաղդաբար հինցած կը սեպուի՝ պէտք է հաստատենք թէ իւրաքանչիւր գիտութեան յարաբերական արժէքն ի՛նչ է։

Ուրեմն ամէնէն կարեւոր բանն է՝ նախ բաղդատութեան եզր մը ունենալ։ Բարեբաղդաբար գիտութեանց յարաբերական արժէքին վրայ՝ որոշում տալու եղանակին համար վիճաբանելու պէտք չի կայ։ Երբ մասնաւոր գիտութեան մը գործնական պիտանութիւնը քննենք՝ անձնիւր ծք անոր չափը կուտայ բնականաբար՝ կեանքի մէկ մասին վրայ նոյն գիտութեան ազդեցութիւնը ցուցընելով։ Սա ամէնապարզ հարցումին՝ թէ «այս ինչ բանն ինչի՞ կը ծառայէ» թուաբանը, բանասէրը, տարրագէտն, իմաստասէրն անմիջապէս կը պատասխանեն՝ իւրաքանչիւրն իր ճիւղին՝ կեանքի վրայ ըրած օգտակար ազդե-

ցութեան համեմատ խօսքով մը, — կըսեն՝ թէ այս ինչ գիտութիւնը՝ վիշտը կը թեթեւցունէ, բարին կը դիւրացունէ, երջանկութեան կը տանի։ Գիրի դասատու մը կրնայ ապացուցանել՝ թէ գրչութիւնն ինչ հզօր միջոց մըն է մարդուն իր գործերն ուղղելու, ընկերական հազար ու մէկ պահանջներուն հասնելու, եւ այսպէս իր արուեստին պէտք եղած ապացոյցը տուած կըլլայ։ Եթէ գիտուն դրամագէտ մը, որ անհետացած անցեալի մը հետքը գտնելու զոհած է իր կեանքը, չկրնայ ապացուցանել իր գիտութեան օգտակարութիւնն առ մարդկային ազգը, կըստիպի անշուշտ խոստովանիլ թէ իր գիտութիւնն համեմատաբար արժէք մը չունի։ Ուրեմն՝ գիտութեան մը պիտանութիւնն ապացուցանելու եղանակն ուղղակի կամ անուղղակի այս է։

Թէ ինչպէս կենցաղիլ պէտք է. — Ա՛յս է՝ ըստ մեզ՝ կարեւոր խնդիրը։ Կենցաղիլ ըսելով՝ միայն նիւթական կենցաղը չհասկընանք, այլ կենցաղն՝ իր ամէնէն լայն նշանակութեամբ։ Հանրաբար նկատելով՝ մեծ խնդիրն իր բոլոր կողմերովն այս է. — Ո՛րն է կենցաղի ամէն վիճակի ու ամէն պարագայի մէջ վարուելու ճշմարիտ կանոնը. մարմինն ի՛նչպէս նայելու է. իմացականութիւնն ի՛նչպէս վարելու է. ի՛նչպէս վարելու է անձնական գործերը. ի՛նչ եղանակով տածելու է ընտանիքը. ի՛նչ եղանակով կատարելու է քաղաքացիի պարտքը. ի՛նչ կերպով օգուտ քաղելու է բնութենէն պարգեւուած երջանկութեան աղբիւրներէն. մեր բոլոր կարողութիւնները՝ մեր եւ ուրիշներու օգտին համար՝ գործածելու ամէնէն աղէկ կերպն ո՛րն է. մէկ խօսքով, ի՛նչպէս կենցաղելու է՝ կատարեալ կեանք մը ապրած ըլլալու համար։ Եւ որովհետեւ ուսանելի կարեւոր բաներուն գլուխն այս է՝ դաստիարակութեան ալ սորվեցունելիք կարեւորագոյն բանն ա՛յս է։

Դաստիարակութեան նպատակն է՝ պատրաստել մեզ կատարեալ կենցաղի, եւ՝ կրթական յօրինուած մը քննելու միակ իմաստուն եղանակն է՝ հասկնալ թէ այն մինչեւ ո՛ր աստիճան կըսպասաւորէ այս նպատակին։

Բայց մենք հազիւ թէ այսպիսի քննութիւն մը կընենք, եւ այն ալ՝ շատ տարտամ ու հարեւանցի կերպով. մինչ պէտք էր այդ քննութիւնն ընել՝ գիտնաբար կանոնաւորապէս եւ ամէն պարագայի մէջ։ Պէտք է միշտ միտք պահենք՝ որ դաստիարակութեան նպատակն է՝ մարդը կատարեալ կենցաղի առաջնորդել. եւ մեր զաւակները կրթելու համար՝ մեր մէթոտներն եւ ուսանելի նիւթերը պէտք է ընտրենք՝ աչքի առջեւ ունենալով այս որոշեալ նպատակը։ Դաստիարակութեան մէջ՝ պէտք է նախ եւ առաջ ետ կենանք՝ նորաձեւութեան արտառոց հեղինակութեան հետեւելէն. առանց բացառութեան՝ ամէն նորաձեւութիւն՝ իբրեւ նորաձեւութիւն՝ հեղինակութեան մը չափ երաշխաւորութիւն չկրնար ընծայել։ Պէտք է նաեւ թողունք դատելու այն բիրտ ու գործնական եղանակն, որ խելացի մարդիկ անգամ կը գործածեն՝ իրենց մանուկներուն իմացական զարգացումին վրայ տեսակ մը հսկողութիւն գործադրած ատեն։ Հերիք չէ մտածել որ այս ինչ գիտութիւնն իրենց օգտակար պիտի ըլլայ ապագային, կամ թէ նոյն գիտութիւնն ուրիշ գիտութենէ մը աւելի գործնական արժէք ունի։ Պէտք է նախ հետազօտել գտնել գիտութեանց համեմատական արժէքը կշռադատելու միջոցն՝ այնպէս որ դրապէս գիտնանք թէ ո՛ր գիտութիւնները պէտք է միւսներէն աւելի մշակին։

Անտարակոյս՝ այս գործը շատ դժուար է, եւ թերեւս երբեք հնար չպիտի ըլլայ կատարել զայն ամբողջապէս. բայց՝ մտածելով որ դժուար է՝ պէտք չէ վատութեամբ

մէկ կողմ ձգենք զայն. եթէ այսպէս ընենք՝ կարելի է որ շատ մեծ շահեր վտանգին։

Ընդհակառակն՝ հարկ է մեծ ջանքով յաղթենք այս դժուարութեան, եւ երբ դրապէս ընթանանք՝ քիչ ժամանակի մէջ պիտի կրնանք ձեռք բերել կարեւոր արդիւնք։

Եւ նախ, առանց երկմտելու, պէտք է ըստ իւրաքանչիւր կարեւորութեան դասակարգենք մարդու կենցաղին գլխաւոր գործերն, որ կը բաժնուին հետեւեալ սա շատ բնական մասերուն. — 1°. Գործ՝ որու ճիշդ առարկան է անձնապահութիւն. 2°. Գործ՝ որ անձնական գոյութեան պէտքի հոգ տանելով՝ միւս կողմէն ալ անձնապահութեան կը նպաստէ։ 3°. Գործ՝ ընտանիքը տածելու եւ դաստիարակելու. 4°. Գործ՝ քաղաքական ու ընկերական կարգի պահպանումի համար. 5°. Գործ ամէն տեսակ՝ լեցունելու համար կեանքի պարապ ժամերը՝ զգայութիւններու եւ ախորժակներու յագեցումով։

Գրեթէ ա՛յս է աւասիկ իրենց դասական կարգն, որ անօգուտ է երկար բարակ ապացուցանել։ Արեւու պէս յայտնի է՝ որ առաջ այն գործերն եւ զգուշութիւնները կուգան, որոնցմով ամէն ժամ կապահովենք մեր անձը։ Երեւակայէ մարդ մը՝ որ տղայի մը պէս չգիտնայ մօտի առարկաները, բոլորի բաներուն շարժումներն, անոնց մէջ վարուելու եւ վտանգէ զգուշանալու կերպը։ Այսպիսի մարդ մը՝ առաջին անգամ մենիկ փողոց ելնելուն՝ անպատճառ իր կեանքը վրայ կուտար, թէպէտ եւ գիտցած ըլլար ուրիշ շատ բաներ։ Ուրեմն ըսենք՝ որ ամէնէն առաջ մեզի ա՛յն ծանօթութիւնները պէտք են, որ ուղղակի կապահովեն մեր անձին պահպանութիւնն, եւ եթէ չունենանք անոնք՝ աւելի շատ փորձանքի պիտի պատահինք քան եթէ միւս բոլոր ծանօթութիւններն ունեցած չըլլայինք։

Դարձեալ անուրանալի է որ երկրորդ գործն է՝ ամէն մարդու անձին անուղղակի պահպանութիւնն, այսինքն իր գոյութեանն համար պէտք եղած միջոցներուն հայթայթումը։

Բացայայտ է՝ որ նախ պարտինք ինքզինքնիս խնամել, ապա մեր ընտանիքը. որովհետեւ ընդհանրապէս առանց նախ ինքզինքնիս նայելու՝ անկարելի է հոգալ մեր ընտանիքին պէտքը։ Եւ վասն զի կարելի ու հա՛րկ է մեզի՝ մեր ընտանիքէն առաջ ինքզինքնիս խնամել, անհրաժեշտ կարեւոր է աւելի մեր անձնական պէտքին քան մեր ապագայ ընտանիքին հարկաւոր գիտելիքն ստանալ։

Որովհետեւ ընկերութեան տակաւ զարգացումին ատեն՝ ընտանիքն հասարակութենէ առաջ եղած է, հասարակութեան կազմուելէն առաջ՝ մարդիկ զաւակ դիած են, հասարակութեան լուծուելէն ետեւ ալ՝ կարելի է զաւակ դիել, եւ առանց զաւակի՝ անհնար է որ հասարակութիւն ըլլայ, ուրեմն հայրական պարտքը քաղաքացիի պարտքէն շատ աւելի կարեւորութիւն ունի։ Դարձեալ՝ որովհետեւ ընկերութեան մը արժէքն ու հզօրութիւնը՝ զայն բաղկացուցող քաղաքացիներուն բնաւորութենէն կախուած է վերջնապէս, եւ որովհետեւ անոնց բնաւորութեան վրայ ներգործելու ամէնէն ապահով միջոցն է կրթութիւնը, բնականաբար՝ ընկերութեան բարեբաստութիւնն ընտանիքի բարեբաստութեան վրայ հիմնուած է։ Ուստի՝ ընտանիքի զարգացումին ուղղակի նպաստող գիտութիւնը՝ պէտք է առաջ անցնի ընկերութեան նպաստող գիտութենէն։

Եթէ կանխաւ կազմուած չէ՝ խարախեալ ընկերութիւն մը՝ անհնար է որ գոյութիւն ունենան այն կարգ մը զուարճընծայ արուեստներն, որ կը լեցունեն ծանր ու կարեւոր աշխատութիւններէ աւելցած պարապ ժամերը.

ատոնք են՝ բանաստեղծութիւն, երաժշտութիւն, նկարչութիւն, որ ոչ միայն հինօրեայ ընկերութեան մը մէջ եւեթ կըրնան ամէնաբարձր կատարելութեան հասնիլ, այլ նաեւ իրենց գլխաւոր աղբիւրներն են ընկերական զգացմունք եւ ընդհանուր սիրելութիւն։ Հաստատեալ եւ զարգուն ընկերութիւն մը՝ ոչ միայն կը դիւրացնէ անոնց զարգացումն, այլ նաեւ սնունդ կուտայ անոնց արտայայտած գաղափարներուն եւ զգացումներուն։ Ուրեմն՝ կրթական նիւթերու մէջ՝ լաւ քաղաքացի պատրաստող բաները՝ տաղանդ ստանալու եւ ախորժակ յագեցունելու բաներէն աւելի կարեւորութիւն ունին։

Կը կրկնենք դարձեալ՝ թէ դաստիարակութեան նիւթերուն տրամախոհական կարգն ատոնք են. — Ուղղակի մարդու անձնապահութեան կրթութիւնը. անձնատածութեան կրթութիւնը. ընտանիք պահելու կրթութիւնը. լաւ քաղաքացի ընող կրթութիւնը. վերջապէս՝ կենցաղի զանազան նուրբ հաճոյքը վայելելու կրթութիւնը։ Չենք կըրնար ժխտել՝ թէ դաստիարակութեան այս այլ եւ այլ ճիւղերն այնպէս սերտ կցորդուած են իրարու՝ որ անհնար է մին միայն յառաջացունել՝ առանց մինչեւ աստիճան մը միւսներուն ալ զբաղելու։ Դարձեալ չենք տարակուսիր՝ թէ իւրաքանչիւր մաս կը պարունակէ ճիւղեր, որ աւելի կարեւոր են քան միւս մասերուն մէջ եղած ճիւղերը. թէ՝ օրինակի համար՝ գործի մէջ շատ ճարպիկ մէկն, որ սակայն միւս ուսումներու մէջ խակ է, կատարեալ կեանքի գաղափարէն աւելի հեռու է քան ուրիշ մէկն, որ ստակ վաստըկելու մէջ թէպէտեւ անոր չափ ճարպիկ չըլլայ՝ սակայն աւելի շատ դատողութիւն ունի իբր պետ ընտանիքի։ Չենք տարակուսիր՝ որ նոյնպէս քաղաքական ու ընկերական գիտութեանց ներհուն մէկն, եթէ ամենեւին չունենայ գրական ու արուեստական ծանօ-

թութիւն՝ այնչափ յարգի չէ, որչափ այդպիսի գիտութեանց նուազ քանակութեամբ՝ բայց գրական ու գեղարուեստական բաւական տեղեկութեամբ ալ բարեխառնած գլուխ մը։ Մասերու այն մեծ բաժանումներն՝ զոր դրինք՝ կը կենան միշտ այս թեթեւ պայմաններուն հետ միասին։ Ասոնք իրարու ենթարկուած են առաջուընէ նշանակուած կարգին համեմատ, եւ այս՝ անոր համար որ իրական կեանքի վրայ ձեւուած բաժանումները՝ գործնականին մէջ փոխադարձաբար նոյն կարգով իրար կարելի կընեն։

Ի հարկէ՝ կրթութեան նպատակը պէտք է ըլլայ անթերի պատրաստութիւն մը այս ամէն մասերուն մէջ. բայց որովհետեւ մեր արդի դիրքովը անհնար է կրթութեան նպատակին հասնիլ, պէտք է բաւական համարինք՝ երբ մարդկային գործունէութեան մասերուն ամէն մէկին պատրաստուած ըլլանք՝ զանազան աստիճաններուն ճշգրիտ համեմատութեամբ։ Զուր չաշխատինք զարգացունել բացարձակապէս՝ որչափ ալ կարեւոր ըլլայ այն՝ մի միայն կարգ մը ծանօթութիւններ ի վնաս միւսներուն. ամէնուն ալ հաւասարապէս ուշադիր ըլլանք, եւ անոնց յարաբերական արժէքին համեմատ աշխատինք։ Բացառութիւն սեպելու է սակայն՝ երբ մէկը մասնաւոր ընդունակութիւն մը ունենայ իմաստութեամբ ինքզինքն յատուկ գիտութեան մը տալու, որ իրեն ապրուստի միջոց մը կըլլայ։ Բայց ընդհանրապէս ամէն մարդու համար՝ գիտելի նպատակը պէտք է ըլլայ դաստիարակութիւն մը, որ անթերի կեանքի համար անհրաժեշտ ուսումներուն մէջ կատարելութեան շատ մօտ հասցունէ, եւ այնչափ փոքր առ փոքր մօտենայ միւս ուսումներուն՝ որչափ անոնք անթերի կեանքի վրայ կը ներգործեն փոքր առ փոքր։

Այս սկզբունքին համեմատ դաստիարակութիւնը կար-

*դադրելու տանն՝ պէտք չէ բնաւ անտեսել կարգ մը խորհրդածութիւններ։ Կատարեալ կեանքի գաղափարականին հասնելու նպաստող իւրաքանչիւր կրթութեան արժէքը՝ կամ յարաբերական է կամ բացարձակ։ Գիտութեանց մէկ մասն ունի իսկական* (intrinsèque) *արժէք մը, մէկ մասը կէս-իսկական* (quasi-intrinsèque) *եւ մէկ մասն ալ պայմանական* (conventionnel)։

*Երբ մէկուն ականջը թմրի կամ դողնչէ՝ ընդհանրապէս անդամալուծութեան նշան է այն. — Եթէ ի՛նչ եւ իցէ մարմին մը ջուրին մէջ մխի՝ մխուելուն արագութեան քառակուսիին համեմատութեամբ դիմահարութեան մը կը հանդիպի. — Քլորուկն ապանեխիչ մըն է. — այս առածները՝ գիտնական ամէն ճշմարտութեանց պէս՝ իսկական արժէք մը ունին, եւ ինչպէս այժմ նոյնպէս ասկէ տասն հազար տարի ետեւ ալ՝ մարդկային գործերուն վրայ պիտի ազդեն միշտ։ Յունական եւ լատինական լեզուներուն գիտութեան միջոցով՝ անգղիական լեզուին ներհուն ծանօթութիւնը՝ կէս-իսկական արժէք ունեցող բան մը նկատուած է, եւ այդ արժէքը գրեթէ նոյն է մեզի եւ միւս այն ազգերուն համար, որոնց լեզուն մերին նման ծագում մը ունի. բայց անոր տեւականութիւնը՝ մեր սեպհական բարբառին տեւականութեանն համընթաց է։ Բանական հայեցուածով՝ իսկական արժէք ունեցող գիտութիւնը պէտք է նախադաս ըլլայ այն գիտութենէն, որ կէս-իսկական արժէք մը ունի, եւ սա՝ նախադաս ըլլայ այն գիտութենէն, որուն արժէքը զուտ պայմանական է։*

*Սոյն նախապատրաստական խորհրդածութիւնները վերջացունելով՝ կըսենք. — ամէն ծանօթութիւն երկու տեսակ արժէք ունի՝ մին իբրեւ* տեղեկութիւն, *միւսն իբրեւ* դաստիարակութիւն *կամ իմացական* մարզանք։ *Այս կարգով՝ նախ իմացական վարժութիւն մըն է այն, եւ*

տպա կենցաղական գործերը վարելու միջոց մը․ այս եր-
կու երեւոյթներուն ներքեւ պէտք է նկատել ստացուած
գիտութեան մը արդիւնքն՝ իբրեւ պատրաստող կատարեալ
կեանքի ։

Այն հանրական դիտողութիւններն, որոնց վրայ պիտի
հիմնենք կրթութեան բանաւոր դրութիւն մը հաստատե-
լու մեր բանաքննութիւնը, սա հետեւեալներն են․
կեանքի բովանդակութիւնը՝ գործունէութեան զանազան
տեսակներուն բաժնուած՝ իրենց կարեւորութեան նուա-
զելուն կարգով․ այս զանազան տեսակներուն համեմա-
տութեամբ՝ գործունէութեանց իւրաքանչիւրին իսկական
կէս-իսկական եւ պայմանական արժէքը․ վերջապէս՝
անոնց կրկնակի ազդեցութիւնն իբրեւ տեղեկութիւն եւ
իբրեւ կրթութիւն կամ իմացական մարզանք ։

Բարեբաղդաբար՝ առաջունը ապահովուած է մեր
դաստիարակութեան կարեւոր այն առաջին մասն, որուն
գործն է ուղղակի մեր անձնական պէտքն հայթայթել ։
Որովհետեւ ամէնակարեւոր ըլլալուն համար չէինք կրնար
բարձի թողի ընել՝ բնութենէն ու կանուխ սովորութեամբ
կառնենք զայն ։ Դեռ դայեակին թեւերուն մէջ ստնդիաց
մանկիկն, որ անծանօթ մէկը տեսածին պէս երեսը ծած-
կելով լալ կըսկսի, կը ցուցընէ թէ ներսիդին ծնունդ
առած է ինքնապաշտպանութեան բնազդն՝ որ կը թելադրէ
փախչիլ անծանօթ ու թերեւս վտանգաւոր բաներէ ։ Այս
բնազդն աւելի արթունցած կը տեսնենք՝ երբ տղան քալել
սովրելով՝ անընտանի շունի մը մօտեցած ատեն՝ դիտենք
թէ ի՛նչ արհաւիրք կիմանայ, ո՛րպիսի ճիչեր կարձակէ ։
Աւելին կայ, վասն զի մանաւանդ ամէն վայրկեան զբաղած
է ստանալու այնպիսի ծանօթութիւններ, որ ուղղակի իր
անձնապահութեան կըսպասաւորեն ։ Ուշադրութեամբ ան-
դադար կը սորվի՝ թէ մարմինն ի՛նչպէս հաւասարութեան

մէջ պահելու է. ինչպէս դէտ կալու է անոր շարժում-
ներուն՝ որպէս զի առարկայի մը չզարնուի. ո՛ր բաները
կարծր են եւ իրեն ցաւ պիտի պատճառեն՝ երբ անոնց
զարնուի. ո՛րոնք ծանր են եւ պիտի վիրաւորեն զինքն՝
եթէ վրան իյնան. ո՛րոնք են այն բաներն, որ իր մար-
մինին ծանրութեանը պիտի դիմանան, եւ ո՛րոնք չպիտի
կրնան դիմանալ. կը սորվի դարձեալ՝ կրակէ պուղող
կամ հաստ բաներէ առաջ եկած ցաւը։ Ասոնք ու մահէ
կամ արկածներէ զգուշանալու համար հարկաւոր ուրիշ
տարրերն՝ են ահա իր ուսումին հանապազորդ առարկա-
ները։ Եւ երբ՝ քանի մը տարիէն սկսի զօրել վազելու,
մագլցելու, ոյժի եւ ճարպիկութեան խաղերու մէջ
ցատկելու, բոլոր այս շարժումներուն առեն, որով սանրին
ջիղերը կը զօրանան՝ ըմբռնումը կը սրի՝ դատումը կարա-
գանայ, կը տեսնենք որ զինք շրջապատող առարկաներուն
մէջ՝ իր անձը վարելու եւ կեանքի սովորական վտանգ-
ներէն ինքզինքը պահպանելու դիւրութիւն մը ստանալու
վրայ է։

Այսպէս՝ բնութիւնն ինք մեծ խնամով կը կրթէ մեզ.
ուստի այս հիմնական կրթութեամբ շատ զբաղելու պէտք
չենք ունենար։ Մեր գլխաւոր գործը պիտի ըլլայ՝ մա-
նուկին կատարեալ անկախութիւն թողուլ այս փորձա-
ռութիւնը ձեռք բերելու համար. չհակառակիլ բնութեան,
ինչպէս կընեն դպրոցի տխմար վարժուհիներն, որ ընդ-
հանրապէս կարգիլեն իրենց յանձնուած աղջիկներուն ինք-
նաբերաբար գործելն։ Բայց պէտք է գիտնալ՝ որ անոնց
ախորժած բանն է այն, եւ երբ զայն արգիլենք՝ անկա-
րող կըլլան վտանգի առեն ինքնին պաշտպանուելու։

Սակայն՝ շատ նկատառումով այսչափ չէ այն կրթու-
թիւնն, որ ուղղակի անձնապահութեան կը պատրաստէ.
ոչ միայն պէտք է պաշտպանել մարմինը կազմութեան

վնաս բերող կամ զայն աւրող բոլոր բաներէն, այլ նաեւ բնախօսական օրէնքի դէմ գործուած սխալներուն հետեւանքէն, որ են հիւանդութիւն կամ մահ։ Կատարեալ կեանք մը ունենալու համար՝ հարկաւոր է ոչ միայն կեանքի յանկարծահաս ոչնչացումները կանխաւ խափանել, այլ նաեւ մեր գէշ սովորութիւններէն յառաջ եկած ուժանկութիւններն ու յամր ոչնչացումները նահանջել։ Որովհետեւ առանց առողջութեան ու կորովի՝ անձնական հայրական ընկերական ամէն գործ շատ կամ քիչ անկարելի կըլլայ, ուրեմն ուղղակի անձնապահութեան այս երկրորդ տեսակն առաջիններէն ոչ նուազ կարեւոր է, եւ պէտք է զայն ապահովող գիտութիւնը՝ շատ բարձր տեղ մը բռնէ դաստիարակութեան մէջ։

Ճշմարիտ է՝ որ հոս ալ կերպով մը բնական առաջնորդ մը ունինք. մեր նիւթական զգայութեանց ու փափագներուն միջոցով՝ բնութիւնն իր գլխաւոր օրէնքին համաձայն հպատակութիւն մը ձեռք բերած է մեր կողմէն. մարդիկ բարեբաղդ են՝ որ անօթութիւնը սաստիկ ջերմութիւնն եւ սաստիկ ցուրտը կըլլան իրենց ազդարարներ, որոնց չանսալ անհնար է, եւ եթէ այս ազդարարներուն եւ ուրիշ կարգ մը ազդարարներուն անսալու սովորած ըլլայինք՝ համեմատաբար քիչ հիւանդութիւններու պիտի ենթարկէինք։ Եւ յիրաւի, մեր գործարանները շատ քիչ անգամ պիտի խանգարէին՝ եթէ մարմինի եւ ուղեղի յոգնութենէ ետեւ՝ փոյթ ընէինք միշտ աշխատութիւնը դադրեցունել. եթէ փակուած մթնոլորտի մը ներգործութեամբն յառաջ եկած նեղութիւնն ստիպէր մեզ յաճախակի օդը փոխել ամէն օր. եթէ մինչեւ որ անօթենայինք՝ չուտէինք. եթէ մինչեւ որ ծարաւ զգայինք՝ ջուր չխմէինք։ Բայց մենք կեանքի օրէնքին այնքան տգէտ ենք, որ չենք հասկըցած անգամ թէ զգացմունք

մեր բնական ու ամէնէն վստահելի առաջնորդներն են՝ միայն թէ մեր յամառ անհնազանդութեամբ խաթարած չըլլան ։ Որով՛ թէպէտեւ բնութիւնը մեր առողջութեան արթուն պահապաններ տուած է մեզի՝ ըստ պատճառագիտական (1) ասութեան, մենք մեր տգիտութեամբը մեծ մասով անօգուտ կը դարձունենք անոնք ։

Անոնք՝ որ չեն հաւանիր թէ մարդս շատ կարեւոր է գիտնալ բնախօսական սկզբունքն, որ կատարեալ կեանքի հասնելու միջոցներ են, թող նային իրենց շուրջն, եւ պիտի տեսնեն՝ թէ ո՛րչափ քիչ են այն յիսունոց կամ ծերացած այրերն ու կիներն, որ կատարելապէս քաջառողջ են ։ Շատ քիչ են ծերութեան մէջ հզօր առողջութիւն ունեցողներն, եւ ընդհակառակն՝ ամէնատեն կը տեսնենք ծանրապէս հիւանդացածներ, պարբերական խօթութիւններ, ընդհանուր ուժանկութիւն եւ կանխահաս զառամութիւն ։ Չիկայ գրեթէ մէկն՝ որ եթէ հարցունես՝ չխոստովանի թէ երբեմն հիւանդութեանց ենթակայ եղած է, որոնցմէ զերծ պիտի մնար՝ եթէ բնախօսական քիչ մը ծանօթութիւն ունեցած ըլլար ։ Մէկը սիրտի հիւանդութենէ բռնուած է, որուն պատճառն եղած է անխոհեմութեան մը երեսէն եկած յօդացաւական ջերմ մը ․ անդին ուրիշ մը կուրացած է՝ ծայրայեղ աշխատութեան պատճառով ։ Երէկ կը խօսուէր մէկուն մնայուն կաղութեան վրայ, - որուն պատճառն այն եղած է որ ցաւին

(1) Պատճառագիտութիւնն (téléologie), որ եւ ուսումն դիտաւորական պատճառներու, հին բնազանցութեան այն մասն է՝ որ կզբաղի դիտաւորութեան հետազօտութեամբ ։ Ըստ Արիստոտէլի եւ իր հետեւողներուն՝ բնութիւնն այս դիտաւորութեանց համար իրերն այս կամ այն կերպ համադրած է ։ Մեր ցուցած պարագային մէջ՝ օրինակի համար՝ խնդիր է թէ ինչ դիտաւորութեամբ տրուած են մեզի մեր գործարաններն ու զգայարանքը ։

մտիկ չընելով՝ թեթեւապէս վիրաւորած իր մէկ սրունքովը քալել յանդըգնած է . այսօր կը խօսին ուրիշ մէկուն վրայ, որ ստիպուած է տարիներով անկողին մնալ, վասնզի չէր գիտեր՝ թէ իր սիրտի բաբախումներուն բունպատճառն էր իր մտային աշխատութիւնը։ Անդին՝ ուրիշ մէկը կը տառապի անբուժելի խոցով մը, որուն պատճառեղած է մարմնական խօլ խաղ մը բռնի . ասդին՝ միւսի մը կազմութիւնն անկանգնելի կերպով խաթարած է առանց հարկի չափազանց աշխատութեան մը երեսէն։ Այսպէս՝ ամէն կողմ կը տեսնենք տկարութիւն եւ մշտընջենական հիւանդկախութիւն։ Առանց հաշուի առնելու վիշտը, խռնջումը, թաղծութիւնը, ստակի կորուստն՝ որ այս կերպով կը ծանրանան մեր վրայ՝ դիտենք միայն թէ վատառողջութիւնն ո՛րչափ արգելք կըլլայ պարտականութեանց կատարումին։ Վատառողջութիւնը՝ գրեթէ միշտ անկարելի ու դժուար կընէ մեր այն գործերն, որով պիտի կընայինք մեր անձնապահութեան համար պէտք եղածն ընել . պատճառ կըլլայ դայրացկոտութեան մը, որ վնասակար է մանուկներու լաւ կրթութեան . անկարելի կընէ գործադրութիւնը քաղաքացիութեան պարտականութեանց, եւ անտանելի գործ մը կը դարձունէ մեզի կատարումն ամէն բանի, որ պիտի վերակազմէր մեզ։ Շատ յայտնի է՝ որ բնական կարգի դէմ մեղքը, թէ՛ անոնք որ ժառանգաբար մեր հայրերէն մեզի անցած են եւ թէ անոնք՝ որ բո՛ւն մերն են, ամէն բանէ աւելի կը խափանեն կատարեալ կեանքն՝ առողջութիւնն այլայլելով, եւ առհասարակ ախտակեցութիւն մը եւ բեռ մը կընեն զայն, որ պէտք էր բարիք մը ու բերկրանք մը ըլլար։

Աւելին կայ, վասն զի կեանքն ոչ միայն մեծապէս կեղծանի, այլ կը կարճի՛ ալ։ Սխալ է կարծել՝ որ անհարթութիւն մը կամ հիւանդութիւն մը անցնելէն

նաեւ՝ կարելի է դառնալ ճի՛շդ առջի վիճակին ։ Մարմինի կազմածին խանգարումն անցնելէն ետեւ՝ գործարանները ճի՛շդ առջի վիճակին չե՛ն դառնար բնաւ. երբ անգամ մը մարդու կազմածը միեւնոյն հարուած մը առնէ, թէպէտ եւ նոյն ժամանակին աչքի չզարնէր՝ բայց կը մնայ միշտ, որուն ուրիշներ ալ վրայ հասնելով՝ բնութիւնը կարձանագրէ անոնք իր անաչառ տետրին մէջ. հարուածն անդլակի կը ներգործէ մեր վրայ մինչեւ որ՝ ուշ կամ կանուխ՝ մեր կեա՛նքը կարճէ ։ Փոքր հարուածներու բավանդակութիւնն է՝ որ սովորաբար կազմութիւնը կը մաշեցունէ եւ կը կործանէ՝ որոշեալ ատենէն շատ առաջ ։ Եթէ մտածենք՝ թէ կեանքին միջին տեւողութիւնն ո՛րչափ կարճ է՝ համեմատելով հնարաւոր տեւողութեան՝ կրնանք ըմբռնել մեր ըրած անհուն կորուստը ։ Վատառողջութենէ պատճառած կեանքի մասնական կորուստներուն վրայ՝ աւելցունենք վաղահաս մահով՝ արձանացած վերջնական կորուստը, կը տեսնենք որ կէս կեանք մը ի զուր ծովը թափելու վրայ ենք ։

Ուստի, նախ եւ առաջ կարեւոր է մեզի գիտնալ՝ խափանելով առողջութեան կորուստը՝ ուղղակի անձնապահ ըլլալու եղանակը ։ Ջենք ըսեր՝ որ այսպիսի գիտութիւն մը ունեցողը՝ կատարելապէս եւ ամէն պարագայի մէջ չարիքին առջեւը կրնայ առնել ։ Գիտենք՝ որ շատերն ՚ի հարկէ ստիպուած են յաճախ բնական օրէնքի դէմ մեղանչել ։ Նաեւ՝ եթէ ժամանակի այս հարկը չըլլար ալ՝ մարդիկ յաճախ պիտի յօժարէին բնական միտումով եւ հակառակ իրենց համոզումին՝ հրաժարիլ ապագայ բարիքէ մը ժամանակեայ գոհացումի մը փոխարէն ։ Այլ կը պնդենք՝ որ այս նիւթին պատկանաւոր ծանօթութիւն մը՝ անպատճառ լաւ արդիւնք յառաջ կը բերէ. կ՚աւելցունենք նաեւ թէ՝ որովհետեւ նախ պէտք է ճանչնալ առողջու-

*թեան օրէնքն՝ որպէս զի կարենանք անթերի կատարել՝ բանականութեան համեմատ կենցաղի կերպ մը կարելի է միայն ա՛յն ատեն, երբ առաջ առողջաբանական սկզբունքի ծանօթութիւնն ստացած ըլլալով՝ պատրաստուած ըլլանք անոր։ Ասկէ կը հետեւցունենք՝ թէ քանի որ երջանկութեան առաջին տարրերն են՝ հզօր առողջութիւն եւ բարոյական զօրեղութիւն մը, ամէն ուսումէ նախադաս համարելու է առողջապահական ուսումը։ Ասոր համար կը պնդենք դարձեալ՝ որ իմաստուն դաստիարակութեան անհրաժեշտ մասն է՝ բնախօսութեան հանրական ճշմարտութեանց ըմբռնումն ու մեր ամէնօրեայ կենցաղին մէջ անոնց գործածութեան համար՝ ըստ բաւականին կատարեալ ուսում մը։ Շիտակն ըսելով՝ սոյն խնդիրին վրայ այսպէս պնդելու հարկը տարօրինակ կերեւի մեզի, եւ այն աւելի տարօրինակ՝ որ այս խնդիրը պաշտպանելու պէտք ունի։*

*Սակայն կան մարդիկ, որ ծաղրելով կունկընդրեն այսպիսի առաջարկութեան մը։ Այդ մարդիկ, որ անշուշտ ամօթահար կը շառագունին՝ երբ Իփիգենիա բառին սխալելով երկրորդ վանկն իրենց շեշտած ատեն՝ մէկը վրայ հասնելով դիտել տայ այդ սխալն, որ առասպելական կիսաստուածի մը չինծու չահատակութեանց վրայօք իրենց տգիտութիւնն երբ երեւանին տրուի՝ ինքզինքնին թշնամանեալ կը կարծեն, այդ մարդիկ կըսենք՝ քիչ մը ամօթ անգամ չեն արտայայտեր երբ խոստովանին որ չգիտեն ո՛ւր են Եւստաքեան (*) խողովակներն, ի՛նչ են ողնածուծի*

---

(*) Eustache, *Եւստաքիոս*՝ իտալացի անդամազէտ, մեռ. 1574. իր անունով կը կոչուի նեարդային աճառապատ եւ ոսկրոտ այն անցքն, որուն մէկ ծայրը կերկայնի մինչեւ ականջի թմբուկին, եւ միւս լայն ծայրը կը հասնի կոկորդին վերի ծայրին։ Թ.

պաշտօններն, ի՛նչ է երակներու թնդումին բնական թիւը, կամ թոքերն ի՛նչպէս կուռին արտաքին օդառութեամբ։ Մինչդեռ բովանդակ փոյթով կաշխատին՝ որ իրենց մանուկներն հմտանան երկու հազար տարի առաջ աշխարհի վրայ գտնուած նանրապաշտութեանց, բնաւ հոգ չեն տանիր որ անոնք քանի մը ծանօթութիւններ առնեն՝ մարդկային մարմինին կազմուածին ու պաշտօններուն վրայ. մինչեւ իսկ լաւագոյն կը սեպեն՝ եթէ իրենց զաւակներն այդ ծանօթութիւնները չունենան. սովորամոլութիւնն այնքա՛ն անվկանդ բռնութեամբ տիրած է անոնց վրայ, եւ այնքա՛ն սոսկալի է մեր դաստիարակութեան մէջ հաճոյական նիւթերու գերիշխանութիւնը կենցաղօգուտ նիւթերու վրայ։

Հարկ չէ հոս պնդել արժէքին վրայ այն գիտութեան, որ կողմնակի կօգնէ մարդուն անձնապահութեան՝ հայթայթելով իրեն իր գոյութեան միջոցները։ Այս խնդիրին վրայ ամէն մարդ միաբան է, եւ շատերը մինչեւ իսկ դաստիարակութեան միակ նպատակը կը համարին զայն՝ թերեւս չափազանցութեամբ։ Բայց տեսականօրէն ընդունելով հանդերձ՝ թէ ամէնակարեւոր է. երիտասարդներուն իրենց ապրուստը ճարել սորվեցունող գիտութիւնն, հազիւ քանի մը հոգի փոյթ կընեն գիտնալ՝ թէ ի՛նչ տեսակ կրթութիւն պիտի կըրնայ զարգացունել այս վարժութիւնը։

Արդարեւ՝ ընթերցանութիւնը, շարագրութիւնը, թուաբանութիւնն՝ իրենց օգտակարութեան բանաւոր գիտակցութեամբ դաս կը տրուին դպրոցներու մէջ. բայց ամէնն ասկէ անդին չանցնիր։ Ուսումներու շատը՝ մարդու անձնապահութեան վերաբերեալ հանգամանք մը չունին, եւ այս կարգի անհամար ծանօթութիւններ զանց կըլլան։

Սակաւաթիւ դասէ մը զատ՝ մարդիկ ընդհանրապէս

ի՞նչ բանի կը գործածուին . — կամ արտադրելու, կամ պատրաստելու եւ վաճառելու կենցաղօգուտ նիւթեր։ Այս նիւթերուն արտադրութեան պատրաստութեան ու վաճառումի յաջողութիւնն ինչէ՞ կախուած է։ Ո՞չ ապաքէն նիւթերուն իւրաքանչիւրին յատկութեանը պատշաճեալ մէթոտներու կիրառութենէն, անոնց նիւթական քիմիական ու կենդանաբանական՝ ըստ պարագային՝ բնութեան ճիշդ ծանօթութենէն, կարճ ըսել՝ գիտութենէ։

Գիտութեան այս ճիւղն, որ մեր դպրոցներու ընթացքին մէջ մեծ մասով բացակայ է, հիմն է այն զարգացումներուն, որով կարելի է քաղաքակրթօրէն կենցաղիլ։ Թէպէտեւ անժխտելի ճշմարտութիւն մըն է այս, սակայն թուի թէ մարդիկ ասոր վրայ ճշմարտապէս գիտակցութիւն չունին, եւ վրան չմտածել սովորած ըլլալնուն համա՛ր է՝ որ չեն մտածեր։ Ուստի, մեր փաստերուն սեպհական բոլոր զօրութիւնը տալու համար, պէտք է այս ճշմարտութիւնն ընթերցողին աւելի զգալի ընենք՝ իրողութիւններն արագ աչքէ մը անցունելով։

Մէկ կողմ թողունք տրամաբանութիւնը՝ գիտութեանց ամէնէն վերացականն, որ սակայն հարկաւոր առաջնորդ մըն է՝ որուն պէտք ունին իրենց հաշիւներուն մէջ մեծ արտադրողն եւ մեծ վաճառականը (թէպէտեւ կարեւորութիւն չի տան անոր) եւ ձեռք առնենք թուաբանութիւնը։ Այս գիտութիւնն՝ իբրեւ գիտութիւն թիւերու՝ ճարտարարուեստական բոլոր գործերուն առաջնորդն է, թէ՛ ձեռնարկութիւններ ծրագրելու, թէ՛ ապրանք արժէցունելու, թէ՛ ցորեն գնելու կամ ծախելու եւ թէ հաշիւ բռնելու ատեն։ Վերացեալ գիտութեանց այս ճիւղին կարեւորութիւնը՝ պէտք իսկ չունինք ապացուցանելու։

Կառուցումներու համար՝ անհրաժեշտ պէտք է քիչ մը տեղեկութիւն այդ ճիւղին հարկաւոր թուաբանական

յատուկ ծանօթութեանց։ Թէ՛ գիւղացի հիւսնն, որ գործնական կանոններու համեմատ կը յօրինէ իր շինուածական ծրագիրը, թէ՛ Բրիտանիական կամուրջի(1) ճարտարապետն՝ երկուքն ալ երկրաչափական գիտութեան օրէնքն 'ի գործ կը դնեն ամէն օր։ Անդաչափն ու իր ճարտարապետն՝ որ անդաստանին յատակագիծը կը յօրինէ, գործապետն՝ որ հիմերը կը դնէ, քարկոփն ու գործաւորներն՝ որ շէնքին յօդուածները կը պատշաճեցունեն, ամէնն ալ երկրաչափական կանոններով կը վարին։

Երկաթուղիներու շինութիւնն ամբողջովին երկրաչափութեամբ կը կարգադրի. — ծրագիրներու եւ կըտրուածներու պատրաստութիւնը, գիծերու յերիւրումը, խրամներու եւ որմածներու չափումն, յատակումներն, եւ կամուրջներու, ջրմուղներու, ձորակամուրջներու, գետնուղիներու (tunnel), կայարաններու շինումը. նոյնպէս՝ նաւահանգիստներու, հանգրուաններու (dock), կարկաններու եւ երկրաչափական ու ճարտարպետական պէս պէս գործերու՝ որ ծովեզերքն 'ի չար կամ ցամաքի վրայ կըլլան՝ ոչ միայն երկիրի մակերեւոյթին՝ այլ մինչեւ հողին ալքն հանքերուն մէջ։ Մեր օրերն՝ ագարակապանն անգամ ջրաչափ կը գործածէ՝ պատշած դիրքով դնելու համար իր յարդարիչ խողովակներն, այսինքն՝ պէտք ունի երկրաչափական տարրերուն։

Ապա կուգան վերացեալ թանձրացեալ գիտութիւնները (2). արդի ճարտարագործութեան յաջողութիւնը կախուած է անոնց ամէնէն պարզէն, մեքենագիտութենէ։

---

(1) *Բրիտանիական կամուրջ*՝ այն հռչակեալ խողովակաւոր կամուրջն, որ 1850 ին կառուց Ստեֆենսոն։ Այս կամուրջը կը միացունէ Անկլըսի կղզին Կալլէսի նահանգին ծովափին։

(2) *Վերացեալ թանձրացեալ* գիտութիւններ ըսելով՝ հեղինակն ակ-

Լծակի ու բեռնազլանի յատկութիւններն ամէն մեքենայի մէջ կը գործածէին, եւ այսօր՝ մեքենաներն են որ կատարեն մեր ամէն պէտքը։ Եթէ նկանակի մը պատմութեան միտ դնենք, կը հասկընանք՝ որ նախ ցորենին ծնօղ արտն յարդարուած է հողէ խողովակներով, որ մեքենական օրէնքով շինուած են. ետքը՝ մեքենայով մը այս հողին երեսը վերիվայր դարձուցած են, վարսակն հընձուելով՝ ծեծուած ու հոսուած եւ ապա դարձեալ մեքենայով մաղած ու աղացած է. եւ եթէ ցորենը Կոսքորդ (1) ղրկուած ըլլայ՝ հոն ալ մեքենայո՛վ պիսքիւի վերածուած է։ Նստած սենեակիդ չորսդին եթէ նայիս՝ պիտի տեսնես որ պատերուն աղիւսները մեքենայով գործուած են՝ եթէ շէնքն ըստ արդի ճարտարապետութեան կառուցուած է. անոր տախտակամածը՝ մեքենայով տաշուած ու քերչուած է. նոյնպէս մեքենայով սղոցուած ու յղկուած է կրակարանին պատուակը. մեքենայո՛վ շինուած են նկարէն թուղթերը, սեղանին դրուագը, աթոռներուն կլորակ ոտքը, գորգը, վարագոյրներն՝ ամէնն ալ մեքենայով գործուած են։ Ձեր հագած՝ ողորկ հիւսկէն կամ տպանկար կտաւն ալ մեքենայով հիւսած ու թերեւս մեքենայով կարած է։ Ու ձեր կարդացած գիրքին թուղթերն ալ՝ մեքենայով շինուած չե՞ն, եւ ուրիշ մեքենայ մըն ալ տպած է հոն այս բառերն, որ ահա կը կարդաք։ Դարձեալ մեքենաներու միջոցով կը կատարին ցամաքային ու ծովային պաշարներու բաշխումը։ Այս

---

նարկել կուզէ մեքենագիտութիւն, բնագիտութիւն, տարրագիտութիւն, որ իր յօրինած *գիտութեանց դասակարգութեան* մէջ՝ *վերացեալ* գիտութեանց (թուաբանական) եւ *թանձրացեալ* գիտութեանց (աստղագիտութիւն, երկրագիտութիւն, եւայլն) միջեւ անցումը կը կազմեն։

(1) Կոսքորդ՝ Բո՛ղդամառդ Նաւահանգիստին մօտ է, ուր նաւերու համար *պիսքիւի* շինելու մեծ գործարան մը կայ։

ամէնը նկատելէ ետեւ՝ պիտի տեսնենք որ ամէն ճարտարագործութեանց յաջողութիւնը կամ անյաջողութիւնը՝ մեքենական գիտութեան աղէկ կամ գէշ գործածութենէն կախուած է։ Երկրաչափին՝ իր գործածած նիւթերուն տեսակը զննած ատեն երբ սխալ հաշիւ մը ընէ՝ կառուցած կամուրջն անպատճառ կը փլչի։ Այն գործարանապետն՝ որ գէշ մեքենայ մը կը գործածէ՝ չկրնար մրցիլ ուրիշ գործարանապետի մը հետ, որուն մեքենան չփումով ու դադարով քիչ ոյժ կը կորսընցունէ։ Հին ոճով նաւ շինողն ետ կը մնայ ուրիշէ մը, որ իր նաւերը մեքենականութեան մէջ ընդունուած ջրաչափական սկզբունքին համեմատ կը կերտէ։

Վեր ելնենք արդ՝ մեքենական ոյժի վերաբերեալ վերացեալ–թանձրացեալ գիտութեան ճիւղերէն՝ հիւլէի զօրութեանց վրայ ճառող գիտութեանց, եւ պիտի տեսնենք հոն կիրառութեան նոր եւ ընդարձակ կարգ մը։ Գիտութեանց այս խումբն է՝ որ նախորդ խումբերուն հետ միանալով՝ արտադրած է մեզի շոգեմուղ մեքենան, որ միլիոնաւոր մարդերու գործը կը կատարէ։ Բնական գիտութեանց այն յօդուածն, որ ջերմութեան օրէնքին վրայ կը խօսի՝ կը սորվեցունէ մեզի թէ շատ մը ճարտարագործութեանց մէջ ի՛նչպէս կարելի եղած է խնայագործել վառելի նիւթերը. փուռներուն արդիւնքն ի՛նչպէս կաւելցունեն՝ պաղ օդի տեղ տաք օդ անցունելով. ի՛նչպէս կը պրպըտեն հանքը. պայթուցիկներու առաջքն ի՛նչպէս կառնեն՝ ապահովութեան լամպարը գործածելով. եւ ի՛նչպէս ջերմաչափի միջոցով կարգի բերած են շատ մը օրէնքի կիրառութիւնը։ Բնական գիտութեանց ուրիշ յօդուած մը, որ կը խօսի լոյսի երեւոյթներուն վրայ, ծերերուն եւ հակուրներուն աչքին լոյս կուտայ, մանրադիտով հիւանդութիւններ ու խարդախութիւններ կը գըտ-

նէ, եւ կատարելագործեալ փարոսներով նաւաբեկութեանց առաջքը կառնէ. ելեքտրականութեան ու մագնիսականութեան գիւտերն անթիւ հոգիներ ու հարստութիւններ ազատած են՝ կողմնացոյցի միջոցով. շատ մը արուեստներու նպաստած են ելեկտրաձուլութեամբ (électro-typie), ու մեր օրերն հեռագիրին միջոցով՝ տուին մեզի այնպիսի օգնական մը, որ ապագային պիտի կանոնաւորէ առեւտրական դաշնագրութիւններն եւ պիտի յառաջացունէ քաղաքական յարաբերութիւնները։ Առտնին կենցաղի ամէն մանրամասնութեանց մէջ՝ կատարելագործեալ խոհանոցի-վառարանէն մինչեւ չքաւորահի սեղանին քանդանակը՝ բնագիտութեան յառաջդիմութիւններն հասած են օգնել մեր բարեկեցութեանն ու զուարճութեանց։

Աւելի շատ են տարրագիտութեան կիրառութիւնները. թափիչը, ներկողը, նկարէն կտաւներու գործողն՝ ամէնն ալ շատ կամ քիչ կը յաջողին՝ տարրագիտութեան օրէնքը գործածելնուն կամ չգործածելնուն համեմատ։ Տարրագիտութիւնը պէտք է առաջնորդ ըլլայ՝ արոյր, պղինձ, զինկոյ, կապար, արծաթ ու երկաթ ձուլողներուն։ Շաքարի զտումը, կազ գործելն, աճառաշինութիւնը, վառօդաշինութիւնը՝ մասով մը տարրագիտական գործեր են. նոյնպէս նաեւ թիթեղի եւ յախճապակի գործերը։ Որոշել զտելի նիւթերուն ալքօլական տարրալուծանութեան անցումի կէտն հո՛ն՝ ուր թթուական խմորում մը կառնեն՝ տարրագիտական խնդիր մըն է, որմէ կախուած է գարեջուր շինողի մը շահը կամ վնասը։ Գարեջուր շինողն եթէ մեծ գործարան մը ունի՝ շատ օգտակար պիտի ըլլայ իրեն գործարանին մէջ փոքր տարրագէտ մը ունենալ։ Իրապէս՝ հիմայ չի կայ ճարտարգործութիւն մը, որ կերպով մը տարրագիտութեան հետ առնչութիւն չունենայ։ Երկրագործութենէ սկսելով ամէն

*գործերու մէջ մարդիկ այդ առաջնորդին պէտք ունին, եթէ շահիլ կուզեն ։ Պարարտութեան եւ հողի տարրալուծումը, միուն առ միւս յարմարութեան ճանաչումը, անուշադրի բաղադրութեան համար՝ գաճի կամ ուրիշ նիւթերու գործածութիւնը, ժանտամացքի(1) կիրարկութիւնն, արուեստական պարարտութեանց արտադրութիւնը՝ տարրագիտութեան բարիքն են, որոնք ճանչնալն օգտակար է ագարակապանին ։ Թէ՛ լուցկիք շինելու, թէ՛ կոյանոցի ջուրերն անպանեխելու, թէ՛ լուսանկարչութեան, թէ՛ անխմոր հաց շինելու եւ թէ՛ անպիտան թափթըփուկէ անուշ հոտեր հանելու ատեն՝ միշտ պէտք է գիտնալ որ տարրագիտութիւնը դեր մը ունի ամէն ճարտարգործութեանց մէջ, եւ այս պատճառաւ կարեւոր է ամէն անոնց, որ ուղղակի կամ կողմնակի ճարտարգիտական արտադրութեանց կը պարապին ։*

*Թանձրացեալ գիտութեանց գալով՝ ամէնէն առաջ մեր դէմը կելնէ աստղագիտութիւնն, որմէ ծագում առած է նաւարկութիւնը ։ Նաւարկութեամբ է որ օտար աշխարհներու մէջ կըրնանք ընել այն լայնատարր վաճառականութիւնն, որով մեր երկիրին մեծ մասին ապրուստը, մեր ամէնակարեւոր պէտքն, ու մեր պերճանքի նիւթերը կը հայթայթին ։*

*Երկրաբանութիւնն ալ գիտութիւն մըն է, որ ճարտարարուեստի զարգացումին շատ կը նպաստէ ։ Թէ երկրագունտի կեղեւին(2) ուսումը մեր նիւթական բարեբաստութեան համար շատ կարեւոր է՝ այս ճշմարտու-*

(1) Ժանտամացքը (coprolithes) հանքային աղբրդուկ մըն է, որ իբր պարարտութիւն կը գործածի՝ պարունակած կրափոսփորին համար ։

(2) Անգղիայի պէս կղզիացեալ երկիրի մը համար, որուն էական պէտքն են հանքածուխն ու կարգ մը հանածուներ՝ այս ուսումն անշուշտ բացառիկ կարեւորութիւն մը ունենալու է ։ Թ.

թեան վրայ պնդելու հազիւ պէտք կըզգանք այժմ, քանի որ յայտնի է ամէնուն՝ թէ հանքն հարստութեան ինչ մեծ աղբիւր է, թէ մեր ածուխի պաշարին տեւողութիւնն ամէնակարեւոր խնդիր մը դարձած է։

Գալով կենդանաբանութեան՝ ամէնակարեւոր գիտութիւն մըն է այն՝ իբրեւ կողմնակի նպաստարար մեր անձնապահութեան։ Արդարեւ՝ քիչ առընչութիւն ունի ճարտարարուեստական արտադրութեան հետ, բայց անբաժան կցորդն է ճարտարգործութեան ամէնէն առաջինին՝ սնունդի արտադրութեան։ Որովհետեւ՝ երկրագործութիւնը պարտի իր մէթոտները կենդանական ու բուսական կեանքի երեւոյթներուն համաձայն յօրինել, ուստի այս երեւոյթներուն գիտութիւնն անշուշտ երկրագործութեան խարիսխն է։ Իրաւ է՝ որ կենդանաբանական շատ մը ճշմարտութիւններ դեռ գիտնաբար չերկնուած՝ գործնականապէս ճանչցուած ու գործադրուած են երկրագործներէ։ Երկրագործներն, օրինակի համար, լաւ գիտեն թէ այս ինչ պարարտութիւնն այն ինչ բոյսերուն աղէկ կը պատշաճի, թէ այս ինչ սերմնացանութիւններն այն ինչ սերմնացանութեանց անյարմար կընեն գետինը, թէ գէշ սնուցած ձիեր չեն կրնար աղէկ աշխատիլ, թէ արջառներու կամ ոչխարներու կարգ մը հիւանդութիւններ կարգ մը վիճակներու մէջ կը ծագին։ Երկրագործին այս ծանօթութիւնները՝ տունկերն ու անասունները տածելու՝ փորձով ամէն օր առած ծանօթութեանց հետ՝ կը կազմեն կենդանաբանական իրերու գումարն, որ իրեն սովորական են, եւ իր ձեռնարկներուն յաջողութիւնն՝ մեծ մասով կախուած է այս տեղեկութիւնը գործածելու եղանակէն։ Արդ՝ քանի որ կենդանաբանական այս անօր, անորոշ, ստուերական ծանօթութիւններն ա՛յնքան հզօր նպաստ կուտան իրեն, կրնանք մակաբերել թէ նոյն

ծանօթութիւններն ո՛րչափ աւելի օգուտ պիտի տային իրենց՝ եթէ ըլլային դիւական, լաւ սահմանուած, խորապէս ուսումնասիրուած։ Այսօրուընէ կըրնանք տեսնել այն բարիքը, զոր տրամախորհեալ կենդանաբանութիւնն երկրագործին կը մատակարարէ։ Թէ կենդանական ջերմութիւն արտադրելով գոյացական մաս մը կը կորընչի, եւ թէ՝ հետեւաբար՝ ջերմութեան կորուստին առաջքն առնելով՝ կազատինք սնունդն աւելցունելու հարկէն, այս ճշմարտութիւն, որ արդիւնք է զուտ տեսական եզրակացութեան մը, այսօր կառաջնորդէ արջառաբոյծ անասնապահներուն. փորձուած է՝ որ ախոռները քիչ մը աւելի տաք պահելով՝ խոտի ամբարը խնայագործած կըլլանք։ Ասոր նման է նաեւ սնունդներու պէսպիսութիւնը։ Բնախօսներուն փորձերն ապացուցած են՝ թէ սնունդները փոփոխելով ոչ միայն կը շահինք, այլ նաեւ սնունդներու խառնուրդին ստամոքսին մէջ մարսումն աւելի կը դիւրանայ։ Նոյնպէս կենդանաբանութեան կը պարտինք՝ խոյացնորք (tournis) ախտին ճանաչումին պատճառները. ախտ մը՝ որ ամէն տարի միլիոնաւոր ոչխարներու կորուստին առիթ կըլլար։ Այժմ գիտցուած է՝ որ այս հիւանդութեան պատճառն որկրամէջտ որդ մըն է, որ ուղեղին վրայ ճմլում մը կընէ։ Եթէ հանենք այս միջատն անասունին գանկին այն կողմէն, որուն կակղութիւնը նշան է միջատն եղած տեղին, անասունը կը բժշկի գրեթէ անվրէպ։

Ընկերաբանութիւնն ալ մարդոց ճարտարգործական բարեբաստութեան վրայ ուղղակի ներգործող գիտութիւն մըն է։ Այն մարդիկ՝ որ ամէն օր առեւտրական հրապարակին կացութեան հետամուտ կըլլան, որ ընթացիկ գիներն աչքէ կանցունեն, որ ցորենի, շաքարի, բամպակի, բուրդի ու մետաքսի հունձքին հաւանականութեան

վրայ կը խօսակցին, եւ ամէն պատահականութիւն կը կշռեն, եւ իրենց ըմբռնումներուն վրայ կը հիմնեն իրենց առեւտրական գործողութիւններն, ամէնն ալ ընկերաբանութիւն ըրած կըլլան։ Յիրաւի՝ բոլորովին գործնական կերպով ու յաճախ սխալ կընկերաբանեն, բայց վերջապէս կընկերաբանեն. եւ իրենց շահը կամ վնասն իրենց դատումի ճշդութենէն կախուած է։ Ոչ միայն վաճառականը տարազագործը պարտին իրենց պայմանագրութեանց մէջ վարուիլ խնդրանքի ու մատուցումներու յարաբերական հաշիւներով, որ հիմնուած են խել մը իրողութեանց եւ ընկերական զանազան սկզբունքի ծածուկ գիտութեան վրայ, այլ մանրավաճառն ալ պէտք է այս ամէնն հաշիւի առնէ. իր յաջողութիւնը գլխաւորապէս կախուած է՝ մեծաքանակի գիներուն եւ սպառումներու քանակին վրայ իր գուշակութեանց ճշդութենէն։ Յայտնի է՝ որ առեւտրական գործունէութեան մրրկին խառնուողը կենսական շահ մը ունի գիտնալու այն օրէնքն, որոնց համեմատ այս գործունէութիւնը կը փոփոխի։

Ուրեմն՝ շատ կարեւոր է կարգ մը գիտնական ծանօթութիւններ ունենալ ամէն անոնց, որոնց բան ու գործն է արտադրութիւն փոխանակութիւն ու վաճառքի բաշխում։ Ամէն մարդ՝ որ մօտէն կամ հեռուէն ճարտարարուեստի մը հետ յարաբերութիւն ունի (եւ շատերն այսպիսի գործերու մէջ են) հնարելով մը պէտք՝է կարեւորութիւն տայ իրերու թուաբանական բնագիտական ու տարրագիտական յատկութեանց. Թերեւս պէտք պիտի ունենայ կենդանաբանական օրէնքն, եւ անհրաժեշտ պէտք՝ ընկերաբանական ծանօթութիւնները գիտնալու։ Կողմնակի անձնապաշտպանութիւնը, կամ՝ որպէս զի այսպէս ըսենք՝ իր ապրուստը ճարելու յաջողութիւնը

կամ անյաջողութիւնը կախուած է ըստ մեծ մասին այս գիտութեանց միուն կամ շատերուն ճանաչումէն, որ թերեւս տրամախոհական ու գործնական չըլլայ, բայց դարձեալ ոչ ընդհատ ծանօթութիւն մըն է ։ Արհեստ մը կամ առուտուր մը սորվիլն՝ էապէս անոնց միուն հետ յարաբերութիւն ունեցող գիտութիւն մը սորվիլ է ։ Ուստի՝ գիտնական ուսումներ շատ եւ շատ կարեւոր են՝ իբրեւ սպասաւորող գործնական կենցաղի պատրաստութեան, վասնզի տրամախոհեալ գիտութիւնը շատ մեծ ազդեցութիւն ունի գործնական գիտութեան վրայ ։ Ոչ միայն ամէն մարդու կարեւոր է գիտնական կրթութիւնն՝ իբր արտադրողի կամ միջնորդողի՝ առձեռն վաճառքի եւ գործողութեանց ինչո՛ւն եւ ի՛նչպէսն հասկնալու համար, այլ յաճախ ամէնակարեւոր է գիտնալ ինչո՛ւն եւ ի՛նչպէսն ուրիշ իրերու եւ ուրիշգործողութիւններու ալ ։

Շահակցական ընկերութեան այս դարուն մէջ՝ թերեւս պարզ գործաւորներէն զատ՝ ամէն մարդ իբրեւ դրամատէր շահ ունի ճարտարարուեստի մը մէջ, որ թո՛ղ չըլլայ ալ բուն իսկ իրենը ։ Շատ անգամ՝ իր շահը կամ կորուստը կախուած է իր ծանօթութիւններէն ա՛յն գիտութեանց, որ յարաբերութիւն ունին այդ ճարտարարուեստին հետ ։ Ահաւասիկ, օրինակի համար, բաժնետէրեր, որ կործանած են փորել տալու համար հանք մը, որմէ բնաւ ածուխ չելներ, վասնզի չէին գիտցած՝ թէ այսպիսի հանածոյի նշանն է կարմիր աւազի զառամ կուղ մը, որմէ դուրս հողային ածուխ չգտնուիր ամենեւին ։ Շատ ջանք եղաւ կառուցանելու համար շոգեմեքենաներու տեղ ելեկտրամագնիսական մեքենաներ. եթէ այս գործողութեանց բաժնետէրերը գիտնային զօրութեանց համեմատական ու կշռական օրէնքն՝ իրենց տակը չպիտի օղն

*ձընէր*[1] ։ *Ամէն տարին կարգ մը մարդիկ ստակ կը վատնեն գործածելու համար այնպիսի գիւտեր, որոնց ունայնութիւնը պիտի կրնար ցուցընել գիտութեան նորամուտ համբակ մը ։ Ո՛րչափ հարստութիւններ կը վատնուին անգործածելի ծրագիրներ իրացունելու փորձերով ։*

*Արդ՝ եթէ այժմեան ընկերութեան մէջ գիտնական ծանօթութեանց չգոյութենէն առաջ եկած ստակի կորուստներն այսչափ շատ են, ապագային ո՛րչափ շատ պիտի ըլլան անոնց համար, որ տգիտութեամբ պիտի ձեռնարկեն այդպիսի գործերու ։ Ճարտարարուեստի մէթոտները քանի՛ գիտնական տարազ մը առնելու ըլլան, որ անպատճառ պիտի առնեն մրցութեան մտրակին տակ, եւ շահակցական ընկերութիւնները քանի՛ բազմանան, որ անպատճառ պիտի բազմանան, ամէն մարդ այնքան աւելի՛ պէտք պիտի ունենայ դրական ծանօթութեանց ։*

*Հասանք մարդու գործերուն երրորդ մասին, որուն համար կը տեսնենք թէ բան մը չենք ըրած ։ Եթէ այնպէս պատահէր՝ որ մեր քաղաքակրթութեան վրայ, մեր դասական գիրքերէն մաս մը կամ մանաւանդ մեր դպրոցներու շարագրածներէն տրցակ մը միայն ապագայ սերունդներուն հասնէր, որչա՛փ պիտի զարմանար ապագային հնագէտ մը՝ տեսնելով որ այդ թուղթերուն եւ*

---

(1) Ուժանակ-ելեկտրիկի մեքենայէ մը պահանջուած աշխատութիւնը ձեռք չբերուիր՝ բայց միայն համապատասխան ջերմութեան կամ համապատասխան մեքենական աշխատութեան՝ ելեկտրականութեան փոխարկուելովն ։ Այսպիսի ջերմութիւն կամ աշխատութիւն մը ձեռք բերելու համար՝ անպատճառ հարկ է համեմատ ծախք մը (կռակոյտ (pile) մետաղի սպառում կամ ինչեւիցէ շարժիչ զօրութեան մը գործածումը ). եւ այս ծախքը՝ սովորաբար աւելի սուղ կըլլայ քան շոգեմեքենայի մը համար պէտք եղած վառելի նիւթին ծախքը ։

գիրքերուն մէջ չի կայ նշան մը, որ ցուցընէ թէ անոնք կարդացող աշակերտներն օր մը զաւակի տէր ըլլալ սահմանուած էին ։ «Ուրեմն, պէտք ըսէր հնագէտն, այս տետրակներն ամուրիներու դասընթացք մը ըլլալու են. կերեւի որ մանուկներուն ուշադրութիւնն այն ատեն շատ մը անպէտ բաներու վրայ կը տանէին, վասնզի այս ամէնուն մէջ բնաւ նշան մը չեմ տեսներ տղայ մեծցունելու արուեստին ։ Անկարելի է որ այդ մարդիկ այնչափ անմիտ եղած ըլլային՝ որ իրենց պատրաստութեան յօրինուածին մէջ ամէնէն կարեւոր բանին ուշադիր չեն եղեր ։ Ուստի, յայտնի կերեւի՝ որ այս գրուածներն իրենց վանական կարգին միուն դասընթացքն են ։»

Եւ յիրաւի անհասկընալի բան մըն է՝ որ մեր զաւակներուն կեանքն ու մահն, անոնց բարոյական կորուստը կամ օգուտը մեր տուած կրթութեան եղանակէն կախուած ըլլալով հանդերձ՝ մեր դպրոցներուն մէջ այս նիւթերուն վրայ ամենեւին դաս մը չտրուիր աշակերտներուն, որ քիչ ատենէն ընտանիքի հայր կամ մայր պիտի ըլլան ։ Այլանդակ անկանոնութիւն մը չէ՞ թողուլ այսպէս՝ որ նոր սերունդի մը բաղդն անմտած սովորութեանց, խենդ ու խելառ քմահաճոյքի, տգէտ դայեակներու խելքին եւ մամիկներու նախապաշարումներուն խաղալիկ կըլլայ ։ Եթէ մէկն՝ առանց գիտնալու քիչ մը թուաբանութիւն ու տոմարակալութիւն՝ վաճառականութեան սկսեր՝ յիմա՛ր է պիտի ըսէինք, եւ ցաւալի վերջ մը ունենալը պիտի գուշակէինք ։ Դարձեալ եթէ մէկն՝ առանց անդամազննութեան՝ վիրաբոյժի վիրատը (bistouri) ձեռք առներ՝ իր այս յաւակնութեան համար իրար չպիտի՞ անցնէինք, եւ իր հիւանդները չպիտի՞ մեղքընայինք ։ Բայց անդին որչա՜փ ծնողք զաւակ մեծցունելու դժուար գործին ձեռք կը զար-

*նեն , առանց միտքէ անցունելու՝ թէ ինչ են բարոյական նիւթական ու իմացական կրթութեան տարրերն , որ պէտք է առաջնորդ ըլլան իրենց . եւ ասոր համար բնաւ չենք զարմանար ո՛չ հայրերուն վրայ , եւ ոչ ալ կը գըթանք իրենց զոհ գացող մանուկներուն վրայ :*

*Այս ընթացքով մեռած հազարաւոր արարածներուն վրայ՝ եթէ աւելցունենք այն բիւրաւորներն ալ , որ կատարին վատթարած առողջութիւն մը քաշքշելով , այն միլիոնաւորներն՝ որ կը մեծնան վատ կազմութեամբ մը , որուն պատճառ եղած են այսպիսի անհոգութիւններ՝ պիտի կրնանք գաղափար մը ունենալ կեանքի օրէնքը չըգիտցող ծնողներուն ձեռքով գործուած չարիքին վրայ : Եթէ գիտնաք՝ թէ մանուկներու վրայ դրուած կանոնն իրենց բովանդակ ապագային վրայ աղէկ կամ գէշ ազդեցութիւն մը կունենայ միշտ , եւ թէ այս մասին հարիւրին հազիւ հինգ չսխալելու եղանակ կայ , այն ատեն պիտի հասկընաք որ բաղդովլի եւ անխորհուրդ դաստիարակութեան մը երեսէն աշխարհի վրայ ո՛րչափ մեծ չարիք կըլլան : Մանուկին կը հագուեցունեն կարճ նուրբ ու թեթեւ բաճկոն մը , եւ փողոց կը ձգեն զայն խաղալու՝ բաց օդին տակ (1) ուր ցուրտէն անոր մարմինը կասկարմիր կըլլայ . եւ այսպէս պատճառ կըլլան անոր բովանդակ կեանքին մէջ հիւանդկախ ու անզօր մնալուն : Եթէ այսպէս ալ չըլլայ՝ գէթ արբունքին ատեն՝ բնականէն նուազ կորովի պիտի ըլլայ , որով չպիտի կրնայ յաջողիլ ու երջանիկ*

---

(1) Հեղինակին այս դիտողութիւնը , բարեխառն կլիմաներու համար չունի այնչափ կարեւորութիւն , որչափ Անգղիայի ցրտին ու նամէտ կլիմային համար . մեր կլիմաներուն մէջ՝ սովորական ցուրտերու վարժուիլն աւելի կարեւոր ու առողջարար է քան ջեռուցիչ հանդերձներով մարմինը մեղկացունելն : Թ.

ըլլայ ։ Եթէ մանուկներն միօրինակ եւ նուազ սնուցիչ կանոնի մը ենթարկլին , ասոր արգասիքը մինչեւ իրենց վախճանին օրը պիտի քաշեն , եւ իրենց այրական կամ կնական գործունէութիւնը նուազ պիտի ըլլայ ։ Եթէ խափանենք անոնց աղմկալից խաղերն , եւ իրենց բարակ հագուստին համար չթողունք որ ցուրտին դուրս ելնեն , անշուշտ ոյժի եւ առողջութեան կողմէն բնուստ տրամադրուած աստիճանէն շատ ետ պիտի մնան ։ Ծնողներն ընդհանրապէս սովոր են դժբաղդութիւն եւ նախախնամութենէ եկած փորձութիւններ անուանել՝ իրենց զաւկըներուն վատուժութիւնն ու հիւանդկախութիւնը ։ Խառնափնդոր խելքովնին կը կարծեն՝ թէ ամէն ինչ որ կըլլայ աշխարհի վրայ՝ առանց պատճառի կամ գերբնական պատճառներով կըլլայ ։ Բայց այնպէս չէ . արդարեւ կը պատահի երբեմն՝ որ այս կարգի պատճառները ծնողներէն ժառանգաբար որդիներուն կանցնին, բայց շատ անգամ ալ անոնք՝ մանուկներուն հետ արտառոց կերպով վարուելուն հետեւանքն են ։ Խել մը ցաւերու , վատուժութեանց , սիրտի բաբախումներու եւ աղէտներու պատճառն ընդհանրապէս ծնողք են ։ Անոնց պարտքն է ամէն ժամ՝ իրենց զաւակներուն կեանքին վերաբերեալ բաները կարգով կատարել . սակայն անոնք՝ անհոգութեամբ ու թեթեւամտութեամբ միտ չեն դներ կենդանական աճումի օրէնքին , որոնց խափան կըլլան միշտ իրենց հրամանովն ու արգելքովը ։ Բնախօսական նախնական օրէնքին վրայ իրենց յետին տգիտութեամբն՝ օր օրի կը մաշեցունեն իրենց զաւակներուն մարմինն , որով նաեւ առաջուընէ կը պատրաստեն ոչ միայն իրենց մանուկներուն՝ այլ եւ անոնց սերունդներուն հիւանդութիւնն ու կանխահաս մահը ։

Տգիտութեան աղիտաբեր հետեւանքը՝ բարոյական ու

*նիւթական դաստիարակութեան մէջ հաւասարապէս մեծ են ։ Տես սա նորհարս մայրն՝ որ դաստիարակելու սկզբնական դժուարութեանց առջեւ կը գտնուի ․ դեռ քանի մը տարի առաջ՝ դպրոցական գրասեղաններու վրայ աղջիկ մըն էր , եւ հոն իր յիշողութիւնը կը խճողէին բառերով անուններով թուականներով , եւ ոչ մէկ կերպով կը վարժեցունէին անոր խորհրդածելու կարողութիւնը ։ Հոն՝ գէթ տղայական խելացութեամբ մը՝ խորհրդածելու գոյզն պատուէրն անգամ չէին տուած անոր , եւ անոր դասերուն մէջ ոչ մէկ բան ընդունակ ըրած էր զայն ինքնաբերաբար խելք ընելու այն մէթոտներն , որոնք օր մը պիտի գործածէր ։ Միւս տարիներն՝ երաժշտական ուսումներու , ասղնագործութեան , վէպ կարդալու եւ զուարճութեանց յատկացած էին* (1) ։ *Երբէք*

---

(1) Մեր՝ մանաւանդ բարգաւաճ ըսուած դասին մէջ՝ աղջիկներու տրուած կրթութեանց առարկաներն այս կարգի բաներ են . տեղ տեղ ալ այնպիսի՛ նրբանազ պատրաստութիւններ կըլլան , որ անվրէպ կը տանին մեր մայրցուները սնամոլ նանրամտութեան մը՝ առիթ իրենց այրերուն ու զաւակներուն ամէնատխուր թշուառութեանց ։ Այս դասէն կիրթ ըսուած նր ա՛ղջիկը չգիտէ այսօր դաշնակ զարնել , ամէն տեսակ պար , բանաստեղծութիւն , անթիւ վէպերու անուններ , եւ չծաղրեր ասոնք չգիտցող բայց առտնին կրթութեան ամէնավարժ աղջիկ մը ։ Որ օրի շատնալու վրայ են մեր մէջ այնպիսի՛ վէպերու թարգմանութիւններ , ուր գլխաւոր դիւցազներն են՝ տռփանք , վրէժ , խարդաւանութիւն , եւայլն եւայլն ։ Թարգմանիչները ժողովուրդին ճաշակին կը հետեւին , կըսեն , ժողովուրդն ալ թարգմանիչներուն ճաշակին կամայ ակամայ կը հետեւի , եւ այս յոռի շրջանն իրապէս շրջան մը կառնէ նահապետական կենցաղի վարժ կոյս ժողովուրդի մը մէջ՝ պատճառելով անշուշտ սնանկութիւններ , հիւանդութիւններ , արտառոց բնաւորութիւններ , անսիրելութիւն ու մահ՝ կեղծ քաղաքակրթութեան մը՝ մանաւանդ անգութ չարաշահութեան մը սիրուն համար ։ Վէպերու թարգմանիչներն՝ յիրաւի կարեւոր ծառայութիւն մը կը մատուցանէին ժողովուրդին՝ եթէ ցարդ հրատարակուած վէպերուն

անոր ուշադրութիւնն հրաւիրած չէին թէ կատարուելիք ինչ մեծ պարտականութիւններ կան ապագայ մայրերուն համար ։ Չէին տուած անոր՝ իմացական այն հաստատ կրթութիւնն իսկ, որ պիտի կրնար պատրաստել զայն այդ պարտականութեանց ըմբռնումին ։ Եւ հիմա՝ ինչպէս պիտի պատրաստէ նա իր զաւակին բնաւորութիւնը . խեղճն ամենեւին չգիտէ առաջիկայ երեւոյթներն, եւ այդ տգիտութեամբն իսկ ստիպուած է կատարել այնպիսի գործեր, որ բարձրագոյն գիտութեամբ մը անգամ անհնար է անթերի կերպով կատարել ։ Բան մը չգիտէ մանուկին արտայուզութեանց այլ եւ այլ կարողութեանց ու անոնց պաշտօնին վրայ ։ Իր ամէնասխալ համոզումն է՝ թէ բացարձակապէս գէշ ու բացարձակապէս աղէկ զգացումներ կան, ինչ չափով ալ որ զգացուին ։ Չգիտնալով իր ձեռքին տակ եղած արարածին յատկութիւնն՝ այս կամ այն կերպ դիեցումին այդ արարածին վրայ ընելիք ազդեցութիւնն ալ չգիտէ, եւ ասիկէ ո՛րչափ չարիք յառաջ կուգան ամէն օր մեր աչքին առջեւ ։ Ի հարկէ չգիտնալովնա միտքի երեւոյթներն անոնց պատճառներն ու արդիւնքն՝ իր միջամտութիւնն աւելի վնասակար կըլլայ մանուկին քան եթէ բնաւ ձեռք չդնելը անոր վրայ. ամէն վայրկեան կը հակառակի մանուկին այս ինչ կամ այն ինչ գործունեայ շարժումներուն, որ բնական ու օգտակար են, եւ ասով կը վնասէ անոր երջանկութեանն ու ապագային՝ ապականելով անոր բնաւորութիւնն ինչպէս իրն ապականած է,

---

երեսէն՝ խել մը տուներու մէջ անցած եղերական եղելութեանց բուն վէպն յօրինելով՝ հրատարակէին ։ Այնչափ յաճախած է մեր մէջ փիպամոլութիւնն ու ցուցադրական կրթութիւնն, եւ այնչափ հացի կարգ անցած՝ որ եթէ հեղինակիս նման լուրջ ու ամէնակիրթ իմաստասէր մը մեզի առիթ չըլլար՝ չպիտի համարձակէինք անգամ այս դիտողութիւնն ընել ։ Թ.

եւ սարսուցանելով անոր համակրութիւնը։ Ինք մայրը թեւլադիր կըլլայ մանուկին՝ իրեն օգտակար երեւցած բաները ընելու, մերթ վախցունելով զայն մերթ շահ մը ցուցընելով ու մերթ հպարտութիւն ներշնչելով անոր՝ փոյթ չըներ թէ ասոնք ի՛նչ դէշ շարժառիթներ են. Ներիք է որ գործին առաջքին կերպարանն իր ուզածին պէս ըլլայ, զայն բարի ընելու տեղ՝ երկչոտ եւ ինքնասէր կընէ։ Սուտ չխօսիլ կը պատուիրէ անոր, բայց ինքը կեղծ սպառնալիքով ստախօսութեան օրինակ կըլլայ. չը սրդողիլ կը պատուիրէ, եւ խօլ բերումներով միշտ կը չեխէ տղան՝ չնչին բաներու համար։ Միտքէն անգամ չանցուներ՝ որ մանուկին ընտանիքին մէջ՝ ինչպէս եւ աշխարհի մէջ՝ փրկարար միակ վարժութիւնն է գործերու աղէկ կամ գէշ անուշ կամ դառն հետեւանքին խելամտութիւնը։ Երիտասարդուհի մայրն, որ տեսական ծանօթութիւն մը անգամ չունի, եւ մանուկին միտքէն անցածներուն վրայ իմաստուն դիտողութիւններ ընելու անկարող է՝ չկրնար խորհրդածութեամբ առաջնորդել անոր, եւ յանկարծական բերումներով կը շարժի։ Այսպէս՝ իր թիւր կառավարութիւնը գրեթէ միշտ ցաւալի հետեւանք կ'ունենայ, եթէ սովորաբար զաւակին թարմ միտքին աննկուն միտումն, որ իր բնական դրոշմն առնելու կը դրդէ զայն, յաղթական չըմբոստանայ այս երկրորդական ճնշումներուն դէմ։

Եւ մեր օրերն իսկ՝ իմացական դաստիարակութիւնն այս եղանակով չէ՞ որ կըլլայ։ Եթէ համոզուած էք որ միտքն իր մասնաւոր օրէնքն ունի (1), որոնց համընթաց կը յառաջանէ մանուկին իմացականութիւնը, պէտք է

(1) *Միտքն իր մասնաւոր օրէնքն ունի։* Հոս՝ յարգելով հանդերձ հեղինակին իբրեւ ներհուն հոգեբան իմաստասէր մը՝ ընթերցողին դիտել կուտանք մեր ազատ խորհրդածութեանց արդիւնքն ալ՝ թէ արդարեւ

*վստահ ըլլանք որ առանց այս օրէնքին գիտութեան՝ դաստիարակութիւնը չկրնար ուղիղ երթալ։ Անհեթեթ սխալ մըն է կարծել՝ որ գաղափարներու կազմութիւնն ու հաւաքումը կրնանք կանոնաւորել՝ առանց գիտնալու թէ անոնք ի՞նչպէս կը կազմին։ Արդ՝ քանի որ գրեթէ բնաւ չի կան ա՛յնպիսի ծնողք եւ շատ քիչ են ա՛յնպիսի վարժապետներ, որ գոնէ քիչ մը հոգեբանութիւն գիտնային՝ դաստիարակութեան արդի եղանակը շա՛տ անկատար է, եւ ընդունուած դրութիւնը շա՛տ յոռի է՝ թէ՛ հիմին թէ՛ ձեւին կողմէն։ Մանուկին չեն խօսիր ամէնակարեւոր բաներուն վրայ, եւ խստիւ կը պատուիրեն անոր վնասակար բաներ վնասակարագոյն եղանակով։ Ծնողք կարճ*

---

միտքն ունի իր յատուկ օրէնքն, որոնց երեւոյթները սակայն միշտ կրաւորաբար կը կերպանան, եւ որոնք թերեւս մինչեւ 'ի վախճան թաքուն պիտի մնան. — 1. *Կրաւորաբար կը կերպանան՝* քանի որ մարդու բոլոր գործունէութեանց առաջին պատճառներն են հարկն ու կամքը՝ մին դուրսէն միւսը ներսէն. ինչպէս դուրսինն՝ հարկն՝ անկախ ու անխափանելի է գրեթէ, նոյնպէս ներսինն ալ՝ կամքն՝ իր շարժումներովն անկախ ու տարբեր է միտքի օրէնքէն։ կրնանք ըսել անգամ՝ թէ կամքը մարդու անձն իսկ է եթէ ոչ սկզբունքը. երբ մէկուն **մտածէ՛**, *խորհէ՛*, *կարդա՛*, կըսենք, չէ մի որ անոր միտքի ընթացքին տարբեր ուղղութիւն մը տուած կըլլանք։ Մէկը՝ մինչեւ որ չուզէ նայիլ ծառի մը գիրքի մը վրայ՝ չկրնար նայիլ անոնց՝ զէթ գաղափար մը առնելու արդիւնքով, որով եւ անհնար է իրեն առանց կամելու ծառի գաղափարը գիրքի պարունակած գաղափարն առնել, թէպէտեւ միտքի օրէնքը թելադրէ անոր, կամքն ու հարկն են որ զինք անկողին կը տանին, ուր միտքիս օրէնքն ուրիշ կերպով կը գործէ քան եթէ պարտէզ մը տարած ըլլային. կամքն է՝ որ եթէ տխուր գաղափար մը վանել պէտք ըլլայ՝ ձեռքդ լրագիր մը առնել կուտայ, որով ուրիշ կերպ կը մտածես քան եթէ լրագիրն առած չըլլայիր, ուրիշ խնդիր է՝ եթէ հիւանդութիւն մը այնչափ զօրացած ըլլայ՝ որ գրեթէ ոչնչացունելով կամքի զօրութիւնը՝ միտքն ինքնին իր իսկական (intrinsèque) օրէնքովն ընթանայ, այսինքն՝ ըստ հին ասութեան՝ *յուպէս յուկամ*։ — 2. *Մին–*

*խելքով կարծելով՝ թէ կարելի է գիրքի մէջէ միայն առնել պէտք եղած կրթութիւնը՝ շատ կանուխէն կուտան մանուկներուն ձեռքը քերականներ։ Չգիտնալով սա ճըշմարտութիւնը՝ թէ գիրքն երկրորդական գործիք մըն է, որ ուղղակի միջոցները չեղած ատեն միայն կրնայ իբր անուղղակի միջոց ծառայել, այսինքն մե՛ր իսկ աչքով դիտելն անկարելի եղած բաներն՝ հեղինակներու աչքովը դիտելու գործիք մըն է, մեր կրթիչները մոլութիւն մը ըրած են իրողութիւնները մեզի երկրորդ ձեռքէ տալու՝ փոխանակ առաջին ձեռքէ տալու։ Եւ այսպէս՝ յամառութեամբ մանուկին աչքն ու միտքը կըզբաղեցունեն կարգ մը գաղափարներով ու իրերով, որ մանկական հասակին*

---

*չեւ 'ի վախճան թափուն պիտի մնան՝* վասն զի կրնանք ըսել՝ որ մեր միտքին մէջ չունինք թերեւս այնպիսի զատուցեալ կարողութիւն մը՝ որ եւ միտք եւ միտքը քննող միտք մը՝ հետազօտէ գտնէ ու տարրալուծէ իմացական բոլոր երեւոյթներն ու անոնց շարժառիթները, որ անհուն իմն են եւ թերեւս իմանալի ամէնանուրբ կցորդութեամբ մը կապուած են տիեզերական մեծ զօրութեան հետ. Եթէ ունենայինք անգամ այնպիսի զատուցեալ կարողութիւն մը՝ անհնար պիտի ըլլար մեզի օգուտ քաղել անկէ, քանի որ անկարելի է ամէն վայրկեան անզբաղապէս դիտել իր ուրոյն միտքին շարժումներն ու գիրի առնել անոնք՝ դասաւորելու համար։

Անդրադառնալով միտքի երեւոյթներուն կրաւորաբար գործելուն՝ կըսենք թէ թերեւս երազի մէջ միայն անոնք կրնան ազատ գործել՝ առանց ներգործութեան կամքի, եւ երազն՝ իբրեւ ցուցադրութիւն միտքի ազատ շարժումներուն՝ գրեթէ միշտ անկցորդ մաս մը ունի իր մէջ, որով ամէն ատեն անմեկնելի մնացած է։ Սբէնսր՝ հոս եւ ուրիշ մէկ քանի տեղեր այնպիսի խնդիրներ կը յուզէ եւ վճիռ կարձակէ անոնց վրայ՝ իբր թէ լուծուած ըլլային, որոնք հոգեբաններն ամէն ժամանակ զուր աշխատած են լուծել, վասն զի անկարելիին ձեռնարկած են. կարծած են՝ թէ հնար է հոգիի երեւոյթներն համանգամայն գիտնաբար ըմբռնել, մարմինէն անջատ հոգի մը եւ զինքն իսկ հոգին քննող հոգի մը սարասել փորձած են. իմաստասիրական նորութեան աւարտակէտն է այս։ Թ.

անհասկընալի ու տաղտուցիչ են. վասն զի՝ ճիշդն ըսելով՝ այդ կրթիչները չգիտեն ամէնամեծ արժէքն այն բնական կրթութեան, որ մեր կեանքին առաջին տարիները կուտանք մենք մեզի. չգիտեն նաեւ որ փոխանակ անտեսելու կամ դժուարացնելու մանուկին անդուլ դիտողութիւնները՝ պէտք է արթնաբար նպաստենք անոնց, եւ հնար եղածին չափ աշխատինք անոնց ճիշդ ու կատարեալ ըլլալուն։ Այդ կրթիչներն՝ ենթակայ ըլլալով այն թիւր ըմբռնումին, որով կը պաշտեն գիտութեան խորհրդանշանները փոխանակ նոյն ինքն գիտութեան, չեն գիտեր որ երբ տունին փողոցին պարտէզին մէջ՝ եղած տարկաներն սպառին՝ այն ատեն միայն պէտք է բանալ գիրքն, եւ մանուկին ուսումին համար նորանոր աղբիւներ ցուցընել հոն իրեն. եւ այս՝ ոչ միայն անոր համար որ անմիջնորդական ծանօթութիւնը միջնորդականէն աւելի լաւ է, այլ նաեւ անոր համար որ գիրքի մէջ գտնուած բառերն՝ իրերու վրայ ստացուած ծանօթութեանց չափով կրնան տալ գաղափարներ։ Դիտելի է դարձեալ՝ որ շատ կանուխ կըսկսին այս ձեւական կրթութիւնն, եւ կը սկսին՝ առանց միտ դնելու մարդկային իմացականութեան զարգացումի օրէնքին։ Միտքն՝ անվրէպ միշտ թանձրացեալէն կըսկսի եւ կը յանգի վերացեալին. սակայն քերականութեան նման վերացեալ ուսումներ, որ շատ ետքը պէտք էր սկսէին, ամէնէն առաջ կըսկսին. քաղաքական աշխարհագրութիւնն, որ մանուկին համար անհոգի ու անպէտ բան մըն է, եւ ընկերաբանութեան իբր յաւելուած պէտք էր դասաւորուէր, շատ կանուխէն կըսկսին, եւ աւելին զանց կընեն բնական աշխարհագրութիւնն, որ դիւրիմաց ու համեմատաբար զուարճալի ուսում մըն է։ Գրեթէ ամէն ուսում անկանոն կերպով կըսկսին կանուխէն. սահման-

նեք, կանոններ, սկզբունք կառաջարկին՝ մինչ պէտք էր քիչ քիչ բանալ անոնք մանուկներու միտքին՝ այնպէս ինչպէս որ մասնաւոր պարագաները դիտելով կըլլան: Զմոռնանք ըսել՝ որ դեռ չարունակելու վրայ ենք շատ բան ալ մանուկներուն բերանացի սորվեցունելու յառի դրութիւնն, որով ոգին գիրին կը զոհենք: Վերջապէս մանուկներու ըմբռնումը կը բթացունենք՝ վասն զի կաշխատինք հակառակիլ բնութեան եւ ստիպել՝ որ անոնց ուշադրութիւնը գիրքի վրայ սեւեռի. անոնց միտքը կը շփոթենք՝ ջանալով մտցունել հոն այնպիսի՛ բաներ, որոնք չկըրնար՝ ըմբռնել, եւ ցուցընելով անոնց հանրական կանոններ՝ իրողութիւնները ցուցընելէ առաջ: Աշակերտին միտքն ուրիշներու գաղափարներուն պահարան մը կընենք, մինչդեռ պէտք էր իրողութեանց ու գաղափարներու ժիր խուզարկող մը ընէինք զայն: Անոնց ուղեղը չափազանց բեռնաւորելով՝ պատճառ կըլլանք որ շատ քիչ իմացականութիւններ կըրնան արտադրել իրենց կըրցածը: Երբ քննութիւններն անցնին՝ գիրքը մէկդի կը դնեն. տրուած տեղեկութիւններն՝ որովհետեւ կանոնաւորապէս ագուցուած չեն՝ շուտ կը ցնդին, եւ եթէ անոնցմէ քիչ մը բան ալ մնայ՝ գրեթէ միշտ անգործ վիճակի մէջ կը կենայ՝ անոր համար որ իր ծանօթութիւնները կիրարկելու արհեստը մշակած չենք. — ճշգաբար դիտելու եւ իւրովի խորհելու կարողութիւնը զօրացուցած չենք: Ասոնցմէ զատ՝ ուսած բաներուն մեծ մասն համեմատաբար նուազ արժէք ունին, եւ ընդհակառակն՝ ամէնակարեւոր ծանօթութիւններ բոլորովին ետ թողուած են:

Ուրեմն՝ ինչպէս **սկիզբէն** (à priori) կարելի եղածին չափ ծանուցած եղանք՝ մանկութեան նիւթական բարոյական ու իմացական դաստիարակութիւնն առաջին կերպով թերի է, եւ ասոր մեծ պատճառն այն է որ ծնողք

չունին այն գիտութիւնն, որ միայն պիտի կրնար լուսաւորել իրենք այս գործին մէջ։ Այսպիսի բազմակողմանի խնդիրի մը լուծումը պահանջել այնպիսի՝ անձերէ, որոնց միտքէն անցած անգամ չէ այդ լուծումին անհրաժեշտ կարեւոր եղող սկզբունքն, յիրաւի անմտութիւն է։ Երկար վարժութիւն պէտք է՝ կօշիկ մը շինելու, տուն մը կառուցանելու, նաւ մը ընթացունելու եւ հրաշարժ (locomotive) մը վարելու համար։ Մի՛ կարծէք՝ որ մարդ արարածին մարմնական ու իմացական կրթութիւնն ասոնց համեմատութեամբ շատ դիւրին բան մըն է. անվարժ մէկն՝ ո՛վ որ ալ ըլլայ՝ չկրնար կատարել զայն։ Ուրեմն՝ անխելքութիւն է չպատրաստել մարդն այս գործին կատարումին, քանի որ կընդունինք թէ դաստիարակութեան այս խնդիրը՝ բնութեան մէջ եղած խնդիրներուն ամէնէն բազմադէմն է, եւ ամբաւապէս դժուար է զայն յարդարել։ Աւելի լաւ է ետ թողուլ տաղանդի(1) գործերը, քան թէ այս ամէնակարեւոր նախապատրաստութիւնները զանց ընել։

Ընենք թէ հայր մը՝ հետեւելով առանց խորհրդածութեան ընդունուած սխալ սկզբունքին՝ վերջապէս պաղած է իր որդեսիրութենէն, եւ իր չափազանց խստութեամբը պատճառ եղած է իր զաւակներուն հեստութեան, անոնց բարոյական անկումին, եւ այսպէս՝ իր ձեռքով ինքզինքը դժբաղդ ըրած է. այդպիսի հայր մը հարկաւ կը կարծէ՝ թէ բարոյագիտութիւնն Եւքլիդէսի արկածէն աւելի ար-

---

(1) *Տաղանդի գործեր*՝ պէտք է իմանալ բանաստեղծութիւն, երաժշտութիւն, նուրբ ասղնեգործութիւններ, վերջապէս ամէն ուսումներ, որ բնական ու անհրաժեշտ պէտք մը չեն մարդու կենցաղին համար, այլ մասնաւոր յօժարութեան զբաղումներ՝ վայելչութեան, անցուկ սովորոյթներու, թերեւս նաեւ ցուցասիրութեան պահանջած լայն սահմանին մէջ։ Թ.

ժէք ունի ։ Աղջին մայր մը կողբայ իր անդրանիկ զաւակն, զոր կարմիր տենդն յափշտակած է իր գիրկէն ։ Երբ անկեղծ բժիշկը վերջապէս կուգայ յայտնել իրեն որ նա պիտի առողջանար՝ եթէ ուսումնասիրութեան զեղծումով անոր կազմութիւնն առաջուընէ վատթարած չըլլար , անշուշտ մայրն ինքն ալ կը կռահէ այնպէս ըլլալն , եւ անոր այն ատեն՝ թէ՛ սիրտի մորմոքի թէ՛ խղճմտանքի բեռին տակ ընկճուած՝ ի՞նչ անզօր սփոփանք մը կըլլայ իրեն համար Տանդէի քերթուածն իր բնագիրին մէջ կարդալը ։

Այսպէս՝ մարդկային գործերուն երրորդ մասը կարգի դնելու համար՝ շատ կարեւոր են կեանքի օրէնքին կարգ մը ծանօթութիւնները . անհրաժեշտ պէտք է գիտնալ բնախօսական նախնական սկզբունքն եւ հոգեբանութեան տարրական ճշմարտութիւններն , եթէ կուզենք արժանապէս կրթել մեր զաւակները ։ Աղէկ գիտենք՝ որ կարգ մը մարդիկ պիտի խնդան մեր այս առաջարկութեան վրայ , եւ պիտի ըսեն թէ ի՛նչ արտառոց բան է պահանջել՝ որ պարապին այսպիսի դժուարըմբռնելի ուսումի . եւ յիրաւի՝ արտառոց բան մը պիտի ըլլար մեր պահանջն՝ եթէ ըսէինք որ ամէն հայր ու մայր պէտք է խորին ծանօթութիւններ ունենան այսպիսի նիւթերու վրայ ։ Մենք այդչափ յառաջ չենք երթար , այլ կըսենք՝ թէ հանրական սկզբունքն ու անոնց ըմբռնումը դիւրացընող մէկ քանի օրինակներ կը բաւեն , եւ այս՝ դժուար բան չէ ։ Պէտք է աղէկ գիտնալ սա անուրանալի ճշմարտութիւնները՝ թէ մանուկներու նիւթական ու իմացական զարգացումն օրէնքի տակ է . թէ՝ երբ ծնողք այս օրէնքին չհամակերպին՝ անպատճառ մահ կը պատահի . թէ՝ երբ միայն մինչեւ սահման մը համակերպին անոնց՝ մարմնական ու բարոյական մեծ պակասութեանց պատճառ կըլլան , եւ երբ կատարելապէս համակերպին՝ այն ատեն

միայն մանուկներն անթերի չափահասութեան կը ժամանեն։ Մտածեցէք արդ՝ թէ ամէն անոնք որ հայր կամ մայր ըլլալու սահմանուած են՝ ո՛րչափ փութով պէտք է ջանան սորվիլ այս օրէնքը։

Բնական օրէնքն՝ իրենց ամէնապարզ բացատրութեանը մէջ ամփոփելով հետեւութիւնն են ա՛յն օրէնքին, որ կը նախագահեն հաւասարապէս մարմնի եւ միտքի կենսական շարժումներուն։ Հետեւաբար՝ կենդանաբանութիւնն ու հոգեբանութիւնն՝ կենցաղաբանութեան անհրաժեշտ մեկնիչներն են։ Այս եզրակացութեան ա՛լ աւելի պարզ ձեւ մը տալու համար՝ կըսենք. — կենցաղական ամէն երեւոյթներ՝ կեանքի երեւոյթներ եւ կեանքի բազմամասն արտայայտութիւններ են (1), հարկ է որ անոնք համակերպած ըլլան կեանքի օրէնքին, որոնք գիտցո՛ղները միայն կրնան հասկընալ այդ երեւոյթները։ Ուստի, մարդու գործերուն չորրորդ բաժանումին մէջ եղած ամէն բանի ընթացքը՝ գիտութեան կապուած է։ Մեր դասընթացքի առեն ուսանելի բոլոր նիւթերուն մէջ՝ շատ քիչ բան կայ որ կարենայ ուղեցոյց ըլլալ մարդու քաղաքացիական կենցաղին։ Սովորական դաստիարակութիւն առնող մէկը՝ զուրկ է գործարանաւորներու գիտութեանց հանրական կանոններէն, առանց որոնց նկարագրական ընկերաբանութիւնն անգամ շատ քիչ նպաստ պիտի տայ իրեն։

Հասանք մարդու գործերուն վերջին մասին, զոր կը բաղկացունեն մեր պարապ ժամերուն զբօսանքն ու զուարճութիւնները։ Մեր անձնապահութեան հսկելու,

(1) Ըստ թարգմանիչին՝ հոգեբանական նուրբ ճշմարտութեանց թերեւս աւելի մօտ եւ աւելի ճիշդ կըլլար ըսել «մաս մը հանրական հարկի եւ մաս մը անհատական կամքի երեւոյթներ են» Տես ծանօթ. 48 էջին։
Թ.

մեր ապրուստը ճարելու, մեր հայրական պարտքը կատարելու, մեր հանրական ու քաղաքակրթական կենցաղն առաջնորդելու ամէնէն յարմար դաստիարակութեան ո՛րն ըլլալը քննելէ ետեւ, քննենք հիմա՝ թէ ո՛րն է այն կրթութիւնն, որ ամէնէն աւելի ճիշդ կը յարմարի ասոնցմէ դուրս մնացած այլ եւ այլ առարկաներուն, այսինքն՝ գրական եւ արուեստական մեր ամէն տեսակ բերկրութեանց ու բնութեան տեսարաններէն յառաջ եկած վայելումներուն։ Մեծ սխալ մը կըլլայ կարծել՝ որ մենք այս երկրորդական առարկաները բանի տեղ դրած չենք, նկատելով որ անոնք յետադաս ըրած ենք ա՛յն բաներէն՝ որ մարդու զարգացումին աւելի կենսապէս կը նպաստեն, նկատելով նաեւ՝ որ իրերն իրենց գործնական արժէքին չափով կը չափենք։ Գեղագիտական կրթութեան եւ անկէ յառաջ եկած ամէն բանի անխտիր յարգ կուտանք. կեանքը՝ կիսով չափ նուազ քաղցրութիւն պիտի ունենար՝ եթէ չըլլային նկարչութիւնը, քանդակագործութիւնն, երաժըշտութիւնը, բանաստեղծութիւնն ու բնական գեղեցկութիւններէ բղխած սրտայուզութիւնները։ Քա՛ւ լիցի, ճաշակի կրթութիւնն եւ անկէ յառաջ եկած վայելքն անպէտ չենք համարիր. կը հաւատանք որ այս վայելքն՝ ապագային աւելի մեծ տեղ մը պիտի բռնեն մարդկային կենցաղին մէջ։ Երբ անգամ մը բնութեան ոյժերը լաւագոյն կերպով մեզի սպասաւորեն, երբ կատարելագործին արտադրելու միջոցներն, երբ աշխատութիւնը վերջին ծայր խնայութեամբ տնտեսի, երբ դաստիարակութիւնն այնպէս կանոնաւոր վիճակ մը առնէ՝ որ մարդկային ամէնակարեւոր գործերուն նախապատրաստութիւնն համեմատաբար աւելի արագ եղանակով ձեռք բերուի, եւ երբ՝ իբրեւ այս ամէնուն հետեւութիւն՝ մարդ աւելի ժամանակ ունենայ, այն ատեն արուեստական ու բնական ինչ

գեղեցութիւն որ կայ՝ ամէն միտքի մէջ իրաւապէս մեծ տեղ մը պիտի բռնէ։

Բայց այս՝ ըսել չէ որ մարդն երջանկութեան տանելու դաստիարակութեան մէջ՝ գեղագիտական կրթութիւնը մեծ կշիռ ունի, կամ թէ մարդու երջանկութեան էական ու ամէնակարեւոր մասն է այն։ Որչափ կարեւոր ալ ըլլայ՝ պէտք է յետադաս ընել զայն ա՛յն կարգի կրթութիւններէն, որ կեանքի հանապազորդ պարտականութեանց հետ ուղղակի առընչութիւն ունին։ Ինչպէս որ առաջ ըսինք, գրականութիւնն ու գեղարուեստները հա՛ն միայն կրնան մուտ գտնել՝ ուր քաղաքակիրթ գործունէութեամբ հանրական կենցաղ ու հարստութիւն կայ արդէն։ Ծաղկադարմանը տունկ մը կը մշակէ՝ անշուշտ տալիք ծաղիկին համար, եւ տունկին տերեւներուն ու արմատին խնամ կը տանի՝ մանաւանդ անոր համար որ անոնք ծաղիկին արտադրութեան էական գործիքն են. բայց դարմանողն՝ համարելով հանդերձ թէ ծաղիկը տունկին վրայ գտնուած միւս ամէն բաներէն ազնուագոյնն է՝ գիտէ որ անկէ աւելի կարեւորութիւն ունին տերեւներն ու արմատներն ինքնին՝ իբրեւ պատճառներ ծաղիկին բովանդակ յառաջատուութեան։ Հոգիով մարմինով կաշխատի նա տունկին ջովութեան համար, եւ աղէկ գիտէ՝ որ զայն անխնամելն յիմարութիւն է՝ քանի որ ծաղիկ պիտի տայ իրեն։ Առաջիկայ խնդիրն ալ ասոր պէս է. ճարտարապետութիւնը, քանդակագործութիւնը, նկարչութիւնն, երաժշտութիւնը, բանաստեղծութիւնն՝ ամէնն ալ քաղաքակիրթ կենցաղի որպէս թէ ծաղկունքն են։ Բայց (հակառակ կարելիութեան) համարելով անգամ՝ թէ անոնք այնքան մեծ արժէք ունին՝ որ իրենք ծնող քաղաքակիրթ կենցաղն հարկ է ամբողջովին ստորադաս ըլլայ իրենց, պէտք է աղէկ գիտնալ՝ թէ ամէնէն հարկա-

ւոր բանն է իմաստուն քաղաքակրթութիւն մը, եւ զայն պատրաստող դաստիարակութիւնն հարկ է ամէն տեղ նախադաս ըլլայ։

Հոս՝ մեր կրթական դրութեան յոռութիւնն ամպի պէս մեր դէմը կ'ելնէ, եւ կրնանք ըսել որ մենք միա՛յն ծաղիկին վրայ կը մտածենք եւ բնա՛ւ տունկին արմատի վրայ կը թողունք։ Շքեղ երեւելու տռամոլով կը մոռնանք էականը. մեր դպրոցներուն մէջ անձնապահութեան վերաբերեալ բան մը չենք սորվեցուներ. այլուստ ճարելու բաներէն տարրական շատ քիչ բան դաս կու տանք հոն, եւ կը ձգենք որ երիտասարդներն ըստ պատահումի աս-դիէն անդիէն լսելով սորվին անոնք։ Հայրական ու քաղաքացիական պարտքի կատարումին վերաբերեալ նախապատրաստական ամէնադոյզն ուսում մը անգամ չենք աւանդեր, եւ իբրեւ նախապատրաստութիւն դաս կու տանք խել մը նիւթեր, որոնց շատն ոչ իմաստ ոչ բանալի մը ունին։ Ոգւով չափ կաշխատինք սորվեցունելու համար այնպիսի բաներ, որ փայլ չքեղութիւն եւ կենցաղական նուրբ նազանք կու տան։ Մենք լիովին կը ճանչնանք արդի լեզուներուն արժէքը, վասն զի գիտենք որ անոնք աշխարհի մէջ յաջողելու միջոց մը կըլլան՝ մատենագրութեանց բնագիրները կարդալու, օտարազգիներու հետ խօսակցելու, եւ ճանապարհորդելու դիւրութիւն տալով. բայց կը պնդենք թէ բոլորովին անտեղի է լեզուագիտութիւն ձեռք բերել՝ կենսական կարեւորութիւն ունեցող ծանօթութիւններու տայժովը։

Ենթադրելով հանդերձ՝ թէ կանոնական (դասական) դաստիարակութեամբ պերճ ու ճշգրիտ ոճի մը տէր կըլլանք, դարձեալ չենք կրնար պնդել՝ թէ ոճի պերճութիւնն ու ճշգրտութիւնը տղայ մեծցունելու ամէնակարեւոր սկզբունքին հաւասար օգուտ մը կրնայ ունենալ։

Պահ մը՝ ընդունինք որ մեռեալ լեզուներով գրուած բանաստեղծութեանց ընթերցումը կրնայ նպաստել գեղեցիկ ոճ մը ունենալու, բայց ասկէ չհետեւիր բնա՛ւ թէ ճաշակի զարգացումն առողջապահական օրէնքի ուսումէն աւելի կարեւոր է։ Տաղանդները, գեղարուեստները, քաղաքակրթութեան ծաղկումն համարուած ամէն բաները՝ պէտք է ստորադաս ըլլան քաղաքակրթութեան խարիսխն եղող ուսումներէն ու կրթութիւններէն։ Դաստիարակութեան ու կենցաղի մէջ՝ ճաշակի վերաբերեալ ամէն բան պարապ ատենները միայն գրաւելու են։

Ճաշակի ուսումներն այսպէս սահմանելէ ու դաստիարակութեան մէջ անոնց կարեւորութիւնն իբրեւ երկրորդական ընդունելէ ետեւ, գանք հաստատել թէ որո՞նք են այն ծանօթութիւնները՝ որ ամէնէն լաւ եղանակով նպատակին կը տանին մարդն, եւ կենցաղի գործերուն հետ աւելի մօտէն առընչութիւն ունին։ Այս խնդիրին լուծումը միւս խնդիրներուն լուծումին հետ նոյն է. որչափ ալ անակնկալ թուի՝ սակայն դարձեալ ոչ նուազ ճշմարիտ է՝ թէ ամէնէն բարձր արուեստն անգամ իր բովանդակ մասերովը գիտութեան վրայ հիմնուած է, եւ առանց գիտութեան՝ ոչ անթերի արտադրութիւն եւ ոչ ալ արտադրութեանց կատարեալ գնահատում կըլլայ։ Կարելի է որ մեծահռչակ արուեստագէտներ՝ ժողովուրդին սահմանափակ իմաստով ըմբռնած գիտութիւնը միայն ունեցած ըլլան, բայց այդ մեծ արուեստագէտներն՝ իբրեւ նրբամիտ զննողներ՝ ունենալու էին բաւական պաշար մը այն գործնական հանրացումներուն, որ գիտութեան սկզբունքն են. անոնք արուեստական կատարելագործութենէն սովորաբար շատ վար մնացած են այն պատճառով՝ որ իրենց հանրական սկզբունքը շատ քիչ եւ մեծ մասով սխալ էին։ Երբ միտք բերենք՝ որ արուեստական

արտադրութիւններն իրական (objectif) կամ անիրական (subjectif) երեւոյթներու քիչ շատ նմանահան պատկերներն են, սկիզբէն ('ի յառաջագունէ à priori) բացայայտ կըլլայ՝ թէ գիտութիւնն աներեւութապէս կա՛յ արուեստին ներքեւ, թէ ամէն արտադրութիւն՝ յիշեալ երեւոյթներուն օրէնքին համակերպ ըլլալուն չափով միայն կրնայ ընտիր բան մը ըլլալ, եւ թէ պէտք է արուեստագէտը գիտնայ այդ օրէնքն՝ որպէս զի 'իր արտադրութիւններն անոնց համակերպ ըլլան։ Քիչ մը վարը պիտի ցուցընենք՝ որ այս սկզբունքով եզրակացութիւնը գործնական փորձին հետ ալ կը միաբանի։

Անդրիագործութիւն ուսանող երիտասարդները՝ մարդկային մարմինին ոսկրերն ու ջիղերն, անոնց դիրքն, յօդակապներն ու շարժումները կուսումնասիրեն։ Այս ուսումնասիրութիւնը գիտութեան մէկ մասն է, որ անոնց հարկաւոր դատուած է՝ որպէս զի անոնք չգիտցող անդրիագործներուն սխալներն իրենք ալ չընեն։ Այդ ուսանողները պէտք է գիտնան նաեւ մեքենագիտութեան տարրերը, զոր բնաւ չգիտնալնուն համար մեծ սխալներ կընեն միշտ՝ մեքենական հայեցուածով. ասոր օրինակ մը տանք. — Անդրի մը կանգուն կենալու համար հարկ է՝ որ անոր գագաթնահայեաց ուղղագիծը ճիշդ ծանրութեան կէտին վրայէն անցնի, ու կեդրոնահայեաց գիծն անոր խարիսխին վրայ իջնէ, եւ ասոր համար է որ երբ մարդ մը հանգիստ դիրքն առնէ (ուր ծունկին մէկը կը ձգտի եւ միւսը կը ճկի) իր կեդրոնահայեաց գիծը ձգտեալ կողմին ոտքին մէջտեղը կիյնայ. սակայն հաւասարակշռութեան տեսականը չգիտցող անդրիագործներն այս դիրքն ա՛յնպէս կը կերտեն՝ որ կեդրոնահայեաց գիծն երկու ոտքին մէջտեղը կիյնայ։ Անդրիագործներն այս կարգի սխալներու մէջ կիյնան նաեւ՝ եթէ պտուտքելու չար-

ժումին օրէնքը չգիտնան, ինչպէս Տիագորքուլի զարմանալի ըսուած անդրիին չինողին պատահած է՝ այդ օրէնքը չգիտնալուն համար. այդ անդրին անպատճառ առջեւն ի վար պիտի իյնար՝ իր սխալ կեցուածքին համար, եթէ իրեն կից սկաւառակն անկէ զատէին։

Աւելի ակներեւ է նկարչութեան համար գիտնական ծանօթութեանց կարեւորութիւնը. այդ ծանօթութիւնները պէտք է ստացած ըլլալ՝ եթէ ոչ տրամախոհապէս գէթ գործնականապէս։ Ինչո՞ւ համար չինական նկարներն անճոռնի են. — վասն զի Չինները չգիտեն ճշմարտանմանութեան օրէնքն. իրենց գծական պատկերհանութիւնն արտառոց բան մըն է, իսկ իրենց օդային պատկերհանութիւնը բոլորովին չքոտի է։ Ինչո՞ւ համար մանուկներու գծագրութիւններն այնպէս խառնափնդոր բաներ կըլլան. — վասն զի մանուկներն իսկականին գիտակ չեն, եւ իրենց այս տգիտութեան պատճառն այն է՝ որ անոնք բնա՛ւ չեն ըմբռնած առարկաներու բո՛ւն երեւոյթին՝ անոնց մեր աչքին ներկայացած վիճակներուն (դիրքին) համեմատ կերպարանափոխութիւնը։ Երբ նկարչութիւն ուսանողներուն համար պատրաստուած գիրքերն ու բանախօսութիւնները պարզ աչքէ մը անցունէք, երբ Րիւսքէնի բանաքննութիւններն եւ Ռափայէլեան-մարգագէտին ըսուած գործերն ուշադրութեամբ քննէք՝ պիտի հասկընաք որ նկարչութեան զարգացեալ վիճակին մէջ՝ անպատճառ հարկ է որ ըլլայ բնութեան ազդումներուն տակաւ աճող կերպարանագիտութիւնը։ Նկարիչ մը՝ որչափ ալ բնութեան առարկաներն ուսումնասիրած ըլլայ անդադար զննութեամբ՝ դարձեալ պիտի սխալի։ Ամէն նկարիչ կը խոստովանի՝ որ իրերու կերպարանքը միշտ ճշգրտութեամբ չպիտի ըմբռնէր եթէ առաջուընէ գիտցած չըլլար՝ թէ այդ կերպարանքն ինչ եղանակով այս կամ

այն վիճակին մէջ 'ի հարկէ այս կամ այն երեւոյթը կառնեն , եւ գիտնալը՝ թէ իրերը շրջավայրին համեմատ այլ եւ այլ երեւոյթներ կառնեն՝ երեւոյթներու գիտութիւնը մինչեւ սահման մը ունենա՛լ է ։ Մ. Էուիս նկարիչն , որ խղճամիտ արուեստաւոր մըն է , գիտութեան կողմէ աղքատ ըլլալուն համար՝ իր նկարներէն մէկուն մէջ վանգակապատ լուսամուտի մը ստուերն հանդիպակաց պատին վրայ յատակ գիծերով նկարած է . եթէ Մ. Լուիս գիտցած ըլլար թերատուերի երեւոյթն՝ անշուշտ այս սխալը չպիտի ընէր ։ Դարձեալ՝ Մ. Րոզէգդի գիտութեան կողմէ աղքատ ըլլալուն համար՝ լոյսի քանի մը ճառագայթներուն տա՛կ վարսաշող (chevelu) կարգ մը մակերեւոյթներէ գոյացած տեսակ մը փողփողում նշմարելով (փողփողում , որ լոյսին վարսաշողերուն մէջէն անցնելու առեն բեկբեկելէն առաջ եկած է) մեծ սխալ մը գործեց , վասն զի իր նկարներուն մէջ պատկերեց այդ փողփողումն այնպիսի մակերեւոյթներու վրայ եւ այնպիսի պարագաներու մէջ , ուր այդպիսի փողփողում մը բնաւ չկրնար տեղի ունենալ ։

Մեր ընթերցողներն աւելի պիտի զարմանան՝ երբ ըսենք թէ նոյն ինք երաժշտութիւնն ալ գիտութեան նըպաստին պէտք ունի ։ Բայց թող փորձեն , եւ պիտի տեսնեն՝ որ երաժշտութիւնը տիրապէս սիրտի յուզումներուն գաղափարացեալ արտաբերութիւնն է . եւ ըստ այսմ՝ երաժշտութիւնը՝ բնական արտայայտութեան օրէնքին համակերպելուն կամ չհամակերպելուն համեմատ լաւ կամ յոռի կըլլայ ։ Մարդկային ձայնին այն պէսպէս ոլորակներն , որ մարդկային պէսպէս զգացումներն եւ անոց ուժգնութեան աստիճանները կարտաբերեն՝ երաժշտութեան տարրերն են ։ Մենք կրնանք ապացուցանել՝ թէ այդ ոլորակներն ու ներդաշնակութիւնները դիպուա-

ծի ու քմայքի արդիւնք չեն բնաւ, այլ սահմանուած են կարգ մը հանրական օրէնքով, որով կը վարին ամէն կենդանական գործերն, եւ այս է պատճառն՝ որ անոնք ազդու (expressif) կ'ըլլան։ Ուստի՝ երաժշտական հատուած-ներն եւ անոնց վրայ շինուած նուագերգութիւններն ա՛յն ատեն միայն ստոյգ ազդեցութիւն կ'ընեն ականջներու վրայ՝ երբ այս հանրական օրէնքին համակերպ ըլլան։ Դժուար է հոս օրինակներով ապացուցանել զայս. մեր ընթերցողները թերեւս համոզուին մեր այս խօսքին՝ յի-շելով այն անթիւ ու գռեհիկ ցուցերն (ballade) որ մեր երաժշտական սրահներուն մէջ հեղեղաբար կ'որոտան։ Այդ ցուցերուն ահա՝ մէյմէկ ճաշակներ են գիտնական սկըզ-բունքի հակառակ շինուած նուագներու։ Այդ ցուցերը՝ գի-տութեան դէմ մէյմէկ յիշոց են, վասն զի երաժշտական տարազներով կը հագուեցունեն ա՛յնպիսի գաղափարներ, որ երաժշտական ներդաշնակութիւններ յառաջ բերելու չափ սրտայոյզ չեն։ Դարձեալ՝ այդ ցուցերը գիտութեան դէմ մէյմէկ յիշոց են, վասն զի անոնց երաժշտական պարբերութիւններն՝ արտայայտած գաղափարներուն հետ բնաւ վերաբերութիւն չունին, թէպէտեւ այդ գաղափար-ները սրտայոյզ եղած ալ ըլլան։ Այդ ցուցերը՝ տգեղ բաներ են, վասն զի իրականութենէ զուրկ են, եւ իբրեւ զուրկ իրականութենէ՝ անշուշտ գիտնապէս պատրաստուած չեն։

Նոյն երեւոյթը կայ բանաստեղծութեան մէջ ալ։ Երաժշտութեան պէս՝ բանաստեղծութեան աղբիւրն ալ բնական արտայայտութեանց այն ձեւերն են, որ խորին զգացումներու լծորդ են. բանաստեղծութեան չափն, ուժգին ու բազմաթիւ ամանակներն, աւելադրութիւննե-րը, բուռն ստեղծումները՝ բոլորն ալ կրայոյզ լեզուի մը բնական ձեւերն են. ուստի՝ բանաստեղծութիւնն՝ որպէսզի ընտիր ըլլայ՝ պէտք է ճարտարմտութեամբ հետեւի ջղա-

յին գործողութեանց այն օրէնքին, որուն կը հետեւի կիրքի բարբառը։ Այդ բարբառին ամէնէն սաստիկ ուժգնութիւնը տուած ատեն՝ պէտք է միշտ հաւատարիմ մնալ համեմատութեան օրէնքին։ Բանաստեղծութեան ոյժերը պէտք չէ գործածել անպայման չափով մը. ուր գաղափարները նուազ սրտայոյզ են՝ հոն չայլելու չէ քերթողական խանդավառ արտայայտութիւնները. յուզումն որչափ առատ ըլլայ՝ այն չափով առատ գործածելու է այդ բուռն արտայայտութիւններն, եւ ուր յուզումն աւիւնի հասնի՝ հոն պէտք է բանաստեղծութիւնն իր բովանդակ ոյժը թափէ։ Բանաստեղծութիւնն՝ եթէ այս օրէնքին չհետեւի՝ կըլլայ ուռուցիկ բան մը, բանախեղծութիւն մը (rimaille)։ Վարդապետական բանաստեղծութեանց մէջ այս օրինապահութիւնը չիկայ, եւ այս՝ շատերուն զգալի։ Սոյն օրէնքին ամէնակատար ճշդութեամբ հետեւողներուն կարի ցանցառութեանն համար է՝ որ արուեստին ոգիին հակառակ այնչափ բանաստեղծութիւններ կը վխտան հրապարակին վրայ։

Ճշմարտապէս գեղեցիկ գործ մը արտադրելու համար՝ ո՛ եւ իցէ արուեստագէտ ոչ միայն պէտք է գիտնայ իր պատկերելիք երեւոյթներուն օրէնքն, այլ նաեւ պարտի ըմբռնած ըլլալ այն տարազն, որով պիտի զգածի հանդիսատեսին կամ ունկնդիրին հոգին՝ երբ իր գործը ներկայանայ. եւ այս՝ հոգեբանական խնդիր մըն է։ Արուեստագիտական գործէ մը առաջ եկած տպաւորութիւնն՝ 'ի հարկէ հանդիսատեսներուն կամ ունկնդիրներուն մտային բնութենէն կախում ունի. եւ որովհետեւ ամէն մտային բնութիւններ ինչ ինչ իրարու նման հանգամանք ունին, ուստի կարգ մը լծորդ սկզբունք կան, որ պէտք է կանոն ըլլան արուեստական ամէն ընտիր արտադրութեանց։ Արուեստագէտ մը ա՛յն ատեն միայն կատարելապէս

կըմբռնէ այս կանոնները եւ անոնց համեմատ կը յօրինէ՝ երբ հասկըցած է թէ անոնք ինչպէս կը բղխին մարդկային միտքի օրէնքէն։ Եթէ պատկեր մը դիտողին հարցունենք՝ թէ անոր յօրինուածն ընտի՛ր բան մըն է, տիրապէս հարցուցած կըլլանք անոր՝ թէ իր հայեցուածն ու զգացումներն ի՛նչ պատճառ կըզգածին այդ պատկերէն։ Եթէ մէկուն հարցունենք՝ թէ այս ինչ թատերգութիւնը լա՛ւ գրուած է, հարցուցած կըլլանք անոր թէ ունկնդիրներուն ուշադրութիւնը պի՛չ սեւեռելու տարազով կարգադրուա՛ծ են անոր դերերն՝ այնպէս որ ոչ մէկ զգացում չափազանցութեամբ արտայայտուած չէ հոն։ Այսպէս ալ բանաստեղծութեան մը գլխաւոր մասերը կարգադրելու եւ պարզ պարբերութեան մը բառերն համադրելու առեն՝ յաջողելու համար՝ պէտք է ճարտար եղանակով մը խնայել ընթերցողին զգայնութեանն ու մտային ոյժերուն։ Արուեստագէտները՝ թէ՛ ուսումնասիրելու առեն թէ՛ իրենց բովանդակ կենցաղին մէջ՝ անհնարին աշխատութեամբ կը հաւաքեն իրենց միտքին մէջ կարգ մը կանոններ, որոնց վրայ կը կաղապարեն իրենց երկերը։ Եթէ այդ կանոններուն աղբիւրներն հետազօտենք՝ ճիշդ հոգեբանական օրէնքին մէջ պիտի գտնենք անոնք։ Արուեստագէտներն այն առե՛ն միայն պիտի կրնան արտադրել այդ օրէնքին կատարելապէս համաձայն գործեր՝ երբ ճանչնան անոնք ու անոնց ամէն կցորդները։

Մենք բնաւ չենք ըսեր՝ թէ մարդ միայն գիտութեան միջոցով կրնայ արուեստագէտ ըլլալ. կը պնդենք թէ արուեստագէտը պարտի գիտնալ իրական ու անիրական երեւոյթներու մեծ օրէնքը. բայց բնաւ չենք պնդեր թէ այդ օրէնքն անոր բնական թափանցումներուն տեղը առնելու են։ Բնութիւնն է՝ որ մարդն արուեստագէտ ու բանաստեղծ կը ծնանի, եւ միայն ստացիկ կրթութեամբ

*կարելի չէ ըլլալ ո՛չ բանաստեղծ եւ ո՛չ արուեստագէտ* (1)։ *Մեր ըսածն այն է՝ թէ բնակից հանճար ունեցողները պէտք չէ որ բանի տեղ չդնեն կազմաւորեալ գիտութեան նպաստը։ Ցիրաւի մեծ բան մըն է հոգետեսութիւնը* (intuition) *բայց հոգետեսութիւնն ամէն բան չէ։ Հանճարին ու գիտութեան միացուած ճիգն է՝ որ կերկնէ վսեմը* (2)։

*Ինչպէս վերն ըսինք, գիտութիւնը կարեւոր է ոչ միայն արտադրելու, այլ նաեւ կշռադատելու* (apprécier) *համար արուեստական գործ մը։ Ինչո՞ւ է՝ որ հասարակ մարդ մը՝ մանուկէ մը աւելի աղէկ կրնայ կշռել պատկերի մը գեղեցկութիւնները. — վասն զի մանուկէն աւելի աղէկ գիտէ բնութեան ու կեանքի ճշմարտութիւններն, որ պատկերին մէջ կերեւին։ Ինչո՞ւ է՝ որ ընտիր քերթուած մը կարդալով՝ ազնուական մարդը բիրտ գեղջուկէն աւելի հաճոյք կիմանայ. — վասն զի անձերու եւ իրերու վրայ աւելի ճոխ ծանօթութիւններ ունենալով՝ գեղջուկին չնշմարածն ինք կրնայ նշմարել այդ քերթուածին մէջ։ Արդ՝ քանի որ պէտք է մեր միտքովը նախ ընտանեցած ըլլանք ներկայացեալ բաներուն հետ, որպէս զի կարենանք համ մը առնել ներկայացումէն (ինչպէս յայտնի կերեւի վերը բացատրուած օրինակէն) այդ ներկայացումն անթերի կերպով չենք կրնար կշռադատել՝ եթէ նախ ճանչցած չըլլանք ներկայացեալ իրերն անթերի կերպով։ Ստոյգն այն է՝ որ արուեստական գործերու մէջ արտայայտուած ամէն յաւելուածական ճշմարտութիւն՝ յաւելուածական բերկրանք մը կու տայ հանդի-*

---

(1) Երկբայելի է այդ վճիռն, եւ իմաստասէրներու խորհրդածութեան մեծկակ նիւթ մը։ Թ.

(2) Բայց կա՛յ վսեմ մը՝ որ լոկ հանճարն առանց գիտութեան կերկնէ, թէպէտ եւ բո՛ւն գիտութեան ալ համաձայն կըլլայ այն։ Թ.

*սատեսին միտքին, բայց այդ ճշմարտութեան անտեղեակ միտք մը կը զրկէ այդ բերկրանքէն ։*

*Արուեստագէտն՝ որչափ իրականութիւն դնէ իր գործին մէջ՝ այնչափ խաղեր կը հիւսէ միտքի կարողութեանց, այնչափ գաղափարներ եւ այնչափ հաճոյք կը փթթեցունէ ։ Բայց որպէս զի հանդիսատեսին ունկնդիրին կամ ընթերցողին վրայ այս հաճոյքն ազդէ՝ անոնք պէտք է գիտցած ըլլան հանդիսադրեալ իրականութիւններն, եւ այդ իրականութիւնները գիտնալն՝ ունենա՛լ է մեծ բանը, գիտութիւնը* (1) ։

*Եւ արդ չմոռնանք սա կարեւորագոյն բանն ալ՝ թէ գիտութիւնն ոչ միայն հիմն է քանդակագործութեան, նկարչութեան, երաժշտութեան, բանաստեղծութեան, այլ նաեւ գիտութիւնն ինքնին բանաստեղծութիւն է ։ Սխալ տեսութենէ մը յառաջ եկած է այն կարծիքը՝ թէ գիտութիւնն ու բանաստեղծութիւնը ներհակ են իրարու․ իրա՛ւ է՝ որ՝ իբր անձնիւր անհատի ինքնութեան հանգամանք՝ գիտութիւն եւ զգացում իրար կը չեզոքացունեն փոփոխակի․ իրա՛ւ է դարձեալ՝ որ խորհրդածութեան չափազանց գործունէութիւն մը զգացումները կըսպաննէ, ինչպէս զգացումներու տեւողն ալ խորհրդածութիւնը կը մթագնէ, եւ այս հայեցուածով ճշմարիտ կըլլայ ըսելը՝ թէ այլ եւ այլ գործունէութիւններն իրարու ներհակ կը պատահին, բայց ճշմարտութեան դէմ է ըսել՝ որ գիտնական գործերն էապէս զուրկ են բանաստեղծութենէ, կամ՝ գիտնական կրթութեամբ զբաղելով՝ երեւակայական ու գեղասիրական երկերու անընդունակ կըլլանք ։ Ընդհակառակը՝ գիտութիւնը կը*

(1) Թերեւս ամէն գիտուններէն աւելի պայծառ կը խօսի հոս Հեղինակը, թանձրացեալ նշանակութեանը վրայ այդ վերացական բառին, որով յաճախ կը զեղծանին օտարազգիներու եւ մանաւանդ մեր մէջ կարգ մը *ութիւններու* հետ խաղացողներ ։ Թ.

*բանալ գիտունին առջեւ բանաստեղծական պարունակներ հոն, ուր տգէտը բան մը չտեսներ : Գիտնական հետազօտութեամբ զբաղող մարդիկ միշտ կըսեն մեզի՝ թէ իրենք ոչ միայն ուրիշներու նման՝ այլ ուրիշներէն աւելի թափով կըզգան իրերու բանաստեղծական գեղեցկութիւնը : Հիւ Միլլէրի երկրաբանական գիրքերն ու Լիուսի* (1) Ծովափնեայ հետազօտութիւնները *կարդացողը՝ պիտի տեսնէ որ գիտութիւնն ոչ միայն չխափաներ բանաստեղծական խանդն, այլ նաեւ կը գրգռէ զայն : Կէօթէի վարքը գիտցողները՝ գիտնալու են նաեւ՝ որ բանաստեղծական ոգին ու գիտնական ոգին կըրնան հաւասար յորդութեամբ միեւնոյն անձին վրայ բնակիլ : Այլանդակ ու աննուէր բան մը չէ՞ կարծել՝ թէ մարդ ո՛րչափ աւելի ուսումնասիրէ բնութիւնն՝ այնչափ նուազ կը մեծարէ զայն* (2) : *Միթէ՝ կաթիլ մը ջուրն, որ ռամիկին համար լոկ կաթիլ մը ջուր է, նուա՞զ յարգ ունի բնագէտին առջեւ՝ անոր համար որ գիտէ նա թէ զայն բաղկացնող տարրերուն միաւորիչ ոյժն եթէ յանկարծ ելուզանի* (dégager) *կայծակ կըլլայ : Միթէ՝ համբակ դիտողի մը աչքին լոկ ձիւնի փնտակ մը երեւցածն՝ աւելի բարձր գաղափարներ չարթնո՞ւցըներ գիտունին մտքին մէջ, որ մանրադիտակով զննած է ձիւնի բիւրեղներուն մէջէն այն պէսպէս ձեւերն՝ սքանչելի ու շքեղ : Միթէ՝ սա խոռոչացած ժայռն, որուն*

---

(1) Լիուս եւ Միլլէր՝ Մեծ Բրիտանիայի երկու բնապատումներն են : Լիուսի *Ծովափնեայ հետազօտութիւնները*՝ կը խօսին ծովեզերեայ զննութեանց վրայ : Հիւ Միլլէր Սկովտիացի երկրաբան մըն է, որ ճանչցուած է մանաւանդ երկրաբանական կազմութեան վրայ իր գրած հետազօտութիւններով, որուն անունն է՝ *Հին կարմիր խճաքարն* ածխային ալքէն վար :

(2) Փորձը կը ցուցընէ սակայն՝ որ պաշտելի առարկան որքան մօտէն դիտուի ու շօշափուի, այնքան նուազ մեծարելի կըլլայ . անծանօթը միշտ վսեմ է : Թ.

վրայ զուգահեռական ճեղքուածներ քանդակուած են, նո՞յնչափ բանաստեղծութիւն կրնա՞յ արթունցընել ագէտի մը գլուխին մէջ՝ որչափ կարթունցընէ երկրաբանի մը միտքին մէջ, որ գիտէ թէ միլիոնաւոր տարիներ առաջ սառնակոյտ մը սահա՛ծ է այդ ժայռին վրայէն, Ճշմարիտ այն է՝ թէ անոնք որ ամենեւին չեն թափանցած գիտնական աշխարհէն ներս՝ չեն կրնար տեսնել իրենց բոլորի բանաստեղծութեան մեծ մասը։ Ան՝ որ իր աղայութեան ատեն չէ հաւաքած միջատներ ու տունկեր՝ չգիտէ թէ ինչ մոգական գեղեցկութիւն կայ մացառի մը կամ մարգագետինի մը մէջ։ Ան՝ որ բրածոներ չէ պեղած՝ չունի այն բանաստեղծական գաղափարները, զոր կը թելադրեն այս ծածկեալ գանձերը գտնուած տեղուանք։ Ան՝ որ իր ծովափնեայ պտոյտներուն ատեն իր հետ չէ առած մանրադիտակ մը եւ ջրայնոց մը (aquarium) ծովեզերքի բերկրութեանց ճաշակ չունի։ Շատ ցաւալի է՝ որ մարդիկ չնչին բաներով կըզբաղին, եւ բնութեան մեծապայծառ երեւոյթներուն առջեւ անզգայ են։ Որչա՜փ անփոյթ են երկնային ճարտարապետութիւնը դիտելու, եւ որչա՜փ եռանդով կըզբաղին գիտնաբար բանաքննելու յունական տաղերգութիւն մը. եւ այդ բանաքննողներն անազդակ սառնութեամբ կանցնին այն վե՛հ դիւցազներգութեան առջեւէն, զոր Աստուծոյ մատը քերթա՛ծ է երկիրի խաւերուն վրայ։

Ուրեմն, բացայայտ կը տեսնենք՝ որ մարդու գործերուն վերջին մասին՝ ինչպէս միւս մասերուն մէջ՝ գիտնական կրթութիւնն հարկաւոր է իբրեւ նախապատրաստական դաս։ Բացայայտ է՝ որ գեղագիտութիւնն ընդհանրապէս ի հարկէ հիմնուած է գիտնական սկզբունքի վրայ, եւ թէ անկարելի է կատարելապէս յաջողիլ անոր մէջ՝ առանց գիտնալու այս սկզբունքը։ Բացայայտ է՝ թէ

*արուեստի գործերը բանաքննելու եւ կշռադատելու համար՝ պէտք է ունենալ իրերու խոկութեան ծանօթութիւնը, կամ՝ ուրիշ կերպ ըսելով՝ հարկաւոր է գիտութեան նպաստը. բացայայտ է դարձեալ՝ թէ գիտութիւնն ոչ միայն օժանդակն է արուեստի եւ բանաստեղծութեան իրենց ամէն ձեւերուն մէջ, այլ նաեւ արդար իրաւունքով սոսկ գիտութիւնն ինքնին բանաստեղծական կրնայ համարուիլ* (1)։

---

(1) Սբէնսըր հոս մէկ բանի էջի մէջ, զոր չենք թարգմաներ, կը բանաքննէ գիտութեան արժէքն՝ իբրեւ իմացական ու բարոյական հրահանգ՝ եզրակացունելով՝ որ գիտութեանց զբաղումը լեզուագիտութենէ աւելի կը նպաստէ յիշողութեան, եւ իբրեւ միջոց բարոյական կրթութեան՝ գիտութիւնը մարդն ինքնիշխան հաստատամիտ ու անկեղծ կընէ։

Բնական էր գիտութեան այսչափ կարեւորութիւն տալ (հոս եւ ուրիշ մէկ բանի տեղ) Հեղինակի մը, որ՝ իբրեւ հարազատ զաւակ ամէնէն մեծ գիտունները երկնող երկիրին՝ մանաւանդ ինքն ալ սոսկ գիտուն՝ չէր կրնար նուազ բերումով անոր ներբողն հիւսել։ Բայց ինչպէս ամէն զբաղումի մէջ՝ որ արհեստ եղած է՝ նոյնպէս գիտութեան մէջ ալ՝ նախասահմանական ու վարդապետական չափազանցութիւնը կայ միշտ։ Այսօր ակներեւ է՝ որ մօտ ժամանակներուն քննասիրական շրջանին յաջորդած է գիտնասիրութեան շրջան մը, որ նախնի Գնոստիկեան ժամանակներուն ուրիշ ձեւն է, թէպէտ աւելի խարախեալ ու հաստատագոյն սկզբունքով. եւ գիտունները՝ մանաւանդ այնպիսիները, որ այդ անունով պարծելէն մեծ շահեր ունին, դասապարտելի անողոքութիւն մը ձեռք առած են։ Մարդ՝ որչափ գիտուն ըլլայ՝ նոյն չափով գրեթէ անվրէպ անգութ կըլլայ կոր, թերեւս անոր համար որ գթած ալ ըլլալ չյօժարիր։ Սակայն մեր մէջ, ուր ամէնէն աւելի պէտք կայ զգացումներու այդ ազնուագոյնին՝ գութի, մեր մէջ կըսենք՝ ուր երբ գութը տեղի տայ՝ ամէնէն սոսկ գիտութիւնն անգամ անպիտան կըլլայ՝ գիտնամոլութիւնն ու գրամոլութիւնն ամէն մոլութեանց պէս կրնան աղիտաբեր ըլլալ։

Իրերու ցաւալի ընթացքէն է՝ որ գիտուններուն բուն քերականութիւնն ու բառարանն անանձն բնութիւնն ըլլալով (բնութիւնն՝ որ իր գործերուն մէջ անողոք ու անվրէպ է) իրենք ալ իբրեւ ներկայացուցիչ բնութեան կամ մինչեւ իսկ իբրեւ անոր խրացուցիչն՝ յաճախ անոր անողոք եւ երբեմն անգութ դէմքը կառնեն՝ իրենց վարդապետութեանց

*Վերջապէս պէտք է ըսենք՝ — եւ անշուշտ շատերը չափէն աւելի պիտի զարմանան — թէ գիտնական կրթութիւնը շատ բարձր է սովորական կրթութենէն անոր հա-*

---

ու գործողութեանց մէջ, մինչդեռ ըլլալու էին աւելի զիջող ու համեստ՝ եթէ ոչ ամէնանկատ.

Քանի որ՝ գիտուններուն խօսքին իսկ նայելով՝ ամէնաբաւ ըսուած գիտութեան անգամ ծայրային վերջին օղակն ամբաւ զէրօ մը կը մնայ, ամէնէն ստոյգ գիտութիւնն եւ թերեւս ամէնէն բնականն իսկ՝ առարկաներու արտաքին երեւոյթին ու անոնց ազդումէն առաջ եկած մտատես գիտութիւնն է, որ եւ է բուն իսկ բանաստեղծութիւնն իր ամէնէն կատարեալ ու բարձր ձեւին մէջ, կամ՝ որպէս զի այսպէս ըսենք՝ թա-փանցող հոգետեսութիւնը. Տգիտութիւնը պաշտպանողներէն չենք, բայց ճշմարտութենէ շատ հեռի մտածութիւն մը ըրած չենք ըլլար՝ երբ ըսենք՝ թէ պատմական հայեցուածով, մանաւանդ մարդուն ինք իր չնչին էու-թեան եւ բոլորի իրերուն վրայ ներանձն հայեցողութեամբ, սոսկ չեզոք խորհող մը կրնայ պայծառ ըմբռնել՝ որ առարկաներու ներքինը շատ անձուկ չափով մը մեր զգայարանքին ներքեւ կիյնայ. մնացածը՝ գործ է գիտնալ. Առաջին մարդն, որ բնութեան իբրեւ ամէնէն մօտն, ամէնէն գիտուն ու աստուածամերձ մարդն ըլլալու էր՝ անշուշտ սուր հոգետես մըն էր (ինչպէս կըսէ Նովալիս գերմանացին ալ). տիեզերքի համադրական բայց արտաքին պարզ տեսիլէն ներշնչուած գիտուն մը, կամ՝ հին բա-ցատրութեան համեմատ՝ մարգարէ մը. աշխարհի ամէնէն հին գիրքը վկայ է ասոր.

Գալով մեր գիտնական ու քիչ շատ բարեկեցիկ երիտասարդութեան՝ կը շեշտենք որ առանց առաքինի ըլլալու գիտուն ըլլալը՝ շատ դիւրին բան է, եւ պարծիլն անգամ չարժեր. Ի հարկէ չենք համարձակիր իմաստունին այն բարձր վճիռին դէմ խօսելու՝ թէ «գիտութիւնն ամէնէն չար զբաղումն է, որ երկինք տուած է մարդու իբրեւ զբաղում արեգակին տակ» (Ժողով. Ա. 14). բայց կրնանք ըսել՝ թէ աւելի բարձր տեսլականներու դիտաւորութեամբ՝ գիտութիւնն որչափ որ ալ թերեւս ունայնութիւն մըն է, լաւագոյն զբաղում մըն է սակայն համեմատութեամբ այն ապականիչ զբաղումներուն, որով կուզեն զբաղիլ կարգ մը յախուռն Եպիկուրիկներ. այո՛ լաւագոյն զբաղում մըն է, մանաւանդ իբրեւ խափանարար չարագոյն զբաղումներու. Երբ այնչափ դժուար բան մըն է առաքինի ըլլալը, գոնէ նուազ մոլի ըլլանք. Թ.

մար՝ որ մարդկային միտքին կրօնական ձուլուած մը կուտայ։ Ցայտնի է՝ որ հոս գիտնական ու կրօնական բառերը ժողովուրդին անձուկ իմաստովը չենք առներ, այլ մանաւանդ իրենց ամէնէն լայն ու ամէնէն բարձր իմաստով։ Գիտութիւնն հաշտ չէ այն նախապաշտութեանց հետ, որ կը շրջաբերին աշխարհի մէջ կրօնք անունին տակ. ասոր վրայ մէկը չտարակուսիր. բայց գիտութիւնն հա՛շտ է բուն կրօնքին հետ, զոր այդ նախապաշտութիւնները կը մթագնեն միայն։ Արդի գիտութեան մէկ մասն անկրօնութեան ոգիով վարակուած է. ասոր վրայ ալ մէկը չտարակուսիր. բայց ճշմարիտ գիտութեան մէջ այս ոգին չի՛կայ, այսինքն այն գիտութեան մէջ՝ որ իրերու վրայէն հարեւանցի չանցնիր, այլ կը սուզանի՛ մինչեւ խորերը։

Րաբունն (professeur) Հըքսլի՝ այսպէս ըսած է «Ճըշմարիտ գիտութիւնն ու կրօնքն երկուորեակ քոյրեր են, որոնք եթէ իրարմէ զատենք՝ երկուքին ալ մահուն պատճառ կըլլանք։ Գիտութիւնն ո՛րչափ պաշտօնասէր (կրօնասէր) ըլլայ, ա՛յնչափ աւելի կը յառաջդիմէ, եւ կրօնքն ա՛յնչափ կը բարգաւաճի՝ որչափ իր խարիսխն ըլլայ գիտնապէս խորին ու տրամ։ Փիլիսոփաներուն մեծագործութիւններն՝ արդի՛ւնք են աւելի իրենց իմացականութեան վրայ ամբաւ կրօնասիրութեան ոգիէ մը տպաւորած ուղղութեան՝ քան իրենց սոսկ իմացականութեանը։ Անոնք՝ իրենց համբերութեամբը, սիրովն, անկեղծութեամբն ու ինքնանուիրութեամբը՝ քան իրենց տրամաբանական սրամտութեամբը՝ ճշմարտութիւնը գտան»։

Ոչ միայն գիտութիւնը չէ՛ անկրօնն, ինչպէս շատեր կը կարծեն, այլ գիտութեան ատեցութիւնն է անկրօն։ Ասոր փոքրիկ օրինակ մը տանք. համարենք՝ որ մատենագիր մը ամէն օր հասարակութենէն փքոցուռոյց գո-

վեստները կառնէ. համարենք՝ որ իրեն ընծայուած գովեստներուն բուն պատճառն են՝ իր երկերուն մէջ երեւցած իմաստութիւնը, վսեմութիւնը, գեղեցկութիւնը. համարենք դարձեալ՝ որ իր գործերն անդադար գովողներն՝ անոնց կողքը միայն տեսած ըլլան; եւ բնաւ կարդացած չըլլան անոնք, բնաւ փորձած չըլլան հասկընալ անոնց պարունակութիւնը։ Արդ՝ ինչ արժէք տալու ենք այդ գովեստներուն. եւ սակայն, եթէ ներելի է փոքր բաներէն մեծերուն անցնիլ, մարդիկ ճիշդ այսպէս կը վարին տիեզերքի եւ անոր Պատճառին հետ. եւ ա՛լ աւելի գէշ, վասն զի մարդիկ՝ ոչ միայն առանց ուսումնասիրելու կանցնին այն բաներուն քովէն զոր հրաշալի կանուանեն, այլ նաեւ կը պախարակեն բնութիւնը զննողները. եւ ոչինչով զբաղող կանուանեն անոնք. կարհամարհեն անոնք, որ անդուլ գործունէութեամբ կը պարապին այդ հրաշալիքին։

Դարձեալ կը կրկնենք, ոչ թէ գիտութիւնն՝ այլ մանաւանդ գիտութեան չյօժարի՛լն անկրօնութիւն է։ Գիտութեան սէրն՝ իմանալի (tacite) պաշտօն մը եւ թաքուն ճանաչում մըն է ուսումնասիրուած իրերուն բուն արժէքին՝ եւ ուստի անոնց պատճառին։ Լոկ բերանով մատուցուած նուէր մը չէ այն, այլ նուէր մը՝ գործով մատուցուած. ոչ ալ լոկ խօսքով արտայայտուած մեծարանք մը, այլ գիտունին՝ իր ժամանակն, իր մտածութիւնն, իր աշխատութիւնը զոհելով եւ ապացուցուած մեծարանք մը։

Ոչ այս հանգամանքով միայն՝ ճշմարիտ գիտութիւնն իրապէս կրօնասէր է, այլ նաեւ կրօնասէր է անոր համար՝ որ կը ծնանի խորին մեծարանք մը գործի այն ներդաշնակութեան վրայ, որ ամէն բանի մէջ կայ. կը ծնանի նաեւ ներանձնական հաւատք մը իր իսկ մէջն։ Իր բաղ

մակաղմանի փորձառութեամբը՝ գիտուն մարդը կըստա-նայ՝ երեւոյթներուն անյեղլի առընչութեանց, պատճառէ արդիւնքի անըմբռնելի յարաբերութեան, բարի ու չար արգասիքի հարկաւորութեան անսասան հաւատք մը։ Փոխանակ այն վարձքին ու պատիժներուն, որոնց վրայ կը խօսին խորհրդական աւանդութիւններն եւ մարդիկ տարտամ միտքով կակընկալեն առնել կամ պրծիլ անոնցմէ իրենց գործերուն փոխարէն, գիտունը կընդնշմարէ թէ արդարեւ վարձք ու պատիժներ կան, որ իրերու կանոնա-դրուած կազմութենէն կը բղխին, եւ թէ անհնազանդու-թեան գէշ հետեւանքն անխուսափելի են։ Գիտունը կը խելամտէ՝ որ մեր վրայ դրուած օրէնքն անողոքելի միան-գամայն բարեձիր են. Նա՛ կը տեսնէ՝ որ եթէ այդ օրէն-քին համակերպինք՝ իրերու ընթացքն աւելի մեծ կատա-րելութեան մը եւ աւելի մեծ երջանկութեան մը կը տանի մեզ։ Այն ատեն ահա՛ կը պնդէ նա անդադար այդ օրէն-քին ճիշդ պահպանութեան համար, եւ կը զայրանայ՝ երբ մարդիկ օրինազանց կ'ըլլան. այսպէս՝ հաստատութիւն տալով իրերու մշտընջենական դրութեանց ու անոնց հնա-զանդելու հարկին՝ կը ցուցընէ թէ բուն իսկ կրօնասէրն ի՛նքն է։

Ասոնցմէ զատ՝ գիտունին կրօնասիրութեան ուրիշ ցոյց մըն ալ կայ. զի նա՛ միայն կրնայ ճիշդ գաղափար մը տալ՝ թէ մենք ի՛նչ ենք, եւ ի՛նչ յարաբերութիւններ ունինք տիեզերքի խորհուրդներուն հետ։ Երբ մէկ կող-մէն կը յայտնէ մեզի ինչ որ հնար է գիտնալ, միւս կող-մէն կը ցուցընէ մեզի այն սահմանները, որոնցմէ անդին բան մը չենք կրնար գիտնալ։ Իրերու յաւ (ultime) Պատ-ճառն ըմբռնելու անհնարութիւնը՝ վարդապետական վկա-յութիւններով չէ որ կը սորվեցունէ մեզի, այլ կը ջա՛նէ մեր առջեւէն՝ պայծառ ցուցընելու համար այս անհնա-

րութիւնն, ամէն կողմէ շօշափել տալով մեզի այն սահմանները, որոնցմէ անդին անցնիլն անհնա՛ր է մարդու։ Նա ամէնէն լաւ կիմացունէ մեզի՝ մեր միտքին տկարութիւնն յանդիման ա՛յն ամէն բանի, որ վե՛ր է քան զմիտս. մինչ աւանդութեանց ու մարդկային առուչութեանց (autorité) առջեւ խոնարհ դիրք մը կը բռնէ, — եւ իրաւապէ՛ս խոնարհ — խոնա՛րհ՝ ճշմարտապէս խոնա՛րհ դիրք մը կառնէ այն անթափանցելի վարագոյրին առջեւ, որով Բացարձակն սքօղուած է։ Անկեղծ գիտունը — այս անունով պէտք չէ իմանալ անոնք՝ որոնց գործն է հեռաւորութիւնները չափել, բաղադրածները լուծել կամ տեսակներն անուանադրել, այլ ա՛ն՝ որ ստորակարգ ճըշմարտութեանց մէջէն կը փնտռէ բարձրագոյն ճշմարտութիւններ կամ նոյն ինքն Գերագոյն ճշմարտութիւնը — ճշմարիտ գիտունը, կըսենք, է ա՛յն միակ մահկանացուն, որ գիտէ թէ ոչ միայն մեր գիտակցութենէն, այլ մարդկային բովանդակ իմացողութենէն ո՛րչափ վեր է այն տիեզերական Զօրութիւնն, որուն ստուերներն են՝ բնութիւնը կեանքն եւ իմացականութիւնը (1)։

Կեզրակացունենք ուրեմն՝ որ մարդու կրթութեան ու կենցաղավարութեան համար՝ գիտութիւնն առաջնական կարեւորութիւն ունի։ Ամէն նկատումով իրերու իմաստը սորվիլը բառերու իմաստը սորվելէն աւելի լաւ է։ Բոլորի երեւոյթներուն ուսումն՝ իբրեւ կրթութիւն իմացական բարոյական ու կրօնական՝ ամբաւապէս բարձր է քերականութենէն ու բառագիտութենէն։

---

(1) Ըստ այսմ՝ բնութեան վրայ տրուած սահմաններուն ամէնէն գեղեցիկն է Կիկերոնի տուածը «Օրէնք բնութեան՝ են միտք (intention) Արարչին»։ Թ.

Որով տալ՝ մեր սկսած այն խնդիրին, թէ ո՛ր ուսում ամէնէն աւելի արժէք ունի, մէկ խօսքով կը պատասխանենք՝ — գիտութիւնը։ Ամէն խնդիրներու վճռական պատասխանն ա՛յս է. ուղղակի անձնապահութեան վերաբերեալ կարեւոր ծանօթութիւնները՝ գիտնական ծանօթութիւններն են։ Եթէ ապրուստ ճարելով կողմնակի անձնապահ ըլլալու վրայ է խնդիրն՝ հոս ալ կարեւոր ծանօթութիւններ՝ դարձեալ գիտնական ծանօթութիւններն են. հայրական գործերու կատարումին համար պէտք եղած ստոյգ առաջնորդը՝ դարձեալ գիտութիւնն է։ Թելամուտ ըլլալու համար անցեալ ու ժամանակակից հանրական կենցաղին՝ ամէնակարեւոր բանալին՝ գիտութիւնն է։ Նոյնպէս նաեւ՝ արհեստական արտադրութեանց եւ ամէն կերպ արուեստական բերկրանքի պատրաստութեան համար՝ անհրաժեշտ բանն է գիտութիւնը. դարձեալ իմացական, բարոյական, կրօնական հրահանգութեան համար ամէնէն փրկարար ուսումը՝ գիտութիւնն է։ Կը տեսնէք թէ խընդիրն, որ առաջ չփոթ կերեւէր, մեր քննութեան մէջէն անցնելով՝ համեմատաբար պարզեցաւ։

Մարդու գործերուն այլ եւ այլ տեսակներուն այլ եւ այլ աստիճաններուն կարեւորութիւնը կշռելու հարկ չենք տեսներ, վասն զի աղէկ գիտենք որ բառին լայնագոյն նշանակութեամբ՝ գիտութեան զբաղիլն ամէնէն լաւ եղանակով պատրաստիլ է մարդկային գործունէութեանց ամէն տեսակներուն։ Մենք չենք օրոշեր զատ զատ՝ ուսանելի նիւթերուն կարգն ու իրաւունքն, ա՛յն նիւթերուն՝ որոնց մարդիկ համաձայնութեամբ մեծ արժէք մը տուած են, թէպէտեւ այդ արժէքն իսկական կամ դոյզն բան մը ըլլայ. որովհետեւ աղէկ դիտած ենք՝ որ ամէնէն կենցաղօգուտ ուսումներն՝ նոյն իսկ իրենց այս հանգամանքովն՝ ամէնէն աւելի իսկական արժէք ունեցողներն

են. եւ այս արժէքը մտացածին չէ բնաւ, այլ՝ մարդու եւ արտաքին աշխարհի մէջ եղած վերաբերութեանց պէս՝ անյեղլի է։ Գիտնական ճշմարտութիւններն, որ կարեւո՛ր ու մշտնջենաւո՛ր են, անհրաժեշտ պէտք են բովանդակ մարդկութեան մինչեւ յաւիտեան։ Ինչպէս այսօր, նոյնպէս յապայս ապագայից՝ մարդկութեան կենցաղին ուղղութեանն համար ամէնէն մեծ կարեւորութիւնը պիտի ունենայ միշտ՝ կեանքի նիւթական իմացական ու կենցաղական գիտութիւնն, եւ միւս ամէն գիտութիւններն՝ իբրեւ բանալիներ կեանքի գիտութեան։



# ԳԼՈՒԽ Ե.

## ԻՄԱՑԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹԻՒՆ

ԱՆՎԻՃԵԼԻ *առընչութիւն կայ՝ իրարու յաջորդող կրթական դրութեանց եւ կենցաղական կացութեանց մէջ ։ Ամէն առենի կանոնադրութիւններն հանրութեան պէտքէն ծնած ըլլալով՝ ենթական ինչ որ ալ ըլլայ՝ իրարու շատ մեծ նմանութիւն մը կունենան ։ Ժամանակով երբ մարդիկ իրենց դաւանութեանն անտնօրինելի ձեւն՝ իր մեկնութիւններովն հանդերձ՝ անսխալելի տուչութենէ մը կառնէին, բնական էր որ մանուկներու կրթութիւնը զուտ վարդապետական ըլլար ։ Երբ Եկեղեցին պատգամն էր՝ թէ* Հաւատացէ՛ք եւ մի՛ քննէք, *հարկաւ դպրոցներու կանոնաքանն ալ այս ըլլալու էր ։ Բայց այսօր՝ մինչ իմաստասիրութեան* (1) *ջանքով՝ զարգա.ցեալ ան-*

(1) Եւ որպէս զի միանգամ ընդ միշտ ճշդած ըլլանք բառը՝ կը յայտարարենք որ իմաստասիրութիւն ըսելով պէտք է իմանալ՝ Առաքինութեան իմաստութեան ու Գիտութեան համաստարաչափ լրութիւնը ։ Թ.

ձերու ազատ քննութեան իրաւունքը տրուած է եւ յաղթանակած է բանին կոչում ընելու սովորութիւնն, ուղղախոհութեան համաձայն է՝ որ երիտասարդներու տրուած կրթութիւնը ցուցադրական ձեւով մը անոնց իմացականութեան ընծայի ։ Վասն զի աշակերտն այժմ աւելի զգօն է քան մինչ ամէն տեսակ արգելքով կապուած էր, եւ զայն ուղղելու համար՝ պատիժներու տեղ ուրիշ միջոցներ կան հիմա ։ Հին դարերուն մարդիկ կը հաւատային՝ թէ զուարճութիւններէ որչափ հեռի կենան այնչափ կը մօտենան առաքինութեան, եւ ուստի ա՛յն դաստիարակութիւնն ամէնէն լաւ կը համարէին, որ աւելի հզօրութեամբ կը խորտակէր սանին ամէն միտումները ։ կտրուկ կերպով կը խափանէին մանկական ամէն գործունէութիւն՝ սա կապարէ խօսքով «Արգիլեա՛լ է այդ» ։ Այսօր՝ ընդհակառակն՝ ազատաբար կրնանք օրինաւոր նպատակ մը համարել երջանկութիւնը ․ այսօր կը ջանանք աշխատութեան ժամերը պակսեցունել եւ ժողովուրդին հաճոյ զբօսանք պատրաստել ․ ուստի ծնողներն ու վարժապետներն սկսած են հասկընալ՝ թէ կարելի է մանկական խղճերուն շատ առանց անպատեհութեան յագեցունել, ու պէտք է խրախուսել անոնց խաղերը ․ կը տեսնեն որ կազմուելու վրայ եղող միտքի մը բնական բերումները կարծուածին չափ սատանայական բաներ չեն ։ Երբեմն կը կարծէին թէ մանուկի մը միտքն ուզուածին պէս կրնայ շինիլ, թէ վարժապե՛տը միայն կրնայ անոր իմացական կարողութիւններ հաղորդել ; եւ լոկ ընդունարան մըն է նա՝ ուր կը լեցունեն ծանօթութիւններ, որով վարժապետն ուզածին պէս շինուած մը կրնայ կառուցանել ։ Բայց մեր օրերն սկսած ենք հասկընալ՝ թէ էակները կարծուածէն աւելի ունին իրենց մէջ իրենց կանոնն ու օրէնքը, թէ ձեռքի աշխատութիւնը, վաճառականու-

թիւնն, երկրագործութիւնը, նաւարկութիւնն աւելի աղէկ կընթանան առանց տնօրէնի քան տնօրէնով. սկսած ենք նաեւ հասկընալ՝ թէ մտային յառաջատուութեան բնական ընթացք մը կայ, որ եթէ խափանենք՝ մեծ վնասներ կը ծագին, թէ չենք կրնար բռնի մեր արուեստակեալ ձեւերուն յարմարցունել նորափթիթ միտք մը, եւ թէ հոգեբանութիւնը մտային հրապարակին մէջ ալ գտած է մատուցումի ու խնդրանքի համեմատական օրէնք մը, որուն պէտք է համակերպինք որպէս զի մի՛ գուցէ չարիքի պատճառ ըլլանք։ Հետեւաբար կրնանք ըսել՝ որ կրթական հին դրութիւնն իրեն ժամանակակից ընկերական դրութեան լծորդ էր՝ իր բացարձակ վարդապետականութեամբն, իր հրահանգներովն ու չափազանց այլամերժութեամբն, իր ճգնաւորական միտումներովը, մարդկային հնարագիտութեան առածներուն վրայ ունեցած վստահութեամբը. մինչ կրթական մեր արդի եղանակներն իրենց բոլորովին ներհակ բնութեամբն՝ համընթաց են մեր կրօնական ու վարչական անկապ կարգերուն։

Բայց ուրիշ համեմատութիւն մըն ալ կայ, որ չյիշեցինք. այն համեմատութիւնն որ կայ այս փոփոխութեանց եղանակին ու անոնց՝ օտար կարծիքի տուած այլ եւ այլ վիճակներուն մէջ։ Դեռ քանի մը դար առաջ՝ աշխարհի մէջ համոզումի միակերպութիւն կար՝ կրօնքի վարչութեան ու դաստիարակութեան վրայ. բովանդակ ծանօթ քրիստոնեայ աշխարհն՝ Հռոմէական կանոնի վրայ կ'երթար, եւ մէկը չէր մտաբերեր բանաքննել այն դպրոցական սովորամոլութիւնն (routine) որով ամէն մարդիկ կը դաստիարակէին։ Բայց նոր իմաստասիրութիւնն ու բողոքականութեան մեծ շարժումն հասան վերջապէս այդ միակերպութիւնն արգասաւոր պէսպիսութեան մը փոխելու, եւ դեռ չարունակ կը ծնանին խել մը աղանդներ։

*Պաքոնի*(1) *փիլիսոփայութիւնը մեծ գործ տեսած է՝ հին դպրոցին ամուլ միօրինակութենէն միտքերն ազատելու կողմէն, եւ յառաջ բերած է փիլիսոփայական բազմաթիւ դրութիւններ. ճի՛շդ նոյն փիլիսոփայական միտումն է՝ որ դաստիարակութեան խնդիրին վրայ ժողովուրդներու մէջ անհամաձայնութիւն ձգելով՝ մէթոտները շատցունելու պատճառ եղաւ ։*

(1) Լորտ Ֆրանսուա Պաքոն Անգղիացի մեծանուն իմաստասէրը՝ ծաղկեցաւ 1561-1626ին, եւ իր հզօր իմացականութեամբն ընկրկեց դասական հին դրութիւնը, որ իրմէն առաջ եւ իր ատենը կը տիրապետէր դպրոցական անունով։ «Լորտ Պաքոն, ինչպէս կըսէ Լորտ Մաքոլէյ իր քննադատական գեղեցիկ մէկ գրուածին մէջ, հազուագիւտ անձերու սեպհական իր իմացական ձիրքովը՝ մարդկային միտքին տուաւ տեւական նոր ընթացք մը»։ Իր գլխաւոր գործն է խորհելու արուեստի *Նոր դրութիւնն* (Novum Organum) իբրեւ ուրացութիւն հին տրամաբանութեան։ Լորտ Պաքոնի ոճին ու կտրուկ փիլիսոփայութեան նմուշ մը տալու համար՝ կը թարգմանենք հոս հետեւեալ իր նշանաւոր մէկ պարբերութիւնը՝ 1597ին գրուած, որ երեք հարիւր տարի ետքն այսօր ալ կը պարունակէ հասու ճշմարտութիւններ։ «Պէտք է կարդալ ո՛չ հակառակաբանելու ո՛չ հաւատալու, այլ կշռադատելու եւ խելամտելու համար։ Կան գիրքեր՝ որոնք միայն ճաշակել պէտք է ընտրութեամբ, կան՝ որոնք լափելու է, եւ կան քիչեր ալ՝ որոնք որոճալու եւ մարսելու է։ Ընթերցանութիւնը՝ ներհուն կընէ մարդը, խօսակցութիւնը պատրաստաբան, գրութիւնը՝ ճշգրիտ։ Եւ սակայն քիչ գրող մը՝ զօրաւոր յիշողութիւն կրնայ ունենալ, սակաւախօս մէկը կրնայ ըլլալ մտացի՝ եւ քիչ կարդացող մը շատ խորագէտ՝ չգիտցածը գիտցածի պէս ցուցընելու համար։ Պատմութիւնն՝ իմաստուն կընէ մարդը, բանաստեղծութիւնը՝ սրատես, չափագիտութիւնը՝ նրբամիտ, բնական փիլիսոփայութիւնը՝ խորիմաց, բարոյագիտութիւնը՝ լուրջ, տրամաբանութիւնն ու հռետորութիւնն՝ հզօր վիճաբան»։ Անգղիացիները փիլիսոփայութեան Մովսէսը կանուանեն Պաքոնը, վասն զի Մեծ Բրիտանիայի հսկայական յառաջդիմութեան սկզբնապատճառն՝ հետեւաբար եւրոպական երկիրներու մէջ անոր ունեցած նախանձելի վիճակին ծնողն՝ եղած է Պաքոնեան փիլիսոփայութիւնը։ Թ.

Այս յառաջդիմութիւնները, որ ներքին միեւնոյն փոփոխութեանց արտաքին հետեւանքն էին, բնականաբար իրարու չափ կամ քիչ մօտ ատեններ տեղի ունեցան. պապական, փիլիսոփայական, վարչական, վարժապետական հեղինակութեան անկումն՝ էապէս միեւնոյն երեւոյթն է, որ առհասարակ կերեւի փոփոխութեան կերպարաններուն եւ տեսական ու գործնական այն նոր ձեւերուն մէջ, որ այս փոփոխութենէն կը ծնին։

Շատերը կը տրտնջեն կրթական դրութեանց այս բազմաձեւութեան վրայ. բայց իմաստասէր հետազօտող մը՝ որ իրերն հաւաքաբար կը նկատէ՝ կը տեսնէ հոն միջոց մը, որով վերջապէս կարելի պիտի ըլլայ ձեռք բերել իմաստուն դրութիւն մը։ Ի՞նչ որ ալ ըսուի կրթական անհամաձայնութեանց համար՝ անտարակուսելի է՝ որ աշխատութեանց բաժանումով կրթական տարբերութիւնները դիւրաւ կը քննին. Եթէ ճիշդ մէթոտը գտած ըլլայինք՝ անկէ ի՞նչ եւ իցէ շեղում մը վնասակար պիտի ըլլար անշուշտ։ Բայց քանի որ ճիշդ մէթոտը տակաւին պիտի գտնենք, խել մը անկախ հետազօտողներու ջանքն՝ որ այլ եւ այլ շաւիղներով տեղի կունենան՝ զայն գտնելու ամէնէն լաւ միջոցն են։ Անոնց իւրաքանչիւրն ունենալով իր ուրոյն կարծիքն, որ հաւանաբար շատ կամ քիչ հիմնուած է իրողութեանց վրայ, իւրաքանչիւրն իր հիմնադիրին պաշտողն եւ անոր ճշդութիւնն ապացուցանելու հնարքով ճոխացած ըլլալով, անոր արդիւնքը ճանչցունելու անխոնջ ճիգով՝ եւ իւրաքանչիւրն անխնայ իրար բանաքննելով՝ ոյժերը կը միանան ու ամէնն ալ անպատճառ կը մօտենան աստիճանաբար ճիշդ մէթոտին[1]։ Անձնիւրն՝

[1] Եթէ սակայն տրուած բանաւէճնութիւններն ու ճիգերը մի միայն այդ նպատակին ժամանելու անկեղծ դիտումով կըլլան՝ անկախ ուրիշ կողմնակի իւրախնդրութեանց։ Թ.

*ինչ որ գտնէ ճիշդ եւ գաղափարական մէթոտին մասն ըլլալու յարմար՝ կը հրատարակէ զայն, փորձի տակ կը դնէ, եւ այսպէս ինքզինքը ճանչցունելով ընդունելի կըլ-լայ։ Եթէ մոլորութեանց մէջ ինկած են՝ նոյն եղանակով պիտի ճանչցուին եւ պիտի մերժին։ Կարգ մը ճշմարտու-թիւններ ընդունուելէն ու խել մը մոլորութիւններ այս-պէս մերժուելէն ետեւ՝ վերջնապէս պատրաստ պիտի ըլլայ ճիշդ ու կատարեալ վարդապետութեանց զանգուած մը։ Յայտնի է՝ որ կարծիքի երեք կարգ երեւոյթներուն մէջ, որ են — տգէտներուն ընդունելութիւնը, քննողներուն տարաձայնութիւնն, իմաստուններուն համաձայնութիւնն —, երկրորդ երեւոյթէն կը ծագի երրորդը։ Ասոնց մէջ՝ ոչ միայն ժամանակի յաջորդութեան կողմէն առընչու-թիւն մը կայ, այլ կայ առընչութիւն մը պատճառէ ար-արդիւնքի։ Գիտնալով հանդերձ՝ որ կրթական դրութեանց մէջ եղած արդի վէճը մեծ անհամբերութեամբ կը դիտուի (եւ ցաւելով կը տեսնենք այդ վէճին լծորդ անպատեհու-թիւններն) հարկ է մեզի խոստովանիլ՝ որ երեւոյթ մըն է այս. ուրկէ պէտք է անցնինք, եւ անկէ պիտի ծնի բարին։*

*Առ այժմ պէտք է օգուտ քաղենք կատարուած յա-ռաջդիմութիւններէն։ Ո՞չ ապաքէն քանի մը քայլ յառաջ գացած ենք դէպի նպատակն՝ յիսուն տարի փորձելէ վի-ճաբանելէ ու բաղդատելէ ետեւ։ Մեր հին մէթոտներէն մէկ քանին 'ի հարկէ խափանեցան, անոնց տեղ նորեր դրուեցան, կարգ մըն ալ կայ՝ որ խափանուելու կամ ըն-դունուելու վրայ է։ Եթէ այս փոփոխութիւններն իրարու հետ բաղդատենք՝ պիտի տեսնենք որ անոնք իրարու նման բաներ են՝ իրարու նման միտումով մը դրոշմած. այս եղա-նակաւ փորձառութիւնն առաջնորդող թել մը պիտի տայ մեզի, եւ պիտի ցուցընէ աւելի նոր կատարելութեանց հաս-նելու շաւիղները։ Աւելի խոր քննութեան մը համար՝*

առաջ ակնարկ մը ձգենք ուրեմն այն գլխաւոր տարբերութեանց վրայ, որ կան արդի եւ նախնի կրթութեան մէջ։

Սովորաբար կը պատահի՝ որ երբ մոլորութիւն մը թօթափենք՝ քիչ մը ատեն հակառակ մոլորութեան մէջ կիյնանք. ինչպէս որ խել մը դարեր մարմինի կրթութիւնը դաստիարակութեան միակ առարկան ըլլալէ ետեւ, խել մը դարեր ալ միայն միտքի կրթութիւնն ամէնուն նպատակն եղաւ, եւ երկու երեք տարեկան մանկիկներու ձեռքը գիրք տուին կարդալու՝ կարծելով որ միակ հարկաւոր բանն իմացական կրթութիւնն էր։ Ինչպէս կը պատահի բնականաբար այսպիսի ծայրայեղութիւններէ ետեւ՝ նոր քայլ մըն ալ առին, վասնզի հակառակ մոլորութիւններն իրար լծորդեցին, եւ յայտնի եղաւ՝ որ անոնք միեւնոյն ճշմարտութեան երկու հակառակ երեսներն էին։ Այս եղանակով հասանք արդ ա՛յն համոզումին՝ թէ պէտք է մարմինն ու միտքն հաւասարապէս մարզել, եւ մարդ արարածն՝ իր ղրուբթեամբը զարգանայ։

Ջերոյներու մէջ կանխափթիթ ծաղիկներ հասցունելու պէս՝ մանուկներուն կանխահաս ու բռնի դաստիարակութիւն մը տալու դրութիւնը խափանուած է. ա՛լ չեն խրախուսեր անոնց իմացականութեան կանխահաս աճումը։ Սկսած ենք տեսնել՝ որ մարդու կենցաղական յաջողութեան գլխաւոր պայմանն է ըլլալ «Լաւ կենդանի մը», ինչպէս կըսէ Էմէրսըն ամերիկացի փիլիսոփան։ Իրեն բնաւ օգուտ չպիտի ունենայ ամէնէն լաւ կազմաւորած ուղեղ մը՝ եթէ չունենայ զայն գործածելու համար կարեւոր կենսական ոյժը։ Այժմ՝ յիմարութեան կարգ անցած է ուղեղի զարգացումը ձեռք բերել՝ կենդանական ոյժին տոյժովը, յիմարութիւն մը՝ որուն պատկերներն են սքանչելի երիտասարդներուն ամէն օրուան գործերը։ Ասկէ կըրնանք հասկընալ կրթական նիւթերու համար ըսուած

այն առածին միտքն, որ կը պատուիրէ «ժամանակին յարգը գիտնալ»։

Բերանացի սորվելու սովորութիւնն երբեմն ընդհանուր էր, եւ հիմա օր օրի իյնալու վրայ է։ Արդի ամէն բանգէտները՝ կը դատապարտեն մեքենաբար այբուբէն սորվեցունելու հին դրութիւնը. հիմա շատ տեղ՝ բազմապատկութեան աղիւսակը փորձառական դրութեամբ կը սորվին։ Լեզուներու ուսուցումին գալով՝ դպրոցական մէթոտներու տեղ անցած են ուրիշ մէթոտներ, որ շատ նման են մանուկներու ինքնաբերաբար մայրենի լեզուն սորվելու եղանակին։ Գոց ընել տալով մանուկներուն բան սորվեցունելու դրութիւնն եւ անոր ժամանակակից՝ ուրիշ ամէն՝ դրութիւններ՝ կանոնուած ու նշանակուած իրերէն աւելի կարեւորութիւն կուտային կանոններուն եւ նշանակներուն։ Բառերը ճշգաբար կրկնելը բա՛ւ էր, եւ անոնք հասկընալն անօգուտ կը համարէին, որով իմաստը գիրի՛ն զոհ կերթար։ Հասկըցուած է վերջապէս թէ այս եւ ուրիշ ամէն պարագայի մէջ՝ այսպիսի ձախորդ հետեւանք՝ պատահմունք չեն, այլ ընդունուած դրութեան ճիշդ հետեւութիւնն են. հասկըցուած է վերջապէս՝ թէ ո՛րչափ աւելի կարեւորութիւն տանք նշանին՝ նշանակուածին ա՛յնչափ անուշադիր կըլլանք, կամ երբեմն Մոնթէնեի ըսածին պէս «բերանացի գիտնալը՝ գիտնալ չէ»։

Մանուկներուն բերանացի սորվեցունելու դրութիւնը թողուցինք, միանգամայն ձգելու վրայ ենք կանոններով սորվեցունելու սովորութիւնն ալ, որ անոր համընթաց է։ Նոր մէթոտն է՝ մասնաւորէն սկսելով հանրացումի գալ. այս մէթոտին առաւելութիւնն՝ ինչպէս Պաթըլսի դպրոցներուն տեղեկագիրը գրել կուտայ՝ «Փորձով ապացուցուած է, թէպէտեւ բոլորովին հակառակն է՝ առաջ կա-

նոններով աշակերտներուն դաս տալու սովորութեան»։ Կանոններով դասախօսելու դրութիւնն այժմ դատապարտուած է՝ իբրեւ միայն գործնական ծանօթութեան մը տանող, եւ որ գիտութեան կերպարանքն եւեթ ունի։ Հետազօտութեան զուտ արգասիքը միտքին առջեւ դնելն՝ առանց անցունելու միտքն այդ հետազօտութեան մէջէն՝ ջլատիչ ու անզօր մէթոտ մը համարուած է։ Հանրական ճշմարտութիւններն իրապէս ու մշտընջենապէս գործածելու համար՝ պէտք է նախ տիրապէս ստանալ անոնք։ Դիւրաւ վաստըկուածը դիւրաւ կը վատնի առածն՝ ե՛ւ գիտութեան ե՛ւ հարստութեանց համար կրնայ առնուիլ։ Կանոններն անպատճառ միտքէ կելնեն՝ անոր համար որ միտքին մէջ մեկուսի կը մնան, ագուցած չեն միտքին միւս պաշարներուն հետ, ոչ ալ անոնց հետ տրամաբանական կապ մը ունին. իսկ այն տարրերն՝ որոնց համաթիւ արտայայտութիւններն են այդ կանոններն՝ յիշողութեան անկապտելի ստացուածքը կըլլան, երբ յիշողութիւնն անգամ մը տիրապէս ստացած է անոնք։ Կանոններով ուսում առած երիտասարդն՝ երբ մոռնայ կանոններն՝ ի՛նչ ընելը չգիտնար. բայց տարրերն ունեցողը՝ գիտցած ու չգիտցած՝ պատահումներն հաւասար դիւրութեամբ կը վերլուծէ։ Միայն կանոնները գիտցող միտքի մը եւ տարրերն ալ գիտցող միտքի մը մէջ այնպիսի տարբերութիւն կայ, որպիսի տարբերութիւն կայ խառնափնթոր նիւթերու շեղջի մը եւ յարդարեալ նիւթերու անթերի շարքի մը մէջ, որուն ամէն մասերն իրարու ագուցած են. շարքն՝ ոչ միայն այն առաւելութիւնն ունի՝ որ իր բաղկացուցիչ մասերն աղէկ կցորդած են, այլ այն մեծագոյն առաւելութիւնն ալ՝ որ միջոց մը կըլլայ հետազօտութեանց ազատ փորձերգածութեանց ու գտումներու. շեղջը չկրնար ընել ասոնք։ Զկարծուի թէ լոկ օրինակ մըն է այս, այլ այն-

*պիսի օրինակ մը որ բառ առ բառ ճշմարտութիւնը կը պատկերէ։ Հանրացուած նիւթերուն չափանը դրապէս գիտնութեան կազմաւորութիւնն է՝ թէ՛ իրապէս թէ՛ իմացութեամբ, եւ միտքի մը կորովն այս կազմաւորութիւնն իրացունելուն չափովը կը ճանչցուի։*

*Զուլուած կանոններու տեղ տարրեր դնելէ, եւ միտքին թանձրացեալ նիւթերու մինչեւ վարժիլը վերացումները խափանելէ ետեւ (որ առաջինին հետեւանքն է) բնականաբար յետակարգ եղան այն դասերն, որ երբեմն առաջնակարգ էին։ Այս կերպով ձգեցինք՝ մանուկներու քերականութիւն դաս տալու այլանդակ սովորութիւնը։ Ինչպէս կըսէ Պ. Մարսէլ՝ «Առանց տարակուսելու պէտք է գիտնալ՝ որ քերականութիւնը նախնական դաս մը չէ, այլ վերջնական կատարելագործութեան միջոց մը»․ եւ Գ. Ուիս (1) այս նիւթին վրայ սա դատաստանը կընէ՝ «Քերականութիւնն ու համաձայնութիւնն օրէնքի եւ կանոններու ժողովածոյ մըն են, եւ լեզուի գործնական կազմութենէն կը ծնին կանոններն, որ արդիւնք են բաղդատութեան ու վերլուծական երկար դիտողութեանց. մէկ խօսքով՝ քերականութիւնը լեզուի մը գիտութիւնն ու փիլիսոփայութիւնն է։ Եթէ բնութեան ընթացքը դիտենք՝ կը տեսնենք որ նա երբէք անհատներն ու ազգերը գիտութեան չտանիր նախ։ Մարդիկ՝ երկար ատեն լեզու մը խօսելէ անով բանաստեղծութիւններ ընելէ ետեւ՝ խելք ըրած են քերականութիւն յօրինել ու առոգանութեան կանոններ շինել։ Միթէ՛ մարդիկ՝ տրամախոհելու*

---

(1) Գ. Թովմաս Ուիս անդամ Անգղիական խորհրդարանին, իր հայրենիքին մէջ հռչակեցաւ Դաստիարակութեան վրայ գրած երկերովը։ 1837ին հրատարակեց՝ *Դաստիարակութիւնը բարեկարգելու* վրայ գրուած մը։

*համար՝ պատճէ՞ն որ Արիստոտէլ*(1) *զայս եւ կառուցանէ իր տրամաբանութեան չէնքը»։ Ուրեմն կեզրակացունենք թէ՝ ինչպէս որ քերականութիւնը լեզուէն ետքն յօրինեցաւ, նոյնպէս ալ պէտք է լեզուէն ետքը քերականու-*

---

(1) Քաղդէացի եւ Եգիպտացի նախնի գիտուններէն ետեւ՝ Յունաստան եղաւ որ երկու երեք հարիւր տարիի մէջ բուն գիտութեան հիմը դրաւ, եւ ամբաւապէս յառաջացուց զայն սկզբնական զննութիւններով, որ արժանապէս պսակեցան Արիստոտէլի վերջնական զննութիւններով։ Թաղէսէն ու Անաքսագորասէն ետքն առաջին ամենահմուտն՝ Արիստոտէլ Ստագիրա քաղաքը ծնաւ. իր հայրն էր՝ Նիկոմաքոս բժիշկը։ Երիտասարդութեանն ատեն այնչափ ուսումնասէր էր՝ որ գիշերային աշխատութեանց միջոցին անկողինին քով պղինձէ կոնք մը կը դնէր, որուն վրայ կարկառած կարծանացունէր իր ձեռքն՝ երկաթի գունդ մը բռնած, որպէս զի քունը տանելուն պէս՝ գունդը կոնքին վրայ իյնալով՝ քունէն զարթեցունէ զինքը։ Այսպիսի անօրինակ աշխատասիրութեամբ ու երկու մեծ անձնաւորութեանց ձեռնտուութեամբ՝ Պղատոնի այս մեծ աշակերտը՝ կըրցաւ իւրացունել ժամանակակից բովանդակ գիտութիւններն ամէն ճիւղերով՝ անոնց վրայ նորագիւտ զննութիւններ աւելցունել ու մասնագրել գրեթէ ամէն նիւթի վրայ՝ քաղաքականութեան, բնախօսութեան, հոգեբանութեան բարոյականի, բանաստեղծութեան, կենդանաբանութեան, բնագիտութեան, մետէորաբանութեան ու տրամաբանութեան, որուն հայրը կը համարի։ Փիլիպպոս մակեդոնացին՝ երբ զաւակ մը ծնաւ իրեն (մեծն Աղէքսանդր) այսպէս կը գրէր Արիստոտէլի. «գիտցի՛ր որ զաւակ մը ծնաւ ինձ, եւ ես փառք կուտամ Աստուծոյ՝ մանաւանդ անոր համար որ քու օրիդ տուաւ ինձ այդ զաւակը»։ Արիստոտէլ երկար ատեն վարժապետն եղաւ Աղեքսանդրի։ Կըսուի՝ թէ իմաստասէրն Եւրիպոս կիրճին տարօրինակ յորձանքին պատճառն երկար ատեն փնտռելով չհասկընալուն համար՝ տրտմութենէն ինքզինքն յորձանքին մէջ նետեց, ըսելով. Որովհետեւ Արիստոտէլ Եւրիպոսը չհասկըցաւ, թո՛ղ Եւրիպոսն հասկընայ Արիստոտէլը։ Ուրիշներն կըսեն՝ թէ խիթէ մեռաւ վաթսուն երեք տարեկան։ Իր գրուածներն՝ մանաւանդ տրամաբանութիւնը՝ քրիստոնէական իմաստասիրութեան մը հետ ձուլուելով՝ մինչեւ միջին դարէն ասդին բոլոր ծանօթ աշխարհի իմացականութեան տիրապետեցին, երբ տասն եւ վեցերորդ դարուն Բաքոն եկաւ (ինչպէս կըսեն Եւրոպացիներն մանաւանդ Անգղիացիներն) նոր ընթացք մը տալ իմաստասիրելու եղանակին։ Երկու հազար

*թիւն դաս տալ։ Անոնք, որ անհատական յառաջատու-թեան ու տեսակի յառաջատուութեան մէջ եղած տարբերու-թիւնը գիտեն, պէտք է խոստովանին թէ մեր այս եզ-րակացութիւնը շատ ճի՛շդ է։*

---

տարիի չափ՝ մարդկութիւնն աշակերտեցաւ Արիստոտէլի դպրոցին. «Նոր բնախոյզները՝ Պաքոնի թելադրութեամբն ու նորասէր շողոքորթութեամբ՝ որչափ ալ հպարտանան, պէտք է սակայն խոստովանին միշտ թէ հիները՝ որոնց գլուխն է Արիստոտէլ՝ կրցած են լաւ խելամուտ ըլլալ բնութեան, եւ մեզի չափ հմտանալ, չըսենք մենէ աւելի։ Անոնք մենէ առաջ մտան այն շաւիղին մէջ, որ միակ ապահով շաւիղն է. մենք միայն իրենցմէ աւելի յառաջ անցանք, անոնց օրինակին հետեւելով ու անոնց ձգածը ժառանգելով. բայց այդ շաւիղը մենք չգտանք՝ անո՛նք գտան». այսպէս կը գրէ Արիստոտէլի նոր թարգմանիչը՝ Պարթէլըմի Սէն-Դ-Հիլէր. (Յառաջբն. Արիստոտէլի Մետէորաբանութեան 1863)։

Արիստոտէլի գործերուն մէկ մասը թարգմանուած է՝ Դաւիթ Անյաղթի ձեռքով՝ հելլենախառն հայերէնի մը։ Քիչ մը քննադատական ոճով *Աշխարհի կազմութեան* վրայ իր մէկ ամփոփ մասնիկն, որ անվաւեր կը կարծի, նոր թարգմանութիւն մըն ալ ունի՝ դեռ անտիպ։

Պատմութեան յիշատակած ամէնահմուտներուն գլուխն համարուած է Արիստոտէլ, որուն հետ հոս յիշել կուգայ մեզի՝ հիներէն. — Թաղէս, Պիւթագոր, Անաքսագորաս, Պղատոն, Թէոփրաստ, Լոզման, Իպոկրատ բժշկահայրը, Գաղիանոս անդամագէտը, Վարրոն հռոմայեցի բանգէտը. Հերոդոտ, Դիոդոր սիկիլիացի, Պողիբիոս ու Պլուտարքոս պատմագիր-ները. Կիկերոն ներհուն ճարտարախօսը. Տերտուղիանոս, Որոգինէս, Օգոստինոս աստուածաբանները. Պորփիւր, Կելսոս, Լուկանոս հանճա-րեղ քննաբաններն. եւ նորերէն՝ Կալիլէոս, Քէպլէր, Հերշէլ աստղագէտ-ները. Պաքոն, Լոք, Քանդ, Տէքարդ փիլիսոփաները. Թոմաս ագուի-նացի ու Պոնալ աստուածաբանները. Բասկալ Պէզ սուր գիտունը. Մեծն Նեւտոն. Լորտ Պոլինպրոք, Մոնդէսքիէօ, եւ Էտմոնտ Պըրք իմաս-տասէր քաղաքագէտները. Տալանպէր. Վոլդէր մեծ բանգէտը. Կէօթէ գի-տուն բանաստեղծը. Լամարք՝ Տարուինի յառաջընթացը. բազմահմուտ Թ. Քարլայլ. Օկիւստ Քոնդ եւ Վիկտոր Քուզէն քննադատագէտները. Հ. Թէն, Հըքսլի, գիրքիս հեղինակն՝ Հերպէրդ Սբէնսըր եւ ուրիշ շատեր, որ փիլիսոփայական հրապարակին հսկայ կոթողները կրնան յորջորջիլ իրաւամբ։

Հին սովորութեանց անկիւնին տակէն կազմուած նոր սովորութեանց մէջ՝ նշանակութեան ամէնէն արժանին է՝ մանուկին խելամտութեան (observation) կարողութիւնն համադրապէս աճեցունելու սովորութիւնը։ Դարաւոր կուրութենէ ետեւ, կը տեսնենք վերջապէս որ մանուկին խելամտելու կարողութեանց ինքնեկ (spontané) գործունէութիւնը՝ մեծ նշանակութիւն ունի եւ օգտակար է։ Ինչ որ առջի ատենները՝ մանուկին վրայ անպատակ գործունէութիւն մը, խաղ մը, չարութիւն մը կը թուէր՝ ըստ պարագային՝ հիմա հասկցուած եւ ընդունուած է թէ ընթացք մըն է այն, որով մարդու միտքն իր ապագայ բովանդակ գիտութեան հիմնական ծանօթութիւնները կը-տանայ։ Ասկէ ծագում առաւ իրախօսութեան դրութիւնն, որ թէպէտ լաւ մտածուած է, բայց յոռի կերպով կը մատակարարի։ Բաքոնեան առածը՝ թէ բնագիտութիւնը (1) գիտութեանց մայրն է՝ վերջապէս ընդունուեցաւ դաստիարակութեան մէջ։ Եթէ գիտցած չըլլանք իրերու երեւելի եւ շօշափելի յատկութիւնները՝ մեր ըմբռնումները

---

Տեղն է հարցունել՝ թէ այդ պատկառելի անուններուն դիմաց՝ մեր յետնեալ իմաստասիրութիւնն ինչ ունի հանել։ Հիներէն հազիւ Խորենացի մը, Դաւիթ Անյաղթ մը ու Անանիա Շիրակացին, եւ նորերէն՝ Նալեան Յակոբ պատրիարքն, Հ. Արսէն Բագրատունին, Հ. Ալիշանը, Ստ. Նազարեանցն, եւ թերեւս Յ. Տէրոյենցն ու Ա. Մ. Գարագաշեանը կը համարձակինք յիշել, որ աւելի՝ հետեւող աստուածաբանն ու թարգմանիչ կրնան ըսուիլ քան սկզբնատիպ միտք։

Այս դիտողութիւնն երկար ու անդէպ չպիտի համարին անոնք, որ դիտած են մեր մէջ ներհուն՝ եւ գիտութեան սիրուն համար միայն գիտութեան ինքնանուէրներու սպառսպուռ բացակայութիւնը, մինչ թեթեւ գրականութիւնն ու բանաստեղծութիւնն ամէն տեղ ու ամէն կերպարանքի տակ յախուռն կասպատակեն։ Թ.

(1) *Բնագիտութիւն* բառն հոս իր ամէնէն ընդարձակ նշանակութեամբն առնելու է, այսինքն՝ իբր գիտութիւն հանուր բնութեան։

սխալ, մեր հետեւութիւնները մոլար, մեր միտքի գործողութիւններն անարդիւն կըլլան. «Երբ զգայարանքի կրթութիւնն անխնամենք, միւս ամէն կրթութիւններն անբուժելի կերպով կը կրեն անոնց յուլութեան թմրութեան անկարողութեան ազդեցութիւնը։ Ստոյգ է՝ որ երբ աղէկ մտածենք՝ կը տեսնենք թէ ամէն բանի յառաջդիմութիւնը խելամտութեան հզօրութենէն կախուած է։ Անո՛ր պէտք ունին՝ ոչ միայն արուեստագէտը, բնախօսը, գիտնականը. ոչ միայն բժիշկն, որ անով վստահ կըլլայ իր ախտագիտութեան վրայ. ոչ միայն երկրաչափին, որուն անհրաժեշտ պէտք է այդ հզօրութիւնն, եւ զայն ձեռք բերելու համար՝ պարտի տարիներով աշակերտիլ կառուցարաններու մէջ. այլ նաեւ փիլիսոփան, որ ամէնէն աւելի պէտք ունի անոր, վասնզի փիլիսոփան՝ հիմնապէս իրերու առընչութեանը խնդամնտող մարդն է, եւ կը նշմարէ առընչութիւններ հո՛ն՝ ուր միւս մարդիկ ամենեւին չէին տեսած. Նոյնպէս ալ բանաստեղծը, վասնզի բանաստեղծը տեսանողն[1] է բնութեան իսկական գեղեցկութեանց, զոր ամէնս ալ կըմբռնենք երբ անգամ մը բանաստեղծօրէն ցուցընեն մեզի, ապա թէ ոչ ինքնին չենք կրնար նշմարել։ Կենսախայտ ու ճշգրիտ տպաւորութիւններ առնելու էական կարեւորութենէն աւելի՝ դիտել տալու արժանի բան չիկա՛յ. փտած տաղձներով անսասան իմաստութեան շինուած մը կառուցանել՝ բոլորովին անկարելի է։

Ճշմարտութիւնը վերացական ձեւի տակ ցուցընելու հին դրութիւնն երբ խափանեցաւ, ճշմարտութիւնը թանձրացեալ ձեւի ներքեւ ներկայացունելու նոր դրութիւնն

---

(1) Հին լեզուներու եւ գրաբարի մէջ ալ՝ *Տեսանող*՝ բանաստեղծ ու մարգարէ կը նշանակէ, որ նախնի ժամանակի մեծ բանաստեղծներն էին. *Ա. Թգր. Թ. Գ*. *Նաւեկ. Բ. Շարկն*. Թ.

*ընդունուեցաւ։ Չափական գիտութեանց տարրերն՝ այժմ ուղղակի զգայատեսութեամբ* (intuition directe) *կը սորվին, ինչպէս կը սորվին ճանչնալ կիտուածն համերն ու գոյները։ Թուաբանական առաջին դասերուն մէջ գնտաղիւսակի* (boulier) *կիրառութիւնն՝ այս նոր դրութեան օրինակմըն է։ Նոյն կարգէն է նաեւ տասնորդական դրամանատութեան մէթոտը, զոր առաջարկեց Տը Մորկան* (1)*։ Պ. Մարսէլ խելացութիւն ըրաւ՝ խափանելով ցանկի դրութիւնն, եւ իր դասերը կուտար կշիռներու եւ չափերու վրայ՝ աշակերտներուն ցոյց տալով կանգուններ, տոնաչափներ, լիպրաներ, ունցաներ, կալոններ ու կուժիկներ, եւ աշակերտներուն փորձով գտնել կուտար անոնց առընչութիւնները. Նոյնպէս ալ երկրաչափական եւ աշխարհագրական դասերու մէջ՝ ցցուածներու եւ չօչափելի ձեւերու կիրառութիւնն ընդունուեցաւ։ Ուզողը կրնայ տեսնել թէ այս ամէն մէթոտներուն ոգին է՝ առաջնորդել սանին միտքին մարդկային միտքին հետեւած շաւիղով. Թիւերու, ձեւերու, կեցուածքի առընչութեանց վերաբերեալ ճշմարտութիւններն ամէնն ալ՝ չօչափելի առարկաներէ առնուած են. եւ երբ մանուկին ներկայացունենք անոնք թանձրացեալ կերպով՝ սորվեցուցած կըլլանք անոնց հասկընալի կերպով։ Թերեւս քիչ ատենէն ամէնն ալ հասկընան՝ թէ անհնար է ուրիշ եղանակով սորվիլ անոնք. վասն զի եթէ վերացեալ ճշմարտութեանց ձեւին տակ կրկնել տանք անոնք, այս վերացումներն ա՛յն ատեն*

---

(1) Տը Մորկան, Լոնտրայի համալսարանին մէջ ռաբուն եւ չափագիտական կարեւոր երկերու հեղինակ, տասնորդական դրութեան ջերմ պաշտպան է, եւ Անգղիայի դրամական դրութեան մէջ՝ տասնորդական եղանակի կիրառութիւնն առաջարկողներուն գլխաւորներէն եղած է.

*միայն իմաստ մը կուտան մանուկին՝ երբ արդէն հասկըցած է ինք թէ անոնք պարզապէս կրկնութիւնն են զգայատեսութեամբ իր ըմբռնած իրերուն։*

*Մեր օրերն եղած փոփոխութեանց ամէնէն նշանաւորն է սակայն՝ ՝ուսումն աւելի հաճելի քան տաժանելի բան մը ընելու ջանքն, եւ այս ջանքն՝ օր օրի աւելնալու վրայ ալ է. այս ջանք յառաջ եկած է քիչ շատ բացայայտ այն ճշմարտութենէն՝ թէ մտքի գործունէութեան ճիշդ այն տեսակը փրկարար է, որ իւրաքանչիւր հասակի հաճոյ է ու փոխադարձաբար։ Օր օրի զօրանալու վրայ է այն կարծիքը՝ թէ ուսանող մը այն ատեն կըսկսի փրկաւէտ հետաքրքրութիւն մը ունենալ, երբ ուսանելի առարկան իւրացունելու պատրաստ վիճակին մէջ է, եւ այդ առարկան ըստ ինքեան հարկաւոր եղած է անոր զարգացումին. ասոր հակառակ՝ երբ այս ինչ ուսումէն ախորժ չիմանար նա՝ պէտք է գիտնալ որ այն ուսումը ժամանակէն առաջ ու անմարսելի ձեւով մը անոր տուած են (1)։ Ուստի՝ ամէնը կը ջանան տղայութեան առաջին տարիներուն զբօսեցուցիչ ընել ուսումն՝ հետզհետէ տալով անոր շահեկան կերպարան մը. եւ դաստիարակութեան*

---

(1) Եւ ինչ ընելու է ուրեմն՝ երբ հարկ ըլլայ (ինչպէս շատ տեղ ալ հարկ կըլլայ) տասն տասներկու տարեկան մանուկի մը օտար լեզու սորվեցունել կամ տոմարակալութիւն դաս տալ կամ առեւտրական գործերու դնել զայն։ Զարմանալի է եւ առաջին անգամ չէ՝ զի կը տեսնենք իմաստասէրներ, որ կը կարծեն թէ իրենց այնպէս կընթանան միշտ ինչպէս գաղափարներն իրենց միտքին մէջ. այսպիսիներու մանրապատկերները մեր մէջ ալ կան։ Իրենց հարկաւոր գնացքէն մանուկները զերծ պահելու անբնական ճիգը չէ՞ մի որ հեղինակին քիչ մը վերն բաժին հակառակ կելնէ, ու նորահաս սերունդին բաժինին ինկած հարկի այդ աննահանջ մասն ալ տարապարտ կը բեռցունէ, արդէն տառապեալ չափահաս մարդկութեան վրայ։ Թ.

մէջ՝ գրօսանքի, դայեակներու երգերուն, առասպելներուն կարեւորութեան վրայ խորհուրդներ կընեն։ Օր օրի կը ջանան մանուկներու ճաշակին աւելի համաձայնեցունել դաստիարակութեան հիմնագիրները՝ միտ դնելով թէ ո՛ր դասէն կախորժի նա, ո՛ր դասէն համ կիմանայ։ «Գէտ-պիտութեան համար անոր ունեցած բնական ախորժակը պէտք է գոհացունել, կըսէ Պ. Մարսէլ, եւ անոր հետաքրքրութիւնը կանոն բռնել անոր զարգացումին։ Դասախօսութիւնները պէտք է վերջացունել՝ մանուկներուն յոգնութեան նշան մը ցուցընելէն առաջ»։ Այսպէս վարուելու է աւարտական դասախօսութեանց մէջ ալ։ Նորագոյն փոփոխութիւններ կըլլան այժմ, եւ ասոնց նշաններն են՝ դասերու մէջ հանգիստները, բաց օդի մէջ ճեմերը, զբօսեցուցիչ ընթերցանութիւններն եւ միաբան երգերը։ Ծգնութիւնը կը վերնայ կրթութեան մէջէն, եւ վարչական օրինագրութեան մը արժէքն հասկընալու փորձաքարն՝ — որ է մեր երջանկութիւնը — սկսած ենք գործածել դպրոցի ու մանկասածութեան (nursery) կանոններուն մէջ ալ։

Եւ արդ, կը հարցունենք թէ այս փոփոխութեանց ոգին առհասարակ ի՛նչ է. — ո՞չ ապաքէն օր օրի բնութեան ընթացքին համակերպելու միտումն է։ Ասոր ապացոյց են՝ խոնջեցուցիչ հակաբնական կրթութեանց խափանումն, եւ սանին առաջին տարիները մարմինի ու զգայարանքի զարգացումին ծառայեցունելու ջանքը. բերանացի սորվուած դասերուն տեղ՝ ճառական ու փորձառական դասեր դնելը, զոր կառնեն մանուկներն, օրինակի համար, դաշտերու եւ պարտէզներու մէջ զբօսանքի ատեն. կանոններով դասախօսութեան տեղ՝ տարրերով դասախօսութիւնն, որ հանրական օրէնքն այն ատեն միայն կաւանդէ՝ երբ աշակերտն անոնց հիմն եղող իրերն ուսումնասիրած է։ Իրախօսական դրութեամբ տրուած դասերն,

եւ գիտութեան սկզբունքին թանձրացեալ քան վերացեալ կերպով դասախօսութիւններն ալ՝ ասոր ապացոյց են։ Այս միտումը կերեւի մանաւանդ՝ ամէն դասերու համար ուսումն հաճելի եւ յանկուցիչ ձեւով ներկայացունելու դրութեան մէջ։ Որովհետեւ՝ բնութեան օրէնքովն է որ կենցաղի հարկաւոր գործերու մէջ բռնած բերկրանքնիս անոնք կատարելու դրդիչ մը կըլլայ, որովհետեւ՝ ինքնակրթութեան ատեն՝ բուսաէ գաւազան մը խածնելէն կամ խաղալիկները կոտրտելէն մանուկին զգացած հաճոյքն՝ առիթ կըլլայ նիւթին յատկութիւններն հասկընալու, ուրեմն՝ երբ աշակերտին ախորժած կարգովն ու ճաշակով ընտրենք ուսանելի իրերը՝ բնութեան հաւատարիմ եղած կըլլանք, ու մեր կանոնները կեանքի օրէնքին հետ ներդաշնակ կըլլան։ Ահա այսպէս՝ կուգանք համակերպիլ այնչափ ատենէ 'ի վեր Բեստալոցցիի հրատարակած վարդապետութեան — թէ պէտք է դաստիարակութիւնն համընթաց ըլլայ՝ կարգի ու մեթոտի կողմէն՝ միտքին բնական յառաջատութեան — թէ կարողութեանց ինքնաբեր զարգացումին ատեն՝ յառաջատութեան որոշ կարգ մը կայ, եւ այդ յառաջատութեան ատեն՝ հա՛րկ է տալ իւրաքանչիւր կարողութեանց դաս մը յատուկ ծանօթութիւններ — եւ թէ մեր գործն է գտնել այս կարգն ու ամէն մէկ կարողութեանց սեպհական սնունդը ջամբել։ Վերն յիշուած բոլոր բարեփոխութիւններն՝ այս հանրական սկզբունքին մասնաւոր կիրառութիւններն են։ Այս ճշմարտութեան վրայ աղօտ գաղափար մը սկսած է հանրանալ դաստիարակներուն մէջ, եւ օր օրի ոյժ կառնէ կրթական մատեաններու մէջ ալ. «Բնութեան մեթոտը՝ մեթոտներուն ամէնէն բարձր տիպարն է» կըսէ Գ. Մարսէլ։ «Դաստիարակութեան հոգին ու շունչն է, կըսէ Գ. Ուիս, սորվեցունել աշակերտին՝ ինքզինքը կրթել այնպէս ինչպէս որ

պէտք է»։ Գիտութեան միջոցով քանի՛ ընտելանանք իրերու կազմութեան՝ այնչափ պայծառ կը տեսնենք որ անոնք իրենց իսկ մէջ ունին իրենց գոյութեան պատճառն ու շարժումներուն օրէնքը։ Որչա՛փ յառաջ երթանք գիտութեանց մէջ՝ այնչափ յօժարութեամբ ետ կը կենանք Գնութեան գործերուն խառնուելէ։ Ինչպէս բժշկականութեան մէջ՝ հին ատենի վայրագ դարմաններուն տեղ ( traitement héroique ) մեղմագոյն դարմաններ անցած են, եւ կանոնաւոր կենցաղի մը սովորելով՝ յաճախ պէտք ալ չենք ունենար կարգ մը բժշկական դարմաններու. ինչպէս որ ստնդիաց սաներու մարմինը՝ Պապուներու եւ ուրիշ բարբարոսներու պէս՝ խանձարուրներու մէջ կաղապարելն անօգուտ ըլլալն հասկըցուած է. եւ ինչպէս որ ընդունուած է՝ թէ կալանաւոր ապիրատ մը կարգի բերելու ամէնէն լաւ ու բնական ճամբան՝ անոր հանապազօրդ հացն իր իսկ աշխատութեամբ ճարել տալն է, նոյնպէս ալ դաստիարակութեան վերաբերեալ բաներուն մէջ՝ կը տեսնենք որ՝ ա՛յն ատեն միայն կրնանք յաջողիլ, երբ մեր մէթոտներն համակերպ ընենք՝ կատարելութեան հասնելու համար ամէն արարածի անցած մտային ինքնայօժար զարգացումին։

Ըսել է՝ որ երբէք բոլորովին մոռցուած չէ կրթութեան հիմնական այն սկզբունքը՝ թէ ուսումներուն եւ անոնց մէթոտին դասաւորութիւնը՝ պէտք է համեմատ ըլլան կարողութեանց յառաջատութեան կարգին ու անոնց գործելու եղանակին. եւ այս սկզբունքն՝ երբ անգամ մը հաստատի՝ ինքնին բացայայտ կըլլայ։ Դաստիարակներն իրենց դպրոցական ընթացքին մէջ՝ 'ի հարկէ մտադիր կըլլան անոր մինչեւ աստիճան մը, աղէկ համոզուած ըլլալով թէ այս պայմանո՛վ միայն կարելի է դաստիարակել։ Առանց նախ սորվեցուցած ըլլալու յաւելում՝ երեքի—կանոն

դաս չտրուիր, առանց սորվեցուցած ըլլալու լոկ գրել՝ չարագրութիւն ընել չեն տար. առաջ տարրական երկրաչափութիւն՝ ե՛տքն Եւկղիդեան Հատուածաբանութիւն: Հին մեթոտներու սխալն ա՛յն է՝ թէ ինչ որ իբր հանրական կանոն 'ի հարկէ կընդունին՝ մանրամասնութեանցը մէջ չեն ընդունած, թէպէտեւ հանրական սկզբունքն ամէնուն ալ կը պատշաճին: Քանի որ տարիներ պէտք է անցնին՝ մանուկին իրերու դիրքն առընչութիւնն հասկընալու վայրկեանէն մինչեւ այն վայրկեանն՝ երբ նա կարող կըլլայ ըմբռնել թէ երկիրը գունտ մըն է ցամաքներէ ու ծովերէ տարրացած, լեռներով, անտառներով, գետերով ու քաղաքներով ծածկած, եւ կը հոլովի առանցքին վրայ ու կը դառնայ արեգակին չուրջը. քանի որ աստիճանաբար կանցնի նա դիտողութենէ մը ուրիշ դիտողութեան. քանի որ հետզհետէ առած դիտողութիւններն՝ իրարմէ աւելի լայն ու բազմազան կըլլան, բացայայտ չերեւի՞ր թէ յաջորդութեան հանրական կարգ մը կայ, որմէ պէտք է անցնի նա, թէ ամէն լայնագոյն տեղեկութիւն՝ կը բաղկանայ առաջական մանր տեղեկութիւններէ. բացայայտ չերեւի՞ր նաեւ՝ որ այս բաղադրեալ տեղեկութիւններն՝ առանց նախ անոնց տարրերը սորվեցունելու՝ մանուկին աւանդելը գրեթէ ա՛յնչափ արտառոց է, որչափ արտառոց է դասակարգին տարրական ծանօթութենէն առաջ՝ դաս տալ իրեն աւարտական ծանօթութիւն մը: Բան մը տիրապէս սորվելու համար՝ պէտք է հետզհետէ անցնիլ իրարմէ աւելի բաղադրեալ գաղափարներու մէջէն. գաղափարներու լծորդ կարողութիւններն՝ անոնք իւրացունելու չափովը կը յառաջանեն, եւ եթէ գաղափարներն իրենց բնական կարգովը չաւանդուին՝ այս յառաջատութիւնն անհնար կըլլայ գործնականապէս: Եթէ դաստիարակն այդ կարգին միտ չդնէ՝ այդ գաղափարները դըժ-

կամութեամբ ու տաղտուկով կընդունի աշակերտն, որ եթէ պակաս միացածներն ինքնին լեցունելու չափ խելացի չըլլայ, գաղափարներն անոր միտքին մէջ անհոգի իրերու պէս՝ կը մնան անպիտան ու անգործածելի։

Բայց վերջապէս, պիտի ըսեն, ինչո՞ւ այդչափ ծանր աշխատութեամբ դաստիարակութեան դրութիւն մը փնտռենք։ Եթէ ստոյգ է՝ որ միտքը մարմինին պէս սկիզբէն ձեւած յառաջատուութեան ընթացք մը ունի եւ ինքնաբերաբար կը զարգանայ. եթէ այս ինչ կամ այն ինչ գիտութեանց համար իր ախորժակն՝ այդ գիտութեանց պէտք ունեցած ատեն կարթուննայ, եթէ մանուկն ինք իր մէջ ունի գործունէութեան բնագրգիռ մը (stimulent) որ ճիշդ ատենին պիտի խթէ զայն իրեն պատշաճ գործունէութեան, պէտք չէ որ դաստիարակն ոչ մէկ կերպով միջամուխ ըլլայ անոր շարժումներուն։ Եւ ինչո՞ւ համար բոլորովին բնութեան հրահանգներուն չթողունք տղան. ինչո՞ւ համար բոլորովին կրաւորաբար առաջ չերթան, եւ բնապէս իրենց կըրցածին չափ գիտութիւն չստանան. ինչո՞ւ համար մինչեւ վերջը ճիշդ չըլլանք։ Այս խնդիրը քիչ մը կնճռոտ կերեւի. եւ որովհետեւ՝ ըստ երեւոյթին հաւանական կերպով կարծել կուտայ թէ մեր յայտնած վարդապետութեանց տրամաբանական հետեւութիւնն է տղան բոլորովին ինք իր գլխուն ձգելու դրութիւնն, այդպէս ըսողները կենթադրեն թէ մեր վարդապետութեանց դէմ տրամաբանական փաստ մը գտած են՝ խնդիրն անտեղի չափազանցութեան տանելով։ Սակայն մեր ըսածներն՝ եթէ աղէկ հասկցուին՝ այդպիսի ձախորդ եզրակացութեան չեն տանիր մեզ։ Երբ ակնարկ մը ձգենք նիւթական նման բաներու վրայ՝ շուտ կը համոզուինք ասոր։ Ամէնուն ծանօթ կեանքի օրէնք մըն է՝ որ արտադրելի գործարանաւոր մարմին մը ո՛րչափ բազ-

մաքէմ ըլլայ՝ ա՛յնչափ երկար կը տեւէ այն շրջանն, որուն առեն իր սնունդին ու աճումին համար կապուած է նա զինքն արտադրող գործարանաւոր մարմինին։ Բուսական աշխարհին մէջ՝ լոկ ինքիրմով ապրող ու արագաբար աճող փաղտասերմ ջրամամուռին (conferve) ու յամրաբար աճող ծառի մը սերմին (իր բազմաթիւ պահարաններովը, եւ աճումի առաջին շրջաններուն մէջ սերմը տածելու համար՝ անոնց պարունակած առատ սնունդին պաշարովը) մէջ եղած տարբերութիւնն՝ այս օրէնքին ապացոյց մըն է։ Նոյն օրէնքը կենդանական աշխարհին մէջ ալ կերեւի կարգ մը ներհակներով. կերեւի այն՝ սկսելով կիտորդէն (monade) որուն ինքնիրեն անջատելէն ետեւ ալ՝ երկու մասերն ինքնին կը պարենաւորին ճիշդ ա՛յնպէս ինչպէս կը պարենաւորէին դեռ չանջատուած, մինչեւ մարդ արարածին վրայ, որ ոչ միայն երկարատեւ կերպաւորութենէ կանցնի եւ այդ միջոցին դիեցումի պէտք ունի՝ ապրելու համար, այլ նաեւ ետքն ալ կըսպասէ որ իր սնունդը տան, եւ ապա երկար առեն ալ իր ծնողներուն յանձանձումին պէտք ունի՝ իր սնունդին բնակարանին եւ ազանելիքին համար. եւ իր ծնունդէն տասնեւհինգ քսան տարի ետքը միայն ինքնաբաւ կենցաղելու վիճակին կը հասնի. այս օրէնքն՝ ինչպէս մարմինի նոյնպէս միտքի համար ալ կայ։ Ամէն բարձրակարգ էակ, մանաւանդ մարդը, միտքի սնունդի կողմէն կարօտ է իրմէ չափահասին ձեռնկալութեանը։ Որովհետեւ մանկիկը չկրնար խլրտիլ, ա՛յնչափ անհնար է որ ինքնիրեն ճարէ իր ըմբռնողականին վարժութեան համար պէտք եղած առարկաներն, որչափ անհնար է որ ինքնիրեն հայթայթէ իր ստամոքսին պէտք եղած սնունդը. ինչպէս ինքնիրեն իր սնունդը չկրնար պատրաստել, նոյնպէս չկրնար իր ծանօթութեանց տալ ա՛յն ճիշդ ձեւն, որով հնար ըլլայ

իւրացունել անոնք ։ Բարձրագոյն ճշմարտութիւններու ստանալու գործիքը՝ լեզուն՝ կը տրուի նա իր բոլոր անձերէն, եւ դիտուած է Աւէյրոնի (1) վայրի մանուկին նման օրինակներով թէ մարդու իմացական զարգացումին յանկարծական խափան մը վրայ կը հասնի՝ երբ ծնողներուն կամ դայեակին նպաստը դադրի ։ Ուրեմն՝ մանուկին կարողութեանն համեմատ պատշաճ ձեւի տակ օր օրի իրեր ցուցընելով անոր՝ անոնց չափը դիտել տալու, դասերուն մէջ պէտք եղած պարագաները զանց չընելու, եւ միտքին ու մարմինին հաւասարապէս անուցանելու համար՝ լայն ասպարէզ մը կայ ծնողքին առջեւ ։ Երկուքին մէջ ալ՝ ծնողքին գլխաւոր պաշտօնը պէտք է ըլլայ հսկել որ մանուկին զարգացումին համար հարկաւոր պայմանները անպակաս ըլլան ։ Եւ ինչպէս որ մանուկին անունդն հագուստն ու տեղը պատրաստելու ատեն՝ ծնողք չեն միջամտեր անոր անդամներուն ու ընդերքին բնական աճումին, որ ունին իրենց յատուկ ընթացք ու օրէնք, նոյնպէս պարտին հայթայթել անոր ձայներ՝ նմանելու, իրեր՝ զննելու, գիրք՝ կարդալու, խնդիրներ՝ լուծելու համար, առանց խանգարելու միտքի բնական յառաջատութիւնը՝ ինչ եւ իցէ անդէպ եղանակով եւ նոյն իսկ այս դասերը

(1) *Աւէյրոնի վայրի մանուկն* անունով ճանչցուած ընկեցիկ տղան՝ 1798ին գտնուեցաւ Կոնի (Աւէյրոն) անտառներուն մէջ, ուր միս մինակ կը կենցաղէր, եւ իր սնունդն էին վայրի արմատներ ու միրգեր ։ Նախ Ս. Աֆրիկանոսի դարմանոցը տարին զայն, ապա Րոտէզ եւ ետքը Բարիզ ղրկեցին, ուր համր ու խուլերուն ապաստարանը դրուեցաւ ։ Այն ատեն տասներկու տարեկան էր, եւ իր գտնուած գաւառին գիւղացիներուն վկայութեանը նայելով՝ եօթը տարիէ ի վեր թափառական կը կենցաղէր անտառներուն մէջ ։ իր ծննդեան պարագաներուն վրայ բան մը չկրցան ստուգել, եւ շատ ջանացին խօսիլ սորվեցունել իրեն՝ բայց ՚ի զուր. սակայն տղան բոլորովին զուրկ չէր իմացականութենէ, եւ մինչեւ վերջը քանի մը անյօդ ձայներ ու սովորած բառեր միայն կրնար արտաբերել ։

չափ դիւրացունելով. ասոր համար ա՛յն պէտք է միայն որ մանուկին վրայ չբռնանան՝ ոչ ուղղակի ոչ անուղղակի։ Մեր ըսածներէն կը հետեւի՝ որ մեր յայտնած վարդապետ-ութիւնները՝ բան սորվեցունելը բարձի թողի ընել չեն նշանակեր, ինչպէս ընթերցողները թերեւս կարծեն. այլ մանաւանդ՝ անոնք դաստիարակութեան գործօն ու խնա-մով պատրաստելի դրութեան մը համար լայն ասպարէզ մը կը բանան։

Երբ հանրական օրէնքէն մասնաւոր դիտողութեանց անցնինք՝ կը տեսնենք որ Բեստալոցցիի դրութիւնը՝ տե-սականով խոստացածները գործնականին մէջ չէ կրցած կատարել. կըսեն թէ մանուկներուն ամենուն համ չեն տաներ այս դրութեամբ տրուած դասերէն՝ մանաւանդ տաղտուկ ալ կըզգան, եւ մինչեւ մեր օրերը՝ Բեստալոց-ցիի դպրոցէն նշանաւոր մարդիկ չելան, թերեւս հազիւ միջնակարգ մարդիկ ելան։ Մենք բնաւ չենք զարմանար ասոր վրայ, վասն զի մէթոտի մը յաջողութիւնը՝ ճար-տարութեամբ զայն գործածելու կերպէն կախուած է։ Շատ յայտնի ճշմարտութիւն մըն է՝ որ ամէնէն լաւ գոր-ծիքով անգամ ձախորդ արհեստաւորի մը շինածը՝ ձախորդ գործ մը միայն կըլլայ. նոյնպէս ալ կընանք ըսել՝ թէ յոռի դաստիարակներուն ձեռքն ամէնէն լաւ մէթոտներն անգամ անարդիւն կըլլան. եւ այն ատեն՝ մէթոտին լաւութիւնն իսկ պատճառ կըլլայ անյաջողութեան, ինչ-պէս, վերի նմանութիւնը շարունակելով, կատարեալ գոր-ծիք մը՝ անվարժ ձեռքի մէջ՝ թերի գործեր արտադրելու պատճառ կըլլայ։ Հին սովորութեան պէս՝ պարզ անփո-փոխ եւ գրեթէ մեքենական մէթոտ մը կարելի է որ աղէկ գործածի անձկամիտ դաստիարակներու ձեռքով, եւ ապահովապէս արտադրէ կրցածին չափ լաւ արդիւնք. բայց դաստիարակութեան կատարեալ դրութիւն մը, որ

կիրառութեան մէջ՝ այնչափ բազմազան է որչափ միտքն իր կարողութեանց մէջ, եւ ամէն մասնաւոր առարկայի համար մասնաւոր եղանակ մը կը պահանջէ, այդպիսի դրութիւն մը գործածողը պէտք է ունենայ միտքի կորով մը, որ շատ քիչ մարդիկ ունին։ Ամէն վարժուհի՝ կրնայ փոքրիկ աղջիկներու հեգել սորվեցունել, ու նորընծայ վարժապետ մը կրնայ մանուկները վարժեցունել բազմապատկութեան աղիւսակը բերանացի սորվելու. բայց առանց գիրերու անունը տալու՝ անոնց տառն (son des lettres) արտասանելով կարդալ սորվեցունող կամ փորձառական համադրութեամբ մը հաշիւի գործողութիւններ դասախօսող մը՝ պէտք է անպատճառ բաւական հանճարեղ ըլլայ. դասախօսութեանց բովանդակ շրջանին մէջ այսպիսի տրամախոհական դրութիւն մը շարունակելու համար՝ պէտք է բաւական դատողութիւն, գտում, իմացական զօրութիւն, վերլուծական կորովամտութիւն, որոնք անհնար է ունենալ՝ մինչեւ որ ուսուցչութեան ասպարէզն աւելի արգոյ դիրք մը բռնէ։ Ճշմարիտ փիլիսոփայ մը միայն կրնայ ճշմարիտ դաստիարակութիւն տալ։ Տեսէ՛ք դեռ որչա՛փ բաներ կան՝ որ փիլիսոփայական մէթոտով մը ուսումնասիրուելու կարօտ են։ Հոգեբանութեան վրայ գրեթէ բան մը չգիտենք դեռ, ու երբեմն դպրոցներու մէջ իբրեւ դաստիարակ կը վարժապետեն այնպիսի՝ մարդիկ, որ հոգեբանական մէթոտ մը չունին բնաւ. եւ ինչպէ՞ս յաջողի այսպիսի դրութիւն մը, որ բոլորովին հոգեբանութեան վրայ հիմնուած է։ Բեստալոցցիի սկզբունքին եւ զայն պատկերող ձեւերուն մէջ եղած շփոթութիւնն ալ՝ ուրիշ դժուարութեան մը եւ աւելի լքումի մը պատճառ եղած է. վասն զի երկնուած մասնաւոր հիմնագիրները՝ գործնականին մէջ իրենց հեղինակողներուն ակնկալութեան չեն պատասխանած. եւ

ասոր համար անպիտան համարուեցան հիմնագիրներուն սկզբունքն՝ առանց միտ դնելու թէ հիմնագիրներն ու սկզբունքն իրապէս միաբան էին։ Ինչպէս սովորութիւն է, աւելի թանձրացեալ քան վերացեալ տեսակէտէն դատելով, տեսականը դատապարտեցին անոր համար որ ձախողակի կիրառուած էր, որպէս թէ՝ օրինակի համար՝ կարելի չէր շոգին օգտաբար գործածել իբր շարժիչ զօրութիւն, անոր համար որ ձախողապէս պատրաստուած շոգեմեքենայի առաջին փորձերը չէին յաջողած։ Պէտք չէ մտքէ հանել՝ որ Բեստալոցցի թէպէտեւ իր հիմնական գաղափարներուն մէջ ճիշդ էր՝ բայց անոնց բովանդակ կիրարկութեան մէջ ուղիղ չէր նա։ Ինչպէս իր վրայ սքանչացողներն անգամ կը նկարագրեն զինք՝ Բեստալոցցի մասնական մտատես (homine d'intuition) մըն էր, մարդ մը՝ որ ունէր լոյսի կայծակումներ, բայց կանոնաւոր խորհող մը չէր։ Սթանցի մէջ իր առաջին յաջողուածը ձեռք բերաւ նա՝ առանց ունենալու գիրք մը կամ սովորական դաստիարակութեան միջոցներն. անոր միակ զբաղումն էր այն ատեն «փնտռել անդադար թէ իր սաներուն միտքն ինչ տեսակ գիտութեանց կարօտ էին, եւ անոնց արդէն ունեցած գիտութեանց հետ այդ գիտութիւններն ալ կապակցելու ամէնէն աղէկ եղանակն ո՛րն էր»։ Իր կորովութեան մեծ մասին պատճառն էր՝ ոչ թէ դաստիարակութեան հիմնագիր մը՝ պաղարիւնութեամբ հասունցած ու խորհուած, այլ գորովի այն խոր հզօրութիւնն՝ որով կըրցած էր սուր իմացութեամբ հասկընալ սաներուն պէտքն ու անոնք խափանող դժուարութիւնները։ Այն ատեն իր սուր միտքին որսացած ճշմարտութիւնները՝ տրամաբանական կարգով լայնելու եւ համագրելու կարողութիւնը չունէր նա. այս գործը մեծ մասով կը թողուր իր օգնականներուն՝ Քրիւսիի, Թոպլըրի, Պըսի,

*Նիտըրըրի եւ Շմիտի։ Ասոր հետեւանքն ա՛յն եղաւ որ հիմնագիրներուն՝ մանաւանդ իր օգնականներուն յօրինած հիմնագիրներուն՝ մանրամասնութեանց մէջ շատ մը տհաս ու անդէպ բաներ սպրդեցան։ Մանր մանուկներու համար յօրինած դաստիարակութեան մէթոտն, որ պարզած է* Մայրերու մատեան *(1) անուն գիրքին մէջ (գիրքին սկիզբը դրուած է մարմինի մասերուն անուններու ցուցակը, անոնց յարաբերական դիրքն ու անոնց առընչութիւնները) չհամաձայնիր բնաւ միտքի սկզբնական յառաջատութեան բնական ընթացքին։ Լեզու մը սորվեցունելու համար իր ցուցած եղանակն՝ որ է բառերու իմաստներուն վրայ վարժութիւններ ձեւել եւ պարբերութիւններ շինել՝ արժէք մը չունի, եւ պատճառ կըլլայ՝ ժամանակի աշխատութեան ու մանուկին երջանկութեան կորսուելուն։ Նոյն գիրքին աշխարհագրական դասերն՝ իր վարդապետութենէն բոլորովին խոտորած են։ Յաճախ իսկ՝ ուր հիմնագիրը լա՛ւ է՝ հին դրութեան մնացորդ մը խառնուելով հոն՝ անկանոն ու յոռի ձեւ մը կուտայ անոր։ Եւ մենք Բեստալոցցիի հանրական վարդապետութիւնն ընդունելով հանդերձ՝ կըսենք թէ շատ յետադիմութեան պատճառ կըլլանք եթէ առանց քննելու ընդունինք իր մասնական մէթոտները։ Մարդկութեան այն մնայուն միտումն, որով տեսակ մը նուիրականութիւն կը մատուցանէ յայտնեալ մեծ ճշմարտութեան մը արտաքին ձեւերուն ու կերպարանին. մարդկութեան այն պատրաստականութիւնն, որով կը յարգէ փիլիսոփայ մը եւ անոր*

---

(1) Այս *Մայրերու մատեանն* ոչ թէ Բեստալոցցի գրեց, այլ իր գործակիցներէն մէկը. ինչպէս կըսէ Սբէնսըր՝ Բեստալոցցի իր վարդապետութիւնները կիրարկելու փորձերուն ատեն՝ յաճախ դիմած է իր հետեւողներուն խանդին, որ երբեմն նուազ իմաստուն էին.

պատգամներուն վրայ կը կռէ իր երդումները․ մարդկութեան այն մտադիւրութիւնը, կըսենք, որով գաղափարի մը հագուստը նոյն իսկ գաղափարին տեղը կառնէ, այս ամէն մարդկային մտահաճութիւնները գիտնալով՝ հարկ կըլլայ մեզի ըսել թէ պէտք է քաջ զանազանել Բեստալոցցիի դրութեան հիմնական սկզբունքը բոլոր այն միջոցներէն, որ յօրինեցան այդ սկզբունքը կիրարկելու համար․ դարձեալ հարկ կըլլայ մեզի դիտել տալ որ՝ թէպէտեւ կրնանք իբր հաստատուած համարել անոնց մէկ մասը՝ բայց միւս մասերը ստուերագիրներ են միայն, որոնք պէտք է վերստին աչքէ անցունելով սրբագրել։ Եւ յիրաւի, դաստիարակութեան մէթոտները՝ միտքի կարողութեանց հետ իրենց յառաջատութեան եղանակին ու կարգին համեմատ ներդաշնակելէ առաջ (եւ այս ներդաշնակութիւնն հարկ է անոնց իբր կնիք ու կարգ) պէտք է կատարելապէս գիտցած ըլլալ նախ թէ այս կարողութիւններն ինչպէս կը յառաջանան։ Մինչեւ հիմա՝ այս կէտին վրայ քանի մը հանրական տեղեկութիւններ միայն գիտենք․ բայց հանրական տեղեկութիւններէն մանրամասն տեղեկութեանց հարկ է անցնիլ։ Պէտք է այս տեղեկութիւնները շատ մը մասնաւոր առաջարկութեանց կերպարանափոխին՝ որպէս զի կարենանք ըսել թէ ձեռք բերած ենք այն գիտութիւնն, որուն վրայ պէտք է հիմնի դաստիարակութեան արուեստը։ Եւ ինչ յաջորդութեամբ ինչ պատշաճութիւններով միտքի կարողութիւնները գործի կըսկսին, — զայս որոշապէս գիտնալէ ետքը, կը մնայ անոնց իւրաքանչիւրին վրայ ներգործելու միջոցներէն ընտրել զա՛յն՝ որ ամէնէն աւելի համակերպն է գործելու բնական եղանակին։ Սակայն չենք կրնար բնաւ ենթադրել՝ թէ մեր ամէնէն յառաջադէմ դաստիարակութեան մէթոտներն այնպէս են

ինչպէս պէտք էր ըլլային. ոչ ալ այս տեսականին մօտեցած են անոնք։

Բեստալոցցիի դրութեան տեսականին ու գործնականին մէջ եղած այս զանազանութիւնն աչքի առջեւ ունենալով, եւ համոզուելով որ մեր ցուցած պատճառներով այդ դրութեան գործնականն 'ի հարկէ վնասակար է, ընթերցողը պիտի կրնայ ճիշդ արժէք մը տալ այն տհաճութեան, որ մէկ քանի անձեր յայտնեցին այս դրութեան դէմ. պիտի տեսնէ որ Բեստալոցցիի գաղափարը դեռ իրացած չէ, պիտի իրանայ։ Բայց մեր ըսածներուն յենլով եթէ մէկը պնդէ որ այդ իրացումը շուտ չպիտի ըլլայ, եւ պէտք է ոգիով չափ աշխատինք նախապատրաստական վերլուծումներու՝ կը պատասխանենք որ թէպէտեւ անհնար 'է դաստիարակութեան դրութիւն մը կատարելագործել իր հիմունքն ու ձեւովն՝ առանց նախապէս տրամախոհեալ հոգեբանութիւն մը հաստատելու, կարելի է սակայն յառաջ երթալ՝ ուղեցոյց քանի մը սկզբունքի եւ փորձառական եղանակներու միջոցով։ Եւ մենք՝ ահա կը նշանակենք հոս այդ սկզբունքն՝ աւելի ընդարձակ հետազօտութեանց ճամբայ հորդելու համար։ Ասոնցմէ մէկ քանիները քիչ շատ յստակութեամբ կը գտնուին մեր վերոգրեալ տեսութեանց հետ խառնուած, բայց լաւ կըլլայ հոս դնենք զանոնք ամէնն ալ՝ իրենց տրամաբանական կարգով։

1°. Թէ դաստիարակութեան մէջ պէտք է յառաջանել պարզէն դէպի բաղադրեալը՝ ճշմարտութիւն մըն է այս, որուն վրայ ամէնն ալ մինչեւ աստիճան մը խորհած են։ Միտքը կը զարգանայ. միտքն՝ ամէն զարգացող բաներու պէս՝ ծանօթէն անծանօթին կը յառաջանայ. եւ ուրեմն դաստիարակութեան կանոնեալ դրութիւն մը իրական հակակողմն է այս վերացական յառաջատուութեան, այդ դրութիւնն ալ պէտք է այս ընթացքով յառաջանայ։

Անկէ զատ, այս բանաձեւը կարծուածէն աւելի լայն աս-պարէզ մը ունի․ վասն զի՝ իր սկզբունքին համեմատ կը պահանջէ՝ որ պէտք է ոչ միայն գիտութեան իւրաքանչիւր ճիւղին մէջ պարզէն բաղադրեալին յառաջանանք, այլ եւ պէտք է նոյն եղանակով ընթանանք բովանդակ գիտութեանց մէջ։ Որովհետեւ նորակազմ միտք մը սակաւաթիւ գործող կարողութիւններ կունենայ, որոնց ապա հետզհետէ կուգան գործակցիլ զարգացեալ կարողութիւններ, մինչեւ որ վերջապէս բոլորովին ինքնաբերաբար կը շարժին, ուստի պէտք է դասախօսութիւնն առաջ փոքրաթիւ առարկաներու վրայ ըլլայ, որ տակաւ պէտք է աւելնան՝ մինչեւ որ տղան ամէնն ալ ըմբռնելու կարող ըլլայ։ Կրթութիւնն ոչ միայն մանրամասներու մէջ, այլ բովանդակութեան մէջ ալ պէտք է յառաջանէ պարզէն դէպի բաղադրեալը։

2°. Մտքի զարգացումն՝ ամէն զարգացումներու պէս՝ անորոշէն դէպի որոշեալին յառաջացում մըն է։ Մարմինի միւս մասերուն պէս՝ ուղեղն ալ չափահասութեան ատեն միայն իր կազմածին լրացումը կառնէ, եւ կազմածն ո՛րչափ անկատար ըլլայ՝ իր գործերն ալ ա՛յնչափ անճիշդ կըլլան։ Ատոր համար է՝ որ առաջին ըմբռնումներն եւ առաջին գաղափարները տարտամ են, ինչպէս տարտամ են խօսելու եւ խորհելու առաջին փորձերը։ Ինչպէս դեռավարժ աչք մը, որ լոյսը խաւարէն զանազանելու միայն կարող է, զարգանալով կըլլայ աչք մը՝ որ մեծ ճշգրտութեամբ կը զանազանէ գոյներու տեսակներն ու նրբութիւններն եւ ձեւի մանրամասները․ այսպէս իմացականութիւնն ալ իր լրութեամբը կամ իր մասնաւոր մէկ կարողութեամբն՝ առարկաներն ու շարժումներն ամէնակոշտ կերպով զանազանելով նախ՝ գործել կըսկսի, եւ շատ ետքը կըրնայ զանազանել անոնք նրբաբար ու ճշ

օրի կատարելագործուող ճշդութեամբ։ Մեր ուսումի ընթացքն ու մեր կրթական մէթոտները՝ պէտք է համակերպին այս հանրական օրէնքին։ Կարելի չէ, եւ եթէ կարելի ըլլար իսկ՝ փափաքելի չէ սակայն՝ ճշգրիտ գաղափարներ մտցունել տհաս միտքի մը մէջ։ Իրաւ՝ կրնանք շատ կանուխէն հաղորդել մանուկին այն բանաձեւներն, որոնց մէջ այս գաղափարները կաղապարուած են, եւ դաստիարակներն այսպէս ընելով՝ կը կարծեն սովորաբար թէ յաջողած են մեծ գաղափարներ ստացունել մանուկին. բայց երբ փոքր հակափորձ մը ընենք՝ պիտի տեսնենք որ սխալած ենք. վասն զի պիտի տեսնենք՝ որ կամ մանուկին յիշողութեան մէջ բառերը թառած են առանց գէթ աղօտաբար ըմբռնուած ըլլալու, կամ անոնց նշանակութիւնը բոլորովին մութ իմացուած է։ Ա՛յն ատեն միայն զարգուն գիտութեան մը սահմանները ճշմարտապէս հասկընալի կըլլան մանուկին՝ երբ իր փորձառութիւններն աճած ըլլալով որոշ ըմբռնումներ կազմելու նիւթեր ունի. երբ տարուէ տարի շարունակ խելամտութեամբ զարգանալով՝ կըրցած է թափանցել իրերու նշանակութեան ու անոնց իբր աներեւոյթ յառաջատութեան, որ նախ չփոթ ըմբռնուած էին. երբ դասի ու կարգի գաղափարներն իրեն ընտելացած են՝ դիպումներու եւ հոլովումներու կրկնութեամբ, որ իրենց բուն կարգին համեմատ կը դասաւորին. երբ վերջապէս իրերու այլ եւ այլ առընչութիւններն իր միտքին մէջ մեկնաբար իրար բացայայտած են՝ իրենց փոխադարձ սահմանակցութեամբը։ Ուստի, դաստիարակութեան մէջ պէտք է նախ անհարթ դիտողութիւններով սկսինք, յետոյ ջանանք աստիճանաբար լուսաբանել զանոնք՝ վարժեցունելով մանուկը փորձառութեան մը, որով առաջ ամէնէն խոշոր վրիպակներն ուղղելով՝ յետոյ տակաւ թեթեւագոյն սխալներն ալ պիտի ուղղէ։ Ճիշդ ա՛յն

ատեն միայն պէտք է տալ մանուկին գիտնական բանաձեւն՝ երբ ըմբռնողականն իր կատարելութեան հասած է։

3°. Առաջին սկզբունքին կրկնութիւն մըն է ըսել՝ թէ դասերը թանձրացեալէն սկսելով վերացեալին երթալու են. սակայն այս կանոնաբանը պէտք է բացայայտել՝ գոնէ յայտնելու համար թէ կարգ մը պարագաներու մէջ պարզն ու բաղադրեալն ի՛նչ են ճշմարտապէս. վասն զի դժբաղդաբար այս կէտին վրայ շատ թիւրիմացութիւններ կան։ Մարդիկ՝ որովհետեւ մասնական պարագաներ արտայայտելու համար իրենց գտած առածները՝ շատ մը իրողութիւններ 'ի մի ձուլելով դիւրացուցած են անոնց ըմբռնումը, կը կարծեն թէ նոյն առածները նմանապէս պիտի դիւրացունեն մանուկի մը ըմբռնումները։ Չեն մտածեր՝ որ հանրական օրէնք մը՝ իր պարունակած մասնաւոր ճշմարտութեանց լրութեան համեմատելո՛վ միայն պարզ է, եւ այդ հանրացումն՝ այդ ճշմարտութիւններէն ա՛ եւ իցէ միոյն համեմատութեամբ միշտ աւելի չփոթ է։ Չեն մտածեր՝ թէ այդ հանրացումն այն ատեն միայն մտքի եւ դատողութեան կը նպաստէ՝ երբ մանուկն այս մասնաւոր ճշմարտութիւններէն բաւական թիւով սորված է, եւ թէ 'ի հարկէ անըմբռնելի խորհուրդ մը կը մնայ այն՝ ա՛յնպիսի մտքի մը համար, որ մասնաւոր ճշմարտութիւններ մթերած չէ ամենեւին։ Ահա այսպէս՝ պարզումի երկու տեսակներն իրարու հետ շփոթելով՝ դաստիարակներն ստուգիւ սխալած են «նախնական սկզբունքէն» սկսելնուն համար։ Եւ յառաջատելու այս եղանակը՝ թէպէտ ոչ ըստ երեւոյթին՝ բայց էապէս հակառակ է հիմնական կանոնին, որ կը տրամադրէ օրինակներու միջնորդութեամբ սկզբունքը մտքին ներկայացունել, եւ տանիլ զայն մասնաւորէն հանրականին, թանձրացեալէն վերացեալին։

4°. Մանկութեան դաստիարակութիւնն՝ ըստ եղանակին եւ ըստ կարգին՝ պէտք է համաձայն ըլլայ մարդկութեան կրթութեան՝ պատմաբար նկատելով զայն։ Ուրիշ խօսքով ըսենք, Գիտութեան Ծննդոց գիրքն անձնիւր մարդու համար պէտք է այն ընթացքին հետեւի՝ ինչ ընթացքի որ կը հետեւի հասարակութեան համար։ Շիտակն ըսելով, այս սկզբունքն արդէն անուղղակի բացատրած կըրնանք համարել, որովհետեւ՝ ճանաչողութեան այս երկեակ զարգացումներն երկու յառաջատուութիւններ են, պէտք է համակերպին անոնք յառաջատուութեան այն հանրական օրէնքին, որուն վրայ քիչ մը վերը գրեցինք, եւ հետեւաբար պէտք է իրարու միաբանին։ Սակայն՝ այս մասնաւոր զուգակշիռն ունի իր արժէքն՝ իբրեւ ուղեցոյց ընտրութեան տեսակին։ Կարծենք՝ մարդկութիւնը Գ. Օկիւստ Քոնդի (1) պարտական է ասոր հրատարակութիւնը. եւ մենք առանց ընդունելու Քոնդի փիլիսոփայութեանց միւս մասերը՝ կըրնանք ընդունիլ այս յօդուածն։ Այս վարդապետութիւնը կըրնանք ջատագովել՝ վերլուծեալ տեսութիւններէ բոլորովին անկախ երկու պատճառներով, որ զատ զատ ալ միայնակ կը բաւեն զայն հաստատելու։ Առաջինը՝ ժառանգական փոխանցումի օրէնքէն կը բղխի՝ նկատելով զայն իր լայնագոյն հետեւութեանց մէջ։ Որովհետեւ՝ եթէ ճշմարիտ է որ մարդիկ մարմնական ու բարոյական կրկնակի առընչութեամբ իրենց նախորդներուն կը նմանին. եթէ ճշմարիտ է որ մտային կարգ մը երեւոյթներ, օրինակի համար, յիմարութիւն՝ նախասահմանեալ տարիքի մը մէջ միեւնոյն ընտանիքին սերունդներուն վրայ կը պատահին. եթէ անհատներէ (որոնց վրայ՝ հետեւոր

(1) Օկիւստ Քոնդ, դրական փիլիսոփայութեան հիմնարկողն համարուած է. ծն. 1798 մռ. 1857 Փարիզի մէջ։

նախորդներէ անցած ժառանգական տարրերն ամէնամօտ նախորդներու տարրերուն հետ կը խառնին, այնպէս որ օրէնքը չփոխ կերպարան մը առած է) հասարակութեան տիպերուն անցնելով գիտենք թէ՝ այդ սեպհական դրոշմները դարէ դար ինչպէս անայլայլ կը տեւեն. եթէ մտածենք որ այս փոխադարձ տիպերն ամէնն ալ միեւնոյն արմատէ կը բղխին, եւ հետեւաբար արդի տարբերութիւններն յառաջ եկած են փոփոխիչ պարագաներու ներգործութենէն ա՛յն յաջորդող սերունդներուն վրայ, որոնց իւրաքանչիւրն այդ ներգործութեան արդիւնքն անցուցած է իր սերունդներուն. եթէ մտածենք՝ որ այս տարբերութիւնները մարդկային կազմութեան հետ տարրախառնած են՝ այնպէս որ ափրիկեցի մանուկ մը անպատճառ ափրիկեցի պիտի մեծնայ, թէպէտեւ օտար երկրի մը մէջ կենցաղի. եւ թէ վերջապէս այն հանրական օրէնքն, որուն օրինակ մըն է այս, բովանդակ մարդկութեան ու անոր իմացականութեան վրայ ալ կը տիրէ. այս ամէնէն դիւրին է հետեւցունել՝ թէ ա՛յն վայրկեանէն երբ մարդկութեան ստացած պէսպէս ծանօթութեանց բնակարգ մը գոյանայ, նոյն կարգով այս ծանօթութիւններն ստանալու տրամադրութիւնն սկիզբէն կայ ամէն մանուկի վրայ։ Այնպէս որ՝ եթէ այդ բնակարգն ինքնին անաղդ ալ ըլլայ, դաստիարակութիւնն աւելի դիւրացուցած կըլլանք՝ եթէ մարդու միտքին առաջնորդենք այն ճամբաներով, որոնցմէ անցած է իր նախորդներուն իմացականութիւնը։ Բայց տես որ այս բնակարգն ինքնին անաղդ չէ՛, եւ այս իսկ է հիմնական պատճառ մը՝ որով հարկ է դաստիարակութիւնն ունենայ իր մէջ քաղաքակրթութեան մանրանկարը։ Այս պատճառներն հոս մանրամասնաբար ցուցադրելու տեղը չէ. բաւ է ըսել՝ թէ որովհետեւ մարդկային իմացականութիւնն՝ 'ի հարկէ երեւոյթներու մէջէն արձանացած՝ կը

*նկրտի հասու ըլլալ անոնց՝ եւ ամբաւ բաղդատութիւններէ, ձեռնարկներէ, փորձառութիւններէ, տեսութիւններէ ետեւ՝ մասնաւոր ճամբայով մը վերջապէս իւրաքանչիւր առարկայի ճանաչումը ձեռք կը բերէ, ասկէ տրամախոհելով կրնանք հետեւցունել թէ երեւոյթներու հետ միտքին յարաբերութիւնն այնպէս է՝ որ միտքն այս ճանաչումը չկրնար ստանալ ուրիշ ինչ եւ իցէ շաւիղով, եւ թէ մանկական միտքն ալ երեւոյթներուն հետ նոյն յարաբերութիւններն ունենալով, երեւոյթները միեւնոյն շաւիղով միայն կրնան մատչելի ըլլալ անոր։ Ասոր համար է՝ որ դաստիարակութեան ճիշդ մէթոտը գտնելու համար պէտք է միտ դնել քաղաքակրթութեան հետեւած շաւիղին։*

5⁰. *Ասոնցմէ յառաջ եկած եզրակացութիւններէն մին ալ այն է՝ որ ծանօթութեանց ամէն ճիւղի մէջ պէտք է փորձականէն տրամախոհականին յառաջանալ. մարդկային յառաջդիմական ընթացքին մէջ՝ իւրաքանչիւր գիտութիւն իրեն յծորդ արուեստէն կելնէ, եւ ասկէ կը հետեւի որ գիտութեան մը գոյանալէն առաջ՝ պէտք է եղած ըլլան կրկին ու կրկին փորձարկութիւն մը ու փորձական հանրացում։ Գիտութիւնը կազմաւորեալ ծանօթութիւնն է. եւ՝ որպէս զի ծանօթութիւն մը կազմ առնէ՝ պէտք է նախ ինք եղած ըլլայ։ Ուստի՝ ամէն ուսումնասիրութիւն պէտք է ունեցած ըլլայ զուտ գործնական սկզբնաւորութիւններ, եւ տրամախոհութիւնն ա՛յն ատեն միայն պէտք է գլխաւորի՝ երբ արդէն հաւաքեալ խելամտութեանց լիուլի պաշար մը ունեցած ըլլանք։ Այս կանոնին իբր օրինակ կրնանք նշանակել՝ լեզուէն ե՛տքը քերականութիւն սորվեցունելու նոր մէթոտը, կամ նկարչութեան օրէնքն աշակերտներու բացատրելէ առաջ՝ անոնց երկար ատեն գծագրել տալու դրութիւնը։ Քիչ մը ետքը՝ այս կանոնին ուրիշ օրինակներն ալ պիտի նշանակենք։*

6°. Վերն յայտնուած հանրական սկզբունքին երկրորդ հետեւութիւն մըն ալ այն է՝ թէ դաստիարակութեան մէջ պէտք է ոգիով չափ խրախուսենք ինքնեկ գիտութեան մէջ յառաջ երթալը. այս կէտին վրայ որչափ պնդենք քիչ է։ Պէտք է թելադիր ըլլանք մանուկին ինքնիրեն հետազօտութիւններ ընելու, իր գտածներէն ինքնին հետեւութիւններ հանելու։ Պէտք է հնար եղածին չափ քիչ դաս տանք իրեն, եւ հնար եղածին չափ շատ ասպարէզ ձգենք իրեն՝ ինքնին գտնում ընելու։

Մարդկութիւնն ինքզինք կրթելով միայն գիտութեան մէջ յառաջ գացած է, եւ ինքզինքնին կրթողներուն յաջողութիւններն հանապազորդ ապացոյցներ են թէ լաւագոյն արգասիք ձեռք բերելու համար իւրաքանչիւր միտք՝ պէտք է նոյն եղանակով զարգանայ մինչեւ սահման մը։ Գիտեմ, դպրոցներու սովորական հրահանգներով դաստիարակուած մարդիկ, որ համոզուած են թէ ուրիշ կերպով անկարելի է դաստիարակել, պիտի ըսեն թէ անհնար է որ մանուկ մը ինքնիրեն կրթիչն ըլլայ։ Բայց երբ այդ մարդիկ բարեհաճին մտածել՝ թէ բոլոր տարրականներուն ծանօթութիւնն, որ ամէն գիտութեանց սկիզբն է, մանուկն առանց մէկու մը օգնութեան կըստանայ. երբ խորհին որ նա մինակ ինքնին կը սորվի իր մայրենի լեզուն. երբ աղէկ հաշուի առնեն կարգ մը խելամտութեանց փորձառութեանց եւ անդրադպրոցեան ծանօթութեանց այն գումարն, որ ամէն տղայ ինքնիրեն կը հաւաքէ, թերեւս պիտի համոզուին որ բանաւոր է եզրակացունել՝ թէ հասարակ ընդունակութեամբ օժտուած ամէն աշակերտ՝ եթէ տարրականները լաւ կարգով եւ ճիշդ եղանակով ներկայացուած ըլլային իրեն՝ պիտի կրնար առանց մէկու մը ձեռնկալութեան յաղթել հետզհետէ իրեն դէմն ելած ուսողական դժուարութեանց։ Ո՞վ

կը տեսնէ մանուկի մը այն անզգալի գործունէութիւնն՝ որով կը դիտէ կը հարցունէ կը հետեւցունէ նա, ո՞վ կը հասկընայ անոր դիտողութեանց սրութիւնն այնպիսի առարկաներու վրայ՝ որ իր կարողութեանց սահմանին մէջ են, եւ չհետեւցուներ որ նա աւելի շուտ եւ ինքնին պիտի աւարտէր իր ուսողական շրջանն՝ եթէ այս գործունէութիւնը բնական եղանակով կիրարկուէր՝ մանուկին կարողութեան սահմանին մէջ եղած ուսումներուն։ Մե՛ր եւ ոչ թէ մանուկին տխմարութիւնն է՝ որ հարկադրած է մեզի վարդապետօրէն դաս տալ անոր։ Մե՛նք ենք որ կը քեցենք զինքն իր միտքն հեռաքրքրող իրերէն՝ երբ ինք ժրութեամբ անոնք իւրացնելու զբաղած է. եւ իրեն կը ներկայացունենք աւելի բազմադէմ բաներ, որ անշուշտ տաղտուկ կը պատճառեն իրեն։ Երբ կը հասկընանք որ յօժարութեամբ չպիտի սորվի անոնք՝ սպառնալով ու պատիժներով իր միտքին մէջ բռնի կը մտցունենք անոնք։ Կը զրկենք մանուկն իր բաղձացած ծանօթութիւններէն, եւ կը խճողենք իր միտքն անմարսելի ծանօթութիւններով. այսպէս կը բթացունենք իր կարողութիւններն եւ ուսանելէ կը տաղտկացունենք զինքը։ Եւ երբ մէկ կողմէն միտքն՝ այս եղանակով՝ անզգայ ապշութիւն մը առնէ, ու մենք միւս կողմէն շարունակենք դարձեալ մեր խիստ կանոններովը բռնանալ իր վրայ՝ ա՛լ առանց բացատրութեան բան մը չհասկընալու վիճակին կը հասնի նա, եւ մեր սեպհական գաղափարներուն կոյր պահարան մը կը դառնայ. այն ատեն ահա կըսենք՝ թէ ուրեմն միայն այս մէթոտով կարելի է դաստիարակել մանուկները։ Մեր մէթոտներովը մանուկին իմացական կարողութիւնները կրաւոր վիճակի մը մէջ ձգելէ ետքն՝ այս կրաւոր կացութիւնը պատճառ մը կընենք մեր մէթոտին կիրառութիւնը շարունակելու։ Ասկէ կը հետեւի՝

թէ մանկավարժներուն այս գործնական առարկութիւնը մեր ըսած դրութեան դէմ չկրնար զօրել, եւ ով որ ատոր համոզուի՝ պիտի տեսնէ թէ կրնանք ապահովապէս մինչեւ վերջը շարունակել բնական մէթոտը. պիտի տեսնէ թէ մեր պաշտօնը ճարտարութեամբ կատարելով՝ պիտի կրնանք այնպէս տրամադրել իրենն՝ որ միտքն իր առաջին երեւոյթներուն մէջ ի՛նչպիսի ինքնաբերութեամբ կը զարգանայ, նո՛յն ինքնաբերութեամբ կը զարգանայ նաեւ իր միւս երեւոյթներուն մէջ. եւ այս եղանակով միայն պիտի կրնանք կրել տալ իրեն իր բոլոր աշխատութեանց արդիւնքն, եւ հասցունել զայն զօրութեան ու գործունէութեան բարձրագոյն աստիճանին։

7°. Դաստիարակութեան ծրագիրի մը ընտրութեան իբրեւ վերջին փորձաքար՝ միտուընիս կուգայ սա խնդիրը թէ մանուկներն ունի՛ն արդեօք իրենց ախորժ բնագրգիռներ։ Այս կանոնը՝ կրնանք ապահովապէս գործածել ամէն անգամ որ խնդիր կըլլայ գիտնալ՝ թէ ուսումի երկու եղանակներէն կամ երկու կարգերէն ո՛րն աւելի համակերպ է յառաջագոյն տրուած սկզբունքին։ Եթէ երկուքէն մին՝ տեսականին մէջ աւելի լաւ թուի անգամ՝ պէտք է մէկ կողմ թողուլ զայն ա՛յն վայրկեանէն՝ երբ կը տեսնենք որ չահագրգիռ չէ կամ միւսէն նուազ չահագրգիռ է. վասն զի մանուկի մը իմացական բնազդները մեր տրամաբանութիւններէն աւելի անկեղծ կանոններ են։ Ըմբռնումի կարողութեանց գալով՝ կրնանք հաւաստի ըլլալ՝ որ՝ կանոնաւոր պայմաններու մէջ՝ առողջ գործունէութիւնն հաճոյական է, եւ դժուարըմբեր գործունէութիւնն առողջ չէ։ Թէպէտեւ մինչեւ հոս՝ բնութիւնը սիրտի զգայութեանց կողմէն շատ թերի կերպով կը համակերպի այս օրէնքին, բայց իմացականութեան կողմէն գրեթէ կատարելապէս կը համակերպի՝ գէթ մանուկին արտայայ-

*տութեանց նայելով։ Այս ինչ կամ այն ինչ ուսումին համար սանին ցուցած դժկամակութիւններն, որոնց դէմ կը սրտնի վարժապետը, բնածին դժկամակութիւններ չեն, այլ վարժապետին անհմուտ դրութենէն առաջ եկած անխելք դժկամակութիւններ են։ Ֆէլլէնպէրկ(1) մանկավարժը կըսէ՝ «Փորձով հասկըցայ՝ թէ երիտասարդներու յուլամտութիւնն անոնց բնական գործունէութեան այնչափ ներհակ բան մըն է՝ որ եթէ գէթ յոռի դաստիարակութեան մը հետեւանքը չէ՝ գրեթէ միշտ կանոնական թերութեան մը նշանն է»։ Եւ մանուկներու ընտել ինքնեկ գործունէութեան շարժառիթն է՝ իրենց կարողութիւնները գործածելու առողջարար բերկրանքը։ Երբ աշակերտն իր կարողութիւնները գործածելու պատեհն ունենայ՝ արդէն հասած պիտի ըլլայ տարիքի մը, ուր արտաքին շատ շարժառիթներ գործել կըսկսին, եւ ուր անուղղակի հաճոյքը կը հասնի հակակշռել ուղղակի տհաճութեան դիմաց(2)։ Բայց միւս բոլոր կարողութեանց սովորական բնազդն է՝ գործունէութեան պատճառած անմիջական բերկրանքը. եւ եթէ աղէկ տնօրինենք՝ միմիայն օգտակար բնազդը կըլլայ այն։ Եթէ հարկ ըլլայ մեզի ուրիշ գրգիռ մը գործածել՝ այն ատեն կը տեսնենք որ սխալ ճամբայի մէջ ենք։ Ամէն օրի փորձով աւելի յայտնապէս կը տեսնենք որ միշտ մէթոտ մը կայ, որ մանուկներու հետաքրքրութիւն եւ մինչեւ անգամ աշխոյժ բերկրանք մը կրնայ յա-*

---

(1) Իմմանուէլ Ֆէլլէնպէրկ զուիցերիացի նշանաւոր մանկավարժն, որ Բեստալոցցիի ժամանակակից ու բարեկամ էր. 1799ին Հոֆուէյլի երկրագործական կաճառն հիմնեց, եւ մեռաւ 1844ին։

(2) Այսինքն՝ շահի, օգուտի, եւ դժնդակ հարկերէ հեռի մնալու սէրը՝ կը մոռցունէ մարդու աշխատութեան առարկային պատճառած ուղղակի տհաճութիւնը։ Թ.

ռաջ բերել . միւս ամէն փորձաքարներն ալ կրնան ապացուցանել մեզի՝ որ այս մէթոտն ամէն կերպով լաւագոյն է ։

Եթէ կարգ մը մարդիկ այս վերացեալ ձեւին մէջ տեսնեն յիշեալ եօթն ուղեցոյց-սկզբունքն , հաւաստի ենք որ անոնց մեծ արժէք մը չպիտի տան ։ Ահա ասոր համար մենք ալ դաստիարակութեան տեսականէն գործնականին կանցնինք՝ թէ այդ ուղեցոյցներուն կիրարկութեան օրինակներ հայթայթելու եւ թէ՛ շարք մը մասնաւոր դիտողութիւններ ներկայացունելու համար ։

Բեստալոցցիի կարծիքն էր , որ եւ օր օրի զօրանալու վրայ է , թէ կա՛յ տեսակ մը դաստիարակութիւն որ պէտք է օրրոցէն սկսի ։ Ով որ մանկիկի մը խոշոր խոշոր աչուըները բանալով՝ իր բոլորի առարկաներուն վրայ սեւեռիլը տեսած է , աղէկ գիտէ որ՝ ուզենք չուզենք՝ անոր դաստիարակութիւնն իրապէս շատ կանուխ կըսկսի . մանկիկն ամէն ձայնի կականչէ , մատերովը ամէն բան կը շօշափէ , եւ բռնածը բերանը կը տանի . եւ ասոնք են առաջին ոտնառութիւններն այն շաւիղին մէջ , որ կը տանի աներեւոյթ մոլորակներ գտնելու , հաշիւի մեքենաներ հնարելու , նկարչական վսեմ գործեր արտադրելու եւ համերգութեանց ու օպերաներու հեղինակութեան ։ Եւ որովհետեւ կարողութեանց այս գործունէութիւնն սկիզբէն ինքնեկ ու անհրաժեշտ է , խնդիրն հոն է թէ պէ՛տք է արդեօք նիւթերու պէսպիսութիւն մը հայթայթել , որպէս զի մանկիկին այս գործունէութիւնն անոնցմով նախակրթի ։ Այս խնդիրին պատասխանն է միա՛յն «այո՛ , պէտք է» ։ Սակայն ինչպէս վերն ըսինք՝ կրնանք Բեստալոցցիի տեսականին համամիտ ըլլալ՝ առանց համակերպելու իր գործնականին, եւ ճիշդ հոս է որ կարծիքով կը տարբերինք իրմէ ։ Կարդալ սորվեցունելու եղանակին վրայ խօսելով՝ Բեստալոցցի կըսէ .

«Հեգարանին մէջ պէտք է գրուած ըլլան լեզուին ամէն ձայներն, որոնք պէտք է հայրենի տունին մէջ սորվեցունել իր տղայութենէն սկսելով. մանաւանդ՝ որ իր հեգարանէն հեգել սորվելու վրայ է՝ պէտք է որ որոցի եղբօրն ականջն 'ի վար կրկնէ այն ձայները, մինչ տակաւին ձայն մը յօդելու կարող չէ մանկիկն, այնպէս որ այդ հեգուածքն անոր միտքին մէջ խորապէս տպաւորի անդադար կրթութեամբ։»

Եթէ աոր վրայ աւելցունենք Մայրերու Մատեանին մէջ գրուած պատուէրներն, որով հեղինակը կը յորդորէ մայրն՝ իր ստնդիաց մանկիկին սկզբնական դասի նիւթ ընել՝ մարդկային մարմնին զանազան մասերուն անունը, դիրքն, առընչութիւններն ու յատկութիւնները՝ կը տեսնենք յայտնապէս որ իմացականութեան յառաջատութեան առաջին երեսին վրայ Բեստալոցցիի ունեցած գաղափարները շատ չփոթ ու ճշգրտութենէ շատ հեռի էին, եւ աոր համար չկրցաւ նա բանաւոր ծրագիր մը գտնել։ Հիմա տեսնենք թէ հոգեբանութիւնն ինչ ընթացք կը ցուցընէ։

Այն առաջին տպաւորութիւններն, որոնք միտքը կըրնայ իւրացունել, դիմահար մարմիններէ, լոյսէ, ձայնէ, եւլն. յառաջ եկած անքաչխելի (indécomposable) զգացումներ են։ Բացայայտ է թէ գիտակցութեան բաղադրեալ վիճակներ անհնար է որ գոյանան՝ իրենք բաղադրող գիտակցական վիճակներէ առաջ։ Առանց նախ սորված ըլլալու լոյսն՝ իր աստիճաններովն ու յատկութիւններով, կամ դիմահարութիւնն իր ուժգնութեան այլ եւ այլ աստիճաններով՝ անհնար է գաղափար մը ունենալ ձեւի վրայ. որովհետեւ չատոնց գիտենք՝ որ իրերու երեւելի ձեւը կըմբռնենք լոյսի պէսպիսութեանց, եւ չօչափելի ձեւը դիմահարութեան պէսպիսութեանց միջոցով։ Այսպէս նաեւ

անկարելի է ըմբռնել յօդաւոր ձայն մը՝ առանց նախապէս տրուած ըլլալու իր բաղկացուցիչ անյօդ ձայներն ։ Ուրիշ նման պարագաներու մէջ ալ այսպէս պէտք է ըլլայ։ Ուստի, պարզէն դէպի բաղադրեալն յառաջանցումի հարկաւոր օրէնքին համեմատ՝ պէտք է որ մանուկին ցուցընենք խել մը առարկաներ, որ ներկայացունեն դիմահարութեան այլ եւ այլ աստիճաններ ու տեսակներ, լոյսի այլ եւ այլ աստիճաններ ու այլ եւ այլ որակներ, պէտք է որ անոր ականջին հնչեցունենք բաւական թիւով ձայներ, զանազան ուժգնութեամբ, զանազան եղանակներով եւ զանազան ճնչումով ։ Այս սկզբնական եզրակացութեան ո՛րչափ ճիշդ ըլլալը կը տեսնենք մանուկին բնազդներէն, երբ նկատենք թէ ի՛նչ բերկրութեամբ կը խածնէ նա իր խաղալիկները, կը շօշափէ իր եղբօր բաճկոնին փայլուն կոճակներն, եւ ի՛նչ հրճուանքով իր հօրը քունքի մազերը կը քաշէ ։ երբ դիտենք թէ ո՛րչափ մտասոյզ կըլլայ պայծառերանգ առարկայի մը դիմաց, որուն «սիրուն» անունը կուտայ անմիջապէս երբ արտասանել կըսկսի՝ անոր գոյներուն փայլումին համար միայն, եւ իր երեսն ի՛նչպէս կը բացուի զուարթ ժպիտով մը՝ երբ կը լսէ իր ստընտուին չաղփաղփութիւնն, հիւրի մը մատներուն դղըչիւնն կամ իրեն համար նոր ինչեւ իցէ ձայն մը ։ Բարեբաղդաբար մանկասածութեան արդի սովորութիւնները շատ լաւ կը սատարեն դաստիարակութեան այս նախնական պէտքին ։ Սակայն ուրիշ շատ բան կայ ընելիք, եւ այս բարենորոգումները մեր կարծածէն աւելի կարեւոր են ։ Մանկական կարողութեանց իւրաքանչիւրն ընդունակ է կենսախայտ տպաւորութիւններ առնելու՝ աւելի իր յառաջատուութեան համընթաց ինքնեկ գործունէութեան ատեն քան ուրիշ ո՛ եւ իցէ ժամանակ ։ Ասկէ զատ, որովհետեւ այս տարրական ծանօթութիւններն 'ի հարկէ պէտք է

տանել, եւ մանկիկն երբ ալ որ տանէ անոնք՝ ժամանակ պէտք է՝ ժամանակը խնայած կըլլանք եթէ մանկութեան առաջին շրջանին՝ ուր իմացական ուրիշ զբաղում մը տալ անկարելի է՝ յատկացունենք աշակերտն ընտելացունելու այս տպաւորութեանց՝ կատարելապէս եւ իրենց բոլոր պէսպիսութեամբը։ Պէտք չէ մոռնալ՝ թէ մանուկին բնաւորութիւնն ու առողջութիւնը պիտի օգտին այս խել մը տպաւորութեանց բերած հանրական հաճոյքէն, տպաւորութեանց՝ որ ամէն մանուկ ա՛յնքան եռանդով կը տարրախառնէ իր հոգիին։ Եթէ գիրքիս չափը ներէր՝ կըրնայինք եւ օգտակար կըլլար՝ տալ քանի մը տեղեկութիւններ աւելի կանոնաւոր մէթոտի մը վրայ քան այն սովորական եղանակն, որով մանուկին ըմբռնումին համեմատ նիւթեր կը հայթայթենք իրեն։ Բայց առ այժմ բաւ է յիշեցունել հոս անորոշէն դէպի որոշեալն յառաջատութեան հանրական օրէնքն՝ հասկըցունելու համար թէ այս օրէնքին հետեւելով պէտք է ընթանանք։ Այս օրէնքն այն է՝ թէ իւրաքանչիւր կարողութեան զարգացումին առեն՝ ամէնէն ուժգնութեամբ դիմաւորուած տպաւորութիւններն են որ նախ կըմբռնուին, եւ թէ՝ ըստ այսմ՝ այն ձայներն, որ ուժգնութեան ու եղանակի կողմէն իրարմէ շատ կը զանազանին, այն գոյներն որ շատ կը տարբերին իրարմէ, եւ այն նիւթերն՝ որ թէ յօրինուածով եւ թէ պնդութեամբ աննման են՛ իրարու, պէտք է ամէնէն առաջ ներկայացունել մանուկին՝ իբրեւ առաջին տպաւորիչ նիւթեր։ Մանուկը պէտք է ծանր ծանր յառաջանայ դէպ 'ի այն տպաւորութիւններն, որ իրարու աւելի մօտ ու նման են։

Անցնինք **իրախօսութեան** դասերուն, որ զգայարանական այս առաջին կրթութեան բնական շարունակութիւնն են. նախ դիտել կուտանք որ ընդհանրապէս իրա-

խօսական դրութիւնները՝ բոլորովին տարբեր են բնականէն, եւ բնական ըսելով կիմանանք՝ ինչ որ կը տեսնենք տղայութեան չափահասութեան ու քաղաքակրթութեան պատմութեան վրայ ։ «Պէտք է, կըսէ Պ. Մարսէլ, ցուցընել մանուկին թէ առարկայի մը այլ եւ այլ մասերն ինչպէս իրարու կցորդած են» ։ Ամէն իրախօսական դասագիրք ցանկ մը ունի այնպիսի իրողութեանց, որ պէտք է դաս տրուին մանուկին՝ իրեն ներկայացած իւրաքանչիւր առարկային կարգով ։ Այդ մանուկի մը ամէնօրեայ կենցաղն հարեւանցի մը նկատելով կը հասկընանք՝ որ իր լեզու ելնելէն առաջ ինչ որ կը սորվի՝ ինքնիրեն կը սորվի ։ Թէ՛ տօկունութեան ու ծանրութեան յատկութիւնները՝ դաս մը երեւոյթներու հետ միասին, թէ՛ անձերը զանազանող երանգներն ու ձեւերը, թէ՛ այս ինչ կերպարանն ունեցող անասուններուն արտաքերած մասնաւոր ձայներն՝ ամէնն ալ երեւոյթներ են, որոնք մանուկը բոլորովին մինակ կը գիտէ ։ Չափահասութեան ատեն՝ երբ ա՛լ վարժապետ չունի՝ ամէն ժամ ինքնիրեն կընէ իր գիտողութիւնները . օր օրի ինքնին կը հանէ պէտք եղած եզրակացութիւններն . եւ կենցաղի մէջ իր յաջողութիւնը կախուած է՝ իր գիտելու քիչ կամ շատ կատարեալ կերպէն, եւ եզրակացունելու աւելի կամ նուազ ճշգրիտ եղանակէն ։ Հաւանական չէ ուրեմն՝ որ բնականին բոլորովին ներհակ ընթացք մը ունենանք՝ սկզբնական տղայութենէ չափահասութեան անցնելու միջոցին՝ իրերու յատկութիւնները սորվելու պէս պարզ գործի մը մէջ, մինչդեռ մարդկային ազգին յառաջատուութեան միջոցին բռնած շաւիղն հաւասարապէս նոյնը կը տեսնենք մանկիկին ու կատարեալ մարդու վրայ ։ Ընդհակառակն, աւելի բացայայտ չէ՞ թէ պէտք է միշտ ու ամէն բանի մէջ նոյն մէթոտը բռնենք . եւ բնութիւնն ինք չէ՞ որ մշտնջենա-

պէս այս ճամբայով կառաջնորդէ մեզի . զայս աւելի աղէկ կրնանք հասկընալ՝ եթէ ուշադրութեամբ դիտենք եւ հլուանանք անոր հպատակելու ։ Մանուկներու զգացած իմացական համակրութենէն աւելի ականերեւ բան կա՞յ ։ Դիտէ փոքրիկ մանուկն , որ ծունկերուդ վրայ նստած՝ իր խաղալիկներն երեսիդ կը մօտեցունէ՝ որպէս զի կարենաս նկատել անոնք ։ Տես ի՛նչպէս երեսդ 'ի վեր կը նայի՝ երբ իր փափուկ մատովը սեղանին զարնելով ձայներ կը հանէ . եւ նորէն կըսկսի զարնել , նորէն քեզի կը նայի , կարծես ըսել կուզէ « Այս նոր ձայնն ալ լսեցի՞ր » . մեծերն ալ նայէ՝ որ սենեակէն ներս կը մտնեն աղաղակելով՝ «Մայրի՛կ , նայէ՛ սա , մայրի՛կ սա ալ նայէ՛» եւ այս սովորութիւնն երկար ատեն պիտի չարունակէին՝ թէ որ մայրն անմտութեամբ չչեխէր անոնք՝ ըսելով թէ անհանգիստ մընէք զիս ։ Պտոյտի ատեն դիտեցէք որ փոքրիկներն ի՛նչպէս դաշտակին վրայ կը վազեն՝ ցուցընելով անոր փրցուցած ծաղիկներն , եւ ըսելով « տե՛ս ի՛նչ սիրուն ծաղիկ է , դուն ալ սիրուն ես ըսէ » . մտիկ ըրէք մանաւանդ թէ ի՛նչ խանդալից արագախօսութեամբ պզտիկը կը պատմէ իրեն տեսած ամէն նոր բաները՝ միայն թէ ուշադրութեամբ մտիկ ընող մէկն ունենայ ։ Այսպիսի եղելութիւններէ բացայայտապէս կրնանք մակաբերել՝ թէ պէտք է այս իմացական բնազդներուն համակերպ ընթանանք , թէ պէտք է բնութեան քայլերը կարգաւորենք , մտիկ ընենք ինչ որ մանուկը կըսէ մեզի իւրաքանչիւր առարկայի վրայ եւ խրախուսենք զայն՝ որ կըրցածին չափ աւելի ըսէ . անոր ուշադրութիւնն երբեմն բերենք այն իրերուն վրայ , որոնք դեռ տեսած չէ նա , որպէս զի անոնց հանդիպած ատեն ինքնին դիտելու յօժարի , եւ ապա փութանք բերել անոր առջին կամ ցուցընել կարգ մը նոր առարկաներ , որոնց վրայ կարենայ

լիով գիտողութիւններ ընել ։ Տե՛ս՝ այս մէթոտը բանե-
ցունելով խելացի մայր մը ի՛նչպէս կը կարգաւորէ իր
զաւակը ։ Բայց քայլ կը վարժեցունէ մանուկը սա ամէ-
նապարզ վերադիրներուն . — կարծրութիւն , կակղու-
թիւն , գոյն , համ , չափ , եւ մանուկն ինք կ'օգնէ մօրը ,
եւ կը փութայ իրեր բերելով անոր ցուցընելու թէ « ան
կարմիր է » « ան կարծր է » երբ այս յատկութիւններն
արտայայտելու բառերն ա՛լ սորված է ։ Եւ քանի առաջ
երթայ՝ դիտելու եւ չօչափելու համար ուրիշ առարկաներ
ցոյց տալ իրեն՝ անոր ուշադրութիւնն հետզհետէ կը բերէ
այդ առարկաներուն յաւելուածական յատկութեանց վրայ ,
միտ դնելով որ արդէն անոր գիտցած անուններուն հետ
միասին յուշաձեւի մը մէջ ամփոփէ անոնք՝ այնպէս որ
մանուկը նմանելու բնական միտումովը սովորի կրկնել
անոնք իրարու ետեւէ ։ Այնուհետեւ , վասն զի կը պա-
տահի երբեմն որ մանուկը չյիշեր իր ճանչցած յատկու-
թիւններէն մին կամ մէկ քանին , մայրը քիչ քիչ կըսկսի
հարցունել անոր « այդ առարկային վրայ ուրիշ ըսելիք
բան մը չի՞կայ » . եւ շատ անգամ տղան ուրիշ ըսելիք
բան մը չունենալով՝ մայրն այն ատեն վայրկեան մը տագ-
նապի մէջ կը ձգէ զայն՝ եւ ապա օգնութեան կը հասնի՝
ժպտելով անոր մոռացութեան վրայ ։ Այս տեսակ քանի
մը փորձերէ ետեւ՝ վերջապէս տղան կը սորվի իր ի՛նչ ը-
նելիքը ։ Եւ երբ մայրը կըսէ թէ « այս ինչ առարկային
վրայ ես քենէ աւելի բան գիտեմ » մանուկին անձնասի-
րութիւնը կը գրգռի . աչքը բանալով ուշադրութեամբ
չուրջը կը նայի , լածները բոլորն ալ կը կրկնէ մտովի ,
եւ որովհետեւ խնդիրը դիւրացած է ա՛լ՝ կըրնայ լուծել ։
Իր յաջողութեան վրայ բոլորովին կը յափշտակի , ու մայրն
ալ ուրախակից կըլլայ անոր ։ Ամէն մանուկի պէս՝ չա-
փազանց կը հրճուի ինքնիրեն բան մը գտնելուն համար ,

եւ նորանոր յաղթութիւններ կուզէ ընել, եւ ուրիշ բաներու վրայ ալ իրեն հարցումներ ընել կըստիպէ մայրը։ Իրեն կարողութիւնները քանի՛ յառաջանան՝ մայրը դասի ցանկին վրայ նորանոր իրերու յատկութիւններ կաւելցունէ՝ կարծր որակէն կակուղին, անհարթէն ողորկին, մուգ գոյնէն փայլունին եւ պարզերէն բաղադրեալներուն յառաջատելով, եւ մանուկին կարողութեանցն աճելուն համեմատ աւելի բարդ խնդիրներ հետզհետէ ընդելուզելով՝ միշտ աւելի՛ ուշադրութիւն եւ աւելի՛ յիշողութիւն կը պահանջէ անկէ։ Միշտ հետաքրքրութեան մէջ բռնելով՝ նորանոր նիւթեր կը մատակարարէ՝ անոր իւրացունելու կարողութեանն համեմատ, եւ այսպիսի դոյզն դժուարութեանց յաղթելու հաճոյքը կուտայ անդադար։ Մօրն այս ընթացքն յայտնապէս համաձայն է նոյն ինքն մանուկին ինքնամէտ ընթացքին, որ կերեւի անոր վրայ մանկական առաջին շրջանին։ Մայրը միայն կօգնէ մանուկին բնական յառաջատուութեան, եւ կօգնէ՝ անոր բնազդումին համակերպ եղանակով, որ իրերն հիմնապէս դիտելու սովորութեան զայն ընտելացունելու բուն եղանակն է՝ եւ իրախօսական դասերուն նպատակն ալ այս է։ Այս ինչ բանին անունը տալ մանկիկին, եւ ուրիշ բան մը ցոյց տալ անոր՝ դիտել սորվեցունել չէ, այլ ուրիշներուն դիտողութեանց լոկ ընդունարան մը ընել է զայն. տկարացունել քան զօրացունել է անոր ինքնակրթութեան բնական տրամադրութիւնը. զայն զրկել է այն հաճոյքէն, որ յառաջ կուգայ յաջողութեամբ պսակեալ գործունէութենէն. վերջապէս ներկայացունել է անոր՝ ծանօթութեանց յանկուցիչ ուսումը կերպական դասի ձեւով մը, ուստի նաեւ պատճառ ըլլալ անոր անփութութեան եւ տաղտկութեան, որ յաճախ կերեւի մանուկներուն վրայ իրախօսական դասերուն ատենն։ Ասոր հակա-

տակ, երբ մեր ցուցած եղանակով վարինք՝ միտքն իր յարմար սնունդին տարած կըլլանք, եւ իմացական ախորժակներուն հետ՝ տուած կըլլանք այն զգացումներն ալ, որ անոնց բնական կցորդներն են, այսինքն՝ **անձնասիրութիւնն** ու համակրելու փափաքը։ Այս ամէն շարժառիթներով՝ կը զօրացունենք անոր ուշադրութիւնն, որով կատարեալ եւ աշխոյժ հասողութեան մը տէր կըլլայ. իր միտքն սկիզբէն կը սորվի ինքզինքին օգնել, եւ այս սովորութիւնն իր բովանդակ կենցաղին մէջ կը տեւէ։

**Իրախօսութեան** դասերն ոչ միայն պէտք է ուրիշ եղանակով աւանդին, այլ նաեւ եղածէն շատ առարկաներ ունենան, եւ աւելի տեւեն։ Միայն տունին մէջ եղած բաները դասին նիւթ ըլլալու չեն, այլ անոնք ալ՝ որ կան դաշտերուն եւ մացառներուն մէջ, հրապարակներն ու ծովեզերքը։ Պէտք չէ միայն պատանեկութեան ատեն աւանդին, այլ երիտասարդութեան ատեն ալ շարունակին՝ այնպէս որ առանց զգալու դան հետզհետէ ձուլին բնախօսին ու գիտունին խուզարկութեանց հետ, երբ երիտասարդն այնպիսի մէկն ըլլայ։ Հոս ալ բնութեան ցուցածն է մեր շաւիղը. կա՞յ արդեօք աւելի կենսախայտ բերկրանք մը քան մանուկին այն բերկրանքն, որով կը խայտայ նա չտեսած ծաղիկ մը փրցուցած անգիւտ միջատ մը բռնած կամ գայլախազներ ու խեցեմորթներ ժողված ատեն։ Եւ ո՞վ չտեսներ՝ որ երբ մանուկին հաճոյակցինք՝ կըրնանք պատճառ ըլլալ որ նա կատարելապէս զննէ իր ախորժած նիւթերուն յատկութիւններն ու կազմածը։ Ամէն բուսաբան՝ անտառներն ու մարգագետինները պատանիներ տարած ատեն՝ դիտած է թէ ի՛նչ փոյթով անոնք կաշխատակցին իրեն, ի՛նչ եռանդով կաշխատին տունկեր գտնել, որպիսի՛ ուշադրութեամբ անոր զննութեանց կը մասնակցին, եւ ի՛նչ շատ հարցումներ կընեն

իրեն այս ամէնուն վրայ ։ Գաքոնի հետեւող մը , որ «իրրեւ ծառայ ու թարգման բնութեան» պարտի ինքն իր սկզբունքին համագործ ըլլալ , պիտի հասկընայ որ պէտք է խոնարհամտութեամբ հետեւի պատահականներու կողմէն իրեն հաղորդուած զեկուցումներուն ։ Տղան՝ որ անդործարանաւոր մարմիններու պարզ յատկութեանց ծանօթացած է արդէն՝ այս ընթացքով պիտի երթայ հմտաբար զննելու այն առարկաներն , որոնք կը տեսնէ իր հանապազորդ պտոյտներուն ատեն ։ Պէտք է սկսիլ նուազ բազմադէմ յատկութիւններէն . օրինակի համար՝ տունկերու վրայ դիտել տալու է նախ՝ ծաղիկի տերեւներուն գոյնը թիւը ձեւը . ծղօտներուն ու սաղարթներուն կազմը . միջատներու վրայ՝ թեւերու , մազիկներու , եղջիւրիկներու թիւն ու գոյնը . երբ այս յատկութիւններն հմտաբար ու ամբողջ հասկընայ՝ միւս յատկութեանց անցնելով ցոյց տալու է անոնց ծաղիկներու վրայ՝ առէջներու եւ պորտերու թիւը , տերեւապսակներուն ձեւը՝ թէ չաղա՛րդ (rayonné) են կամ երկկողմնաւո՞ր . տերեւներուն դիրքն ու յատկութիւնը՝ թէ ներհակադի՞ր են կամ փոփոխանկի՞ւն , կանթաւո՞ր թէ անկանթ , լե՞րկ թէ մազեղ , սղոցաձե՞ւ թէ հաւասար . իսկ միջատներու վրայ՝ դիտել տալու է մարմինի հատուածները , փորին անջրպետները , թեւերուն նիշերը , թէ մազիկները քանի՛ յօդուած ունին եւ մանր գործարաններն ի՞նչ ձեւ ունին ։ Այս ամէնուն մէջ պէտք է միշտ այնպիսի ընթացք մը բռնել՝ որ մանուկին փառասիրութիւնը գրգռի՝ ամէն բան տեսնելու եւ ամէն բան ինքնիրեն ընելու ։ Եւ ետքն ալ՝ երբ չափահաս ըլլայ՝ կարելի է իբր շնորհելով մը ցոյց տալ անոր այս տունկերը պահելու միջոցները ։ Անոնց վրայ իր առած ծանօթութիւններն՝ իր աչքին ամենայարգի բաներ ըրած են անոնք , եւ թերեւս աւելի մեծ շնորհ մը ըրած

*Ճըլլանք անոնց՝ երբ հասարակ Թիթեռնիկներ ու Թրթուրներ տանք իրեն՝ ուտելու համար ։ Այս այնպիսի զբօսանք մըն է՝ — ինչպէս մենք ալ անձով փորձն ըրած ենք — որ ամէնէն բուռն է ու տարիներ կը տեւէ ․ Եւ երբ այս սկզբնաւորութիւնը միջատաբանական հաւաքումի մը կերպարանք առնէ՝ կիրակնօրեայ պտոյտներուն ամբաւ քաղցրութիւն կուտայ, ու բնախօսական ուսումին գեղեցիկ նախաշաւիղ մը կըլլայ*(1) ։

*Աղէկ գիտենք որ պիտի առարկեն՝ թէ այդ դիտողութիւնները ժամանակ ու կորով կը վատնեն ․ աւելի լաւ չըլլա՞ր որ մանուկը գրէ իր դասերն եւ հաշուել սորվի, որպէս զի կենցաղի գործերուն պատրաստուի ։ Բայց կը ցաւինք՝ որ դաստիարակութեան վրայ այսչափ անոպայ գաղափար մը դեռ կը տիրէ, եւ այսչափ անձուկ միտքով*

---

(1) Թէ բովանդակ էակներէ մարդու եւ իր գիտութեան բնապէս հարկաւո՞ր են՝ իրենց կազմութեամբն ու պարունակութեամբ կամ միայն թէ՞ր նպաստաւոր՝ տիեզերքի ներդաշնակութեան վրայ համադրական ամէնէն ընդարձակ գաղափարն առնելու համար. — թողլով այս մեծ խնդիրն, որ մինչեւ ցարդ անհնար եղած է տրամախոհաբար լուծել, վասն զի կցորդ է իրերու սկիզբին եւ գրեթէ ամէնագիտութիւն կենթադրէ, հոս կարեւոր կը համարինք միայն դիտել տալ՝ որ թէպէտեւ մեացիներէն ոչ ոք կը ժխտէ գիտութեան կարեւորութիւնը (միջին միջոցով) բայց վստահաբար՝ բանաւոր ընթացք մը չէ՝ ինչպէս տեսական գիտութեանց ամէն ճիւղերն երիտասարդ ուսանողին, նոյնպէս ալ բնութեան մէջ եղած ամէն իրերն՝ իրենց բովանդակ մասերովն ու յատկութիւններովն՝ անխտիր դիտել տալ մանուկին ։ Քանի որ ամէնն ալ առ հաւասար՝ բուսաբան, բնապէտ, ծաղկահմուտ ըլլալ սահմանուած չեն, քանի որ միլիոնէն հազիւ թէ մին՝ Սողոմոնի պէս՝ Լիբանանի մայրերէն մինչեւ որմերու ծերպերուն մէջ բուսնող բաղեղներն իմաստասիրելու աստիճան համայնագէտ մը ըլլալ կը տրամադրի, քանի որ՝ կըսենք՝ մարդկութեան մեծագոյն մասը կենցաղական գործերուն մէջ ոչ իսկ անգամ մը պէտք պիտի ունենայ համայնագիտութեան, անիրաւութիւն՝ մանաւանդ ըն-

*կըմբռնելն օգտակարութեան իմաստը ։ Հոս չենք ըսեր թէ հարկ է ( ինչպէս որ է՛ ալ ) կանոնաւոր եղանակով յառաջացունել ըմբռնումներն , եւ ասոր համար շատ կարեւոր է մեր ցոյց տուած մեթոտը . այլ կը պնդենք միայն որ այսպէս ստացուած գիտելիք՝ լոկ ինքնին իսկ կարեւոր են ։ Ցիրաւի , քսակն ու մթերանոցը լեցունելու ծառայող բաներէն զատ ուրիշ բան սորվիլն այն ատեն միայն անօգուտ կըլլար՝ երբ ամէնուն հարկ ըլլար միայն վաճառական կամ հաշուակալ ըլլալ . երբ իրենց արհեստին վերաբերեալ բաներէն զատ ուրիշ գաղափարներու պէտք չունենային . երբ հարկ ըլլար ամէնուն ալ պանդոյրի պէս ուրիշ բանէ հաճոյք չիմանալ՝ բայց եթէ պատուհանի մը վրայ նստած ծխափողը քաշելով , գարեջուրը խմելով , կամ ասպետի մը պէս՝ որ միայն իբր որսի տեղուանք կը*

---

վայրախոյզ ժամավաճառութիւն չըլլար բեռնաւորել խեղճ մանուկներուն թեթեւ միտքն (որ աւելի բանաստեղծական սքանչացումով մը քան գիտութեան ինքնայօժար բերումով՝ կը միտի տեսասիրել յիշուած կարգ մը առարկաները) ծաղիկի ամբաւ զանազանակներուն, միջատներու տոտիկներուն եւ թեւերուն խլրտումներուն ու գոյներուն, թրթուրներու թաթիկներուն թնճուկ պատկերներով ։ Ասոնք արդէն բաւականապէս կը յագեցունեն մեծ Բրիտանիայի անասնական պարտէզներուն մէջ՝ անգղիացի ճոխ եւ խրոխտ երիտասարդներուն շռայլ հետաքրքրութիւնը միայն ։ Աւելի լաւ է՝ «օգտակարին ու անօգուտին» սկզբունքն օրինակներով կանուխ մտցունել մանուկներու իմացողականին մէջ, եւ այս կըլլայ՝ ծնողական անկեղծ առաջնորդութեամբ «սա ըրէ նա մի՛ներ» պատուիրելով ։ Շիտակը, մենք բնական ընդունակութեանց այնչափ հաւատացող մը չենք, եւ մեր համոզումն է՝ թէ ամէն մարդ Արիստոտէլի չափ հմտութիւն կրնայ ամբարել՝ եթէ շրջավայրը ժամանակն ու պարագաները նպաստեն. բայց այս միջոցներն եթէ չըլլան՝ համայնագէտ ըլլալու փորձերն ընդհանրապէս եղերական վախճան մը կունենան, մահ ։ Ճանչցած ենք քանի մը երիտասարդներ՝ որոնց հանրագիտական ապավայր եռանդն իրենց մահուան առիթ եղաւ ։ Թ.

նկատէ անտառները, վայրի տունկերը մօլի բոյսեր միայն կը կարծէ, եւ անասունները կը դասակարգէ՝ որսական, միջատական ու դուարական յատկութեանց համեմատ։ Սակայն՝ եթէ արդարեւ բնութեան մէջ մեր փառասիրութեան աւելի արժանի առարկաներ կան, եթէ մեր բոլորը իրերն սատակ չահեցունելէ աւելի ուրիշ բանի մը կրնան գործածուիլ, եթէ մեր վրայ չահախնդրական եւ զգայական ախորժակներէ զատ կան ուրիշ գործածելի կարողութիւններ, եթէ արուեստները, բանաստեղծութեան, գիտութեան ու փիլիսոփայութեան հայթայթած բերկրանք մեր երջանկութեան համար կարեւորութիւն մը ունին՝ պէտք է ուրեմն փափագինք որ խրախուսի ամէն մանուկի բնադդական այն միտումն, որով կը ձգի նա բնութեան գեղեցկութիւնները դիտելու եւ անոր երեւոյթներն ուսումնասիրելու։ Բայց տես որ այս անցուկ օգտախնդրութիւնն (utilitarism) ալ, որով ժողովուրդը կը կարծէ թէ բաւ է աշխարհ մը գալ ու երթալ՝ առանց տեղեկանալու ինչ որ կայ հոս, կրնայ չահիլ այս կարգի ուսումնասիթիւններէն։ Եթէ մարդ քիչ մը մտածէ՝ պիտի համոզի թէ ամէն վիճակի համար ալ ամէն բանէ աւելի կարեւոր է կեանքի օրէնքին գիտելիքը, թէ այս օրէնք ոչ միայն գլուխն են մեր մարմնական ու իմացական ամէն գործերուն, այլ իրենց ամէնակցորդութեամբը կը տիրեն հրապարակային ու մասնաւոր ամէն դաշինքի, ամէն առեւտուրի, ամէն քաղաքականութեան, ամէն բարոյականի. ուստի եթէ չգիտնանք այս օրէնքն՝ չենք կրնար լաւ կենցաղավարիլ իբրեւ մարդ։ Պիտի համոզի նախ՝ թէ կեանքի օրէնքն էապէս նոյնն են բովանդակ գործարանական աշխարհին մէջ, եւ մանաւանդ անկարելի է ըմբռնել անոնք իրենց բազմամասն երեւումներուն առեն՝ եթէ առաջ ըմբռնած չըլլանք անոնց պարզ երեւումները։

Երբ սաստ համոզի, պիտի իմանայ նաեւ թէ օգնելով մա-նուկին՝ անոր այնքան տենչացած արտաքին ազատու-թիւններն ստանալու ատեն, եւ անոր բովանդակ երի-տասարդութեանն ատեն խրախուսելով զայն այս ընթաց-քին մէջ՝ պատճառ կըլլանք իրեն որ հաւաքէ ինք գի-տութեան ապագայ գործարանի մը անտաշ ատաղձներն, որ անոր իմացականութեան պիտի հայթայթեն օր մը՝ խարսխեալ հանրացումներու տարրերն այն գիտութեան, որուն պէտք ունինք ամէնս ալ՝ մեր կենցաղական գոր-ծերուն մէջ իմաստութեամբ ընթանալու համար։

Միտքի կրթութեան վրայ աւելի ճիշդ գաղափարնե-րու զօրանալուն նշան մըն է նաեւ օր օրի ընդհանրացող այն կարծիքը՝ թէ գծագրութիւնն ալ պէտք է նկատել իբրեւ մին դաստիարակութեան տարրերէն։ Հոս ալ՝ դաս-տիարակները վերջապէս ընդունած են բնութեան գծած ճամբան։ Ամէնուն գիտցած բանն է որ մանուկներն ինք-նաբերաբար կաշխատին իրենց բոլորի անձերուն, տու-ներուն, ծառերուն, կենդանիներուն պատկերն հանել քարէ տախտակի կամ մատիտով թուղթերու վրայ։ Մեծ հաճոյք կիմանան պատկերները դիտելով, եւ նմանելու ի-րենց բնական միտումովը՝ պատկերներ քաշել կը փորձեն։ Աչքերնուն հանդիպած առարկաները նկարելու իրենց այս ջանքն՝ բնազդական վարժութիւն մըն է իրենց ըմբռնում-ներուն, որով իրենց դիտողութիւնն աւելի ճիշդ ու ա-ւելի կատարեալ կըլլայ։ Երբ կը տեսնենք որ մանուկներ՝ առարկաներու տեսանելի յատկութեանց վրայ իրենց դի-տերը մեզի դիտել տալու՝ եւ իրենց գծած պատկերներուն վրայ մեր ուշադրութիւնն հրաւիրելու ճիգեր կընեն՝ պէտք է գիտնանք որ այդ ընթացքով կը պահանջեն մեզմէ ճիշդ իրենց պէտք եղած կրթութիւնը։

Դաստիարակութեան մէջ գծագրութեան տեղ մը չնոր-

հելով՝ վարժապետներն համակերպած են բնութեան դըրդումներուն . եթէ գծագրութեան դասերուն ընտրութեան մէթոտին մէջ ալ բնութեան հետեւէին՝ աւելի աղէկ կընէին ։ Եւ ի՞նչ են այն առարկաներն որոնք մանուկը միւս ամէն բանէ առաջ պատկերել կուզէ . — տարածութիւն ունեցող բաներ , որ գեղեցիկ են գոյնով եւ բերկրանք կը պատճառեն իրեն . իր սիրած մարդիկը , կովերն ու շուներն , որ իրենց շատ մը կերպարաններուն անոր հետաքրքրութիւնը կը շարժեն . իր ամէն օր տեսած տուները , որոնց մեծութիւնն եւ մասերու հակադրութիւնն աչքի կը զարնեն . եւ անոնց պատկերն ի՞նչպէս հանելով աւելի կը բերկրի . — Ներկելով ։ Եթէ ներկ չունենայ , թուղթով եւ մատիտով մը գոհ պիտի ըլլայ . բայց եթէ տուփ մը երանգ տանք իրեն վրձինով միասին՝ ճշմարիտ գանձ մը պիտի սեպէ զայն . գծագրութիւնը ներկումէն անմիջապէս ետքը կուգայ , եւ տղան՝ միայն ներկելու համար առարկայ մը կը գծագրէ ։ Եթէ պատկերազարդ գիրք մը տանք իրեն՝ ըսելով որ անոնց պատկերները գունաւորէ , ի՛նչ երջանկութիւն իրեն համար ։ Արդ ի՛նչ ուզեն թող ըսեն գծագրութեան դասատուներն , որ նկարելու ուսումը կուշացունեն եւ գծագրութեան տաղտկալի վարժութիւններով ձեւի դաս կուտան , մենք համոզուած ենք որ բնութեան ցուցած այս ճամբան ամէնէն ճիշդն է ։ Պէտք է սկիզբէն ճանչնալ գծագրութեան վրայ ներկի առաւելութիւնն , որ հոգեբանապէս ապացուցուած է , եւ սկիզբէն՝ իրական առարկաները պէտք է օրինակ տրուին իրենց ։ Պէտք է՝ որ համեմատաբար դժուարին եւ ամուլ ձեւական ուսումի իբր բնագրգիռ՝ խրախուսենք մանուկին արտայայտած գոյնի այս նախասիրութիւնն , որ ոչ միայն մանկութեան վրայ կերեւի , այլ նաեւ շատերուն վրայ կը տեւէ մինչեւ վերջը։ Պէտք

*է՝ որ նա վարժատրուած սեպէ զինքը մտածելով՝ թէ այդ պատահական փորձերէն ետեւ քիչ ատենէն պիտի սկսի լրջօրէն նկարել . պէտք է քաջալերենք ախորժած առարկաներուն պատկերը շինելու մանուկին ջանքը՝ վստահ ըլլալով թէ քանի՛ վարժի՝ աւելի պարզ եւ իրական առարկաներ (որոնց պատկերը հանելն իր կարողութեան աւելի համեմատ պիտի ըլլայ) իրեն համար շահեկան պիտի ըլլան, եւ պիտի փորձէ անոնք ալ պատկերել՝ այնպէս որ իր նմանութիւնները քիչ քիչ պիտի սկսին իրականութեան մօտենալ ։ Եթէ այս առաջին փորձերը տձեւ ալ ըլլան՝ ինչպէս որ 'ի հարկէ կըլլան ըստ յառաջատական օրէնքին՝ ատոր համար պէտք չէ որ կարեւորութիւն չիտանք անոնց, թո՛ղ ձեւերն անճոռնի ըլլան, թո՛ղ գոյները խառնաշփոթ բաներ ըլլան . հոգ չէ, վասն զի պէտք եղած բանն է գիտնալ՝ թէ մանուկն իր կարողութիւնները կը զարգացունէ՛, եւ ոչ թէ աղէկ կը գծագրէ՛ ։ Պէտք է նախ՝ որ իր մատներուն շարժումներուն քիչ մը տէր ըլլայ ինք, եւ նմանութեան վրայ քանի մը ստուերական գիտելիք առնէ . եւ ի՛նչ որ կընէ այդ միջոցին՝ նպատակին հասնելու համար ամէնէն յարմարն է, որովհետեւ ինքնաբերաբար ու բերկրութեամբ կընէ ։ Սկզբնական տղայութեան ատեն՝ անհնար է գծագրութեան կանոնաւոր դասեր տալ . Է՛ խափանե՞նք թէ խրախուսենք ինքնայօժար կրթութեան այս ճիգերն, եւ բնական ճամբայով առաջնորդե՞նք անոնց ձեռնավարժութեանն եւ ըմբռնելու կարողութեան ։ Ներկելու աժան պատկերներ եւ սահմանագիծերը գունաւորելու համար աշխարհագրական քարտէսներ մանուկներուն եթէ տանք՝ ոչ միայն ախորժ կերպով իրենց ներկելու կարողութիւնը գրգռած կըլլանք, այլ նաեւ կը հայթայթենք անոնց՝ իրերու եւ աշխարհներու վրայ հարեւանցի ծանօթութիւն մը, եւ վարժ*

ձեռքով վրձին գործածելու ճարտարութիւն մը․ Նաեւ՝ նմանելու համար անոնց ընդոստուցիչ առարկաներ ցոյց տալով՝ եթէ վառ պահենք նմանաձեւ բաներ յօրինելու անոնց բնազդական սովորութիւնը (թո՛ղ ըլլան արտառոց բաներ) պիտի գայ ատենն, որ երբ անոնց գծագրութիւն դասախօսել սկսինք՝ անոնք արդէն պատրաստականութիւն մը առած պիտի ըլլան, որ առանց այդ նախնական աղօտ գործունէութեան չպիտի կրնային ունենալ։ Աշակերտն ալ դասատուն ալ՝ ժամանակ ու աշխատութիւն շահած պիտի ըլլան։

Մեր ըսածներէն դիւրին է հասկնալ՝ որ մենք չենք հաւնիր օրինակներու վրայ մանուկներու գծագրութիւն սորվեցունելու դրութեան, մանաւանդ կը դատապարտենք կարգ մը վարժապետներու մէթոտն, որով կըսկսին անոնք՝ ուղիղ գիծերու, կոր գիծերու եւ խառն գիծերու վրայ դասեր տալով․․․։ Հոս ալ՝ որոշեալէն կըսկսին փոխանակ անորոշէն սկսելու․ հոս ալ՝ վերացեալը թանձրացեալէն նախադաս կընեն․ հոս ալ՝ գիտնական կանոնը գործնական փորձառութիւններէն առաջ կանգնեցունեն։ Հարկ չէ կրկնել որ այս՝ իրերու բնական կարգը վեր 'ի վայր շրջել է։ Շատ ճիշդ է այն խօսքը՝ թէ ճառի մը մասերն ու անոնց կիրառութիւնը սահմանելով՝ լեզու մը սորվեցունելու սկսիլը գրեթէ այնչափ խելքի դէմ է, որչափ խելքի դէմ է քայլել սորվեցունել սկսիլ՝ առաջ ոսկրերու ջիղերու եւ սրունքի նեարդերու վրայ դասեր տալով․ այսպէս է նաեւ առարկաներու դասն ալ, որ կըսկսին՝ գիծերու սահմաններով եւ անուններով այնպէս ինչպէս գրուած են վերլուծական գիրքերու մէջ։ Արուեստական այս մանրամասնութիւնները թէ՛ սարսուցիչ են եւ թէ՛ անօգուտ, ուսումին համն առաջուընէ կաւրեն՝ ուրիշ նպատակ մը չունենալով բայց եթէ սորվեցունել մանու-

կին՝ ինչ որ նա ապահովապէս ու անզգալաբար պիտի սորվի լոկ սովորութեամբ ։ Ինչպէս առանց բառարանի կը սորվի նա լսած բառերուն նշանակութիւնը , նոյնպէս ալ անաշխատ ու ախորժով պիտի սորվի արուեստական անունները՝ դիտողութիւններ ընելով առարկաներու պատկերներու եւ իր հանած գծագրութեանց վրայ . այդ արուեստական անուններն իրեն համար ձանձրալի խորհրդաբանութիւններ կըլլան՝ եթէ ուզենք ամէնէն առաջ իրեն սորվեցունել անոնք ։

Մեր նշանակած դաստիարակութեան սկզբունքին համեմատ՝ պէտք է դասատուն հետեւի մանուկին այս ճիգերուն , որ ա՛յնքան արժանի են խրախուսուելու , ինչպէս ցուցինք ։ Երբ մանուկն իր ուզած փորձերով քիչ մը ձեռքի վարժութիւն եւ համեմատութեան գաղափար մը առնէ՝ պիտի սկսի աղօտաբար ըմբռնել մարմիններն՝ իբրեւ ներկայացուցիչներ հեռանկարչութեան երեք չափերուն . եւ երբ այս կերպարանները քիչ շատ խեղաթիւրութեամբ թուղթի վրայ հանելու խել մը փորձեր ընելով՝ անոր միտքին մէջ պայծառ գաղափար մը կազմէ թէ ինչ կերպով կըլլայ ճիշդ գծագրել , եւ այնպէս գծագրելու տենչ մը գոյանայ՝ այն ատեն կրնանք տալ անոր փորձական հեռանկարչութեան առաջին դաս մը այն կանոնաձեւով , որ ընդհանրապէս կը գործածի հեռանկարչութեան օրէնքը գիտնաբար բացատրելու ատեն ։ Այս կարգին վրայ թերեւս շատերը խորհին , բայց ըլլալիք փորձը՝ թէ՛ պայծառ է թէ՛ շահեկան՝ հասարակ իմացականութիւն ունեցող ամէն մանուկի համար ։ Երբ ապակեայ թիթեղ մը սեղանի մը վրայ ուղիղ մը կանգնեցունենք , որուն մէկ կողմը զետեղենք ի՛նչ եւ իցէ առարկայ մը , օրինակի համար՝ գիրք մը մանուկին տեսակէտին ու ապակիին մէջտեղը , եւ ըսենք անոր՝ թէ առանց իր տեսութեան կէտէն շարժե-

չու՛ ապակիին վրայ կէտ կէտ նշանակէ առարկային ան-
կիւններն , ՚եւ ապա այս կէտերն ուղիղ գիծերով միա-
ցունէ , այս գործողութիւններն ընելով մանուկը կըմբռնէ
որ գիծերն առարկային շրջանակներուն համանմանն հա-
նած են ։ Եւ այն ատեն՝ ապակիին յետակողմը թուղթ
մը բռնելով երբ դիտել տանք անոր թէ իր քաշած գի-
ծերը կը ներկայացունեն տեսած առարկան , կը հասկընայ
որ գիծերն ոչ միայն առարկային տեսիլը կը պատկերեն ,
այլ ճշմարտապէս նման են անոր , վասն զի անոր շրջա-
պատին կաղապարումն են . եւ ասոր կը համոզի՝ երբ ու-
զածին չափ վերցունէ եւ նորէն դնէ թուղթն ապակիին
յետակողմէն ։ Իրողութիւնն իր աչքին համար նոր է եւ
ընդոստուցիչ . անոր մէջ փորձառական ապացուցութիւն
մըն ալ կայ՝ թէ կարգ մը գիծեր որ տափարակ մակե-
րեւոյթի մը վրայ ուղղութեամբ մը քաշուած են՝ կրնան
պատկերել ուրիշ կարգ մը գիծեր , որ միջոցին մէջ տար-
բեր երկայնութիւն եւ տարբեր ուղղութիւն ունին ։
Ապակիին ետեւը դրուած առարկային դիրքն երբ աստի-
ճանաբար փոխենք՝ մանուկը վերջապէս կը հասկընայ թէ
ի՛նչպէս կարգ մը գիծեր կը կծկին ու կաներեւութանան ,
եւ անոնց տեղ ուրիշ գիծեր կերեւին ու կերկայնին ։ Այս
կերպով վարժապետը քիչ քիչ ու տակաւ կրնայ ըմբռնել
տալ մանուկին՝ զուգահեռականներուն մերձաւորութիւնն
եւ հեռանկարչութեան ամէն գլխաւոր պարագաները ։ Եւ
եթէ տղան սովորած է պէտք եղածին պէս ինքնիրեն
յառաջդիմել՝ իրեն առաջարկուած ատեն խնդամիտ պիտի
քաշէ թուղթի վրայ այդ գիծերը՝ միայն իր աչքին նպա-
տովը . իրեն համար յաղթանակ մը պիտի ըլլայ գծագրու-
թիւն մը չընել, որուն ճշգրտութիւնը պիտի ստուգէ ետքը՝
բաղդատելով զայն ապակիին վրայ գծուած ստուերագիրին
հետ ։ Այսպէս մանուկը տակաւ պիտի սորվի՝ պարզ

յանկուցիչ ու բանաւոր մէթոտով մը առարկաներու ծիրական երեւոյթը գիտելու եւ դիւրութեամբ անոնք գաղափարելու, եւ ոչ թէ ուրիշի գծագրութիւնները վերացաբար օրինակելու՝ անիմաստ ու մեքենական մէթոտով մը։ Ասկէ զատ՝ աշակերտն այսպէս անզգալաբար կանուխ պիտի սորվի նկարչութեան ճշմարիտ տեսականն, այսինքն պիտի գիտնայ՝ թէ նկարչութիւնը ստուերագիր մըն է առարկաներու երեւոյթին, որ գրուած են աչքին ու իրենց մէջ եղած տափարակ մակերեւոյթի մը ետեւ։ Ըստ այսմ նաեւ՝ երբ հեռանկարչութիւնը գիտնաբար սորվելու հասակին հասնի՝ արդէն կատարելապէս գիտցած պիտի ըլլայ այն բաներն, որ այդ գիտութեան տրամաբանական խարիսխն են։

Հետեւեալ վկայութիւնն, որ Մ. Ուխսինն է, կանդրատըպենք հո՛ս իբրեւ ամէնէն լաւ օրինակ՝ երկրաչափական գաղափարները մանուկին ըմբռնել տալու իմաստուն եղանակի մը։

«Ըսենք թէ տղայ մը՝ թուաբանութիւն սորվելու համար վարժուած է խորանարդներու վրայ ուսումնասիրել. երկրաչափութեան տարրերը սորվելու համար ալ կրնայ գործածել անոնք։ Ես կուզեմ՝ որ տղան չափական գիտութեան սկսի հաստատուն մարմիններու վրայ ուսումնասիրութիւններ ընելով, եւ շատերն ասոր հակառակը կընեն սովորաբար։ Իմ ըսած այս եղանակը՝ կէտի գիծի մակերեւոյթի վրայ վերացական ու անտեղի սահմաններէ եւ յոռի բացատրութիւններէ կազատէ։ Խորանարդի մը վրայ երկրաչափական շատ մը տարրերը կան՝ կէտեր, ուղիղ գիծեր, զուգահեռագիծներ, անկիւններ, զուգահեռաձեւներ եւայլն. եւ խորանարդն ինքնին բաժանելի է շատ մասերու։ Մանուկն արդէն թուագիտութեան մէջ այս բաժանումներուն ծանօթացած ըլլալով

խորանարդին վրայ կըսկսի բաղդատել այդ մասերն ու անոնց փոխադարձ առընչութիւնները . . . . Եւ յետոյ խորանարդէն գնդաձեւին կանցնի, որուն միջոցով տարրական ծանօթութիւններ կառնէ շրջանակի եւ հասարակ կոր գիծերու վրայ։

«Հաստատուն մարմիններու բուսականապէս ծանօթանալէն ետեւ՝ ցուցընելու է անոր հարթ մակերեւոյթներ, եւ այս անցումը շատ դիւրութեամբ կրնանք կատարել։ Օրինակի համար, խորանարդը բարակ շերտերու կտրտելով՝ այդ շերտերը թուղթին վրայ զատ զատ դնելու է. այն ատեն տղան պիտի տեսնէ կտրուած շերտերուն չափ ուղղանկիւն հարթակներ։ Այսպէս ընելու է նաեւ ուրիշ ձեւ հաստատուն մարմիններն ալ։ Գնդաձեւի վրայ ալ նոյն եղանակով դասախօսելու է. մանուկն այս մէթոտով պիտի սորվի թէ մակերեւոյթներու ստոյգ ծագումն ինչ է, եւ ետքը պիտի կրնայ դիւրութեամբ վերացումներ ընել՝ թանձրացեալ մարմիններու վրայէն։

«Երբ երկրաչափութեան այբուբէնն ու ընթերցարանն այսպէս սորվի՝ կըսկսի գրել ալ։

«Ամէնէն պարզ եւ հետեւաբար առաջին միջոցն է՝ այս հարթակները թերթ մը թուղթի վրայ դնել, եւ մատիտով մը անոր եզերքն ի շար գիծ քաշել։ Երբ քանի մը անգամ ընէ այս գործողութիւնը, մէկդի առնելու է հարթակը, ստիպելու է մանուկն որ օրինակէ զայն, եւ այսպէս շարունակելու է»։

Երբ մանուկը՝ Պ. Ուիսի առաջարկածին նման մէթոտով մը երկրաչափական տեղեկութեանց մթերք մը ձեռք բերէ, անոր քայլ մըն ալ առնել տալով՝ կրնանք հարեւանցի աչքով գծած ձեւերուն ճշգրտութիւնը փորձելու սորվեցունել զինքը. եւ այսպէս՝ կը գրգռենք զայն ճշգրտութեան բաղձալու, եւ այս ճշգրտութեան համնելու

դժուարութիւնը մատնանիշ կընենք իրեն։ Անտարակոյս երկրաչափութիւնն (ինչպէս անունն ալ կը ցուցընէ) ծագում առած է այն մէթոտներէն, որոնք գտան երկրաչափ արհեստաւորներ՝ ճիշդ չափելու համար չէնքի մը հիմնրուն տարածութիւնն, որմած գետինի մը երեսն-եւայլն. Տարակոյս չկայ նաեւ թէ երկրաչափական ճշմարտութիւնները՝ իրենց անմիջական օգտակարութեան չափով գիրքերու մէջ հաւաքեցան։ Աշակերտին ալ նոյն եղանակով սորվեցունելու է անոնք։ Մանուկին կարել տալով թուղթի կտորներ՝ որով պիտի չինէ իր թուղթէ տունն, եւ չինել տալով զարդական տրամաձեւներ, որոնք պիտի ներկէ, եւ զբաղեցունելով զայն այլ եւ այլ իրերով, որոնք կրնայ ճարել հանճարամիտ վարժապետ մը, կարելի է մինչեւ որոշեալ ատեն մը ինքնիրեն թող տալ զայն, որպէսզի կառոյցի փորձեր ընէ՝ ա՛յնպէս ինչպէս առաջին կառուցողն ըրած է։ Այս փորձերով պիտի լաւ հասկընայ քան թէ հանճարամիտ վարժապետէ մը. եւ երբ այս ինքնօգնութեան ատեն իր ըմբռնողականը զօրանալով կարկին գործածելու հասակին հասնի, պիտի ճանչնայ անոր օգտակարութիւնը, բայց դարձեալ պիտի շարունակէ նեղութեամբ վարիլ կարկինի մօտ անկատար մէթոտով մը։ Քիչ մը ատեն ալ թող տալու է աշակերտին իր շաւիղին այս կէտին վրայ, նախ՝ անոր համար որ դեռ շատ երիտասարդ է եւ աւելի բարձրերը չկրնար ելնել, եւ ապա՝ անոր համար որ լաւագոյն է իրեն՝ կանոնաւոր եղանակի մը պէտքն իր իսկ փորձովն իմանալ ազդուապէս։ Եթէ հարկ է որ գիտութեանց կարեւորութիւնն հաստատ համոզումով մը իմանայ, եւ եթէ անձնիւր մարդու քաղաքակրթութեան առաջին շրջանին մէջ՝ գիտութիւնը միայն իբրեւ օժանդակ արուեստի յարգ ունեցած է, ասկէ յայտնապէս կըհետեւի՝ որ երկրաչափական ուսումին ճշմարիտ պատ-

բռնաւորութիւնն է այս կառուցական արուեստներուն մէջ Երկար վարժութիւն մը, որ կըզգացունէ մարդու թէ անոնք երկրաչափութեամբ աւելի դիւրին պիտի ըլլան։ Դիտեցէ՛ք որ հոս ալ բնութի՛ւնն է մեզի ճամբայ ցուցընողը. մանուկները մեծ հաճոյք կիմանան թուղթէ բաներ շինելէ եւ կտրելէ, եւ եթէ խրախուսենք եւ ուղղենք անոնք՝ ոչ միայն գիտնական յղացումներու ճամբան պիտի մանեն, այլ նաեւ պիտի զարգանան ձեռքի ճարպիկութեանց մէջ, որ շատ անգամ անտեսուելով կը խափանին։

Երբ մանուկին խելամտութեան ու հնարագիտութեան կարողութիւնները պէտք եղած ոյժն առնեն, այն ատեն կըրնանք սկսիլ փորձական երկրաչափութեան, այսինքն երկրաչափութեան այն մասին՝ որ կանոնաւոր լուծումներ կուտայ բայց առանց ապացուցանելու։ Դաստիարակութեան մէջ կատարուած միւս ամէն անցումներուն պէս՝ այս անցումն ալ պէտք է աստիճանաբար կատարի եւ ոչ զգալապէս, շարունակելով հանդերձ օգտաբար կիրարկել շինելու արհեստին հետ երկրաչափութեան ունեցած յարաբերութիւնը։

Իրեն տրուած օրինակին նման թուղթէ քառակուսի մարմին մը շինել տալով մանուկին՝ անոր հետաքրքրութիւնը կարթունցընենք՝ լուծելու համար առած մը, որ շատ յարմար եղանակով իր սկզբնակէտ պիտի ծառայէ իրեն. ինք կը հասկընայ արդէն՝ որ զայդ շինելու համար պատի չորս հաւասարակողմ եռանկիւններ գծել, որ պէտք է շարուած ըլլան մասնաւոր դիրքով մը։ Եւ որովհետեւ ճիշդ մեթոտ մը չունենալուն համար ճշգրտաբար չկըրնար ընել այդ գործն՝ եռանկիւններին իրենց պատշաճ դիրքովը շարելու ատեն կը նշմարէ՝ որ անոնց իւրաքանչիւր կողմերն իրարու ճիշդ չկըրնար համաձայնեցունել։

Եւ իրենց անկիւնածայրերն իրար չեն համբուրեր գագաթին վրայ։ Այն ատեն պէտք է ցուցընել անոր՝ թէ առանց երկու շրջանակներ գծելով այդ անկիւններն ի՛նչպէս կըրնան կատարեալ ճշդութեամբ գծուիլ. եւ իր նախորդ անյաջողութենէն ետեւ ըրած այս գիւտին վրայ մանուկը պիտի բերկրի։ Իր առաջին առածին լուծումին համար այսպէս իրեն օգնելէ ետեւ, պէտք է թողուլ որ ինքնիրեն կըրցածին չափ ճշդութեամբ լուծէ միւս խնդիրներն ալ, որպէս զի երկրաչափական մէթոտներու բնութիւնն աղէկ ըմբռնէ։ Քիչ մը համբերութիւն պիտի բաւէ անոր՝ ինքնիրեն գիծ մը երկու հաւասար մասերու բաժնելու, ուղղաձիգ ուրիշ գիծ մը քաշելու, քառակուսի մը յօրինելու, անկիւն մը մասնատելու, գիծի մը զուգահեռականը քաշելու եւ վեցանկիւն մը շինելու համար։ Եւ ասոնցմէ անդին դասատուն՝ քայլ քայլ առաջնորդելով անոր՝ պէտք է առաջարկէ ուրիշ աւելի խառն խնդիրներ, որոնք ամէնն ալ ինքնիրեն պիտի կրնայ լուծել վերջապէս՝ եթէ դասատուն ուշադրութեամբ հսկէ։ Հին մէթոտով կըրթուած կարգ մը անձեր՝ անշուշտ պիտի երկմտին մեր այս առաջարկութեան ճշգրտութեան վրայ. բայց մենք փորձառութեամբ կը խօսինք, եւ կրնանք շատ օրինակներով հաստատել մեր ըսածը։ Մենք մեր աչքով տեսած ենք՝ թէ դաս մը մանկիկներ այնպիսի փափագով երկրաչափական այս կամ այն առածին լուծումին կը յափշտակուէին, որ իրենց երկրաչափութեան դասը կը համարէին շաբթուան ամէնէն մեծ դէպքը։ Մօտ ատեններ՝ իմացանք որ վարժարանի մը բազմաթիւ ուսանողուհիներն յօժարութեամբ զբաղած էին երկրաչափական խնդիրներու՝ դասէն դուրս պարապ ատեններ, եւ ուրիշ վարժարանի մը ոչ միայն ուսանողուհիներն ալ այնպէս կընէին, այլ նաեւ իրենցմէ մէկը դասատուէն խնդիրներ կը պահանջէր՝ որ-

պէտ զի արձակուրդին ատեն լաւծէ անոնք տան-ձին, իրենց ուսուցիչը պատմած է մեզի զայս. ինք-նայօժար յառաջդիմութեան կարելիութեան ու արժէքին առնցմէ աւելի հզօր ինչ ապացոյց կրնանք նշա-նակել։

Երբ ինչ եւ իցէ գիտութեան մը ճիւղն, որ սովորա-բար դասախօսուած եղանակովն ամուլ եւ մինչեւ ան-գամ սարսուցիչ եղած է, բնական մէթոտին հետեւի՝ ամբաւապէս ուշադրգիռ ու օգտակար կըլլայ, ինչպէս որ տեսանք։ Ամբաւապէս օգտակար կըսենք, վասն զի անկէ յառաջ եկած արդիւնքն երկրաչափական ճշմարտութեանց մէջ միայն չեն սահմանափակիր, այլ յաճախ միտքին մէջ մեծ փոփոխութիւն մըն ալ կը կատարեն։ Շատ անգամ տեսնուած է՝ որ դպրոցի սովորական մէթոտներու, վերա-ցական ձեւերու, տաղտկալի պարտականութեանց ու ա-ւելորդաբանութեանց երեսէն ապուշ դարձած մանուկ-ներ՝ յանկա՛րծ արթունցած են իրենց իմացական թմրու-թենէն՝ երբ դադրած են գաղափարներու կրաւոր ընդու-նարան ըլլալէ, եւ իրենց կարգին գիւտեր ըրած են։ Իրենց բովանդակ իմացականութեան մէջ մեծ փոփոխութիւն մը յառաջ կուգայ՝ երբ սորվեցունելու յոռի եղանակին երե-սէն պատճառած լքումին տեղ՝ քիչ մը համակրութիւն կը-զգան դէպ'ի ուսումն, եւ իրենց արթունցած յարաջանու-թիւնն առաջին յաջողութեամբ մը կը պսակի։ Ա՛լ այն ատեն իրենց վրայ վստահ կըլլան, կըզգան որ իրենք ալ բան մը կրնան ընել։ Եւ երբ յաջողուածներ յա-ջողուածներու ետեւէ կը հասնին, ա՛լ չեն տագնապիր լքումի ծանրութեան տակ, եւ ուսումի ամէն ճիւղերու դժուարութեանց կը դիմագրաւեն մեծ թափով, որ ապա-գայ յաջողութեան մը առհաւատչեան է։

Մեր այս դիտողութիւններն հրատարակելէն քանի

մը շաբաթ ետեւ, բարոն Թինտալ [1] արքունի կանա-ւոն մէջ ըրած բանախօսութեանցն՝ 'ի վերայ կարեւո-րութեան բնագիտական ուսումի իբրեւ մաս դաստիա-րակութեան՝ միեւնոյն խորհրդութեան բացայայտ օրինակ մը տուաւ։ Կարժէ որ հոս անդրադառնանք իր վկայու-թիւնն, որ բաւական մեծ կշիռ ունի իր անձնական գիտողութեանց վրայ հիմնեալ ըլլալով։

«Իմ դաստիարակութեանս առենն՝ պարտականութեանցս մէկն եղաւ Թուաբանական դասախօսութիւն մը, եւ ես սովորական փորձով սորված եմ, որ Եւկլիդէսի եւ հին երկրաչափութեան տարրերն երիտասարդներուն համար շատ յանկուցիչ ուսում մըն են՝ երբ անոնց իմացողու-թեան ձայն տանք. բայց ես միշտ կըզգուշացունէի մա-նուկները գիրքի վրայէ կարդալու սովորամոլութենէն, եւ անզգալաբար Թող կուտայի իրենց՝ որ առաջ նետուին ու նախաձեռն լուծումներ ընեն գիրքէն դուրս խնդիրներու վրայ։ Անոնք յարդարուած շաւիղէն դուրս ելնալով՝ նախ ատեան մը տհաճութիւն կիմանային սովորաբար՝ տա-րագրեալի մը պէս, բայց այս տհաճութիւնը բնաւ եր-կարատեւ չէր ըլլար։ Երբ տեսնէի որ աշակերտը բոլորո-վին վհատեր է՝ կը խրախուսէի զայն Նեւտոնի պատահածը պատմելով, եւ կըսէի՝ Թէ անոր եւ միւս մանկանցու-ներու մէջ եղած տարբերութիւնն իր ամէնամեծ համբե-րութիւնն էր՝ ինչպէս ինք Նեւտոն կըսէր, կամ Միրաբոն կակնարկէի, որ կը չեսէր իր սպասաւորն երբ սա կըսէր Թէ «այդ բանն անկարելի՛ է» եւ կարգիլէր անոր նորէն իր առջեւ շարտասանել այդ յիմարական բառը։ Այսպէս

[1] Ճոն Թինտալ՝ անգղիացի հռչակաւոր գիտունը ծն. 1820ին Իրլանտայի մէջ. անուն հանեց իր շատ մը բանախօսութիւններով եւ յանկուցիչ ոճով գրուած գիտնական երկերով, որ շատ շատ սփռեցին իր համբաւը ժողովուրդին մէջ։

խրախուսած՝ տղան իր աշխատութեան կը վերադառնար խնդալով եւ թերեւս քիչ մըն ալ տարակուսելով, բայց միւս անգամ մըն ալ փորձելու որոշումով. իր աչքը շողշողալ կըսկսէին ու ինք Արքիմեդէսի զառանցանքին նման անհուն ուրախութեամբ լեցուած կը գոչէր. «Գտա՛յ, տէր, գտա՛յ»։ Կըզգար իր բուն կարողութեան չափն եւ ամբաւ արժէք մը կուտար անոր։ Այս եղանակով օգնուած՝ իմ աշակերտներս զարմանալի յառաջդիմութիւններ կընէին։ Գիրքին առաջարկութեանց մէջէն ընտրութիւն ընելն յաճախ իրենց կը ձգէի՝ կամ ուրիշ առաջարկութիւններ ինքնին յօրինելու կըստիպէի զիրենք՝ իրենց կարողութիւնները փորձելու համար, եւ կը տեսնէի որ երբէք նախամեծար չէին ընել գիրքը. երբ իմ օգնութիւնս հարկաւոր կը սեպէի՝ մինչ յօժարամիտ կը ցուցընէի ինքզինքս անոնց օգնելու, բայց անոնք սովորաբար կը մերժէին առաջարկած օգնութիւնս. վասն զի աշակերտներն իմացական աշխարհակալութեանց համն առած էին, եւ առանց իմ օգնութեանս ինքնին յաղթանակ տանել կը նկրտէին. իրենց հանգիստի սրահին որմերուն ու տախտակամածներուն վրայ քաշած տրամաձեւները կը տեսնէի, եւ ուրիշ շատ նշաններով հաւաստի կըլլայի իրենց դասերուն տուած արթուն կարեւորութեանը։ Իսկ ես համբակ մըն էի կրթելու արուեստին մէջ. ամենեւին չէի գիտեր ինչ որ Ալմանները մանկավարժական կանոններ կանուանեն։ Բայց միտ կը դնէի կրթութեան ա՛յն ոգւոյն, որ բանախօսութեանս սկիզբը բացատրած եմ. կը ջանայի որ երկրաչափութիւնն ոչ թէ ուսումի ճիւղ մը այլ միջոց մը ըլլայ։ Փորձով տեսայ յաջողութիւնս. տեսայ ա՛յն ուժգին ու բերկրապատար փթթումը միտքի կարողութեանց, որոնց ձայն տուած էի այս եղանակով. այդ ժամերը՝ կեանքիս ամէնէն երջանիկ ժամերն եղած են»։

Տարիներով շարունակելու է այս գործնական երկրաչափութիւնն, որ անհամար առածներու շարք մը ունի իր մէջ. ինչպէս նաեւ շարունակելու է միւս այն ամէն ուսումները, որ յաջողապէս կրնան մինչեւ վերջը զուգընթանալ թանձրացեալ կիրառութեանց։ Երբ մանուկը քաջ ըմբռնէ խորանարդն, ութակողմը, բրգաձեւն ու հատուածակողմն իրենց ամէն ձեւերովը, պէտք է՝ աւելի բազմամասն կանոնաւոր ձեւերուն անցնիլ՝ այսինքն երկոտասանակողմ ու քսանակողմ ձեւերուն, որոնք քարտէսի կտորներով շինելու համար շատ խելք պէտք է։ Բնական անցումով մը՝ ասոնցմէ կրնանք յառաջանալ կանոնաւոր մարմիններու այլ եւ այլ ձեւերուն՝ ինչպէս կերեւին բիւրեղներու վրայ, ծայրատեալ խորանարդի, անկիւնները ծայրատեալ խորանարդի, ութակողմի եւ հատուածակողմի նման կերպարանափոխ ձեւերու։ Աղերու եւ ուրիշ հանածոներու առած պէս պէս այլակերպութիւնները նմանահանելու միջոցին՝ դաստիարակը պատեհ պիտի ունենայ սորվեցունել աշակերտին հանքաբանութեան գլխաւոր իրողութեանց մէկ քանին (1)։

Երբ մանուկն երկար ատեն այսպիսի վարժութեանց ընտելանայ, ուսումնական երկրաչափութիւնն ա՛լ պիտի դիւրանայ իրեն. մտածողը կրնայ հասկընալ զայս։ Ձեւի եւ քանակի յարաբերութիւնները գիտելու վարժուելով, ու երբեմն աղօտաբար ընդնշմարելով՝ որ կարգ մը ընդունուած տարրերու ետեւէն անմիջապէս կարգ մը հետեւութիւններ 'ի հարկէ կուգան՝ Եւկղիդէսի ապացուցութեանց

(1) Ուսուցչութեան այս մէթոտին կիրառութեան համար առաջնորդ մը ունենալ փափագողներն պիտի կրնան գտնել զայն փոքր մատեանի մը մէջ, որուն անունն է *Հնարագիտական Երկրաչափութիւն* (Inventional geometry), որ հրատարակուած է J. and C. Mozleyէ Paternoster Row. Լոնտրա։

մէջ՝ իրեն ծանօթ առածներուն մէջ չգտնուած յաւելուածները միայն կը տեսնէ ։ Իր հրահանգեալ կարողութիւններովը՝ դասատուին հետզհետէ ըրած առաջարկութիւնները դիւրաւ կըմբռնէ, եւ անոնց արժէքը կը հասկընայ ։ Ասկէ զատ՝ բերկրանքով կը տեսնէ որ երբեմն ինքնիրեն գտած է լաւագոյն մէթոտը ։ Այս եղանակով հաճելի կըլլայ իրեն այս ուսումն, որ անվարժներուն համար անբեղուն ուսում մըն է ։ Կը մնայ մեզի ըսել որ տակաւ կը մօտենայ այն ժամանակն, ուր իր միտքն ընդունակ կըլլայ սկզբնական տպաւորութեանց վարժութեան, որ խորհրդածելու կարողութեան զարգացումին համար լաւագոյն վարժութիւնն է ։ Այն ատեն՝ դիւրաւ կըմբռնէ ընդարձակ երկրաչափութեան մէջ եղած տեսութիւններն, եւ երբ կարենայ ապացուցանել անոնք՝ ոչ միայն իր իմացական կարողութիւններն, այլ իր բարոյական կարողութիւններն ալ ինքնաբերաբար զարգացուցած պիտի ըլլայ ։

Եթէ այս դիտողութիւններն աւելի առաջ տանինք՝ դասաւորականութեան վրայ մանրամասն մատեան մը գրել հարկ կըլլայ, եւ մեր դիտաւորութիւնն այս չէ ։ Փոքրիկ մանուկին ըմբռնումները կրթելու, իրախօսական դասերն առաջնորդելու, գծագրութիւն եւ երկրաչափութիւն սորվեցունելու համար պէտք եղած հիմնագիրի մը վրայ մեր այս հարեւանցի տեսութիւնը՝ պէտք է նկատել միայն իբր օրինակ մը այն մէթոտին, որ մեր ցուցած հանրական սկզբունքին վրայ հիմնուած է ։ Կարծենք, եթէ մեր այս տեսութիւնը քննուի՝ ոչ միայն համաձայն պիտի գտնուի այն կանոնին, որուն համեմատ պէտք է ամէն ուսում յառաջատէ պարզէն բարդին, անորոշէն որոշեալին, թանձրացեալէն վերացեալին, փորձականէն տրամախոհականին, այլ նաեւ համաձայն պիտի թուի սա անհրաժեշտ պայմաններուն՝ թէ 1°. պէտք է դասաւորականութիւնը

մանրանկար պատկերն ըլլայ քաղաքակրթութեան, 2°. դաստիարակութիւնն՝ հնար եղածին չափ ինքնայօժար պէտք է ըլլայ եւ 3°. պէտք է հաճոյախառն ըլլայ։ Եթէ այս ամէն պայմանները հաւաքելով՝ մի միակ մէթոտի մը վերածենք՝ պիտի տեսնենք որ անոնք ճշմարիտ են, եւ գաղափարուած մէթոտը լաւ է։ Դիտելի է նաեւ՝ որ այս մէթոտն ուրիշ բան չէ՝ բայց եթէ տրամաբանական արդիւնք դաստիարակութեան մէջ եղած արդի բոլոր յառաջդիմութեանց յատուկ միտումին — այսինքն՝ թէ այդ մէթոտն է լիուլի ընդունելութիւնն այն բնական դրութեան, որոնց մասնական ընդունելութիւնն են այդ յառաջդիմութիւնները. — եւ այսպէս է՝ նախ վասն զի առաջադրեալ սկզբունքին կը համակերպի, եւ երկրորդ վասն զի՝ մանկական ոգիին թելադրութեանց կը յարմարի՝ անոր ինքնեկ գործունէութիւնը դիւրացունելով, եւ այսպէս բնութեան դրգռած զարգացումներուն օգնելով։ Ուրեմն՝ շատ բանաւոր է հետեւցունել թէ օրինակներով մեր ցուցած եղանակը՝ խիստ մօտ է ճշմարիտ եղանակին։

Եւ արդ՝ քանի մը խօսք ալ պիտի ընենք հաստատելու համար երկու հանրական սկզբունք, որ ամէնէն կարեւորն են եւ միանգամայն ամէնէն աւելի անտեսուած են։ Այս սկզբունքին առաջինն այն է՝ թէ խոր տղայութենէ սկսելով մինչեւ երիտասարդութեան ատեն՝ պէտք է կրթութիւնն ինքնուսումնութեամբ (self-instruction) ըլլայ, եւ երկրորդն այն է՝ թէ մանուկներու մտային գործունէութիւնը պէտք է միշտ ինքնին յանկուցիչ ըլլայ։ Եթէ հոգեբանական յայտնի ճշմարտութիւն մըն է պարզէն դէպի բաղադրեալն, անորոշէն դէպի որոշեալը, նիւթականէն դէպի աննիւթականն յառաջդիմութիւնը՝ դատելու

համար թէ հոգեբանական այս օրէնքին ճշգրիտ կը հետեւի՛նք՝ մեր փորձաքարը պէտք է ըլլան մանուկին յօժարամտութիւնն եւ ուսումէ առած հաճոյքը ։ Եթէ մտային դաստիարակութեան գիտութեան գլխաւոր հանրացումները հոգեբանական օրէնքին մէջ կը պարունակին, ուրեմն այս երկու սկզբունքը դաստիարակութեան արուեստին էական կանոնններն ունին իրենց մէջ ։ Վասն զի՝ եթէ մեր ուսումնական դասերուն աստիճաններն այնպէս տրամադրուած են՝ որ աշակերտը կրնայ վերելակել քիչ մը ձեռնկալութեամբ կամ առանց ձեռնկալութեան, ասոր պատճառը բացայայտապէս այն է՝ թէ այդ աստիճանաւորումներուն դիրքն համակերպ է մանուկին մտային յառաջատութեանց այլ եւ այլ երեւոյթներուն ։ Նաեւ աւելի բացայայտ է՝ որ մէկ աստիճանէն միւսին անցնիլն իրեն հաճելի կըլլայ այն պատճառով միայն՝ որ իր կարողութիւնները կանոնաւոր եղանակով կը գործեն հոն ։

Բայց դաստիարակութիւնն ինքնուսումնութեան եղանակ մը ընելը՝ դասընթացքը տրամախոհական հիմնագիրի մը համեմատ տրամադրելէն շատ աւելի մեծ օգուտ մըն ալ ունի ։ Վասն զի՝ նախ այս կերպով տպաւորութեանց կենդանութիւնն ու տեւականութիւնը կապահովի, եւ սովորական մէթոտները չեն կրնար ընել զայս ։ Աշակերտին ինքնիրեն առած ամէն ծանօթութիւններն, ինքնիրեն լուծած բոլոր առածներն, աշխատութեան իրաւունքով իր ստացուածքը կըլլան՝ մինչ ուրիշ կերպով չպիտի ըլլային այդպէս ։ Յաջողութեան դրդումով պատճառած միտքի նախնական գործունէութիւնը, խորհրդածութեանց կեդրոնացումն, յաջողասիրութիւնն՝ ամէնն ալ կը նպաստեն մանուկին միտքին մէջ իրողութիւնները քանդակելու՝ ընթերցումով եւ ունկնդրութեամբ եղածէն աւելի խորունկ ։ Նոյն իսկ եթէ անյաջողի, իր կարողու-

թիւններըը ձգտելով՝ յիշողութիւնը կը սեւեռեն եթէ անգամ մը լուծումն ըստւ իրեն, եւ աւելի աղէկ կերպով քան երբ բացատրութիւնները վերջ եօթն անգամ կրկնուած ըլլային ։ Ասկէ զատ՝ դիտելի է որ այս ինքնուսուցմնական մէթոտն՝ ստացուած ծանօթութիւններն հետզհետէ դասաւորել կը հարկադրէ ։ Բնութեան իսկական կարգն է՝ որ այս կերպով իւրացուած գաղափարներն հետզհետէ կը կարապետեն ուրիշ եզրակացութեանց, եւ միջոց մը կըլլան ուրիշ խնդիրներ լուծելու. երէկուան խնդիրին լուծումը՝ կը նպաստէ աշակերտին այսօրուան խնդիրն ալ լուծելու ։ Որով՝ նոր ծանօթութիւնն երբ անգամ մը տեղաւորի մանուկին յիշողութեան մէջ՝ կարողութիւն մը կըլլայ, եւ այնուհետեւ՝ մտածութեան հանրական պաշտօնին կը գործակցի, եւ իմանալի մատենադարանի մը էջերուն վրայ միայն անպէտ գրուած չմնար, ինչպէս որ կըլլայ երբ բերանացի սորվի ։ Պէտք է դիտել նաեւ՝ թէ այս ինքնաջանութիւնն ի՛նչ մեծ նպաստ կուտայ մեր բարոյական զարգացումին ։ Դժուարութիւնները նուաճելու սէրը, ուշադրութեան համբերող կեդրոնացումն, եւ անյաջողութեան առեն յարաջանութիւնը մասնաւոր արամադրութիւններ են, որ միտքին իմացական սնունդը ճարելու կազմը կը զարգացունեն ։ Մեր անձնական երաշխաւորութեամբ կը վկայենք՝ թէ երիտասարդութիւնը կրթելու այս եղանակը կատարելապէս գործնական է, որովհետեւ ճիշդ այս եղանակով մեր երիտասարդութեան առեն վարժեցուցին մեզ լուծել հեռանկարչութեան առածներն, որ համեմատաբար բազմակողմանի են ։ Այս չափիղին հետեւած են մեծ վարժապետներն, որուն կը վկայէ Փէլէնպէրկ՝ ըսելով թէ «աշակերտին անկախ ու անհատական գործունէութիւնն՝ իրեն դասատուներուն պաշտօնական ստիպումէն աւելի մեծ կարեւորութիւն ու-

նի» ․ Նաեւ Որասիոս Ման (1), որ կըսէ թէ «մեր մէջ դժբաղդաբար դաստիարակութիւն ըսելով մանուկներուն վարժապետել կիմանանք եւ ոչ թէ անոնք վարժեցուցանել». եւ Պ. Մարսէլ, որ դիտել կուտայ թէ ինչ որ մանուկն իր ուրոյն խորհրդածութեամբը կը գտնէ՝ աւելի աղէկ կըմբռնէ քան ինչ որ ուրիշները դասախօսած են իրեն»:

Միւս պայմանին մէջ ալ նոյնպէս է, այսինքն՝ դաստիարակութեան այս մէթոտը մանուկին զուարթ գործունէութեան մը պատճառ կըլլայ․ զուարթ կըսենք՝ ոչ անոր մատուցած խսկական վարձերուն համար, այլ վասն զի ինքնին առողջարար է։ Այս մէթոտին համակերպելով ոչ միայն ազատ կը մնանք բնական յառաջատութեան կանոնաւորապէս զարգանալուն հակառակելու անպատեհութենէն, այլ ուրիշ դրական օգուտներ ալ ձեռք կը բերենք։ Հոս երկար բարակ ճառել չենք ուզեր ասոր վրայ․ դիտել կուտանք միայն՝ որ զգացումներու զուարթ վիճակ մը մտային աշխատութեան աւելի նպաստաւոր է քան անփութութեան ու տաղտկութեան վիճակ մը։ Ամէն մարդ գիտէ՝ թէ ինչ որ սիրով կը կարդանք կը լսենք ու կը տեսնենք՝ աւելի աղէկ միտքերնիս կը պահենք քան ինչ որ չախորժելով կը կարդանք կը լսենք կամ կը դիտենք։ Սիրով կարդացած առենն՝ կարողութիւնները ժրութեամբ կըզբաղին ներկայացուած առարկաներով․ չախորժելով կարդացած առենն՝ կարողութիւններն առանց ժրութեան կըզբաղին առաջիկայ նիւթերով, եւ ուշադրութիւնն առուգիւ ուրիշ աւելի ախորժելի մտածութիւններով

(1) Որասիոս Ման․ ամերիկացի դաստիարակներուն ամէնէն հռչակաւորը՝ ծն. 1796, մեռ. 1859ին։ Ինք եղաւ որ նախնական կրթութիւնը վերակազմեց Մասաչիւսէթի մէջ, ուր տասներկու տարի (1838-1850) կրթական տեսչութեան քարտուղարութեան պաշտօնը վարեց։ Իր գործերը տպագրեցան անգղիերէն եւ հրատարակեցան 1867ին երկու հատորի մէջ։

զբաղած կըլլայ։ Այս է պատճառն՝ որ տպաւորութիւնը զօրաւոր կամ տկար ըլլայ։ Նիւթին անշահագրգիռ հանգամանքէն յառաջ եկած անուշադրութեան վրայ՝ կաւելնայ նաեւ այդ անուշադրութեան հետեւանքին երկիւղն, որ կը կապկըպէ աշակերտն, եւ ձանձրանալի նիւթերու վրայ իր խորհուրդները սեւեռելու դժուարահաճութիւնը կաւելցանէ։ Ուրեմն՝ պէտք է որ դասախօսութեան խստապահանջութիւնն աշակերտին աշխատելու յօժարամտութեան համեմատ ըլլայ. մնացած բաներն իրենց վիճակին մէջ պահելով։

Պէտք է գիտնալ նաեւ՝ որ ամէնօրեայ դասերուն համար աշակերտին զգացած հաճոյքին կամ տհաճութեան բարոյական ծանր հետեւութիւններ կապուած են։ Բաղդատեցէ՛ք երկու մանուկներու կերպարանքն ու կենցաղավարելու կերպն, որոնց մին զուարթ է իրեն սիրած նիւթերն ուսանելուն համար, եւ միւսը դժբաղդ է՝ աշխատութեան տաղտուկին, վարժապետներու խստութեան, սպառնալիքի եւ պատիժներուն երեսէն, եւ պիտի տեսնէք որ երկուքին ալ բնական ընդունակութիւնները թէ՛ լաւին թէ՛ յոռիին մէջ նման են իրերու վերոյիշեալ կարգին։ Ո՛վ որ դիտած է յաջողութեան եւ անյաջողութեան ազդեցութիւնները միտքին վրայ, եւ միտքին ազդեցութիւնը մարմնին վրայ, գիտէ որ այդ երկու մանուկներուն առաջինին բնաւորութիւնն ու առողջութիւնը շատ լաւ կըլլայ, մինչդեռ երկրորդին բնաւորութիւնն՝ այդ ընթացքով հաւանական է՝ որ մորոս ըլլայ, եւ իր մարմինը մշտնջենապէս տկարանայ։ Հարկ է դարձեալ նշանակել գործածուած մեթոտին կողմնական մէկ հետեւանքն ալ, որ ոչ նուազ կարեւոր է. դասատուին եւ աշակերտին մէջ եղած յարաբերութիւնները՝ միւս ամէն բանի պէս՝ խանդաղատական ու ազդու են, կամ հակակրական ու անազդուրուած դասին ախորժական կամ անախորժ ըլլալուն հա-

մեմատ ։ Մարդ՝ գաղափարներու զուգընթացութեան խաղալիկ մըն է. առանց ծածուկ ատելութեան մարդ չկրնար նայիլ այն բանին՝ որմէ ձանձրոյթ կիմանայ ։ Ասոր հակառակ՝ երբ վարժապետը կօգնէ աշակերտին բաղձացած բանը ձեռք բերելու, եւ ամէն օր յաղթելու բերկրութիւնը կուտայ անոր, կը քաջալերէ զայն դժուար ուսումներու մէջ՝ եւ յաջողութեան ատեն կը համակրի անոր հետ՝ անպատճառ անոր աչքին աղէկ կերեւի . եւ եթէ իր վարքն իր սկզբունքին համընթաց ըլլայ միշտ՝ անշուշտ կը սիրուի ալ ։ Արդ՝ երբ մտածենք այն բարերար զօրութեան վրայ վարժապետի մը խնամարկութեան, որ աշակերտին հետ իբր բարեկամ կը վարի , եւ զայն բաղդատենք մանուկին ատելութեամբ կամ գէթ անսիրելութեամբ նկատած վարժապետին անարդիւն ընթացքին հետ՝ կրնանք ըսել որ երիտասարդութեան երջանկութիւնն հաշուի առնող դաստիարակութիւնը թէ՛ ուղղակի թէ՛ անուղղակի շատ օգտակար է աշակերտին ։ Մեր հոս պաշտպանած դրութիւնը՝ գործնականին մէջ գրեթէ անկարելի համարողներուն կը պատասխանենք դարձեալ՝ թէ ոչ միայն դաստիարակութեան տեսականն այսպէս կը տրամադրէ , այլ եւ փորձով ալ վկայուած է այն. Բեստալոցցիի ժամանակէն մինչեւ հիմա ամէն նշանաւոր վարպետներու վկայութեանց վրայ՝ կաւելցունենք հոս Բիլան (1) բարունին վկայութիւնն ալ . «Երբ պէտք եղած եղանակով դաս տանք մանուկներուն թէ՛ դասախօսութեան թէ՛ զբօսանքի ատեն զուարթ կըլլան ։ Շատ քիչ անգամ կը պատահի՝ որ իմացական գործունէութեան աղէկ լարուած վարժութենէն ծագած բերկրութիւնն՝ անոնց նիւթական գործունէու-

(1) Գ. Բիլան , Էտիմպուրկի համալսարանին լատին լեզուի ուսուցիչը ։

թենէն յառաջ եկած բերկրութենէն պակաս ըլլայ, մանաւանդ երբեմն աւելի ալ կըլլայ»։

Ինքնայօժար ու զուարթ կրթութեան նպատակ վերջին ապացոյց մը տալու համար՝ կը յիշեցունենք թէ իր կրթութեան մէջ ո՛րչափ ինքնիրեն ձգենք աշակերտն, ա՛յնչափ հաւանական է որ նա դպրոցէ ելնելէն ետեւ ալ պիտի շարունակէ ուսումնասիրել։ Որչափ տաժանելի ընենք ուսումն, այնչա՛փ պիտի խորշի զայն շարունակելէ՝ երբ ծնողն ու վարժապետն ա՛լ վրայ չիտան իրեն։ Երբ ախորժելի ընենք ուսումն, առաջնորդով եկած կրթութիւնն առանց առաջնորդի շարունակելու պիտի յօժարի, եւ այս արդիւնքն անպատճառ ձեռք պիտի բերուի որչափ ատեն ճշմարտութիւն մնայ թէ գաղափարներն իրարու լծորդ են. որչափ ատեն որ մարդ տաղտկայ այն բաներէն որ անոր միտքին մէջ դժպհի յիշատակներ կարթունցընեն, եւ ախորժի այն բաներէն որ միտքը կը բերեն անցեալ բերկրանքը՝ նեղացուցիչ դասերը սարտուցիչ պիտի ընեն գիտութիւնն, եւ ախորժելի դասերն ուսումի պիտի յանկուցանեն զինքը։

Այն մարդիկ, որոնց երիտասարդութեան ատեն սարտուցիչ պարտականութեան ձեւին տակ եւ սպառնալիքով ու պատիժներով դաս տրուած է գիտութիւնն, այն մարդիկ՝ որ կանուխէն սովորած չեն անկախ քննութեան՝ հաւանաբար բնաւ չպիտի սիրեն ուսումը. մինչ անոնք՝ որ գիտութիւնն առած են բնական եղանակով ու յարմար ատենին, եւ կը յիշեն անոր բերած բարիքն՝ իբրեւ ոչ միայն ինքնին շահեկան բաներ՝ այլ նաեւ առիթ խել մը գեղեցիկ յաջողուածներու՝ անոնք իրենց բովանդակ կենցաղին մէջ շարունակ պիտի կրթեն ինքզինքնին, ինչպէս կրթած են երիտասարդութեան ատեն։

# ԳԼՈՒԽ Գ.

## ԲԱՐՈՅԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹԻՒՆ

ՄԵՐ կրթական յայտագիրին գլխաւոր պակասութիւնը չէ դիտուած։ Զափէն աւելի կատարելագործել կաշխատինք մեր դրութիւններն իրենց մանրամասնութեանց մէջ, բայց ըստ հիմին եւ ըստ ձեւին ամէնէն պիտանի խնդիրը դեռ ճանչցուած չէ՝ նոյն իսկ իբր պիտանի խնդիր։ Դաստիարակութեան մէջ՝ ծնողներու եւ կրթիչներու նպատակն է պատրաստել երիտասարդութիւնը կենցաղի պարտականութեանց, եւ բարեբաղդաբար ուսումի առարկաներու արժէքն ու առ ձեռն մէթոտներու ընտրութիւնն՝ այս նպատակին յարմարելնուն նշանով կը կատարին։ Ասոր համար է որ յարմար կը դատուի՝ զուտ դասական դաստիարակութեան մը տեղ այնպիսի դաստիարակութիւն մը անցունել, որուն մէջ արդի լեզուներուն ուսումն ալ իր բաժինն ունենայ։ Կը պնդեն նաեւ նման պատճառներով անոր մէջ գիտութեանց ալ բաժին հանել։

Թէպէտեւ այս կերպով երկսեռ երիտասարդութիւնն արտաքին կենցաղի պատրաստելու փոյթ կը տանին, բայց ոչ մէկ կերպով կաշխատին պատրաստել զայն ընտանիքի հայրութեան եւ մայրութեան։ Համոզուած են՝ որ աշխարհի վրայ իր ապրուստը ճարելու համար՝ առաջ պէտք է պատրաստուիլ անոր սաստիկ աշխատութեամբ, բայց կը կարծեն որ տղայ մեծցունելու համար հարկ չէ բնաւ աշխատիլ։ Երիտասարդը տարիներով կաշխատի ստանալ այն ծանօթութիւններն, որոնց գլխաւոր արժէքն այն է թէ «աշխարհիկ մարդու մը կրթութեան» մասն են, եւ աղջիկը կաշխատի ձեռք բերել զուարճութեան յատկացուած այն տաղանդներն, որով երեկոյթներու զարդը պիտի ըլլայ ինք. բայց դէթ ժամ մը անգամ չեն զբաղիր այն ուսումներով, որով կարող պիտի ըլլան ամէնէն կարեւոր պարտականութիւնը կատարել. ընտանիք կառավարելու պարտականութիւնը։ Արդեօ՛ք այս պարտականութիւնն անոնց կեանքին մէջ պատահաբա՞ր եւ շատ քի՞չ անգամ իրենց դէմը պիտի ելնէ. — ո՛չ այսպէս, այլ ստուգիւ հարիւրին իննսունն անոր լուծին տակ պիտի ըլլան։ Արդեօ՛ք այդ պարտականութիւններն այնչա՛փ դիւրին բանե՞ր են. — ո՛չ բնաւ. մարդու ամէն գործերուն մէջ անոնք ամէնէն դժուարինն են։ Արդեօ՛ք ամէն երիտասարդ ու ամէն օրիորդ ինքնին իրենց նախաձեռնութեամբ կրնա՞ն ստանալ այն ծանօթութիւններն, որ շատ հարկաւոր են իբրեւ ծնողք իրենց ապագայ պարտականութիւնները կատարելու. — բնա՛ւ ամենեւին. ինչու որ անոնք այդ ծանօթութիւններն ստանալու պէտքն անգամ չգիտեն. ասկէ զատ այդ ծանօթութիւններն ա՛յնչափ բազմակողմանի են՝ որ տղայ մեծցունելու արուեստին մէջ ինքնիրեն յաջողիլը գրեթէ անկարելի պատահում մըն է։ Մեր դասընթացքն մանկավարժութիւնը դուրս ձգելու

բանաւոր պատճառ մը չիկայ բնաւ ։ Խնդիրն՝ եթէ ծնողներուն երջանկութեան եւ իրենց զաւակներուն գոյութեանն ու բարեբաստութեան կողմէն իսկ քննենք՝ հարկ կըլլայ ընդունիլ թէ շատ կարեւոր է գիտնալ մարմնական իմացական ու բարոյական դաստիարակութեան ամէնէն ճիշդ մէթոտները. պէտք է որ ուսումի այս մասն երկուսեռին ալ կրթութեանց պսակն ըլլայ ։ Ինչպէս բնագիտական հայեցուածով՝ արբուն հասակին նշանն է տղայ ծնանելու կարողութիւնն, իմացական արբունքին ալ նշանն է զաւակ մեծցունելու կարողութիւնը ։ Դաստիարակութեան տեսականին ու գործնականին այն խնդիրն է՝ որ միւս բոլոր խնդիրներն իր մէջ կը պարունակէ եւ հետեւաբար պէտք է կրթութեան բարձրագոյն կէտը կազմէ ։

Որովհետեւ՝ այս նախապատրաստութիւնը չենք տար մեր դպրոցներուն մէջ՝ մանուկներու կառավարութիւնն եւ մանաւորապէս անոնց բարոյական կառավարութիւնը շատ ողբալի վիճակի մէջ կը ձգենք ։ Կամ ա՛յն է որ ծնողներն այս խնդիրին վրայ ամենեւին չեն մտածեր, կամ շատ սխալ ու անտրամաբանապէս կը մտածեն ։ Շատ պարագաներու մէջ՝ մանաւանդ մայրերը՝ վայրկեանական բերումով կը վարուին իրենց մանուկներուն հետ ։ Իրենց այս ընթացքն իմաստուն համոզումէ մը բղխած չէ՝ իբր ամէնէն պատշաճը մանուկին օգուտին, այլ պարզապէս՝ ծնողքին աղէկ կամ գէշ ծնողական զգացումներուն արդիւնքն է, որ ժամէ 'ի ժամ կը փոխուի այդ զգացումներուն հետ ։ Կամ՝ այս կամայական բերումներուն հետ որոշ դրութիւններ կամ մէթոտներ եթէ կընկերանան ալ՝ ատոնք գէշ դրութիւններ ու մէթոտներ են, իրենց մանկական յիշատակներէն թելադրուած ու դայեակներու եւ ծառաներու կողմէն ընդունուած, որոնք ոչ թէ գիտու-

*թիւնն՝ այլ ազնուութիւնն յերիւրած է։ Ժան Բօլ (1) ընտանեկան կառավարութեան գործնական ու տեսական այս խառնաշփոթ վիճակը նկարագրելով կըսէ «Եթէ միջին կարգի հայրերուն մեծ մասին ընտանեկան յեղյեղուկ պատուէրները դասի յայտագրի ձեւով խմբագրուէին՝ մանուկներու բարոյական կրթութեան ծառայելու համար, սա բովանդակութիւնը պիտի ունենային. առաւօտի պահին՝ մանուկներուն պէտք է սորվեցունել անձով կամ մանկածուին միջոցով «մի միայն զուտ բարոյական մը». երկրորդ ժամին «պէտք է անոնց սորվեցունել խառն բարոյական մը կամ իրեն օգտաւոր բարոյական մը» երրորդ ժամին ըսել՝ «Հօրդ ըրածէն աւելի աղէկ բաներ ըներ, տղա՛ս». չորրորդ ժամին «Դուն դեռ փո՛քր ես, եւ ըրածդ մեծերուն կը վայլէ». հինգերորդ ժամին՝ «Ամէնէն կարեւոր բանն այն է որ աշխարհի մէջ յաջողիս». վեցերորդին «Մարդու մը բուն արժէքն յաւիտենականին եւ ոչ թէ անցաւորին վրայ կը չափուի»։ Եօթներորդին «Ուրեմն աշխատելու ես առաքինի ըլլալ». ութերորդին «Պաշտպանէ անձդ, որ փորձութեան մէջ չիյնաս». իններորդին «Աղմուկ մի՛ հաներ, տղաս» տասներորդին «Փոքրիկ տղայ մը պէտք չէ այդպէս անշարժ նստի» տասնումէկերորդին «Պէտք է հոգիով մարմինով հնազանդիս ծնողքիդ» տասներկուերորդին «Եւ դուն ինքզինքդ կրթես»։ Ահա այսպէս հայրն իր կանոնները փոփոխելով՝ կը ծածկէ անոնց անբերելի ու անկատար կողմերը. իսկ իր կինն եթէ հարցունես, ո՛չ իրեն կը նմանի*

---

(1) Ժան Բօլ Րիխթէր (1763-1825) Ալման հռչակաւոր բարոյագէտն՝ որ սովորաբար Ժան Բօլ կը կոչուի՝ գրած է կարգ մը բաներու հետ դաստիարակութեան վրայ ճառ մը *Լըվանա* (1807) անունով. Այս ճառէն քաղուած են Սբէնսէրի մէջ բերած խօսքը. Թ.

*եւ ոչ ալ այն հաւլիային, որ Թատրոնի վրայ կերեւի երկու Թեւին տակն ալ Թուղթի տրցակներ բռնած՝ որուն երբ հարցունեն Թէ «աջ Թեւիդ տակն ի՞նչ կայ» «հրամանագիրներ» կը պատասխանէ «ձախ Թեւիդ տա՞կն» «հակառակ հրամանագիրներ»։ այլ նման է միայն հարիւրաձեռն Բրիարեւս (1) հսկայի մը, որուն հարիւր ձեռքին մէջ ալ նոյնքան Թուղթի տրցակներ կան։*

*Այս վիճակը շատ փոխուելու երես չունի։ Քաղաքական կանոնադրութեանց պէս՝ կրթական դրութիւններն ինքնին նոյն հետայն չեն ծնիր, այլ հետզհետէ կը զարգանան, եւ կարճ ժամանակի մէջ եղած զարգացումը զարգացում չէ։ Որչափ ալ ծանր բարւոքին՝ սակայն դարձեալ բարւոքելու կարգ մը միջոցներու կարօտ են, եւ այս միջոցներէն մին խորհրդակցութիւնն է։*

*Մենք հաւատացողներէն չենք Լորտ Բալմէրսդընի այն վճիռին՝ Թէ· «մանուկներն առ հասարակ բարի կը ծնին», եւ ասոր հակառակ վճիռն ալ՝ որչափ անհաւանական ըլլայ՝ ճշմարտութենէ նուազ հեռի է։ Մենք այն կարծիքը չունինք նաեւ՝ Թէ ճարտար դաստիարակութեամբ մը կրնանք արժանաւոր կրթութիւնը տալ մանուկներուն։ Այլ համոզուած ենք՝ Թէ արդարեւ կրնանք անոնց բնական Թերութիւնները նուազեցունել, բայց չենք կրնար բոլորովին ջնջել։ Թէ դաստիարակութեան կատարեալ դրութեամբ մը կրնանք մտացածին մարդկութիւն մը վերակազմել —, կարգ մը անձերու այս կար-*

(1) *Բրիարէւս* կամ *Եգէոն* դիցաբանական հսկայ մըն էր՝ երկինքի եւ երկիրի զաւակ, որուն համար Հոմերոս կը գրէ՝ թէ հարիւր ձեռք եւ յիսուն գլուխ ունէր, եւ իմն աստուածամարտ հսկաներուն երեւելիներէն էր։

ծիքը՝ կը նմանի Շէլլի (1) բանաստեղծին կարծիքին թէ աշխարհի վրայէն բոլոր չարիք յանկարծ պիտի վերնային, եթէ մարդիկ յանկարծ ջնջէին եւ մոռնային իրենց հին սովորութիւնները. անոնք որ առանց մտահաճութեան ուսումնասիրած են մարդկութիւնը՝ այս երկու կարծիքէն ոչ մէկը կընդունին ։

Բայց եւ այնպէս՝ պէտք է համակրինք անոնց վրայ, որ այս բարձր յոյսերն ունին ։ Եռանդը, նոյն իսկ եռանդնամոլութիւնն, օգտակար ու թերեւս անհրաժեշտ շարժառիթ մըն է ։ Գինեթողութեան ջերմեռանդ պաշտօնատարներն այնչափ եռանդով չպիտի քարոզէին իրենց սկզբունքն՝ եթէ համոզուած չըլլային թէ գինեմոլութիւնն ընկերութեան բովանդակ աղէտներուն աղբիւրն է ։ Մարդասիրական եւ ուրիշ ամէն գործերու մէջ՝ աշխատութեան բաժանումը շատ օգուտներ կը բերէ. եւ որպէս զի ճշմարտապէս աշխատութեան բաժանում ըլլայ՝ պէտք է որ անձնիւր մարդասէր քիչ շատ խորասուզուած ըլլայ իր յատուկ պաշտօնին մէջ ։ Ասոր համար՝ կրնանք ըսել թէ իմացական ու բարոյական դաստիարակութիւնն իբրեւ ամէնադեղ նկատողներուն չափազանց ակնկալութիւնն՝ իր օգուտն ունի միշտ, ու թերեւս իրերու բարերար ընթացքէն է՝ որ անոնց եռանդալից վստահութիւնն անսասան կը մնայ ։

Սակայն՝ եթէ կարելի անգամ ըլլար բարոյական դաստիարակութեան մը միջոցով՝ կաղապարել մանուկներն այդ կատարելատիպին վրայ, եւ ընդունել տալ ամէն ծնողներու այդ տեսակ դաստիարակութիւն մը՝ դիւրին գործ

---

(1) Շէլլի (1792-1822) դարուս մեծագոյն բանաստեղծներէն մին. իր կարգ մը գրուածներուն մէջ՝ Սբէնսըրի ակնարկած գաղափարն յայտնած է ։ Թ.

մը չպիտի ըլլար այս։ Չենք մոռնար՝ որ այդպիսի դրութիւն մը գործադրելու համար՝ նախ հարկ է որ չափահասները բաւական իմաստութիւն եւ բարութիւն ունենան, որոնք ոչ ոք ունի։ Ընտանեկան կրթութեան վրայ վիճաբանողներուն սխալն այն է՝ որ ամէն սխալ ու դժուարութիւն մանուկներուն կը վերագրեն, կարծելով թէ ծնողները բնաւ յանցանք չունին այդ կողմէն։ Ընտանեկան կառավարութեան խնդիրներու մէջ՝ միշտ այնպէս կը համարին թէ հայրերն եւ մայրերն աղէկ են մանուկները գէշ են։ Դաստիարակութեան խնդիրին մէջ այնպէս կը կարծուի՝ թէ երբ այրն ու կինն հայր ու մայր ըլլան՝ անմիջապէս կը փոխին հրեշտակ կըլլան։ Ամէն տուն եւ ամէն տեղ կը տեսնենք՝ որ վաճառականութեան պարապող կամ աշխարհի գործերուն մէջ պաշտօնեաներուն մէջ անկատար արարածներ կան։ Ամէն օր՝ գայթակղալից եղելութեանց, հին բարեկամներու մէջ ծագած վէճերու, անանկութեանց ու պաշտօնական ծանուցումներու մէջ ալ՝ երբեմն կը տեսնենք հանրական ինքնասիրութեան ապիրատութեան ու բռնութեան օրինակներ. եւ սակայն երբ մանուկներուն անկրթութիւնը դատելու գանք՝ հաստատապէս կը կարծենք թէ անոնք մեծցուցողներն՝ որ սովորաբար վերոյիշեալ ապիրատներն են՝ անմիայն արդարութեամբ կը վարին իրենց զաւակներուն հետ։ Այս՝ շատ հեռի է ճշմարտութիւնէ, եւ մենք առանց տարակուսելու ծնողներուն կը վերագրենք տունին մէջ եղած անկարգութեանց մեծ մասն, որ սովորաբար մանուկներուն չարութեան կը տրուի։ Չենք ըսեր՝ թէ այսպէս է միշտ մանաւանդ բարեսիրտ եւ ինքզինքնուն տէր անձերու մէջ, որոնցմէ կը կարծենք մեր ընթերցողներուն մեծ մասը. բայց խուժանին այսպէս չկենցաղիր, աղէկ գիտենք զայս։ Ի՞նչ տեսակ բարոյական կրթութիւն կըրնայ տալ մայր մը։

որ իրեն սովորութիւն ըրած է իր մանկիկին ուժգին թօթուել, երբ նա չուզեր կաթը ծծել. մեր աչքով իսկ տեսած ենք այսպիսի բաներ։ Իր զաւակին իմացականութեան վրայ ինչ տեսակ արդարութեան գաղափար կրնայ տպաւորել այնպիսի հայր մը, որուն զաւակն երբ պոռալով կիմացունէ թէ մատը դրան մէջ բռնուեր է՝ ինք փոխանակ ազատելու՝ կըսկսի ծեծել տղան. ականատես մէկը պատմեց մեզի։ Ասեղին կայ. իմացանք ներկայ անձէ մը որ մանուկի մը սրունքը ձախողուածով մը կոտրելով երբ տուն տարին՝ ծնողներն սկսան ծեծել խեղճը. այդ տղան բարոյական ինչ դաս կրնայ առնել։ Ցիրաւի ասոնք հազուադէպ պատահարներ են, որ կը ցուցընեն թէ մարդ արարածին վրայ ալ կայ այն չար բնազդն, որով անասունները կըսպաննեն իրենց հիւանդ կամ խեղած լակոտները։ Բայց որչա՛փ ալ հազուադէպ ըլլան՝ կը ցուցընեն նոր օրինակ զգացումներու եւ վարքի տիպեր, որ ամէն օր կերեւին շատ տուներու մէջ։ Ո՞վ չէ տեսած շատ անգամ մանուկի մը ծեծ ուտելն իր դայեակէն կամ ծնողներէն՝ իր անշնորհութեանն համար, որուն բուն պատճառն իր հիւանդութիւնն էր թերեւս։

Ո՞վ չէ լսած մօր մը խենդուկ կոչելն իր մանուկն, երբ ինկած տեղէն բրտութեամբ կը վերցունէ զայն՝ այնպիսի զայրոյթով մը, որով կը յայտնէ թէ բովանդակ կեանքին մէջ տակաւին ո՛րչափ կշտամբանք պիտի տեղայ խեղճին վրայ։ Եւ այն բիրտ եղանակն՝ որով հայր մը կը պատուիրէ մանուկին հանդարտ կենալ՝ չցուցընե՞ր արդեօք թէ ինք հայրն ո՛րչափ հեռի է իր պատուիրած հանդարտութենէն։ Գորովի սոսկալի չգոյութեան ապացոյց մը չե՞ն այն մշտնջենաւոր ու անօգուտ հակառակութիւնները մանուկին դէմ, օրինակի համար երբ կը հրամայեն վար նստիլ՝ մինչ այդպիսի ժիր արարածի մը անշարժու-

թիւնը ջղային ամէնամեծ գրգռութեան պատճառ կրնայ ըլլալ, երբ կարգիլեն անոր երկաթուղիի դուռներէն դուրս նայիլը՝ մինչ այդ արգելքը խելացի մանուկի մը համար մեծ զրկանք մըն է։ Ճշմարիտն այն է՝ որ բարոյական դաստիարակութեան դժուարութիւնները երկու տեղէ ծագում կառնեն՝ ծնողներէն ու մանուկներէն։ Եթէ ժառանգական փոխանցումը բնական օրէնք մըն է, ինչպէս կը վկայեն ամէն բնագէտները եւ մեր ամէնօրեայ դիտողութիւնն, մանուկներու թերութիւնները միջին համեմատութեամբ՝ ծնողներու թերութեանց շառաւիղն են։ Միջին համեմատութեամբ ըսինք՝ անոր համար որ փոխանցումի խնդիրը քիչ մը չփոթութեան մէջ է նախահայրներու ազդեցութեամբ, եւ միայն հանրական հայեցուածով մը ճշմարիտ կրնայ ըլլալ։ Եւ եթէ միջին հաշուով թերութեանց այս ժառանգականութիւնն իրապէս կայ՝ մանուկներու այն չար կիրքն, որոնց դէմ պիտի կռուին ծնողները, ճիշդ իրենց ունեցած կիրքն է։ Թերեւս անկարելի է զայս դուրսէն ճշդրտել, վասն զի կրնայ ըլլալ որ ուրիշ զգացումներով ծածկուած ըլլայ. բայց մի՛շտ կայ։ Ուրեմն յայտնապէս անհնար է՝ որ դաստիարակութեան գաղափարական դրութիւն մը տիրապետէ. ծնողները մեծ մասով ի բնէ ամէնաբարի չեն՝ որ այդպիսի դրութիւն մը կարենան իրացունել։

Առանցմէ զատ, եթէ պատրաստ ունենայինք ալ ա՛յն մէթոտներն, որով կարելի է բաղձացեալ բարոյականին իսկոյն հասնիլ. եթէ՝ աւելի յառաջ երթալով՝ հայրերն ու մայրերն ունենային բաւական սրամտութիւն, բարեացակամութիւն, անձնազոհութիւն այս մէթոտներն անընդհատ կիրարկելու համար, դարձեալ անկարելի պիտի ըլլար միւս բարեկարգելի բաներէն առաջ ընտանեկան կառավարութիւնը բարեկարգել։ Իսկ ի՞նչ է այդ բաղձացեալ

Նպատակը .— մանուկը կենցաղավարութեան պատրաստել այնպէս՝ որ կարենայ աշխարհի մէջ ապրուստը հանելու համար ճամբայ մը գտնել ինքնիրեն . այս չէ՞ դաստիարակութեան ուղղակի նպատակն , ինչ տեսակ դաստիարակութիւն ալ ըլլայ ։ Եւ աշխարհի մէջ կենցաղելու ճամբայ մը գտնելու համար (ասով հարստանալ ըսել չենք ուզեր , այլ ընտանիք մը բարոյականի մէջ պահելու միջոցները ձեռք բերել) , պէտք է չափ մը յարմարութիւն ձեռք բերել իրերու անցուկ վիճակին ։ Եթէ կարելի ըլլար որոշեալ դաստիարակութեան մը միջոցով կազմել գաղափարական ամէնաբարձր արարած մը՝ անտարակո՛յս այդ արարածն անյարմար պիտի ըլլար աշխարհի մէջ ապրելու ։ Իրաւունք ունինք տարակուսելու՝ որ այսպիսի անձի մը զգացումներուն չափազանց նրբութիւնը , իր վարքի կանոններուն չափազանց բարձրութիւնն՝ անտանելի պիտի ընէին իրեն եւ անկարելի իսկ աշխարհի մէջ ապրիլը ։ Եւ ո՛րչափ ալ հիանալի ըլլար այդպիսի դաստիարակութեան մը արդիւնքն՝ իբրեւ անհատ՝ ընտանեկան հայեցուածով թերի չպիտի՞ ըլլար այն ։ Շատ ապացոյցներ կան համարելու , թէ ընտանիքի մը մէջ՝ կառավարութիւնն՝ իր լրութեամբն առնելով՝ մարդկային բնութեան հանրական վիճակին տարածին չափ լաւ է ։ Ամէն պարագայի մէջ անհատներու բնաւորութեան կատարելագործումը՝ դրութեան կատարելագործութեան կը տանի , եւ մենք կը պնդենք որ՝ եթէ հնար ըլլար դրութիւնն ազնուացունել առանց նախապէս ընկերութեան միջին բնաւորութիւնն ազնուացունելու՝ մանաւանդ աւելի չարիք պիտի հետեւէր անկէ քան բարիք . իրենց ծնողներէն ու վարժապետներէն մանուկներուն տեսած խստութիւնը՝ կրնանք նկատել իբր պատրաստութիւնն աւելի մեծ խստութեան մը , որ իրենց դէմը պիտի ելնէ աշխարհ մտած ատեն ։

Գիտի ըսուի՝ որ եթէ հնար իսկ ըլլար որ ծնողներն ու վարժապետներն անոնց հետ կատարեալ ուղղութեամբ ու հրեշտակային բարեգթութեամբ վարուէին՝ այս կերպով աւելի պիտի սատկացուցած ըլլային այն մոլիչներն ; որ առաջնային պիտի ծանրացունէր իրենց վրայ իւրախնդիր աշխարհը (1)։

Թերեւս ըսէք թէ «Այդ՝ չափազանց ապացուցութիւնն իմաստակութիւն է» քանի որ չի կայ բարոյական այնպիսի դաստիարակութիւն մը, որ կարենայ մանուկները այնպէս կրթել ինչպէս որ պէտք է՝ քանի որ՝ համարելով հանդերձ թէ այդպիսի դրութիւն մը կայ՝ ծնողները այնչափ անվարժ են որ չեն կրնար իրացունել զայն. քանի որ նոյն իսկ եթէ այդ դրութիւնն իրացունէինք անգամ՝ անոր արդիւնքն ընկերութեան արդի վիճակին համաձայն չպիտի ըլլար, ուրեմն արդի դրութեան բարեփոխումն՝ ոչ կարելի է ոչ ալ փափագելի»։ Բայց մենք կըսենք, Ո՛չ։ Այդ ամէնէն կը հետեւի միայն՝ թէ ընտանեկան կառավարութեան բարեփոխումը միւս բա-

(1) Շատերը կըսեն թէ մանուկները կրթելու այս բիրտ եղանակը՝ նախակրթութիւն մըն է մանրանկար աշխարհի մը՝ դպրոցին՝ մէջ այն խստութեանց, որ ապագային իրական աշխարհի մէջ իրենց դէմը պիտի ելնեն. բայց այս անբնական արդարացում մըն է՝ որչափ ալ զօրաւոր թուի։ Հայրենի տունին ու դպրոցին կրթութիւնն՝ աշխարհի կրթութենէն շատ անուշ չկրնար ըլլալ, բայց կրնայ քիչ մը անուշ ըլլալ. եւ ընդհակառակը մէկ քանի դպրոցներու մէջ աշակերտներու հետ վարուելու եղանակն՝ աշխարհի եղանակէն աւելի վատթար է եւ աւելի անգութ։ Փոխանակ դաստիարակութեան սկզբունքին հետեւելով՝ մարդկութեան զարգացումին նպաստելու՝ հասարակ դպրոցներու կանոնաւորութիւնը՝ մանուկները բարոյականի չվարժեր։ Մեր օրինաւորութիւնները մեծ մասով դպրոցին հին աշակերտներէն խմբագրուած ըլլալով՝ իրենց այս ազդեցութիւնն բարոյականի մէջ յառաջդիմութեան մեծ արգելք մը կըլլայ։ (ՍՓԵՆՍԸՐ)

րեփոխութիւններուն համաքայլ պէտք է ընթանայ. կը հետեւի միայն՝ թէ դաստիարակութեան դրութիւնները միայն աստիճանաբար կարելի ու հարկ է բարեփոխել. կը հետեւի դարձեալ՝ թէ գաղափարական կատարելութեան կանոնները՝ գործնականին մէջ պէտք է անպատճառ ստորակարգուած ըլլան մարդկութեան արդի վիճակին — թէ՛ մանուկներուն թէ՛ ծնողներուն եւ թէ՛ ընկերութեան անկատար ըլլալուն համար, եւ այդ կանոններն հանրական բարոյականին լաւութեան չափով կրնան լաւ գործադրիլ։

Գիտի ըսեն մեր ընդդիմաբանները. «Բայց քանի որ այդպէս է, անօգուտ չէ՞ ընտանեկան դաստիարակութեան տիպար մը գաղափարել, եւ անժամ մէթոտներ փնտռել ու յանձնարարել, բոլորովին անկարեւոր է»։ Ասոր ալ հակառակը կը պնդենք մենք. եւ կըսենք որ ընտանեկան կառավարութեան մէջ լաւ է առաջ ցոյց տալ գաղափարականն, որպէս զի հնար ըլլայ աստիճանաբար մօտենալ անոր։ Այս գաղափարականն անկորուստ պահելու համար՝ չենք վախնար որ մեր թափած ճիգերը գէշ հետեւանք մը ունենան։ Ընդհանրապէս խօսելով՝ ընկերութեան բնազդական պահպանողականութիւնը շատ զօրաւոր է, եւ կրնայ խափանել արագ փոփոխութիւն մը։ Իրերու բնութենէն է՝ որ որչափ ատեն մարդիկ բարձրագոյն բարոյականի գաղափարներուն ընտելացած չըլլան՝ չեն կրնար ընդունիլ անոնք. կընդունին՝ բայց անուանապէս եւ ոչ իրապէս։ Եւ երբ անգամ մը ճշմարտութիւնն ընդունուի՝ անոր գործադրութեան դէմ այնքա՛ն անընկրկելի արգելք կելնեն՝ որ կրնան մարդասէրներուն եւ փիլիսոփաներուն անգամ համբերութիւնը կտրել։ Ուրեմն, առաջուընէ կրնանք գիտցած ըլլալ՝ որ մանուկներու վրայ հիմնական կրթութիւն մը ձեռք բերելէ առաջ՝ անոնց դէմն ե-

ված դժուարութիւններն՝ հարկաւոր չափով մը միշտ բթացուցնելու են զայն ձեռք բերելու ջանքը ։

Այս նախնական բացատրութիւններէն ետեւ՝ անցնինք բարոյական դաստիարակութեան ճշմարիտ տարրերուն ու ճշմարիտ մէթոտներու վրայ խօսիլ ։ Ընթերցողներուն ներողամիտ համբերութիւնը կը խնդրենք կարդալու այս մէկ քանի էջերն, որոնց մէջ կարգով պիտի գրենք բարոյական դաստիարակութեան հանրական սկզբունքին վրայ, եւ ապա պիտի ջանանք օրինակներով պայծառ ցուցընել այն ճիշդ մէթոտներն, որոնք պէտք է ձեռք առնեն ծնողք՝ ընտանեկան դաստիարակութեան մէջ ամէն օր տուներու մէջ պատահած դժուարութեանց դէմ դնելու համար ։

Երբ մանուկ մը վար իյնայ կամ գլուխը պատին զարնէ՝ անշուշտ ցաւ մը կիմանայ, եւ այդ ցաւը կըստիպէ զինքն աւելի ուշադիր ըլլալ . այս ձախող արկածները կրկնուելով՝ վերջապէս կը սորվեցունեն իրեն կանոնաւոր կերպով շարժիլ ։ Եթէ վառարանին երկաթէ եզերքին դպչի, եթէ ձեռքը ճրագին բոցին մէջէն անցունէ, կամ եռացած ջուրի կաթիլ մը վրան ցատկէ, ասոնցմէ պատճառած այրածքը դաս մը կըլլայ իրեն, եւ այս դասը շուտ չմոռնար նա ։ Այսպիսի արկածներու երեւէն լը առած դասն այնքան զօրաւոր կըլլայ, որ ետքն որչափ ալ ստիպես՝ չյօժարիր իր բնական կազմութեան օրէնքին դէմ գործել ։

Արդ այսպիսի պարագաներու մէջ՝ բնութիւնն ամէնէն պարզ եղանակով կը ցուցընէ մեզի թէ բարոյական կրթութեան ճշմարիտ տեսականն ու ճշմարիտ գործնականն որո՛նք են — տեսական ու գործնական, որ ծանծաղամիտներու աչքին հասարակ բաներ պիտի երեւին, սակայն շատ հասարակ բաներ չեն՝ ինչպէս քննելով պիտի ցուցընենք ։

Եւ նախ դիտեցէք՝ որ մարմինին գրգռած վէրքն ու զգացած ցաւը մանուկին սխալելուն եւ անոր հետեւանքին պարզուած ձեւերն են ։ Թէպէտ եւ ժողովրդական միտքով բարի ու չար բառերը շատ չեն գործածուիր մարմնական հետեւանք յառաջ բերող գործերուն ։ բայց աղէկ մտածող մը կը տեսնէ՝ որ այդ բառերը կրնան որոշել նաեւ մարմնական հետեւանքի հանգամանքն ալ ։ Ի՞նչ համոզումի տէր ալ ըլլայ մարդ՝ բարոյականի մասին կընդունի որ ամէն գործ՝ որուն անմիջական ու հեռաւոր հետեւանքը բացարձակապէս բարերար է՝ լաւ գործ մըն է, եւ ամէն գործ՝ որուն անմիջական ու հեռաւոր հետեւանքը բացարձակապէս չար է՝ գէշ գործ մըն է ։ Վերջնական փորձով իր գործերը դատելու համար մարդկութեան քանոնն՝ այդ գործերէն հետեւած երջանկութիւնը կամ դժբաղդութիւնն է ։ Գինովութիւնը գէշ է կըսենք՝ անոր համար որ թէ՛ գինովին թէ՛ ընտանիքին մարմնական խանգարումին եւ աղէտներուն պատճառ կըլլայ ։ Եթէ գողութիւնը շահաւէտ ըլլար միապէս թէ՛ գողցողին թէ՛ գողցուողին համար՝ յանցանքի ցանկէն պիտի վերցունէինք զայն ։ Եթէ բարի գործերը շատցունէին մարդու վիշտերը՝ պիտի դատապարտէինք անոնք եւ բարի չպիտի համարէինք ։ Եթէ ընկերական գործերու վրայ յօդուած մը կարդանք, կամ կենցաղաբանական ինչ եւ իցէ խօսակցութիւն մը մտիկ ընենք՝ կը տեսնենք որ խորհրդարանի քուէները ընկերական շարժումներն եւ մարդասիրական ձեռնարկութիւններն՝ անհատներու գործերուն պէս իրենց յառաջ բերած արդիւնքին համեմատ կը չափին, արդիւնք՝ կամ բերկրանք աւելցունող կամ վիշտի առիթ ։ Եւ եթէ ամէն երկրորդական ու հետեւորդ գաղափարները վերլուծելով հասկընանք որ բարին ու չարը զանազանելու վերջնական քանոննիս այս է, անպատճառ կըստիպինք մեր

Նիւթական գործերը բարի կամ չար համարել՝ անոնց բարերար կամ վնասակար արդիւնքին համեմատ ։

Դարձեալ դիտելու է այս նիւթական պարտազանցութեանց դէմ ձեռք առնուած պատիժներուն բնութիւնը ։ Լաւագոյն բառ մը չունենալնուս համար պատիժ կըսենք, վասն զի ասոնք նկարագրական իմաստով պատիժ չեն ։ Արուեստական ու անօգուտ պատուհասներ չեն, այլ պարզապէս բարերար արգելներ այնպիսի գործերու դէմ, որ մեր մարմնական աղէկութեան իրապէս կը հակառակին. արգելներ՝ որ եթէ եղած չըլլային՝ կեանքն անմիջապէս պիտի ոչնչանար վերահաս հարուածներուն երեսէն ։ Այս պատիժ ըսուած բաները՝ պարզապէս իրենց սկզբնաւորիթ գործերուն անվրէպ հետեւանքն են, այսինքն՝ մանուկներու գործերուն դէմ անհրաժեշտ խափանարարներ ։

Պէտք է նաեւ միտ դնել՝ որ այս խափանարարներն, որոնց համընթաց են ցաւերը՝ պարտազանցութեանց համեմատ կըլլան միշտ ։ Դոյզն պատահար մը թեթեւ ցաւ մը յառաջ կը բերէ. քիչ մը ծանր պատահար մը՝ համեմատաբար ծանր վիշտ մը կը պատճառէ ։ Իրերու բնական ընթացքն այնպէս կը բերէ՝ որ դուռի մը սեմին բախելով վար իյնող մանուկ մը ճիշդ պէտք եղածին չափ ցաւ կըզգայ, եւ անոր ճիշդ համեմատութեամբ՝ ոչ աւելի ոչ պակաս՝ հարկ կըլլայ իրեն զգոյշ մնալ ։ Ամէն օրուան փորձառութեամբ կը սորվի ճանչնալ՝ թէ որո՞նք են այն աւելի կամ նուազ ծանր սխալներն՝ որ իր աւելի կամ նուազ ծանր անհոգութեանցն արգասիքն են, եւ անոր համեմատ կը վարուի ։

Վերջապէս, պէտք է դիտել որ մանուկին վրէպ գործերուն ետեւէն հասնող այս բնական խափանարարներն՝ անյեղլի, ուղիղ, անվրէպ ու անխուսելի են ։

Առաջուընէ չեն սպառնար, այլ միայն անշշունչ խաղու-թեամբ մը կը գործեն։ Եթէ գնդասեղ մը մատին մէջ մխէ, իսկոյն ցաւ կըզգայ, եթէ անգամ մըն ալ մխէ՝ նորէն ցաւ կըզգայ. եւ այսպէս մինչեւ յաջորդաբար։ Անգործարանաւոր բնութեան հետ իր ունեցած ամէն յարաբերութեանց ատեն՝ իր դէմ կելնէ այդ անվրիպելի արգելն, որ բան մը մտիկ չըներ, եւ կը գործէ՝ առանց առաջուընէ նշան տալու. եւ մանուկն իսկո՛յն այս խիստ ու միանգամայն բարերար բնակարգն հասկընալով վերջին աստիճան զգուշութիւն կընէ այդ օրէնքին դէմ չգործելու։

Այս հանրական ճշմարտութեանց աւելի մեծ նշանակութիւն պիտի տանք՝ երբ միտ բերենք որ անոնք բովանդակ չափահասութեան ատեն ճշմարտութիւններ կը մնան, ինչպէս բովանդակ տղայութեան ատեն։ Այր թէ կին՝ իրենց երբեմնի գործերուն բնական հետեւանքէն առած փորձառութեամբն է՝ որ չարիք գործելու զառ ի վայրին վրայ կանգ կառնեն։ Տունի դաստիարակութիւնն աւարտելէն ետեւ՝ երբ ա՛լ ծնողք կամ վարժապետ չիկայ՝ սա ըրէ՛, նա մըներ՛ ըսող՝ վարքի նոր հրահանգ մը կըսկսի կուգայ նման անոր, որով մանկիկը սորված է ինքնին ուղղել իր շարժումները։ Եթէ կենցաղի ասպարէզը նետուող երիտասարդն՝ իր ժամանակը պարապորդութեամբ կորսընցունէ, կամ գէշ ու հարեւանցի կերպով իր գործերը կատարէ՝ շուտ կը հասնի անոր բնական պատիժը, գործէն կը ճամբի եւ բաւական ատեն համեմատական խեղճութիւն մը կը քաշէ։ Այն մարդն՝ որ ճշդապահ չէ, եւ իր գործի ու զուարճութեան ժամադրութիւններէն շարունակ ետ կը մնայ՝ իր արդար պատիժը կը կրէ, այսինքն կը զրկի շահելիք առակէն ու զուարճութենէն։ Այն վաճառականն՝ որ շատ մեծ շահեր ընել կուզէ՝ իր յաճախորդները կը կորսընցունէ, որով իր ապահովութիւնը

պատճառ կըլլայ իր անկումին ։ Թերահոգ բժիշկի մը յանձնելէ դադրող հիւանդներն՝ իրենց դադարումովը դաս մը տուած կըլլան անոր՝ իր միւս հիւանդներն աղէկ խնամելու ։ Դիւրահաւան փոխատուն, ամէնավստահ շահադէտն՝ իրենց դէմն եղած անձկութիւններէն կը խրատուին գործի մէջ ուրիշ անգամ աւելի խոհեմ ընթացք մը բռնել. բովանդակ կենցաղի գործերն այսպէս են ։ Այսպիսի պարագաներու մէջ շատ անգամ լսուած առածը՝ թէ «այրած տղան կրակէն կը փախչի» կը ցուցնէ որ ժողովուրդին իմաստութիւնն ալ վկա՛յ է ընկերական կրթութեան ու մանուկներու բնական կրթութեան նմանութեանը ։ Եւ ամէն մարդ այդ կրթութիւնն ամէնէն ազդեցիկ կը համարի ։ Շատ անգամ լսուած է այն խօսքը՝ թէ «Շատ ծանր փորձով սորվեցայ ընթացքս փոխել» ։ Ամէն մարդ գիտէ՝ թէ կարգ մը շռայլներու կամ անխելք շահադէտներու ընթացքը պախարակողներուն՝ իմաստուններն պարզ խօսք մը կըսեն թէ անօգուտ է այնպիսիներուն խրատ տալ, միայն «դառն փորձառութիւնն» այսինքն այդպիսի մոլորութեանց անվրէպ հետեւորդ թշուառութիւնը՝ կրնայ զօրաւոր դաս մը տալ անոնց ։ Թէ մարդու գործերուն բնական խափանարարներն՝ ամէնէն ազդու պատիժներ են, որոնց տեղ չկրնար բռնել ի՛նչ եւ իցէ մարդկային պատիժ, պատժական դրութեանց ամլութիւնը կապացուցանէ զայս ։ Օրէնսդիրներու առաջարկութեամբ գործադրուած ամէն պատժական հրահանգ ու մէթոտ՝ ակնկալուած արդիւնքը չեն տուած ։ Արուեստահնար պատիժները բնաւ չեն զգաստացուցած յանցաւորներն, եւ երբեմն ալ պատճառ եղած են՝ անոնց աւելի ծանր ոճիրներու մէջ իյնալուն ։ Քիչ մը յաջողութիւն ձեռք բերուած է ա՛յն զղջարաններուն մէջ միայն, ուր կանոնները կարելի եղածին չափ բնութենէն օրինակուած են, այսինքն՝ ուր յան-

ցուորին միա՛յն իր յոռի գործերուն արդիւնքը քաշել կու-տան՝ նուազեցունելով անոր գործելու ազատութիւնն ա՛յնչափ, որչափ հարկաւոր է ընկերութեան ապահովու-թեանն համար, եւ պահանջելով իրմէն որ իր ապրուստն այդ նեղ վիճակին մէջ ճարէ ինքնիրեն։ Եւ ասոնցմէ կը տեսնենք նախ՝ թէ այն կարգն որով բնութիւնը կը սոր-վեցունէ մանուկին իր շարժումները կանոնաւորել՝ նոյն կարգն է, որ մարդկութեան մեծագոյն մասն օրէնքի տակ կը պահէ, եւ որով մարդիկ քիչ շատ բարոյականի տէր կըլլան. ապա՝ թէ ամէն մարդկային հրահանգներն՝ որ ամէնէն ապիրատ անձերու վրայ կը գործադրին՝ անպիտան կը դառնան երբ կը հեռանան բնական ա՛յն կարգէն, որ աստուածային ճշդութեամբ դրուած է, եւ այն ատեն միայն կըսկսին յաջողիլ՝ երբ մօտենան այդ բարձրագոյն կարգին։

Ուրեմն ա՛յս է մեր բարոյական կրթութեան ղեկն. եւ ասկէ տրամաբանելով պէտք է ըսենք՝ թէ սկզբնական տղայութեան ու չափահասութեան ատեն այսքան բարե-բար դրութիւն մը՝ երիտասարդութեան ատեն ալ բարե-բար է։ Ո՞վ կրնայ ըսել՝ թէ կենցաղի առաջին եւ վերջին շրջանին մէջ այսքան ճիշդ մէթոտ մը՝ կենցաղի միջին շրջանին մէջ ալ ճիշդ չըլլայ. եւ յայտնապէս չերեւի՞ր՝ թէ ծնողներուն պարտքն է «իբրեւ սպասաւոր ու թարգման բնութեան» հսկել որ իրենց զաւակներն իրենց վարքին ճիշդ հետեւանքն ինքնին կրեն — այսինքն բնական խա-փանարարները — չչեղեցունելով անոնցմէ եւ չաւելցունելով նոնոնք՝ ոչ ալ անոնց տեղ ուրիշ արուեստական հետեւանք դնելով։ Ողջամիտ ընթերցող մը՝ անշուշտ չպիտի երկբայի մեր ըսածին վրայ։

Հաւանաբար շատեր պիտի կարծեն՝ թէ ծնողները

մեծ մասով ճիշդ այսպէս կը վարին իրենց մանուկնե-րուն հետ ։ Թէ անոնց տուած պատիժները՝ սովորաբար մանուկներուն յոռի վարքին օրինաւոր հետեւանքն են ․ Թէ հայրական բարկութեան պատճառն, որ խիստ բառե-րով եւ սաստիկ ընթացքով մը կարտայայտի, մանուկին պարտազանցութիւնն է, եւ թէ մանուկին զգացած մարմ-նական ու բարոյական ցաւն՝ յոռի գործի մը բնական խափանարարն է ․ այս վարկածին մէջ՝ չատ մը վրի-պակներու հետ քիչ մը ճշմարտութիւն ալ կայ ։ Տարա-կոյս չիկայ՝ որ հայրերուն ու մայրերուն դժգոհութիւնը՝ մանուկներուն սխալներուն ճիշդ հետեւանքն է, եւ այս դժգոհութեան ցոյցերն՝ օրինաւոր զսպիչն են այս սխալնե-րուն ։ Այն կշտամբանքն, սպառնալիքն, ու հարուածներն, որոնք զայրացած հայր մը իր զաւակին վրայ կը տեղայ, մանուկին անշնորհութեան վրայ հօրն զգացած վիշտերուն արգասիքն են իրապէս, եւ իբր այնպէս՝ կըրնան համար-ուիլ զաւակներուն գէշ գործերուն բնական խափանարար-ներ ։ Մենք բնաւ չենք ուզեր պնդել՝ որ այդ կարգի ընթացք համեմատաբար արդար չեն—եւ արդար ըսելով՝ կիմանանք այն անզուսպ մանուկներուն համար, որոնց անկարելի է իրենց երիտասարդութեան ատեն գէշ (1) կըր-թուած չափահասներու ձեռքով կրթել ։ Ինչպէս առաջ ալ ըսինք՝ կրթական դրութիւններն առ հասարակ ա՛յնչափ լաւ են որչափ կը ներէ մարդկային բնութիւնը ։ Խուժ ծնողներու դուժ զաւակները՝ կարելի է զսպել բնակա-նաբար խուժադուժ մէթոտներով, որոնք այդպիսի տգէտ ծնողներն ինքնաբերաբար ձեռք կառնեն, եւ այս խու-ժադուժ մէթոտներուն մէջ հաւանաբար կը պարունակի

(1) Հեղինակին այս խորհրդածութիւնն՝ աւելի լայն դուռ մը ունի մեր շատ մը դասակարգներուն համար ։ Թ.

բարոյականի այն լաւագոյն պատրաստութիւնը, զոր կըրնան տալ այս մանուկները՝ կենցաղելու համար աշխարհի մոլութեան մէջ, ուր դեր մը պիտի կատարեն։ Ասոր հակառակ՝ բարոյական ունեցող ընկերութեան մը անդամները՝ բնականաբար իրենց մանուկներուն դէմ պիտի արդողին նուազ բուռն եղանակով, եւ աւելի քաղցր միջոցներ ձեռք պիտի առնեն — որ իրենց ամոքաբարոյ զաւակներուն համար բաւական ազդու պիտի ըլլան, Ուրեմն ճշմարիտ է՝ որ ծնողներուն զգացմունքին եւ անոնք արտայայտելու կերպին կողմէն՝ քիչ շատ պահուած է բընական հակազդեցութեան սկզբունքը։ Եւ այսպէս՝ ընտանեկան դաստիարակութեան դրութիւնն աստիճանաբար իր պատշաճ ձեւին կերթայ։

Բայց երկու կարեւոր բան կայ դիտելիք. առաջինն այն է թէ արագ անցումի մը միջոցին, ինչպէս արդի անցումին ատեն, հին ու նոր դրութիւններն հին ու նոր կիրառութիւններն իրարու դէմ կը կռուին, որով կըրնայ ըլլալ որ կրթական դրութիւնները ժամանակներուն ընթացքին անմիաբան ըլլան։ Դեռ շատ ծնողներ՝ յարգելով հին ժամանակներու յարմարցուած վարդապետութիւններն՝ իրենց մանուկներուն այնպիսի պատիժներ կուտան, որ իրենց անձնական զգացումներուն թշնամանք են, եւ այսպէս մանուկներուն վրայ հակաբնական խափանարարներ կը ծանրացունեն. կան ծնողներ ալ՝ որ անմիջական կատարելութեանց հասնելու բուռն խանդով՝ հակառակ ծայրայեղութեան մէջ կիյնան։ Իսկ երկրորդն այն է՝ թէ ծնողներու հաւանութիւնը կամ չհաւանութիւնը մէթոտներուն ընտրութեանն ապացոյց մը չէ։ Ամէնէն ընտիր մէթոտը՝ բնական արդիւնքին փորձառութիւնն է, որ՝ եթէ ծնողները բնաւ չխառնուին մանուկին ընթացքին՝ յառաջ կուգայ այդ ընթացքէն։ Ճշմարտապէս կրթող ու

փրկարար հետեւանքը նոյն իսկ բնութենէն ծնածներն են, եւ ոչ թէ ծնողներուն չինածներն, որ ինքզինքնին բնութեան ներկայացուցիչը կը համարին։ Այս տարբերութիւնը պայծառապէս ցուցընելու համար մէկ քանի օրինակներ պիտի տանք, որ մանուկներու հետ վարուելու գործնական եղանակը կը սորվեցունեն՝ ցուցընելով թէ բնական խափանարար ու արուեստական խափանարար ըսելով ի՛նչ կիմանանք։

Ամէն տունի մէջ, ուր անտիական արարածներ կան, ամէն օր այդ արարածներն «անառակութիւններ» կընեն ինչպէս կըսեն մայրերն ու ծառաները։ Եթէ տղայ մը խաղալիկներ ցրուած ըլլայ գետինը, սեղաններուն կամ աթոռներուն վրայ ծաղիկներ ցանած ըլլայ, որոնք պտոյտէ դառնալուն բերած է, կամ եթէ աղջիկ մը սենեակին մէջ ասդին անդին կերպասի փերթեր սփռած ըլլայ, այս անկարգութիւնները վերցունելու նեղութիւնը գրեթէ միշտ անոնց կիյնայ, որոնց պարտքը չէ։ Եթէ մանկարանին մէջ եղած են այս բաները՝ ինք մանկածուն «այդ պզտիկ չարաճճիները» չխսելով կըսկսի ժողվըտել. եթէ միւս սենեակներուն մէջ պատահած են՝ այս ժողվըտուքը կամ չափահաս մանուկներուն եւ կամ սպասաւորին կիյնայ, եւ բուն յանցաւորները՝ չնխ մը միայն կառնեն։ Սակայն երբեմն՝ այսպիսի պարզ դէպքի մը մէջ՝ ծնողները խելացութեամբ քիչ շատ կը հետեւին իրերու բնական կարգին՝ մանուկին պատուիրելով որ ինքն իր ձեռքով ժողվէ ցրուած խաղալիկները ծաղիկները կամ փերթերը։ Այդ բաները կարգի դնելու նեղութիւնն՝ անոնք ցրուելու յանցանքին ճիշդ հետեւանքն է, եւ ասոր փորձը կառնեն ամէն օր՝ խանութպանն իր խանութին ու տանտիկինն իր տունին մէջ։ Եւ եթէ համոզուած ենք որ դաստիարակութիւնը կենցաղի նախապատրաստութիւն մըն է՝ ամէն

տղայ ալ սկիզբէն պէտք է որ ամէն օր անոր փորձն ընէ։ Եթէ մանուկն ընդդիմանայ (ինչպէս բարոյական կրթութիւնն առաջուընէ յառի եղած տեղը կը պատահի) պէտք է ձգել որ ինքն այդ անհնազանդութեան մինչեւ վերջին արգասիքը կրէ։ Որովհետեւ դժկամակած էր ժողվել ու կարգի բերել իր սփռած առարկաներն, եւ այս հեղութիւնն ուրիշի մը տուած էր, յետագայ առիթներու մէջ՝ պէտք է անոր միջոց չի տալ այս հեղութիւնները պատճառելու։ Երբ իր խաղալիկներուն տուփն ուզելու գայ՝ պէտք է մայրն այսպէս պատասխանէ «Գիտե՞ս, երբ վերջին անգամ խաղալիկներդ ձեռքդ տուի, դուն անոնք գետինը ձգած էիր ցիրուցան, եւ քուրիկդ քաշեց անոնք ժողվրտելու հեղութիւնը, բայց քուրիկդ շատ գործ ունի, չկրնար ամէն օր քու ցանցրնած բաներդ հաւաքել, նոյնպէս ես ալ չեմ կրնար ընել այդ։ Քանի որ դուն խաղալէդ ետեւ խաղալիկներդ չես ժողվեր, ես ալ ուրիշ անգամ չպիտի տամ քեզի անոնք»։ Եւ բնական հետեւանքն ալ այս է, ո՛չ աւելի ո՛չ պակաս, տղան շատ կը հասկընայ զայս. պատիժն ալ ճիշդ առենին տաք տաք տրուած կըլլայ։ Իր խաղալիկներն առնելու փափաքը կը խեղդուի այսպէս ճիշդ ա՛յն վայրկեանին՝ երբ կակընկալէր ինքն անոր կատարուելուն. եւ այս կերպով յառաջ եկած ուժգին ազդեցութիւնն անպատճառ արդիւնաւոր կըլլայ անոր ապագայ վարքին վրայ, ազդեցութիւն մը որ եթէ հաստատամտութեամբ կրկնուի՝ մանուկին յանցանքը սրբագրելու համար պէտք եղածը պիտի ընէ։ Նաեւ այս ընթացքով՝ կանուխէն պիտի սորվի նա ինչ որ չկրնար ետքը սորվիլ, այսինքն պիտի սորվի՝ թէ բերկրանքն աշխատութեան գինն է։

Ուրիշ օրինակ մըն ալ. մօտ առեններ կը լսէինք փոքրիկ աղջիկի մը կշտամբիլն, որ երբէք ճիշդ առենին

պատրաստ չէր ըլլար հանապազորդ պտոյտին ։ Բուռն բնաւորութեան տէր այս աղջիկը՝ մատաղ կըլլար իր ձեռքի զբաղմունքին, եւ մինչեւ որ միւս մանուկները դուրս ելնելու պատրաստ չըլլային՝ գլխարկը չէր դներ ։ Իր վարժուհին ու քոյրերը գրեթէ միշտ կըստիպուէին սպասել անոր, եւ գրեթէ միշտ ալ այս բանին համար մայրը կը կշտամբէր զինքը ։ Թէպէտ եւ իր այս ընթացքին պատճառով ամէն ատեն ետ կը մնար, իր մայրն երբէք խելք չէր ըներ՝ աղջիկին այս պակասութեան բնական հետեւանքն անոր քաշել տալ ։ Եւ երբ կառաջարկէին իրեն այս մէթոտը՝ ամենեւին չէր ուզեր երբէք փորձել զայն ։ Աշխարհի վրայ ճշդապահ չեղողը՝ կը կորսնցունէ միշտ այն օգուտն որ պիտի շահէր՝ եթէ ճշդապահ ըլլար ։ Ճշդապահ չեղող մարդն՝ հոս, դռէնը կը փախցունէ, հոն թղթատար նաւն, անդին վաճառականին աղէկ բաները կը ծախուին, եւ նուագահանդէսի սրահին աղէկ տեղուանքը կը բռնուին, ու ինք զուրկ կը մնայ անոնցմէ ։ Ամէն օր կը նկատենք որ մարդիկ չըզրկուելու յառաջատեսութեամբ կաշխատին կանխել ամէն տեղ, եւ այս բնական ջանքը պէտք է հաշուի առնել մանուկ կրթելու ատեն՝ չը զրկուելու յառաջատեսութիւնն ալ պէտք է սորվեցունել անոր ։ Եթէ վերն յիշուած աղջիկն որոշեալ ժամին պատրաստ չըլլայ՝ իր անհոգութեան բնական հետեւանքը պիտի ըլլայ՝ տունը մնալ եւ պտոյտէն զրկիլ ։ Եւ երբ այսպէս մէկ երկու անգամ տունը մնայ, եւ միւս մանուկները դաշտային պտոյտներով զբօսնուն, ու ինք մտածէ գտնայ՝ որ իր անհոգութեամբը զրկեցաւ այդ բերկրանքէն, շատ հաւանական է որ ինքզինքը պիտի ուղղէ ։ Եւ մտածէ թէ չմտածէ՝ իրեն եղած լքումն աւելի արդիւնաւոր պիտի ըլլայ քան այն մշտնջենաւոր կշտամբանքն, որ վերջապէս խստասիրտ մը կընեն զայն ։ . . . . . . .

Այսպէս ալ՝ երբ անզգոյշ մանուկներ իրենց տրուած բաները կը կոտրեն կամ կը կորսնցունեն, իրենց բնական պատիժը կըլլայ անոնց կորսնցունելնուն վրայ իրենց սիրտի ցաւն, եւ այս ցաւին յիշատակն է դարձեալ որ մեծերն ալ զգոյշ կը բռնէ ։ Այս թէ կին՝ այսպիսի պարագաներու մէջ կը խրատին՝ կոտրուած կամ կոտրած բանի մը յիշատակովն ու անոր տեղն ուրիշ մը դնելու համար պէտք եղած ծախքովը ։ Իրենց մանուկներուն ալ պէտք է հաղորդեն կորուստի վրայ այդ ցաւը ։ Մեր այս խրատը կեանքի առաջին տարիներուն համար չէ, երբ տղան իր խաղալիկները կոտրելով՝ անոնց նիւթական յատկութիւնները կը սորվի(1) այն տարիքին մէջ իր այս սխալներուն հետեւութիւններն հասկընալու վիճակին մէջ չէ դեռ. մենք այն տարիքին համար կըսենք, երբ մանուկը սեփականութեան նշանակութիւնն ու օգուտը հասկընալու կարող է ։ Երբ զմելին մը գործածելու տարիքին հասած տղայ մը՝ այնչափ ձախորդ կը գործածէ զայն որ անոր բերանը կը կոտրէ, կամ փայտիկ մը տաշելու ատեն խոտի դէզերու մէջ կը կորսնցունէ զայն, անմիտ հայր մը կամ կամակատար հօրեղբայր մը՝ կը փութայ անոր տեղ ուրիշ մը առնել. չմտածեր որ այսպէս ընելով օգտակար խրատ մը տալու առիթէն կը զրկէ մանուկը։ Խելացութիւնն այն է՝ որ անոր հասկըցունէ թէ զմելինը ստակով կառնուի, եւ ստակն՝ աշխատելով կը վաստըկին ու ինք չկրնար նորէն ստակ տալ զմելինի՝ եթէ տղան եղածը կոտրէ կամ կորսնցունէ. որով կազդէ անոր՝ թէ մինչեւ որ չապացուցանէ աւելի զգոյշ ըլլալն՝ ուրիշ զը-

(1) Բայց որովհետեւ սորվելու համար չէ որ կը կոտրէ, այլ կամ բարկութենէն կամ պատահումով մը կամ անիմաստ բերումով մը՝ հար-ւրին ինքնութիւնն անհնար է որ այդ կոտրածէն բան մը սորվի ։ Թ.

մէկէն չպիտի տրուի իրեն ։ Այսպիսի ընթացքով մը՝ մանուկին շռայլութեան առաջքը կ'առնուի ։

Այս ընտանեկան քանի մը օրինակներն, որ պարզ ըլլալով մեր ըսածին պայծառ ապացոյցներ են, ամէնուն ալ ակներեւ պիտի ցուցընեն՝ թէ մեր ակնարկած բնական պատիժները միայն ազդու են, իսկ արուեստական չինծու պատիժներն անարդիւն կը մնան ։ Այս օրինակներով ապացուցուած սկզբունքին աւելի նուրբ եւ աւելի բարձր կիրարկութիւնները ցուցընելէ առաջ, դիտել տանք անոր մեծ ու բազմաթիւ առաւելութիւններն՝ այն սկզբունքին կամ մանաւանդ գործնական եղանակին վրայ, որ կը տիրէ շատ ընտանիքի մէջ ։

Այս առաւելութիւններէն մին այն է՝ որ անոր կիրարկութիւնը միտքին մէջ պատճառի եւ արդիւնքի ճիշդ ծանօթութիւններ կը կազմէ, որ տակաւ փորձառութիւններով որոշ ու կատարեալ կ'ըլլան ։ Մարդ՝ կեանքին մէջ պէտք եղածին պէս ընթանալու աւելի ապահով կ'ըլլայ, երբ իր գործերուն աղէկ ու գէշ հետեւութիւններն իր փորձով քան ուրիշներու վկայութեամբ գիտնայ ։ Երբ մանուկը տեսնէ՝ որ անկարգութեան պատճառով հարկ կ'ըլլայ իրեն նորէն կարգի դնել իրերը, կամ իր դանդաղութեան երեսէն բերկրանք մը կը կորսնցունէ, կամ խընամքի կողմէն պակասաւոր գտնուելով՝ օգտակար ու հաճոյ բանէ մը կը զրկուի, ոչ միայն անոնց արդիւնքը խիստ կերպով կը զգայ, այլ նաեւ պատճառէ արդիւնքի առընչութեան գաղափարն ալ կ'ըստանայ՝ մանաւանդ ճիշդ այն եղանակով, որով ետքը կենցաղական փորձառութեամբ պիտի հասկընայ ։ Մինչ այն տղան՝ որ նման պարագաներու մէջ քիչ մը կշտամբանք կամ արուեստական պատիժներ կ'առնէ, ոչ միայն թեթեւ կերպով մը կը տեսնէ իր գործին հետեւանքն եւ յաճախ հոգն ալ չըներ, բայց

եւ այդ գործին աղէկութեանը կամ գէշութեանը վրայ ճիշդ ըմբռնում մը չառնեն, որ միւս պարագային պիտի առնէր։ Եւ յիրաւի, արուեստական վարձքի ու պատիժներու դրութեան յոռութիւններէն մին ալ, որ կորովատես մարդիկ երկար ատենէ 'ի վեր նշմարած են, այն է որ յառի վարքի բնական հետեւանքին տեղ պատժական աշխատութիւններ կամ պարտաւորիչ դրութիւններ տալով մանուկին սխալ ըմբռնել կուտայ բարոյականի քանոնը։ Երբ իրենց բովանդակ մանկութեան ու երիտասարդութեան ատեն՝ ծնողներէն եւ վարժապետներէն դժգոհութիւնը կը նկատեն իբրեւ իրենց յանցապարտութեան գլխաւոր արդիւնքն, անոնց միտքին մէջ գաղափարներու կցորդութիւն մը կը հաստատի՝ յանցանքի եւ անոր առթած դժգոհութեան վրայ՝ պատճառի եւ արդիւնքի մէջ եղած կցորդութեան պէս։ Եւ ասկէ կը հետեւի՝ որ երբ ծնողներն ու վարժապետներն իշխանութենէ քաշուին, եւ մանուկն ա՛լ անոնց դժգոհութենէն չվախնայ, բարոյականի քանոնը մեծ մասով կը խափանի միեւնոյն հարուածով, եւ ճշմարիտ օրէնքն, որ է բնական խափանարարներու օրէնքը. տխուր փորձառութեամբ մը կը սորվի։ Ինչպէս որ կը գրէ այս դրութեան արդիւնքն անձովը փորձող մը «Երբ անգամ մը երիտասարդները դպրոցէն ելնեն, մանաւանդ անոնք որոնց վրայ ծնողք փոյթ չեն ըրած իրենց ազդեցութիւնը բանեցունել՝ ամէն ապօրինութեանց մէջ կը նետուին. ոչ մէկ գործի մէջ կանոն մը՛ կը ճանչնան. բարոյապէս ընթանալու պատճառները չգիտեն. իրենց գաղափարներն ամենեւին հիմ չունին. ընկերութեան ամէնէն վտանգաւոր անդամները կը դառնան՝ մինչեւ որ կենցաղական փորձառութեամբ խիստ կերպով մը հրահանգին»։

Այս բնական կրթութեան միւս մեծ առաւելութիւնն ալ այն է՝ որ ճշգրիտ ու արդար է, ինչպէս առ հասարակ

ամէն տղայ՝ պիտի իմանայ զայն ։ Այն մանուկն, որ իր գէշ վարքին բնական հետեւութիւնն եղող չարիքը կրել կըստիպի, ամենեւին չպիտի կարծէ որ անիրաւութեամբ պատժուած է, ինչպէս կը կարծէ այն մանուկն՝ որ արուեստական պատիժ մը կը կրէ։ Այս շատ ճշմարիտ է՝ կատարեալ անձերու եւ մանուկներու համար հաւասարապէս։ Օրինակի համար՝ եթէ տղայ մը սովորած է իր հագուստներուն անհոգութիւն ընել, փուշերու քովէն առանց ուշադրութեան անցնիլ եւ ցեխերէն չզգուշանալ, եւ երբ ծեծեն զայն կամ անկողինը վռնտեն՝ պիտի կարծէ որ անիրաւութիւն մը կընեն իրեն, եւ աւելի իր զրկանքին վրայ պիտի մտմտայ փոխանակ իր սխալին վրայ զղջալու ։ Բայց երբ բռնադատեն զինքն իր գործած չարիքը կարելի եղածին չափ ինքնիրեն դարմանել, իր ցեխերն ինքնիրեն մաքրել, իր հագուստին պատռուածքն ինքնին կարել, անշուշտ պիտի հասկընայ՝ որ իր այդ նեղութեանցը պատճառն ինք իսկ է ։ Իրեն պարտքն եղող այս նեղութիւններն յանձն առնելով՝ հաստատապէս իր միտքին մէջ պիտի տպաւորի այդ նեղութեան ու անոր պատճառին կցորդութիւնը ։ Եւ բռնանեղելով հանդերձ՝ քիչ շատ պիտի իմանայ իր խիղճին մէջ այս պարտքին արդարութիւնը ։ Եթէ այս կարգի շատ մը օրինակներ անարգիլուն մնան, եթէ նոր հագուստներն ամենէն առաջ աղտոտին, հայրն՝ իր հրահանգելու նոյն եղանակը շարունակելով՝ պիտի մերժէ ստակ ծախսել նոր հագուստներու համար՝ սովորաբար հագուստ գնելու ատենէն առաջ, եւ երբ այն միջոցին պատահի՝ որ մաքուր հագուստ չունենալուն համար տղան չկրնայ դուրս ելնել իր ծնողքին հետ, ինչպէս՝ օրինակի համար՝ կիրակիի պըտոյտներուն եւ իր բարեկամներուն տօնախմբութեանց, այն ատեն անշուշտ աւելի սաստկութեամբ պիտի իմանայ պատիժը, պատճառէ արդիւնքի կցորդութիւնն յըս-

տակաւար պիտի տեսնէ, եւ պիտի հասկընայ՝ որ իր զրկուելուն պատճառն իր անփութութիւնն է։ Այսպէս ահա՝ ինքզինքն անիրաւութեան խաղալիկ չպիտի համարի, ինչպէս պիտի համարէր եթէ յայտնի կապ մը չըլլար՝ իր յանցանքին ու անոր հետեւութիւնն եղող պատիժին մէջ։

Ասկէ զատ, ծնողներուն եւ մանուկներուն բնութիւնն այս դրութեամբ այլայլելու նուազ ընդունակ է քան սովորական դրութեամբ։ Երբ, փոխանակ թող տալու՝ որ մանուկն իր յոռի գնացքին բնական հետեւանքն ինքնին կրէ, ծնողները արուեստական կարգ մը պատիժներ տան՝ կրկնակի չարիք կը պատճառեն։ Որովհետեւ ծնողները իրենց հաստատած ընտանեկան շատ մը օրէնքին հետ նոյնացուցած են իրենց իշխանութիւնն ու մեծութիւնը, մանուկներուն իւրաքանչիւր օրինազանցութիւնը բարկութեան պատճառ մը կըլլայ իրենց։ Դարձեալ՝ ինքզինքնուն տալ կըստիպուին այն աւելորդ չարչարանքն, որ աշխատութեան կամ աւելորդ ծախքի կերպարանքով կը ծանրանան իրենց վրայ՝ մանուկներուն յոռի գործերուն երեսէն. որ պէտք էր յանցաւորներուն վրայ ծանրանային։ Այսպէս ալ կըլլայ մանուկներուն, բնական խափանարարներու միջոցով եկած պատիժներն. այսինքն անհոգի նիւթերու կողմէն իրենց վրայ դրուած պատիժներն՝ համեմատաբար անզօր ու վաղանցիկ բարկութիւն մը կը պատճառեն, մինչ ծնողներու կողմէն կամովին դրուած պատիժները, զոր մանուկները ծնողներուն գիւտը կը համարեն՝ աւելի մեծ եւ աւելի տեւական բարկութիւն մը յառաջ կը բերեն։ Որչա՛փ աղէտալի հետեւանք պիտի ծագէին՝ եթէ այս փորձական մէթոտը դաստիարակութեան սկիզբէն կիրառուէր։ Համարենք թէ կարելի ըլլար՝ որ ծնողները ինք կրէին իրենց տգիտութեամբն ու անխոհեմութեամբ մանուկներուն առթած վիշտերն,

եւ այս չար հետեւանքը կրած առեններնին՝ իրենց մանուկներուն կարգ մը ուրիշ չարութիւնները սրբագրէին հասկցնելու համար թէ անոնց վարքն աղէկ չէ։ Համարինք թէ մանուկի մը արգիլուած ըլլալով ջեռուցիչ ամանին դպչիլ, եւ ինք այս արգելքին հակառակ ջեռուցած ջուր թափելով ոտքին վրայ՝ կարելի ըլլար մօրն այրուցք ցաւն ինք զգալ եւ մանուկին ապտակ մը զարնել, այսպէս ուրիշ ամէն պատահարներու առեն ալ։ Այս հանապազորդ դէպքն՝ ո՞չ ապաքէն աւելի շատ բարկութեան պատճառ պիտի ըլլային քան այսօր։ Երկու կողմէն ալ գէշ բնաւորութիւնը պարբերական չպիտի՞ դառնար. սակայն ճիշդ այս ընթացքով է՝ որ ժամանակ մը անցնելէն ետեւ ծնողներն իրենց մանուկներուն հետ կը վարին։ Այն հայրն՝ որ իր մանուկը կը ծեծէ՝ իր պզտիկ քրոջը խաղալիկն անհոգութեամբ կամ չարութեամբ կոտրած ըլլալուն համար, եւ աղջիկին համար ուրիշ խաղալիկ մը կը գնէ, այդ հայրը ճիշդ մեր վերն ըսածին պէս ըրած կըլլայ. յանցաւորին արուեստական պատիժ մը կուտայ, եւ յանցանքին բնական նեղութիւնն ինք կը կրէ. որով առանց հարկի՝ իր եւ յանցաւորին զգացումները միանգամայն կը դառնացունէ։ Եթէ մանուկէն պահանջէր միայն կոտրածին տեղն առնել՝ աւելի քիչ տրտմութիւն պիտի պատճառէր. եթէ մանուկին ըսէր՝ թէ պարտի իր ստակովը նոր խաղալիկ մը գնել իր քրոջն, եւ ասոր համար անոր դրպանի ստակը վար պիտի դնէ՝ երկու կողմէն ալ քիչ բարկութիւն պիտի պատճառէր, միանգամայն մանուկն արդար ու փրկարար պատիժ մը կրած պիտի ըլլար։ Մէկ խօսքով, բնական խափանումներու միջոցով կրթելու դրութիւնը շատ քիչ կը վնասէ մանուկներու բնաւորութեան. վասն զի նախ՝ մանուկն անմիջապէս կը նշմարէ թէ դուն արդարութեամբ կը պատժի, եւ ապա՝ վասն զի

բնութեան անանձն գործողութիւնն է, որ մեծ դերը կը կատարէ՝ փոխանակ ծնողներուն անձնաւոր գործողութեան։

Վերջապէս՝ այս դրութեամբ ծնողները եւ մանուկները յարաբերութիւններն աւելի սիրելական կըլլան, եւ հետեւաբար այդ դրութեան ազդեցութիւնն աւելի օգտակար կըլլայ։ Թէ՛ ծնողներու թէ՛ մանուկներու բարկութիւնն՝ ի՛նչ բանէ ալ որ յառաջ գայ եւ ի՛նչ ձեւով ալ որ արտայայտի՝ միշտ վտանգաւոր է։ Բայց հօր մը բարկութիւնն իր զաւակին դէմ եւ զաւակի մը բարկութիւնն իր հօրը դէմ՝ կրկնակի վտանգաւոր է՝ վասն զի կը տկարացունէ համակրութեան այն կապն, որ հարկաւոր է ամէն բարերար կառավարութեան։ Գաղափարներու կցորդութեան ոյժով՝ տարէցներն եւ պատանիներն անշուշտ հակակրութեամբ կը նային այն բաներուն, որ անախորժ յիշատակներու հետ իրենց դէմ կելնեն։ Եւ ի՛նչ բանի որ յարած էին առաջ բնապէս՝ յանկարծ կուծանան անկէ կամ կը հեռանան՝ անոր ազդած տպաւորութեանց ուժգնութեան ու յաճախութեան չափով։ Եթէ ծնողք յաճախակի իրենց զայրոյթն արտայայտեն յանդիմանութիւններով ու պատիժներով՝ մանուկին համակրութենէ պաղելուն պատճառ կուտան, եւ անոր անշնորհութիւնն իրեն ծնողին սէրը կը պաղեցունեն։ Այս պատճառով է որ կան մանուկներ՝ որ իրենց ծնողներուն (եւ մասնաւորապէս իրենց հայրերուն) սառնութեամբ կը նային, այս պատճառով է նաեւ որ ծնողներն ալ իրենց զաւակներն իբրեւ պատուհասներ կը նկատեն։ Արդ՝ որովհետեւ յայտնի է որ այսպիսի սառնութիւն մը՝ բարոյական ամէն առողջ դաստիարակութեան վնաս կը բերէ, պէտք է հոգւով չափ ջանանք հեռու մնալ ծնողական եւ որդիական փոխադարձ հակառակութեան առիթներէն։ Ուստի՝ ծնողներուն հա-

մար չափ աւելի շահեկան է արուեստական պատիժներու տեղ՝ իրերու բնութենէն հետեւած պատիժներուն թող տալ մանուկները, որով փոխադարձ պաղութեան ու քէ-ներու առաջքը կառնուի ։

Ուրեմն՝ թէ՛ երկրորդ մանկութեան թէ՛ երիտասար-դութեան ատեն՝ հաւասարապէս պէտք է կիրարկել բնա-կան խափանումներու փորձառութեամբ բարոյական դաս-տիարակութեան դրութիւնն, որ բնուստ սահմանադրուած դրութիւնն է նախնական մանկութեան եւ արքունքի համար ։ Այս դրութեան տուած օգուտներէն առաջինն այն է՝ որ կենցաղավարութեան մէջ կուտայ նա միտքին բարի ու չար վարքի մասին այն ճիշդ գիտելիքն, որ ար-դիւնք է բարի կամ չար հետեւանքի անձնական փորձա-ռութեան. երկրորդն այն է՝ որ մանուկը միայն իր գէշ գործերուն դժուարըմբռնելի հետեւանքը կրելով ի հարկէ քիչ չափ բացայայտութեամբ կը տեսնէ պատիժին արդարու-թիւնն. երրորդն այն է՝ որ երբ անգամ մը պատիժին արդարութիւնն ըմբռնէ, եւ այս պատիժը բնութեան եւ ոչ թէ մարդու մը ձեռքով տրուելով, մանուկը նուազ կը գժգմնի բարոյապէս, եւ հայրն՝ որ պատիժին բնական միջոցներով գործադրուելուն համեմատաբար կրաւոր պարտքը միայն կը կատարէ՝ կրնայ պահել յարաբերական անայլայլութիւն մը. չորրորդն այն է՝ որ փոխադարձ սրտնութեան առաջքն այսպէս առնելով՝ ծնողներուն եւ զաւակներուն մէջ քաղցրագոյն յարաբերութիւններ կրնան յառնալ, եւ լաւագոյն տպաւորութեանց ծնունդ կըլլան ։

«Բայց ի՞նչ ընել պէտք է, պիտի ըսեն, երբ աւելի ծանր դէպք մը պատահի ։ Ի՞նչպէս հետեւելու է այս դրութեան՝ երբ մանուկը պզտիկ գողութիւն մը ընէ, երբ

տուտ մը խօսի կամ երբ իր փոքրիկ եղբօրը կամ փոքրիկ քրոջը զարնէ»։

Այս հարցումներուն պատասխանելէ առաջ՝ քննենք օրինակ բերուած մէկ քանի եղելութեանց արժէքը։

Մեր ծանօթներէն մէկն, որ իր քեռայրին տունը կը բնակէր, իր քեռորդիներուն դաստիարակութիւնը վրան առած էր։ Իր այս պարտականութեան առեն՝ թերեւս աւելի բնական համակրութեամբ քան տրամախոհութեամբ՝ մեր բացատրած մէթոտին համեմատ վարուած էր։ Իր քեռորդիները՝ տունին մէջ իր աշակերտներն եւ տունէն դուրս իր ընկերներն եղած էին. անոնք՝ իրենց մօրեղբօր հետ ամէն օր պտոյտներ ու հեռաւոր ուղեւորութիւններ կ'ընէին բուսազննելու համար. աշխոյժով տունկեր կը փնտռէին անոր համար. ուշադրութեամբ կը դիտէին զայն՝ երբ տունկերը կը քննէր ու կորոշէր. եւ այսպէս ամէն կերպով անոր ընկերութիւնը կը վայելէին եւ օգուտ կը քաղէին անկէ. մէկ խօսքով բարոյապէս անոնց ճշմարիտ հայրն եղած էր։ Իր կրթելու մէթոտին արդիւնքը պատմելով մեզի՝ շատ մը դէպքեր հետեւեալն ալ պատմեց։ Օր մը՝ պէտք ունենալով այնպիսի բանի մը որ տունին մէկ ուրիշ մասին մէջ կը գտնուէր՝ ըսաւ իր քեռորդիին որ երթայ բերէ զայն։ Մանուկն, որ խաղալու զբաղած էր, իր սովորութեանն հակառակ՝ դժկամակեցաւ այդ գործը կատարելու կամ մերժեց իսկ, լաւ մը չենք յիշեր։ Եւ որովհետեւ այս բարեկամս հակառակ է ամէն բռնի միջոցներու՝ ելաւ ինք գնաց ուզած բանը բերելու, միայն երեսը թթուեցունելով մանուկին այս ընթացքին վրայ։ Իրիկուն եղաւ. մանուկն ուզեց որ ամէն օրուան խաղն սկսին. քեռայրը սրտմտելով մերժեց. եւ իր զգացած բնական սառնութեամբը՝ ցոյց տուաւ այսպէս մանուկին՝ անոր ըրածին ճշմարիտ հետեւանքը։

*Հետեւեալ առաւօտ մեր բարեկամը քունէն ելնելուն պէս՝ իր սենեակին դրանն ետեւէն անսովոր ձայն մը լսեց. քեռորդին էր՝ որ լուացուելու համար տաք ջուր բերած էր իրեն, եւ սենեակը մտնելով չորս դին նայեցաւ՝ տեսնելու համար թէ ուրիշ գործ մըն ալ կա՞յ ընելիք, եւ գոչեց «ա՛, մուճակներդ ալ բերեմ» ու կրակին պէս վազեց մուճակները բերելու ։ Այս եւ ուրիշ կերպով իր ըրածին վրայ ճշմարիտ զըղջում մը յայտնեց, եւ առջի գործը մերժելուն փոխարէն՝ կը ջանար նորօրինակ գործեր կատարել ։ Իրեն լաւ զգացումները ճշմարտապէս յաղթած էին գէշ զգացումներուն, եւ յաղթութեամբը նոր ոյժ մը առած էր ։ Իր մօրեղբօր աչքէն խնալն հասկընալով անոր գորովին յարգն աւելի գիտցաւ՝ երբ նորէն անոր աչքը մտաւ ։*

*Մեր այս բարեկամն հիմա զաւակի տէր եղած է. նոյն գթութեամբ կը կրթէ իր որդիներն, եւ կատարելապէս կը յաջողի ։ Իր մանուկներն, որոնք բոլորովին բարեկամ ըրած է իրեն, երեկոյին անհամբեր կըսպասեն իրեն, վասն զի գիտեն որ նոյն ատենն իրենց հայրը տուն կը դառնայ, մանաւանդ կիրակի օրեր շատ ուրախ կըլլան՝ անոր համար որ օրն 'ի բուն հայրերնին իրենց հետ կըլլայ ։ Ահա այսպէս՝ իր զաւակներուն բովանդակ սիրտն ու սէրը գրաւելով, անոնց վարքին վրայ հաւանութիւն կամ չհաւանութիւն յայտնած ատեն՝ անոնց վարժապետելու հզօր գործիք մը բանեցուցած կըլլայ ։ Տուն մտած ատենն եթէ իմանայ՝ որ իր մէկ զաւակը չարութիւն մը ըրած է՝ այս գէշ լուրին վրայ զգացած բնական սառնութեամբը զաւակին կը մօտի, եւ մինչեւ արժանապէս պատժած կըլլայ զայն այս կերպով ։ Անոր զլանալով իր գգուանքն՝ անոր տրտմութեանն եւ պարտազգածութեան աւելի երկարատեւ ըլլալուն պատճառ կըլլայ ։ Հայրն ինք կըսէ թէ որ–*

ղինները՝ իր բացակայութեան ատեն՝ միշտ կը յիշեն այս զուտ բարոյական պատիժին երկիւղը․ եւ միշտ իրենց մօրը կը հարցունեն թէ իրենց վարքը լա՛ւ է, եւ իրենց հայրն ի՛նչ պիտի ըսէ։ Վերջերս անդրանիկ զաւակն՝ որ հինգ տարեկան անառակորդի մըն էր՝ առոյգ մանուկներու սովորական տաքարիւնութեամբ շատ անվայել բաներ ըրաւ՝ երբ մայրը տունը չէր․ — իր եղբօր մազերուն մէկ մասը կտրեց, եւ հօրը գզրոցէն զմելին մը առնելով ինքզինքը վիրաւորեց․ հայրը գալով իմացաւ զայս, եւ այն գիշերը բնաւ չխօսեցաւ զաւակին հետ, ոչ ալ հետեւեալ առտուն։ Անառակորդին շատ տխուր էր, եւ ծնողքին այս ընթացքն ա՛յնպէս խորին ազդեցութիւն ըրաւ իր վրայ, որ քանի մը օր ետքն երբ տեսաւ թէ իր մայրը դուրս ելնելու վրայ է, աղաչեց որ չելնէ՝ ըսելով որ եթէ իր քովէն հեռանայ՝ գուցէ ուրիշ այլանդակ բաներ ալ պիտի ընէ։

Մենք ասոնք պատմեցինք՝ պատասխանելէ առաջ այն խնդիրին թէ «աւելի ծանր դէպք մը պատահելու ատենն ի՛նչ ընելու է», որպէս զի ցուցընենք նախ՝ թէ ծնողներու եւ տղիներու մէջ եղած յարաբերութիւններն ի՛նչ ըլլալու են, վասն զի այս յարաբերութիւններէն կախուած է աւելի ծանր յանցաւորութիւնները զսպելու յաջողութիւնը։ Հիմա կրնանք հաստատել նաեւ՝ թէ մեր առաջարկած դրութիւնն ընդունելով՝ այս յարաբերութիւններն սկիզբէն աւելի հիմնական խարիսխ մը ունեցած պիտի ըլլան։ Արդէն նշանակեցինք՝ որ պարզապէս մանուկին ցուցընելով իր գէշ գործերուն գէշ հետեւանքը՝ ծնողները զերծ պիտի մնան անոնց ատելի երեւելէն․ բայց պէտք է ցոյց տանք նաեւ՝ որ երբ սկիզբէն այս ընթացքն աղէկ բռնուի՝ համակրութեան ժիր ու աճեցուն զգացում մը կը ծնի։

Այսօր՝ շատ հայրեր ու մայրեր իբրեւ բարեկամ-թշնամիներ կը նկատուին իրենց զաւակներէն ։ Ծնողքին մանկավարժական ընթացքն է որ անվրէպ կերպով կորոշէ մանուկին ապառնութիւնները , եւ այս ընթացքն՝ յանկուցանելու եւ սպառնալու , գգուանքի ու կշտամբանքի , քաղցրութեան ու խստութեան խառնուրդ մը ըլլալուն համար՝ հարկաւորապէս իր միտքին մէջ ծնողական բնաւորութեան վրայ գաղափարներու կծիկ մը կը գոյանայ ։ Ընդհանրապէս մայր մը կը կարծէ՝ թէ բա՛ւ է իր զաւակին ըսել՝ որ ինք անոր ամէնէն աղէկ բարեկամն է . եւ համոզուած ըլլալով՝ որ տղան պէտք է հաւատայ իր ըսածին՝ կը հետեւցունէ թէ ստուգիւ կը հաւատայ այդ խօսքին ։ « Քու աղէկութեանդ համար է , կըսէ անոր . քեզի պէտք եղածը քենէ աղէկ գիտեմ ես . դեռ տղայ ես դուն , եւ չես կրնար հասկընալ զայն . բայց երբ մեծնաս՝ շընորհապարտ պիտի ըլլաս ինծի » ։ Այս եւ ասոր նման խօսքեր ամէն օր տեղի կունենան , եւ սակայն ամէն օր ալ մանուկն իրական պատիժներ կառնէ ։ Ամէն ժամ կարգիլին անոր իր ուզածն ընել . եթէ ծնողքին ըսածին նայի՝ իրեն աղէկութեանն համար է այս . բայց իրապէս տղան իր դժբաղդութիւնը կը տեսնէ հոն ։ Չկրնալով հասկընալ՝ թէ իր մօրն ըսած ապագան ի՛նչպէս բան է , եւ թէ իրեն տրուած պատիժն ի՛նչ կերպով ապագայ երջանկութեան պիտի տանի զինքն՝ եղածն իր առ ժամն զգացածին համեմատ կը դատէ , եւ զգացածն ալ ախորժելի բան մը չըլլալով՝ այս խոստումին վրայ միշտ տարակուսող կըլլայ ։ Եւ արդարեւ , պէտք չէ՞ տղան իրերն իրենց առաջիկայ արդիւնքին չափով դատէ , եւ այդ արդիւնքը՝ չե՞ն հաստատեր իր հանած հետեւութիւնը . մայրն ալ՝ եթէ անոր տեղն ըլլար՝ այդպէս պիտի մտածէր ։ Եթէ այդ կնոջ բարեկամներէն մին անդադար հակառակէր անոր փափաք-

ներսուն, եւ միշտ դառն կշտամբանք տեղար անոր վրայ, եւ երբեմն ալ ծեծէր՝ անշուշտ չպիտի մտածէր իսկ այդ դաժանութեանց հետ զրգռուած այն խօսքին վրայ՝ թէ անոնք իր աղէկութեանն համար են. ուրեմն ի՞նչպէս կը կարծէ որ իր զաւակին վրայ ուրիշ ազդեցութիւն պիտի ունենան անոնք:

Դիտեցէ՛ք արդ, որ եթէ մեր ըսած դրութիւնը շարունակ 'ի գործ դրուի, եւ մայրն ոչ միայն պատժողի մը դերը չկատարէ, այլ նաեւ իր զաւակին հետ իբրեւ բարեկամ՛ վարի՝ անոր իմացունելով բնութեան պատրաստած վտանգն՝ արդիւնքն ո՛րչափ տարբեր պիտի ըլլայ: Ասոր օրինակ մը տանենք. եւ որպէս զի այս օրինակը լաւ մը ցուցընէ այն եղանակն, որով այս դրութիւնը պէտք է տղայութեան ատենէն գործ դրուի, ամէնէն պարզ դէպքն օրինակ առնենք: Ենթադրենք՝ թէ փորձելու փափագով մը — որ մանուկներուն վրայ այնչափ բուռն է վասն զի անոնք իրենց գործերուն ընթացքը՝ զննելու վերլուծական մէթոտին կը համակերպին բնազդաբար — ենթադրենք թէ փորձելու այս փափագով տղան հաճոյք կիմանայ՝ երբ թուղթի կտորներ ճրագին բոցին բռնելով այրէ, եւ անոնց այրիլը դիտէ: Անխոհեմ մայր մը՝ իրեն պարտք պիտի սեպէ արգիլել զայդ՝ որ իրեն խելքովը «գէշ բան է» կամ հրամայել որ չընէ՝ վախնալով որ ինքզինքը կայրէ: Եթէ տղան մտիկ չընէ՝ թուղթը պիտի առնէ անոր ձեռքէն. բայց եթէ բարեբաղդաբար խելացի ըլլայ այդ մայրն, եւ գիտնայ թէ փրկարար հետաքրքրութենէ մը կուգայ մանուկին այն եռանդն, որով կը դիտէ նա թուղթին այրիլը, նա մանաւանդ իր միջամտութեան հետեւանքին վրայ մտածելու չափ խոհուն ըլլայ, ա՛յդ մայրը՝ կըսենք՝ սապէս պիտի մտածէ. «Եթէ մանուկն արգիլեմ՝ պատճառ պիտի ըլլամ որ օգտակար գիտելիքէ

մը պիտի գրկի նա. իրա՛ւ, անոր թող տուած չպիտի ըլլամ որ այրի, բայց աղէկ ի՞նչ օգուտ. օր մը չէ օր մը անոր մէկ տեղը պիտի այրի, եւ որպէս զի իր կեանքին մէջ տպաւորով ըլլայ՝ պէտք է իր փորձովը իմանայ բոցին յատկութիւնը։ Եթէ հիմա այդ վտանգէն ետ կեցունեմ զայն՝ օր մը չէ օր մը հո՞ն պիտի իյնայ՝ երբ մանաւանդ զինքն արգիլող մէկը չըլլայ քովը. մինչ երբ անձով այդ արկածին փորձն առնէ հիմա՝ ի՛մ մօտս եղած ատեն, գոնէ կըրնամ ազատել զինքը մեծ ձախողուածէ մը։ Ասկէ զատ՝ եթէ արգիլեմ զայն. հակառակած պիտի ըլլամ իր մէկ զբօսանքին, որ ինքնին անմեղ եւ կրթիչ իսկ է, եւ ինք ատոր վրայ քիչ շատ պիտի սրտնի ինձ դէմ։ Որովհետեւ դեռ անփորձ է արգիլեալ ցաւին, եւ այս արգելքը՝ զբօսանքէ մը զրկուելու տհաճութիւնը միայն պիտի տայ իրեն, զիս իրեն հակառակող մը միայն պիտի համարի։ Պահպանելու համար զինքը չարիքէ մը, որուն վրայ գաղափար մը անգամ չունի, եւ հետեւաբար չարիք անգամ չէ իրեն համար՝ զգալի կերպով վիշտ պատճառած պիտի ըլլամ իրեն, այնպէս որ չարիքն ես իսկ տուած պիտի ըլլամ՝ իր խելքովը։ Ուրեմն՝ աւելի աղէկ կըլլայ եթէ պարզապէս իրեն իմաց տամ վտանգն, եւ պատրաստ ըլլամ անոր ի՞նչ եւ իցէ ծանր հետեւանքին առաջքն առնելու»։ Ուստի՝ պէտք է մայրը միայն սապէս ըսէ զաւակին «Եթէ բոցին դպչիս՝ վախնամ ձեռքդ այրես» եւ եթէ մանուկն այս խրատը մտիկ չընելով՝ ինչպէս որ հաւանական ալ է՝ դարձեալ բոցին մօտեցունէ թուղթն՝ ու մատերն այրէ, տեսէ՛ք ինչ կըլլայ ելքը (1). — Նախ՝ փորձ մը

(1) Մանաւանդ թէ իրերու կարգէն է՝ որ մարդու մէկ կողմը մինչեւ որ չայրի՝ այնպիսին այրելու գաղափարը չկրնար ունենալ, գաղափար բառն հոս տրամաբանական լայն իմաստովն առնելով. չգիտեմ

*տուած կըլլայ, զոր պէտք էր առնել ուշ կամ կանուխ, եւ զոր առաջ չէր կրնար առնել՝ վասն զի շատ փոքր եւ քնքուշ էր, եւ ապա՝ կը տեսնէ որ իր մօրը անհաճութիւնն ու խրատն՝ յիրաւի իր աղէկութեանն համար են եղեր. անգամ մը եւս մայրենի արթուն բարութեան փորձն առած կըլլայ. անոր խօսքին անոր գորովին վստահ ըլլալու աւելի պատճառ մը ունեցած կըլլայ. աւելի պատճառ մըն ալ զայն սիրելու։*

*Անշուշտ, ծանրագոյն վտանգի առեն՝ պէտք է մինչեւ իսկ բռնութեամբ ետ կեցունել մանուկը. բայց այս պարագայէն զատ՝ ձեռք առնուելիք դրութիւնը պէտք է ըլլայ՝ չխուսափեցունել մանուկը սովորական դոյզն վտանգ-*

---

թէ իւրաքանչիւր իրի գաղափարն ունենալու համար՝ անպատճառ հարկ է փորձել իւրաքանչիւրն անխտիր. սակայն երկու մեծ ու փափուկ գործ կը տեսնենք աշխարհի վրայ, որ խղճմտանքով վարելու համար՝ հարկ է գէթ ընկերական արդի վիճակին մէջ՝ անպատճառ անցած ըլլալ փորձի խիստ բովէ մը. առնենք եւ՝ քահանայութիւն եւ բժշկութիւն, որ՝ մանաւանդ առաջինը՝ ցաւալի հակադրութեամբ մը շատ տեղ արհեստի կարգ անցած են. Ո՛վ որ անհունին մօտ գութի զգացումն եւ անոր հարկաւորութեան փորձառութիւնը չունի՝ չէ նա ճշմարտապէս քահանայ. ով ո՛ր գէթ կարգ մը հիւանդութեանց ենթական չէ եղած եւ ինքն չըներ յիշել իպոկրատի անեղ վճիռը թէ «Դժոխք երթայ այն բժիշկն՝ որ շահի ու փառքի գործիք մը կընէ իր մարդասիրական արուեստը» չէ նա ճշմարտապէս այդ հիւանդութեանց բժիշկը. Այս երկու մեծ պաշտօններն՝ որոնց առաջին ու վերջին նշանաբանն ըլլալու է՝ անձնանուէր գութ ու ամենանկատ փորձառութիւն՝ մարդկութեան աղէտները նուազեցունելու կոչմէն մեծ գործ պիտի կրնային կատարել, եթէ գիտակից ըլլային իրենց բուն դիտումին, եթէ իրենց համար գծուած շրջանակէն դուրս չելնէին, եւ ազատ ըլլային կողմնական նկատումներէ, որ իրենց պաշտօնին բնութեամբն իսկ դիւրին բան մըն է իրենց համար. Մահու եւ կեանքի խնդիրներու մէջ մտնելով՝ ուրիշ մտածումներով դանդաչելն՝ հանապազորդ հայհոյութիւն մը չէ ընդդէմ Անոր, որ տուողն ու սատանեցուցողն է հանուր խիղճի ու հանուր կեանքի. Թ.

ներքին, այլ միտքը բանալ եւ իմացունել . այս եղանակով անոր որդիական զգացումը կարթունանայ, աւելի զօրաւոր քան որչափ սովորաբար կայ արդէն ։ Եթէ այս պարագային մէջ՝ ինչպէս այլուր ալ՝ բնական խափանարարներու օրէնքը բանեցունենք, եթէ վտանգաւոր փորձութեանց եւ խաղերու մլած ատեն՝ վտանգին քիչ շատ մեծ ըլլալուն չափով՝ քիչ շատ սախալիչ եղանակով մը իրեն իմացունելէ ետեւ՝ ազատ թող տանք տղան, անպատճառ միշտ զօրաւոր եւ վստահեցուցիչ գաղափար մը կը գոյանայ անոր ըմբռնումին մէջ՝ իրեն ծնողներուն իմաստութեան վրայ ։ Ոչ միայն բարեհամբոյր զաւակ կըլլայ, այլ նաեւ այն օրական արկածները, որ սովորաբար անախորժ տեսարաններու պատճառ են, առիթ մը կըլլան փոխադարձ լաւ զգացումները հաստատելու . փոխանակ լսելով հասկընալու՝ թէ իր ծնողքն իրեն ամէնէն լաւ բարեկամներն են՝ մանուկը գործնականապէս կը հասկընայ անոր ճշմարտութիւնն, եւ այս ինքնափորձ խելամտութեամբ՝ այնպիսի՛ վստահութիւն մը այնպիսի՛ սէր մը կունենայ անոնց վրայ, զոր ուրիշ ոչ մէկ կերպով կարելի չէ ձեռք բերել ։

Անհաւասիկ ցուցինք այն համակրական յարաբերութիւնները, որ մեր մէթոտին հանապազորդ կիրառութենէն պիտի ծնին ։ Դառնանք արդ յաջորդ խնդիրին՝ թէ «այս մէթոտն ինչպէս կիրարկելու է աւելի ծանր դէպքերու ատեն» ։

Բայց առաջ պէտք է ըսենք՝ որ այս ծանր դէպքը մեր ցուցած մէթոտին մէջ նուազ ծանր եւ շատ քիչ անգամ կը պատահին քան սովորական կարգին մէջ . վասն զի մանուկներուն գէշ վարքն՝ յաճախ յոռի վարչութենէ մը պատճառած պարբերական զայրացկոտութեան պտուղն է ։ Կրինուած պատիժներու պատճառով յառաջ եկած

քաղաքական մենութիւնն ու դժխմութիւնն 'ի հարկէ սէրը կը պաղեցունեն, եւ 'ի հարկէ գութ կը բառնան այն անսաստութեանց, որոնց առաջքն համակրութիւնը կառնէ։

Այն յոռի գնացքն, զոր միեւնոյն ընտանիքի մանուկներն իրարու հետ կունենան՝ չափահասներուն անոնց հետ գնացքին պատկերն են մեծ մասամբ։ Անոնց մէկ մասը նմանութիւններ են. մէկ մասն ալ արգասիք այն գէշ բնաւորութեան ու միտումին, որով մարդիկ կուզեն ուրիշներուն հետ այնպէս վարիլ ինչպէս ուրիշներն իրենց հետ վարած են. իրենց առած հարուածներուն ու կշտամբանքին փոխարէնն են անոնք։ Տարակոյս չիկայ՝ որ համակրութեան այն գործունէութիւնն եւ զգացումներու այն անդորր վիճակն՝ որ անպատճառ յառաջ կուգան մանուկներուն վրայ մեր նշանակած մէթոտով՝ կը խափանէ անոնք՝ այնպէս յաճախ ու դիւրութեամբ ինքզինքնին վայրագ ու ցասմնական գործերու տալէն։ Նոյն պատճառներով կը նուազին աւելի ծանր յանցանք, այսինքն՝ ստախօսութիւն ու մանր գողութիւններ։ Մի եւ նոյն ընտանիքի անդամներուն սիրտի պաղութիւնն՝ այս կարգի անսաստութեանց արգասաւոր աղբիւր մըն է։ Ամէն դիտող աչք կրնայ տեսնել՝ թէ բնական օրէնք մըն է որ կեանքի մեծ հաճոյքէ անժառանգուած մարդիկ՝ կը ջանան անոր փոխարէն ստորին հաճոյք վայելել. անոնք որ ուրիշներուն քաղցր համակրութենէն զուրկ են՝ ինքնասիրական քաղցրութեանց ետեւէ կըլլան, եւ՝ հակառակ հետեւութեամբ մը՝ ծնողներու եւ մանուկներու քաղցր յարաբերութիւնները պատճառ եղած են նուազեցունելու այն սխալներն, որոնց աղբիւրն է ինքնասիրութիւն։

Երբ ատոր հակառակ՝ լաւագոյն մէթոտներով ալ այսպիսի սխալներ գործին, ինչպէս երբեմն կը գործին, յաջորդ անգամ կարելի է նորէն հետեւութեանց հրահան-

գլին դիմել․ եւ եթէ կայ վստահութեան ու համակրութեան այն կապն՝ որուն վրայ խօսեցանք՝ այս հրահանգն հզօրապէս պիտի ազդէ ։ Վասն զի, օրինակի համար, ի՞նչ են գողութեան մը հետեւանքը․ — երկու տեսակ են անոնք, ուղղակի եւ անուղղակի ։ Ուղղակի հետեւանքը՝ լոկ արդարութեան հայեցուածով՝ փոխարինութիւնն է ։ Արդար օրէնսդիր մը (եւ ամէն ծնող պէտք է ջանայ այնպիսի մէկն ըլլալ) հնար եղածին չափ պէտք է պահանջէ որ գէշ գործ մը լաւ գործով մը հատուցուի․ եւ գողութեան դէպքին մէջ՝ դարմանումը կենթադրէ գողցուած առարկային տէրը գտնելը, կամ, եթէ առարկան կորսուած է՝ անոր արժէքին փոխարէն հատուցում մը, զոր պէտք է կատարել՝ մանուկին գրպանի դրամէն վար դնելով ։ Անուղղակի եւ լուրջ հետեւանքը՝ ծնողքին խորին դժգոհութիւնն է ։ «Բայց՝ պիտի ըսեն՝ հայրական դժգոհութիւնը չխօսով կամ ծեծով կը յայտնի միշտ այսպիսի դէպքի ատեն․ ուստի ձեր մեթոտին մէջ նոր բան մը չկայ» ։ Շատ ճշմարիտ է այս․ եւ մենք արդէն ըսինք՝ որ շատ ծնողք ինչ ինչ եղանակներով մեր մեթոտը բնականաբար կը գործադրեն ։ Ցուցինք արդէն՝ որ կրթական ամէն դրութեանց մէջ՝ ճշմարիտ դրութեան վերելակելու միտում մը կայ ։ եւ հոս ալ՝ ինչպէս քիչ մը վերը՝ կըրնանք դիտել տալ՝ թէ իրերու գեղեցկադիր կարգին համեմատ այնպէս կը պատահի որ բնական խափանարարներուն ուժգնութիւնն՝ իրենց երեւոյթներէն դատելով՝ շրջավայրին պահանջումներուն համազօր կըլլան․ ուր որ մանուկն հօրը պէս խուժ է, հայրական դժգոհութիւնը վայրագ գործերով կարտայայտի. ուր որ մանուկներն աւելի ազնու բարք մը ունին՝ հոն այդ դժգոհութիւնը նուազ վայրագ կերպով կարտայայտի ։ Բայց հոս ամէնէն աւելի պէտք է դա՛յն դիտել՝ թէ հօրը սաստիկ տհաճութեան արտայայտութիւնն

մանուկին վրայ այնչափ լաւ ազդեցութիւն մը կրնայ ունենալ՝ որչափ իր եւ ծնողքին մէջ եղած սիրակցորդութիւնը ջերմ է ։ Բնական հետեւանքով հրահանգութեան ազդեցութիւնը ճի՛շդ համեմատութեամբն է ա՛յն խստութեան, որով ուրիշ պարագաներու մէջ ծնողք պինդ կը բռնեն այդ հրահանգութիւնը ։ Ամէն մարդ եթէ ուզէ՝ կրնայ առոր փորձն ընել ։

Որովհետեւ ամէն մարդ գիտէ որ՝ եթէ մէկուն թըշնամանք մը ընէ՝ անոր վրայ զգացած սիրոյ մորմոքն՝ թշնամանեալին սիրելութեան համեմատ աւելի կամ նուազ կծու կըլլայ (ի հարկէ մէկդի թողլով աշխարհաշահ նկատումներն, որ մեր խնդիրէն դուրս են)․ որովհետեւ՝ եթէ նախատեալն իրեն արդէն իսկ թշնամին է, իր ըրած նախատինքը սիրոյ ծածուկ գոհացումով մը քան մորմոքելով կը յիշէ միշտ․ դարձեալ՝ որովհետեւ եթէ իրեն բոլորովին անծանօթ մարդ մըն է թշնամանեալը՝ թշնամանքին ա՛յնչափ հոգը չընէր որչափ պիտի ընէր եթէ այդ անձն իր մտերիմն եղած ըլլար ։ Ասոր հակառակ, եթէ սիրելի ու փարելի անձ մըն է, զայն նախատած ըլլալուն յիշատակը՝ ծանր դժբաղդութեան երկար ու կծուակիծ մորմոքի աղբիւր մը կըլլայ իրեն համար ։ Ուստի՝ հայրական դժգոհութենէն առաջ եկած սրտնութիւնը՝ նախկին համակրութեան չափով կը զանազանի ։ Երբ որդին արդէն պաղած է իր հօր սէրէն՝ իր յանցաւորութեան առեն զգացած մորմոքն ուրիշ բան չըլլար՝ բայց եթէ մարմնական կամ զրկողական պատիժներէ երկիւղ մը միայն, որ զուտ ինքնասիրութիւն է․ եւ այս պատիժները կրելէն ետեւ՝ հակառակութիւնն ու ցասումն այս պաղութիւնը սաստկութեան կը փոխեն, Բայց եթէ ծնողքին սովորական անուշութեամբն՝ որդիական սէրն արդէն վառ եղած ըլլայ, հօրը դժգոհութեան վրայ որդիին իմացականութիւնն այն-

պիսի՛ կշիռ մը կառնէ՝ որ նա ա՛լ այսուհետեւ թէ՛ այնպիսի յանցանք մը ընելէ կըզգուշանայ թէ՛ իմացականութեան այդ վիճակին ալ ինքնին փրկարար բան մը կըլլայ անոր կրթութեան, Բաւական ատեն ամէնասիրելի բարեկամէ մը զրկուած մնալու բարոյական պատիժն՝ համազօր է մարմնական պատժի, եւ թերեւս աւելի՛ ազդու ։ Տղան՝ փոխանակ ըստ սովորականին երկիւղ ու ցասում խամնալու՝ հօրը տրտմակից կըլլայ, կը մոռմոքի անոր տրտմութեան պատճառն ինքն ըլլալուն վրայ, եւ կը ջանայ ուրիշ գործով մը հատուցումն ընել իր յանցանքին, եւ նորէն անոր աչքը մտնել ։ Փոխանակ գրգռելու անզգտակից մանուկին ինքնասիրական զգացումներն, որ եթէ նախ անգամ մը արմատ ձգեն՝ ոճրագործութեան աղբիւր մը կըլլան, կը գրգռեն անոր այլասիրական (1) (altruiste) զգացումներն, որ ոճրագործութեանց առաջքը կառնեն ։ Ուստի բնական հետեւանքի եղանակով հրահանգութիւնը՝ կարելի է բանեցունել առ հասարակ մեծ եւ փոքր յանցանքի ատեն, եւ անով ոչ միայն կրնանք այդ յանցանքը զսպել, այլ նաեւ անոնց առաջքն առնել ։

Երկու խօսքով ըսե՛նք ճշմարիտը. — վայրագութիւնը՝ վայրագութիւն եւ ազնուութիւնն՝ ազնուութիւն կը ծնանին ։ — Բարեսրտութեամբ չկրթուած մանուկները բարեսիրտ չեն ըլլար. եթէ անոնց հետ աղուաբար վարինք՝ անոնց սրտին մէջ աղու զգացումներու սերմը կը ձգենք ։ Թէ՛ ընտանեկան թէ՛ քաղաքական վարչութեանց մէջ՝ մեղմ կառավարութիւն մը՝ հետզհետէ ազ-

(1) Altruisme *այլասիրութիւն* բառն՝ իբրեւ դիմաբաժանեալ *ինքնասիրութեան* (égoïsme), Օկիւստ Քոնդ մտցուց փիլիսոփայական լեզուին մէջ՝ նշանակելու համար այն զգացումն, որ կը ձգէ մեզ համակրիլ մեր նմաններուն եւ մեզնէ աւելի՛ ուրիշներն սիրել ։

նուաստացունելով սովորական զգացումները՝ կախեներն ալ կը նուաստեցունէ։ Արդէն Ջոն Լոք (1) շատոնց ըսած է եւ ճշմարիտ է՝ թէ «դաստիարակութեան մէջ խիստ պատիժներէն շատը՝ նուազ լաւ արդիւնք ու շատ գէշ արգասիք յառաջ կը բերեն. եւ կարծեմ ամէնէն շատ պատիժ կրող մանուկները՝ լաւագոյն մարդիկ չեն ըլլար, իրենց առած դաստիարակութեան միւս մասերն ինչպէս որ ալ ըլլան»։ Ասոր վրայ կընանք ապացոյց մը նշանակել, Բէնդոնվիլլի բանտին խոստովանահայրը Պ. Ռոժէր հրատարակեց՝ թէ երիտասարդ ոճրագործ մը, որ առաջին անգամ արջառաջիլով պատժուած էր՝ նորէն բանտ դրուեցաւ նոյնպիսի յանցանքի համար։ Ասոր հակառակ՝ աւելի մեղմ պատիժի լաւ պտուղը կերեւի սա միւս իրողութեան մէջ, որ մեզի պատմած է Բարիզ բնակող Ֆրանսուհի մը։ Տիկինն ինք՝ իր տունին մէջ գտնուած մանուկի մը ըրած անառակութեանց համար մինէ նեղում կը խնդրէր՝ յայտնելով թէ այդ տղան թէ՛ տունի թէ՛ դպրոցի մէջ ա՛լ անտանելի եղած էր, եւ ասոր միակ դարմանն է, կըսէր, մեղմ կրթարան մը ղրկել զայն՝ ինչպէս անոր մեծ եղբայրը ղրկուելով շնորհքի եկած էր։ Այս վերջինին անուղղայ վարքը չէին կրցած կարգի բերել ոչ մէկ դըպ-

---

(1) Անգղիացի փիլիսոփան Լոք (1632-1704) որ իրեն առաջնորդ բռնելով Պաքոնն ու մանաւանդ Գասենտոսը՝ բնական իմաստասիրութեան մէջ մեծ գործ տեսաւ՝ մաքրելով զայն դեռ եւս մնացած հին դիրտերէն, եւ՝ ինչպէս կըսուի՝ վերլուծական զգոյշ ու անաչառ քննութիւններով՝ մարդկային միտքին բուն եւ ճշմարիտ պատմութիւնը շինեց, որչափ կարելի էր իր ժամանակին։ Իր գլխաւոր գործերն են՝ 1. *Քննութիւն մարդկային միտքին վրայ* 2. *Միտքի առաջնորդ ճշմարտութիւնը քննելու համար* եւ *Մանուկներու դաստիարակութիւն* անունով նշանաւոր *խորհրդածութիւններ*, որ շատ անգամ Ֆրանսերէնի թարգմանուած են։

Թ.

քոցի մէջ, ու ճարերնին հասնելով աւելի մեղմ դպրոց մը գրկած էին. քանի մը տարիէն երբ դպրոցէն դարձաւ՝ գիտեցին որ առաջ որչափ չար էր՝ այնչափ բարի եղած էր այժմ. եւ մայրը կըսէր՝ թէ բարքի այս մեծ փոփոխութեան բովանդակ պատճառն եղած էր դպրոցին համեմատական մեղմութիւնը։

Վերոյիշեալ սկզբունքն այսպէս ցուցադրելէ ետեւ՝ անոնց հետեւորդ մէկ քանի կանոնները ալ խրատի ձեւով տալով, վերջացունենք այս գլուխը։

Մանուկներէն մի՛ պահանջէք բարոյական ազնուութեան բարձր վիճակ մը. պէտք է գիտնալ՝ որ ամէն մարդ մանկութեան առաջին տարիները ատեն կանցնի բնաւորութեան այն երեւոյթներէն, որմէ անցած է իր ամէնահին խուժիկ ցեղը։ Ինչպէս որ մանուկին փափուկ քիթը, վերահայեաց ռունգերը, թանձր շուրթերը, խոտոր աչքն ու անզար ճակատը՝ մինչեւ որոշեալ ատեն մը այնպէս կը մնան վայրենիներուն նման, նոյնպէս իր բնազդներն ալ վայրենի բնազդներ են։ Այս է պատճառն՝ որ մանուկներն առ հասարակ հակամէտ կըլլան անգթութեան, գողութեան, ստութեան, եւ այս միտումն՝ եթէ կրթութիւնը նպաստելու չըլլայ իսկ՝ հետզհետէ կը մեղմանայ գիտական բռնութեանց հետ։ Հասարակութեան այն կարծիքը՝ թէ մանուկներն անմեղ կըլլան՝ բոլորովին սխալ է անոր չար բնումներուն նկատումով. միայն չարի ճանաչումի մասին ճիշդ է։ Ով որ մանկարան մը մտնելով՝ կէս ժամի չափ ուշադրութեամբ դիտէ անոնց վարքը՝ կատարելապէս պիտի համոզուի ասոր։ Դպրոցներու մէջ արձակ թողուած փոքր մանուկներն՝ իրարու հետ մարդոցմէ աւելի կոշտութեամբ կը վարին, եւ եթէ աւելի փոքր հասակի ատեն անոնք ինքզինքնուն թողունք ա-

զատ համարձակ՝ իրենց այս կոշտութիւնն աւելի աչքի կը զարնէ։

Ինչպէս բարոյականի մասին մանուկներէն շատ բան պահանջել պէտք չէ, ուրիշ բաներու մէջ ալ անոնցմէ բազմապահանջ ըլլալն անխելքութիւն է։ Հաստատ ենք առենի մը՝ որ ամէն մարդ հասկըցած է՝ թէ կանխահաս իմացականութեան մը արգասիքն յոռի կըլլան. բայց դեռ չենք հասկըցած թէ կանխահաս բարոյականն ալ վնասակար հետեւանք կունենայ։ Մեր բարոյական ու իմացական բարձր կարողութիւններն համեմատաբար բազմադէմ են, եւ ատոր համար երկուքն ալ յամր կը յառաջանեն. երկուքն ալ եթէ արագ զարգանան՝ ապագայ զարգացումը կը տուժէ։ Ասկէ յառաջ կուգայ այն անկանոնութիւնն, որ գրեթէ ընդհանուր է։ Այն մանուկներն՝ որ սկզբնական տղայութեան ատեն իրենց վարքովը օրինակ եղած են իրենց նմաններուն, քանի՛ տարիք առնեն՝ կը վատթարին, ըստ երեւոյթին անբացատրելի շրջումով մը, եւ վերջապէս իմացական ու բարոյական միջին աստիճանէն վար կը գլորին. մինչդեռ անոնք, որ մանկութեան ատեն իրենց վրայ աչքի զարնելիք յառաջդիմութիւն մը չեն ցուցած, հետզհետէ յուշիկ կազմուելով՝ համեմատաբար բարձր բարոյականի տէր կըլլան։

Ուրեմն, ծնո՛ղք ու կրթի՛չք, չափաւոր հրահանգներ գործ դրէք, եւ գոհ եղէք՝ երբ չափաւոր արդիւնք պտղեն ձեր ջանքը։ Երբ քաջ ըմբռնէք՝ որ բարձրագոյն բարոյական մը եւ բարձրագոյն իմացականութիւն մը՝ ծանր ու երկար կրթութեամբ միայն կըստացուին, պիտի համբերէք ձեր մանուկներուն ամէն վայրկեան ցուցած անկատարութեանց։ Այսպէս՝ անոնց դէմ շատ չպիտի սրդողիք, չպիտի սպառնաք անոնց, եւ չպիտի դրկահարէք անոնք. եւ եթէ ընդհակառակը մանուկներն աղէկ կրթելու խօլ

յուսով մը այսպէս ընէք՝ պատճառ պիտի ըլլաք որ անոնք ընտանեկան սրտնութեան պարբերական հիւանդութեամբ մը վարակին ։

Մանուկին վարքն իր ամէն մանրամասներուն մէջ առանց բացառութեան կանոնաւորելու հայրական կառավարութեան այս ազատ ձեւն՝ հարկաւոր հետեւանքն է այն դրութեան, որուն ջատագովն եղանք ։ Հերիք է ձեզի հսկել՝ որ ձեր մանուկը իր գործերուն բնական հետեւանքը կրէ միշտ, եւ այն ատեն չպիտի կըրնաք զեղծանիլ իշխելու այն ունակութեամբ, որով շատ ծնողք կը զեղծանին ։ Ամէն ատեն թողէք՝ որ տղան իր իսկ փորձառութեամբն հրահանգի, որպէս զի չըլլայ որ կաղապարի ա՛յն հրատոչոր առաքինութեամբ, որ կը ծնի ՚ի բնէ հլու մանուկներուն վրայ՝ վարժապետներու խստութեամբն ։

Երբ այսպէս ամէն պարագայի մէջ՝ ձեր մանուկին գործերուն դէմ բնական խափանարարներու ընթացքն ազատ թողուք, ձեր բնաւորութիւնն ալ չափաւորած պիտի ըլլաք յաջող կերպով մը. շատ մը ծնողք՝ կը կարծեն թէ բարոյապէս կը կրթեն իրենց զաւակը՝ թող տալով որ իրենց բարկութիւնը դուրս պոռթկայ իր նախկին թափովն ու բերումով ։ Մայրեր կը պատժեն իրենց զաւակներուն թեթեւ յանցանքն (որոնց շատն իրապէս յանցանք իսկ չեն) զարնելով, ըսկելով, դառն խօսքով, եւ ասոնք՝ միայն իրենց անուղղայ զգացումներուն արտայայտութիւնն են, որ աւելի իրենց իսկ բերումներէն քան մանուկներուն օգտակար դասեր տալու իղձէն յառաջ կուգան ։ Բայց երբ անոնց ամէն յանցանք գործելու ատեն՝ ուշ դրուի թէ բարոյական հետեւանքն ի՛նչ պիտի ըլլայ, եւ այդ հետեւանքն ինչ եղանակով կարելի է յանցաւորին աւելի զգալի ընել. անշուշտ այդ դոյզն միջոցին՝ եթէ ծնողք ինքզինքնին զսպեն՝ աւելի իմաստու-

թեամբ վարիլ կը սորվին . իրենց կոյր բարկութեան սաս-
ջին շարժումը կը փոխուի նուազ բուռն զգացումի մը ,
որ թող չիտար կարգէ դուրս բան մը ընել ։

Սակայն պէտք չէ նաեւ՝ որ ծնողք անկարեկիր գոր-
ծիք մը դառնան այս բնական հրահանգութեան ասեն .
պէտք է միտք բերել՝ որ մանուկներուն այս բնական խա-
փանարարներէն զատ , զոր իրենց ընթացքը պիտի իմա-
ցունեն անոր , ծնողքին հաւանութիւնը կամ չհաւանու-
թիւնն ալ տեսակ մը բնական խափանարար է , եւ
քարեկչիռ միջոց մը՝ անոր ուղիղ ընթանալուն ։ Մենք
դէմ կը խօսինք այն դէ՛չ ուսնակութեան , որով ծնողք
իրենց բնական կարգին մէջ եղած պատիժներուն տեղ
արուեստական պատիժներ կուտան . այո՛ , պէտք չէ ,
կըսենք , բնական պատիժներուն տեղ այսպիսի արուես-
տականներ անցունել . բայց եւ այնպէս պէտք չէ բոլորո-
վին զանց ընել արուեստական պատիժներն ալ , այլ անոնք
ալ բնականներուն համընթաց բանեցունել ։ Թէպէտեւ
ծնողքին դրած երկրորդական պատիժը պէտք չէ որ
բնական գլխաւոր պատիժին տեղ անցնի , բայց կրնայ
չափաւոր եղանակով սպառնալ անոր՝ իբրեւ յաւելուած ։
Ծնողքին զգացած տրտմութիւնը կամ ցասումը պէտք է
խօսքով կամ գործով արտայայտի՝ այն խիստ պայմանով
սակայն որ նախ քիչ մը խորհրդածութեան կշիռով չափի ։
Ի հարկէ ծնողքին բնաւորութեանն համեմատ կըլլայ այդ
զգացումներուն բնութիւնն ու թափն , ուստի անտեղի
է պատուիրել որ անոնք այս կամ այն կերպ զգալ պար-
տին . բայց եւ այնպէս պէտք է ջանք մը ըլլայ այդ
զգացումներն այնպէս մը չափաւորելու՝ որ կարելի եղածին
չափ ծնողքին քիչ մը խորհրդածելով ինքնին պատշաճ
դառնան ձուլուածն ասնէ ։ Պէտք է զգոյշ ըլլալ սակայն
երկու ծայրայեղութիւններէն՝ ոչ միայն ոժգնելու ուժգ-

նութեան, այլ նաեւ այդ զժգոհութեան տեւողութեան մասին։ Պէտք է մէկ կողմէն՝ խորշիլ մայրերու սովորական եղած այն թուլութենէն, որով գրեթէ միեւնոյն վայրկեանին թէ՛ կը չեխեն թէ՛ կը չոյեն, ու միւս կողմէն՝ առանց հարկի երկար ատեն պաղութիւն ցուցնելէն, որպէս զի մանուկը ծնողքին համակրութենէն բոլորովին պաղած մնալու չսովորի, եւ անոնց ազդեցութիւնը չկորսուի։ Մանուկներուն գործունէութեանց ծընողքին վրայ յառաջ բերած բարոյական հակազդեցութիւններն՝ հնար եղածին չափ պէտք է նմանին ըլլան այն հակազդեցութեանց, որոնք կատարեալ բնաւորութեան տէր հայր մը կըզգայ։

Պէտք չէ նաեւ իրարու ետեւէ հրամաններ տալ մանուկներուն. այն ատեն միայն պէտք է հրաման տալ՝ երբ միւս միջոցները չեն զօրեր կամ անարդիւն եղած են։ Ժան Բոլ կըսէ՝ թէ «հրամաններու չատութիւնն՝ աւելի ծնողներուն քան մանուկներուն նպաստաւոր է»։ Շատ տուներու մէջ յանցաւորին տրուած պատիժն՝ ոչ թէ յանցանքին բնակից դատապարտութեան այլ անհնազանդութեան աղդած բարկութեան համեմատ կորոշի։ Տե՛ս ինչպէս կըպատժեն ծնողք ու վարժապետներն — «ի՞նչ համարձակութեամբ խօսքս մտիկ չես ըներ» — «բայց ես անպատճառ մտիկ ընել պիտի տամ քեզի» — «պիտի հասկըցունեմ քեզի՝ թէ վարժապետ ի՞նչ ըսել է» — Դիտեցէ՛ք այդ խօսուածքն ու անոր ձեւն, որ աւելի տիրելու կամք քան թէ մանուկին լաւութեան փափաք մը կը ցուցընեն։ Խոհեմ հայր մը, երբ բռնաւորութիւն չբանեցունելէ զատ՝ բռնադատութեան անպիտան բան մը ըլլալը նշմարէ՝ ինքզինքը բարեբաղդ պիտի զգայ. հրամայական օրէնքը մէկ կողմ պիտի թողու՝ երբ յաջողեցուցիչ միջոցներով իր զաւակին ուղեցոյց ըլլալ, եւ եթէ

հարկ ըլլայ իրեն վերջնապէս անտեսօրինելի հրաման մը տալ՝ դժկամակութեամբ պիտի յօժարի անոր։ Այս կանոնին համաձայն՝ պարտաճանաչ հայր մը եւ պիտի կենայ իր զաւակին վրայ բանի տիրելու բերումէն, եւ ինքզինքը պիտի վարժեցունէ թոյլ տալու որ իր մանուկները կարենան եղածին չափ ինքզինքնին իրենք կառավարեն, եւ միայն անհրաժեշտ հարկ եղած ատեն պիտի ըսէ անոնց բացարձակապէս՝ թէ անպատճառ իմ խօսքս պիտի ըլլայ։

Բայց ամէն անգամ որ ծնողք կըզգան թէ ա՛լ հարկ է անպատճառ հրաման տալ, պէտք է վճռաբար ու անողոքաբար տան այդ հրամանը՝ մինչեւ որ կատարի։ Եթէ անհրաժեշտ հարկ ըլլայ ծնողքին իր իշխանութիւնը բանեցունել, պէտք է որ արտասանեն իրենց վճիռն, եւ ա՛լ ետ չառնեն զայն։ Պէտք է աղէկ խորհիլ ընելիքին վրայ, պէտք է անոր ամէն հետեւանքը լաւ կշռել. պէտք է քննել ինքզինքը թէ արդեօ՛ք մինչեւ ծայրն երթալու բաւական հաստատամտութիւնը կա՞յ ներսը, եւ երբ անգամ մը հրամանը տան՝ անպատճառ անոր հնազանդեցունելու է մանուկը։ Տրուած պատժական վճիռն՝ անանձն բնութեան սահմանադրածին նման ըլլալու է, այսինքն՝ անընկրկելի։ Երբ մանուկն՝ առաջին անգամ ըլլալով հրատին դպչի՝ անմիջապէս ձեռքը կայրի. երբ նորէն դպչի՝ նորէն կայրի. երրորդ եւ ամէն անգամին՝ միշտ կայրի, եւ ինք կը սորվի ա՛լ չդպչիլ անոր։ Եթէ ծնողք ալ նոյն անողոքութեամբ վարին, եւ իրենց ամէն ազդեցութիւնները նոյն միակերպութեամբ բանեցունեն մանուկին վրայ, նա խելօ՛ք պիտի յարգէ անոնց հրամանները՝ բնութեան օրէնքն յարգելուն ճիշդ նման։ Եւ երբ անգամ մը այս յարգանքն ամրապնդի՝ առանին անհամար չարիքի առաջքը պիտի առնէ։ Դաստիարակութեան մէջ գործուած սխալներուն ամէնէն գէշը՝ ըրածին հետեւանքը չմտածելն

է. այն ընտանիքին մէջ՝ ուր պատիժի գործադրութիւնն առկախ ու անկանոն եղանակով կըլլայ՝ մանուկներն անհամար յանցանք կը գործեն։ Այն թոյլ մայրն, որ անդադար կըսպառնայ բայց իր սպառնալիքին հազիւ փոքր մասը կը գործադրէ, որ յախուռնաբար հրամաններ կարձակէ՝ բայց ետքը շուտ մը զղջալով ետ կառնէ անոնք, որ միեւնոյն յանցանքին դէմ մերթ անուշութեամբ ու մերթ խստութեամբ կը վարի իր վաղանցիկ բնաւորութեան համեմատ՝ այնպիսին իրեն եւ զաւակներուն համար հազարումէկ նեղութեանց պատճառ կըլլայ։ Անոնց աչքին դէշ կերեւի, եւ աններդաշնակ զգացումներու օրինակ մը կըլլայ անոնց։ Համարձակութիւն կուտայ անոնց իր հրամանները չկատարելու, վասն զի անոնք պատիժէն ազատելու ընտել յոյսը կունենան միշտ. հազարումէկ շփոթներ կը ծնանի, որ թէ՛ իրեն թէ՛ զաւակներուն բնաւորութիւնը կը խաթարեն, եւ մանաւանդ բարոյականի խառնակ անդունդ մը կընեն անոնց միտքն, որ երկար տարիներու դառնագոյն փորձառութեամբ միայն թերեւս պարզուելով կարգի գայ։ Աւելի լա՛ւ է ընտանեկան կառավարութեան այն ձեւն, որ թէպէտ խիստ է՝ այլ աննահանջ կը գործադրի, քան թէ ամոքագոյն եղանակ մը՝ որ տարտամութեամբ ու հարեւանցի կը կատարի։ Կը կրկնենք դարձեալ, առանց անհրաժեշտ հարկի՝ պէտք չէ բռնադատիչ միջոցներ բանեցունել մանուկներուն վրայ. բայց երբ խորհելով ու փորձելով ա՛լ հաստատ համոզում մը գոյանայ՝ թէ հարկ է բռնանալ, այն ատեն պէտք է բռնանալ՝ բայց աղէ՛կ բռնանալ։

Պէտք է միտքէ չհանել՝ թէ բարոյական դաստիարակութեան նպատակն է մանուկը ինքզինքը զսպելու կարող՝ եւ ոչ թէ ուրիշներէն զսպուելու կարօտ մէկն ընել։ Որովհետեւ կրթելի մանուկները ինքզինքնին

կառավարելու մարդիկ պիտի ըլլան, եւ իրենց հանապա-զօրդ կենցաղին մէջ առաջնորդելու համար մէկը չպիտի ունենան իրենց քով՝ մինչդեռ իրենց ծնողքին խնամքին ներքեւ են՝ ինքզինքնին կառավարելու կրթելէն լաւագոյն եղանակ մը չիկայ։ Ամէնախոր մանկութեան ատենէ՛ հա՛րկ է մեծկակ տիրապետութիւն մը բանեցունել։ Երբ երեք տարեկան տղայ մը չգոցուած ածելիի մը հետ կը խաղայ՝ պէտք չէ անոր հետ վարիլ իրերու հետեւանքով հրահանգելու դրութեամբ, վասն զի այս պարագային՝ եթէ չարգիլենք՝ արդիւնքը շատ մեծ աղէտ մը կըլլայ։ Բայց իմացականութիւնը քանի՛ զարգանայ՝ հնար ու հարկ է նուազեցունել խափանարար միջամտութիւնները, այնպէս որ այդ միջամտութիւնները քիչ քիչ տեղի տալով ա՛լ դադրին ճիշդ այն ատեն երբ մանուկն արբունքի հասած է։ Ամէն անցում վտանգաւոր է, եւ անցումներուն ամէնէն վտանգաւորն է հայրենի արգելարանէն դէպի աշխարհ արագ եւ ընդոստ անցումը։ Ասոր համար շատ կարեւոր է գործադրել մեր ջատագոված դրութիւնն, որ ինքզինքը նուաճելու վարժեցունելով երիտասարդն, որ աստիճանաբար աճեցունելով այս նուաճումը կիրարկելու պատեհները, եւ վերջապէս առանց մէկու մը օգնութեան՝ զայն հետզհետէ կիրարկելու առաջնորդելով անոր՝ գրեթէ անզգալի կերպով առաջքը կառնէ պատանեկութենէ դէպի արբունքը սովորաբար ընդոստ ու վտանգաւոր անցումին (ընդոստ ու վտանգաւոր կըսենք՝ նայելով այն դիրքի ներհակութեան՝ որ կայ պատանեկութեան ու արբունքի մէջ)։

Վերջապէս, պէտք է միշտ միտք պահել՝ որ մանուկ մը աղէկ կրթելը դիւրին ու պարզ գործ մը չէ, այլ ընդհակառակը դժուար ու բազմադէմ գործ մը. չափահաս անձերու ամէնէ՛ն դժուար գործն է այն։ Ամէն մարդ

գիտէ՝ որ ընտանեկան կառավարութիւնն՝ իր անհարթ ու խիստ ձեւին մէջ՝ միջին խալքի տէր մէկն ալ կրնայ կատարել. վայրենի մարդիկ՝ ծեծով ու յիշոցներով կը կրթեն իրենց մանուկները. նոյն իսկ անասուններն ալ՝ այս դրութեամբ կը վարին իրենց ձագերուն հետ, ինչպէս են չորքոտանիները, որ խանչումներով ու խածնելով կը զսպեն իրենց ծակաչք լակոտները։ Բայց եթէ կուզէք աջողապէս բանաւոր ու քաղաքակրթական դրութիւն մը կիրարկել, պէտք է մտային մեծ վարժութիւն մը ձեռք բերէք. պարապով ուսումնասիրէք. խելացի համբերող եւ ձեր անձնական բերումներուն զսպող ըլլաք. պէտք է միշտ հարցունէք ինքզինքնուդ՝ թէ ձեր երիտասարդ հասակին մէջ ի՛նչ հետեւանք տեսած էք ձեր կարգ մը գործերէն, եւ խորհիք ձեր մանուկին գործերուն ալ նման հետեւանք յառաջ բերելու միջոցներուն վրայ. պէտք է ամէն օր մանուկին վարքին շարժառիթները գտնէք վերլուծութեամբ. աղէկ զանազանէք ճշմարտապէս լաւ գործերն՝ ըստ երեւոյթին միայն լաւ գործերէն, որ սարրին զգացումներէ կը բղխին, եւ անքուն հսկողութեամբ պէտք է զգուշանաք մանուկներն յաճախ անգըթութեամբ արհամարհելէն՝ անոնց անվնաս գործերը վնասակար գործերու տեղ դնելով, եւ իրենց զգացումներէն աւելի գէշ զգացումներ վերագրելով անոնց։ Պէտք է քիչ չափ բարւոքէք ձեր դրութիւնն այնպէս՝ որ անոնք իւրաքանչիւր մանուկի մասնաւոր տրամադրութեանց ճիշդ ձգուցուին, եւ տակաւ ազնուացունէք անոնք՝ նոյն տրամադրութեանց հետզհետէ նորանոր երեւոյթներ առնելուն համեմատութեամբ։ Եւ հարկ է անխախտ համոզում մը ունենաք յարատեւելու համար ձեր այդ շաւիղին մէջ, որ առջի բերան բնաւ արդիւնք մը չբերել պիտի թուի կամ շատ քիչ արդիւնք պիտի բերէ։ Մանաւանդ՝ երբ

ձեր խնամքին յանձնուած ըլլան այնպիսի մանուկներ, որ առաջ յոռի եղանակով կրթուած ըլլան. լաւագոյն մէ-թոտ մը լաւագոյն արդիւնք ձեռք բերելու համար՝ պէտք է ունենաք երկար համբերութիւն. վասն զի բնական է որ աղայութենէ օրինաւոր զգացումով կրթուած մարդու մը համար ինքնին դժուարին եղած բան մը՝ կըրկ-նակի դժուարին կըլլայ, երբ մանուկն արդէն սովորած ըլլայ սխալ զգալու։ Պէտք է արիութեամբ վերլուծէք ոչ միայն ձեր զաւակին գործունէութեանց շարժառիթներն, այլ ձե՛ր իսկ գործերուն շարժառիթներն ալ. պէտք է ձեր անձին քննիչ աչքով մը որոշէք հայրական անկեղծ խնամասիրութենէ յառաջ եկած բերումները՝ ձեր լոկ անձնասիրութենէն ու հանգստասիրութենէն ծագած բե-րումներէն. եւ յետոյ՝ ընելիք դժուարին բան մըն ալ կայ, այսինքն՝ երբ ձեր բերումներուն ճշմարիտ բնութիւնը գտնէք ու հասկընաք որ գէշ են՝ պէտք է նուաճէք զա-նոնք։ Կարճ ըսենք, պէտք է դուք ձեզ նորէն կրթէք՝ նոյն իսկ ձեր զաւակը կրթելու ատեն։ Լաւ արդիւնք մը ձեռք բերելու համար՝ իմացական տեսութեամբ պէտք է ուսումնասիրէք մարդկային բնութիւնն ու իր օրէնքը՝ ձեր զաւակին ձեր եւ ամէն արարածներու վրայ երեւցած կերպարանքովը, եւ այս ուսումնասիրութիւնն ամէնէն բազմադէմն է. բարոյական տեսութեամբ՝ պէտք է հզօր կոչում մը ընէք ձեր ամէնէն ազնուական զգացումնե-րուն, ու սանձահարէք ձեր ստորին զգացումները։ Դեռ աղէկ հասկըցուած չէ սա ճշմարտութիւնը՝ թէ առանց պատշաճապէս կատարելու ծնողական պարտքն՝ անհնա՛ր է ձեռք բերել կնոջ ու այր մարդու համար մտային զար-գացումի բարձրագոյն վիճակ մը։ Երբ անգամ մը ըմբռնէք այս ճշմարտութիւնը՝ պիտի հասկընաք թէ որչա՛փ սքան-չելի է իրերու այն կարգադրութիւնն, որուն համեմատ

մարդիկ իրենց ամէնէն բուռն զգացումներուն միջոցով ցնցելին կը միտին հնազանդելու այն հրահանգին, զոր առանց այդ պայմանին կատարելն անհնար է։ Գիտենք՝ որ մեր ընթերցողներէն շատերը դաստիարակութեան այս մատուցածինը երկբայելով ու վհատելով մը պիտի ընդունին. բայց ուրիշներն ալ անշուշտ պիտի նկատեն մեր այս դաղափարականին նոյն իսկ բարձրութեանը մէջ՝ անոր ճշմարտութեան յայտնի նշանը։ Երբ դիտեն՝ որ այսպիսի կրթութիւն մը անհնար է գործադրել իրենց քմայքին ստրկացած անհամակիր ու մռայլ խելքի տէր անձերէ, երբ դիտեն՝ որ այդ կրթութիւնը գործադրելու համար՝ հարկ է մարդկային բնաւորութեան ամէնէն բարձր կարողութիւնները կիրարկել, պիտի համոզին որ այդ կըրթութիւնն արդարեւ մարդկային զարգացումին ամէնէն յառաջացեալ վիճակին ամէնէն յարմարն է։ Այդ կրթութիւնը գործադրելու համար՝ իրա՛ւ է որ շատ ջանք ու շատ անձնանուիրութիւն պէտք է. բայց պէտք է նաեւ գիտնալ՝ թէ երջանկութեան առատ հունձք մը կը խոստանայ այն։ Պէտք է գիտնալ՝ որ կրթական յոռի դրութիւն մը թէ՛ զաւակին եւ թէ՛ ծնողքին համար կրկնապէս աղիտաբեր է, եւ լաւ դրութիւն մը՝ կրկնապէս աննման բարիք մըն է թէ՛ կրթողին թէ՛ կրթեալին համար։



# ԳԼՈՒԽ Դ.

---

## ՄԱՐՄՆԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹԻՒՆ

ՏՕՆԱՎԱՃԱՌԻ օրերը պանդոկին մէջ, կիրակի օրերը գիւղերուն կապսլաններուն մէջ կամ լեռնաբնակ ասպետներուն սեղանին վրայ, ուր կին չիկայ, ամէն տեղ՝ օրուան քաղաքական խնդիրէն ետքն՝ անասնաբուծութիւնն ամէնէն աւելի շահագրգիռ խնդիրն է։

Ազնուական պարոններն՝ որսագնացութենէ մը ձիով տուն դառնալու ատեն՝ սովորաբար իրենց խօսակցութեան նիւթ կընեն թէ ի՛նչ ընելու է որ ձիերուն սեռն ազնուանայ, ի՛նչպէս զուգաւորելու է անոնք այլասեռ կենդանիներու հետ, եւ ձիարշաւի վերաբերեալ ուրիշ «խել մը բաներ». եղտիւրներու մէջ հրաշէն որսորդութեանց ատեն ալ՝ որսական բարակներ հասցունելու վրայ խօսք կըլլայ անպատճառ։ Երկու ագարակապան՝ կիրակնօրեայ եկեղեցական պաշտամունքէն ետ դառնալու ատեն՝ իրենց լսած քարոզին վրայ դիտողութիւններ ընելէ ետեւ՝ ինքնաբերաբար կանցնին եղանակին հունձքին եւ

արջառներուն վրայ խօսակցելու․ յետոյ խոտի զանազան տեսակներուն եւ անոնց սնուցիչ յատկութեանց վրայ կը բանակցին։ Անհատուհի Ղուկասն ու Աթանաս, որ գինետունին մէջ նստած՝ իրենց խօզանոցին վրայ դիտողութիւններ կընեն, եւ ասով կը ցուցընեն թէ իրենց տանուտէրին խօզերն ու ոչխարներն աղէկ կը տածեն․ այս կամ այն եղանակով անոնք պարարտացունելն աղէկ գիտեն։ Որսական շուներու, սապատաններու, ախոռներու, գոմերու կարգադրութիւններն՝ ոչ միայն գիւղաբնակներուն խօսակցութեան չահեկան նիւթեր կըլլան, այլ նաեւ քաղաքներուն մէջ՝ շուն պահող շատ մը արհեստաւորներ, հարուստկէկ երիտասարդներ, որ կրնան որսորդութեան ելնել, եւ անոնց գործէ քաշուած հայրերն, որ երկրագործական յառաջդիմութեանց վրայ կը խօսակցին, ու մասնագէտներուն գիրքերուն եւ լրագիրներու մէջ եռանդով կը կարդան վիճակագրական գրուածներն՝ եթէ ամէնն հաշիւի առնենք՝ ասոնք մեծկակ թիւ մը կը կազմեն։ Երբ շատ երկիրներու արու ժողովուրդը նկատէք՝ պիտի տեսնէք որ անոնց մեծ մասը կարեւորութիւն կուտայ անասուններու զուգաւորութեան դիեցումին եւ անոնք այս կամ այն եղանակով մարզելու խնդիրներուն։

Բայց յետ-ճաշի խօսակցութեանց կամ ուրիշ զրուցատրութեանց մէջ՝ ո՛վ լսած է արդեօք մանուկներու դիեցումին վրայ բառ մը։ Գիւղաբնակ ազնուականին՝ իր ախոռներուն համապազորդ այցը տալէն, իր ձիերուն վիճակն ու անոնց տածումին եղանակը զննելէն, իր արջառներն աչքէ անցունելէն, եւ անոնց համար պէտք եղած հրամանները տալէն ետեւ՝ արդե՛օք անգամ մը իր զաւակներուն սենեակն ալ կայցէ՞ տեսնելու համար՝ թէ անոնց ի՛նչ սնունդ կուտան, ե՛րբ կը կերակրեն եւ մանկարանին

օգտութիւնը բաւական է անոնց համար։ Անոր մատենադարանին մէջ կը գտնուին անշուշտ անտառաբանական ագարակաբանական եւ որսաբանական մատեաններ, որոնք թերեւս ծայրէ ծայր կարդացած է. բայց արդեօ՞ք գիրք մը կարդացա՞ծ է անգլիացի մանկիկներին ու միւս մանուկները դիտելու վրայ։ Ամէն կալուածատէր, ամէն ագարակատէր, ամէն գիւղացի՝ քիչ շատ գիտէ թէ արջառներու պարարտութեան համար վայրի շողգամի հացն ու կանճրակը (colza) ի՛նչ յատկութիւններ ունին, վարսակն ու ծեծուած յարդն ո՛րչափ սննդարար են, եւ ո՛րչափ վտանգաւոր է անասուններուն չափէն աւելի առուոյտ տալը. բայց այդ անձերէն ո՞րն արդեօք հարցուցած է ինքնիրեն՝ թէ իր զաւակներուն տուած սնունդն անոնց մարմնական կազմուածքին յարմա՛ր բան մըն է։ Կարելի է այդ մարդիկ իրենց այս անբնական անհոգութեան համար առարկեն՝ թէ իրենք կենդանիներուն վրայ այդչափ խնամքով կը զուրգուրան անոր համար որ այդ իրենց գործն է, որմէ կախուած է իրենց շահը։ Բայց մենք բաւական չենք գտներ այդ բացատրութիւնը, վասն զի ուրիշ դասակարգի մարդիկ ալ այդ անհոգութիւնն ունին իրենց զաւակներուն համար։ Շատ քիչ քաղաքացի կայ որ չգիտնայ՝ թէ պէտք չէ աշխատցունել ձին ամիջապէս անոր բան ուտելէն ետեւ. եւ սակայն անոնց մէջ հազիւ կարելի է մէկ հոգի մը գտնել, որ փոյթ ունենայ թէ իր զաւակներուն կերակուր ուտելէն մինչեւ դասին սկսելու ժամանակամիջոցը բաւական է անոնց։ Երբ իրերու ընթացքն աղէկ մը դիտենք՝ կը տեսնենք որ ամէն մարդ՝ գրեթէ միշտ՝ իր գլխանալիք բանը չհամարիր մանկարանի մէջ բռնուած կարգն ու կանոնը։ «Է՜հ, ես այդ բաներն ամէնն ալ կնիկներուն ձգած եմ» պիտի ըսէ նա անշուշտ. եւ այս խօսքն ըսած ատեն այնպիսի կերպարանք մը կառնէ,

որ գրեթէ միշտ կը ցուցընէ թէ այդ մանկատածական գործերուն առնական մեծվայելչութեան անվայել բաներ կը սեպէ ինք ։

Անգլիոյն ո՛ր կողմէն ալ քննենք՝ տարօրինակ բան մըն է՝ որ մարդիկ քաջողջ զաւակներ հասցունելն իրենց հոգածութեանն անարժան գործ մը կը համարին յաւելեալ, մինչ անդին ընտիր ցուլեր հասցունելու համար՝ կրթեալ մարդիկ շատ ժամանակ կը վատնեն, ու գիշեր ցերեկ անոնց վրայ կը խորհին ։ Մանուկներու պատշաճ սնունդն հագուստն ու մարմնական մարզանքն որոշելու կարող դատաւորներ համարուած են այնպիսի մայրեր, որ գրեթէ միայն օտար լեզուներ նուագ եւ զուարճութեան վերաբերեալ կարգ մը արուեստները գիտեն, եւ ատոնց խորհրդատու տրուած են՝ հին նախապաշարումներով լեցուած դայեակներ ։ Եւ անդին հայրերն իրենց ժամերը կը վատնեն հատընտիր խոզեր հասցունելու համար՝ տետրակներ ու լրագիրներուն յօդուածները կարդալու, խորհրդակցութեան ատեան գումարելու, փորձեր ընելու եւ վիճաբանելու (1) ։ Կը տեսնենք որ ամբաւ աշխատութիւն կը վատնեն արշաւահանդէսի ձի մը հասցունելու համար, որպէս զի Տէրպիի մրցանակը շահի, այլ բնաւ չեն աշխատիր գէթ առողջ անձ մը հասցունել, որ պարծանք ըլլայ իր ընտանիքին .... ։

---

(1) Եւ մեր մէջ ալ՝ նարտ թուղթ խաղալու, անդէպ եւ լի դէմ խրնջիրներու վրայ ժամերով վիճելու, իրար հաճեցնելու, հարընդօսնելու, բամբասելու, բոնի հանճարներ ծնելու, յուսինններ փայրաբերելու եւ եւ մէկզ վերամբառնալու եւլն· եւլն. որ անդին հէգ մանկութիւնն, տղայոց ծերութիւնն ու պարտասեալ հիւանդութիւնը կը սոչորին մեր թաղերու մէջ ։ Նոր բան մը լսած կըլլանք արդեօք՝ եթէ դիտել տանք որ այդպիսի ընտանիքի մը մէջ են նաեւ շատ գրական մարդիկ ։ Թ.

Մարդը լաւ սնուցանելու խնդիրը սակայն ամէնէն-կարեւորն է. մեր օրինակ բերած ներհակներն ո՛րչափ ալ ծիծաղելի թուին՝ իրերու վիճակին ոչ նուազ աղետաբեր է հասարակութեան։ Հանճարեղ մատենագիր մը ըսած է՝ աշխարհի մէջ լաւ գործեր կատարելու առաջին պայմանն է «լաւ կենդանի մը ըլլալ»։

Բարեբաղդաբար՝ դարուս գիտունները կը ցուցընեն՝ թէ իմացական կրթութեան չափազանցութեան ու կանխահասութեան դէմ խլրտում մը յառաջ գալու վրայ է. եւ այս խլրտումն՝ ամէն ներհակի նման՝ չափէն անցած է քիչ մը։ Երբեմն երբեմն լրագիրներուն մէջ երեւցած յօդուածներ կը ցուցընեն՝ թէ սկսուած է նորօրինակ կարեւորութիւն մը տալ մարմնական կրթութեան։ Զաւեշտական անունով «ջղային աղանդ» յորջորջուած նոր դրութիւնը՝ կը ցուցընէ որ հանրանալու վրայ է այն կարծիքը թէ պատանեկութիւնը կրթելու համար մեր գործածած եղանակներուն մէջ՝ պէտք եղած կարեւորութիւնը տրուած չէ անոնց մարմնական հանգստութեան։ Այս նիւթին վրայ խորհրդածելու ատենն ա՛լ հասած կը տեսնենք։

Մեր նկատելի կէտն է՝ արդի գիտութեան ճշմարտութեանց համակերպել մանկատածութեան ու դպրոցի կանոնները։ Ա՛լ հասած է ատենն՝ որ գիտուններու աշխատանոցներուն մէջ եղած գիւտերուն միջոցով մեր ոչխարներուն եւ արջառներուն մատակարարուած դարմանները՝ մեր զաւակներուն ալ մատակարարենք։ Մենք չենք ըսեր թէ հարկ չէ գիտնական կերպով տածել խոզերն ու ձիերն, այլ կըսենք թէ՝ որովհետեւ առողջ այրեր եւ գեղեցիկ կիներ պատրաստելն ալ նուազ կարեւորութիւն ունեցող խնդիր մը չէ՝ ինչպէս անասունները նոյնպէս ալ մեր նմաններն աղէկ սնուցանելու կերպին մէջ՝ տեսա-

կեան գիտութեան հայթայթած ու գործնականին ճշգրտած կանոնները՝ պէտք է անխտիր առաջնորդ ըլլան մեզի։ Մեր այս յարացոյցին վրայ շատերը պիտի զարմանան՝ թերեւս պիտի զայրանան ալ. բայց անժխտելի իրողութիւն մըն է՝ որ մարդիկ ալ այդ կենդանիներուն հետ կազմական նոյն օրէնքին ենթակայ են։ Անդամագէտները քննախօսներն ու տարրագէտներն առ հասարակ կը վկայեն՝ թէ անասուններուն կենսական գործունէութեանց մէջ ճշմարիտ եղած հանրական սկզբունքը՝ մարդկային գործունէութեանց մէջ ալ ճշմարիտ են։ Երբ առանց կանխակալ կարծիքի ընդունինք այս ճշմարտութիւնը՝ ճիշդ հասուցումը դրապէս կառնենք, այսինքն՝ խելամուտ կըլլանք որ անասուններու վրայ եղած զննութիւններէն ու փորձառութիւններէն ծագած հանրական կանոնները՝ մարդարարածին համար ալ կենցաղօգուտ բաներ են։ Մինչեւ հիմա գոյացած կենցաղագիտութիւնն որչափ ալ դեռ տարրական վիճակի մէջ եղած ըլլայ՝ պէտք է գիտնալ որ այդ կենցաղագիտութիւնն հաստատած է արդէն մէկ քանի հիմնական սկզբունք, որ գլուխն են ամէն կազմաւոր արարածներու բարգաւաճումին, ինչպէս նաեւ մարդկային կազմածին։

Եւ հիմա՝ կատարելիք բանն է, զոր եւ մինչեւ աստիճան մը մենք պիտի փորձենք կատարել, հետազօտել գտնել թէ մանուկներուն եւ երիտասարդներուն վրայ այս հանրական կանոններն ինչ ազդեցութիւն պարտին ընել։

Հասարակութեան ամէն դասակարգներուն մէջ երեւցած փոփոխումի համեմատական միտումը՝ մեր կերակուրի սովորութեանց մէջ ալ ճարակած ըլլալով՝ մանուկներու սննդական կանոններուն մէջ եւս ծայրայեղ փոփոխութիւններ մուծած է։ Ժուժկալութեան շրջան մը

յաջորդած է ուտելով եւ խմելով շուայտելու շրջանի մը — Գինեթողներու եւ Բուսակերներու ընկերութիւնները՝ անցեալ ժամանակներու անչափութեանց դէմ եղած արդի բողոքներուն ծայրայեղ պատկերներն են, եւ չափահաս–ներուն սովորութեանց այս փոփոխութեան համեմատու–թեամբ՝ մանուկներու ուտելական կանոններուն մէջ ալ փոփոխութիւն մը եղած է։ Մեր հայրերն այնպէս կը կարծէին՝ թէ իրենց զաւակներուն ստամոքսն որչափ խճողէին ուտելիքով, անոնք այնչափ աղէկ կը սնանէին. կամ մարդիկ՝ որ յղփացունելու առատեան ուտել կըստի–պէին իրենց զաւակները։ Ուրիշներ կան որոնց մէջ աւելի զօրացած կերեւի ժուժկալութեան միտումն, իրենց զա–ւակներուն պէտք եղած սնունդը չտալու տրամադրու–թիւն մը ունին։ Կըրնանք մինչեւ իսկ ըսել՝ թէ ժուժ–կալութեան այդ սիրահարներն՝ արուեստակութեամբ ի–րենց զաւակներուն վրայ դրած կանոններով կը ջանան այնպէս մը ցուցընել՝ թէ իրենք անցեալ ժամանակներու արտառոց շատակերութիւններէն հեռու են. վասն զի մինչ մէկ կողմէն բնութեան բողոքելուն չափ կը դնեն իրենց սեղմ ժուժկալութեանը, միւս կողմէն խստութեամբ մը ի–րենց զաւակները այսպիսի կանոնի մը տակ կը դնեն։

Աշխարհ՝ գիտէ՝ որ շատ ուտելն ու շատ քիչ ուտելը հաւասարապէս վնասակար են. բայց երկրորդը մանաւանդ աւելի վնասակար է։ Ինչպէս մեծ հեղինակութիւն մըն ալ ըսած է՝ «Շատակերութենէ յառաջ եկած յղփութիւն–ները նուազ վնասակար են եւ շուտ կը բուժին քան այն հիւանդութիւններն, որոնց պատճառն անսուաղութիւնն է»։ (Հանրագիտարան գործնական բժշկութեան)։ Մա–նաւանդ՝ երբ ծնողք անխոհեմ միջամտութիւններով մա–նուկներուն ստամոքսը չանբարեխառնեն՝ անոնք շատ քիչ անգամ անմարսողութեամբ կը հիւանդանան։ «Շատակե–

րութիւնն՝ աւելի չափահասներուն ախտն է քան մանուկ-
ներուն. մանուկներն ընդհանրապէս որկրամոլ Եպիկուր-
եաններ չեն, եւ միայն անոնց սնուցիչներն են որ որկրա-
մոլ կընեն անոնք» (Անդ)։ Շատ մը ծնողներու հարկ
դատած սեղմ կանոնաւորութիւնն՝ անզօր ու անիմաստ
զգուշութիւն մըն է։ Մանուկներու հանապազորդ կերա-
կուրն՝ այս չափազանցութեան ամենէն վտանգաւոր ձեւն է։

«Ուրեմն, պիտի ըսեն, թո՛ղ տանք որ մեր զաւակ-
ներն իրենց ստամոքսը չափէն աւելի բեռնաւորեն, եւ
խորտիկներով խճողեն աղիքներն, եւ ապա հիւանդ ըլլան.
ինչպէս շատ անգամ ալ կը պատահի»։ Այս ձեւ հարցու-
մին մի միայն պատասխան մը կրնանք կչռել (թէպէտ
եւ խնդիրն իր այս ձեւովը արդէն վճռի տակ է) մենք
կըսենք թէ՝ որովհետեւ ամէն կենդանիներու ախորժակն
ապահովագոյն առաջնորդ մըն է — ապահովագոյն առաջ-
նորդ մը ստնդիաց մանկիկին հիւանդին ու չափահաս-
անձերու, որ կանոնաւոր կերպով կը կենցաղին — ուստի՝
մանուկներու համար ալ անխաբ առաջնորդ մըն է այն,
եւ բնութեան դէմ արտառոց բան մը պիտի ըլլար եթէ
ախորժակն անոնց վրայ միայն վստահելի նշան մը եղած
չըլլար։

Թէրեւս կարգ մը մարդիկ նեղսրտին մեր այս պա-
տասխանին վրայ, եւ ըսեն թէ կրնան մեր ըսածին հա-
կառակն հաստատել մէկ քանի եղելութիւններով։ Կա-
րելի է որ այդ եղելութիւններն ստոյգ ըլլան. բայց մեր
պատասխանն ալ, որ նորառածի (paradoxe) կը նմանի,
կարելի է լիով ապացուցանել։ Ճշմարիտն այն է՝ թէ ա-
խորժակի ազատ հետեւողութեան ծայրայեղութիւնները,
զոր մեզի դէմ կը հանեն, սովորաբար հետեւանքն են
սեղմիչ դրութեան մը, եւ ճիշդ այդ չըլլալուն հետեւանքն է
որ կառարկի մեր ըսածին դէմ։ Անոնք՝ զգացումի բուռն,

զեղումներ են, որ ճգնաւորական խիստ կանոնապահութենէն յառաջ կուգան, եւ ապացոյց են սա հանրական ճշմարտութեան՝ թէ երիտասարդութեան ատեն ամէնախիստ կանոնապահութեամբ կաղապարուած մարդիկ՝ ետքը ամէնէն մեծ այլանդակութեանց մէջ կիյնան։ Երբ բնական բերումներն երկար ատեն զսպուած մնան՝ այլ եւս անկարելի կըլլայ սովորական կանոնի տակ առնել անոնց թափը. երբ նկատէք մանուկներու ախորժակներն եւ անոնք առձեռն կերպերը, պիտի տեսնէք որ անոնք առ հասարակ շատ կախորժին շաքարեղէններէ։ Հաւանաբար հարիւրէն իննսունը պիտի կարծեն որ այդ ախորժակ բռուածը՝ քիմքի խնդիր մըն է, եւ զգայական ուրիշ ախորժակներու պէս զա՛յն ալ զսպել հարկ է։ Սակայն բնախօսն, որ իր գտումներովը օր օրի կը նշմարէ իրերու մէջ աննօրինելի կարգ մը, կը կասկածի որ չըլլայ թէ շաքարեղէնի այդ ախորժակին մէջ՝ սովորաբար կարծուածէն աւելի բան մը եղած ըլլայ, եւ այս կասկածն իսկո՛յն կըստուգէ իր հետազօտութիւններովը։ Գիտնօրէն կը հասկընայ վերջապէս՝ որ շաքարն ալ կազմական աճումին մէջ կարեւոր դեր մը կը կատարէ։ Ծարպոտ նիւթերուն պէս՝ շաքարոտ նիւթերն ալ՝ մարդկային մարմինին մէջ կը թթուանան, եւ անոնցմէ ջերմութիւն յառաջ կուգայ։ Շաքարը՝ նիւթերուն այն տարրական ձեւն է, որմէ հարկ է անցնին կարգ մը ուրիշ բաղադրածներ՝ մեզի կենդանական ջերմութիւն տալէ առաջ. եւ այս նիւթերուն շաքարացումը մեր մարմինին մէջ իսկ տեղի կունենայ։ Մարսողութեան ատեն ոչ միայն օսլան մեր մարմինին մէջ շաքարի կը փոխուի, այլ մեր լերդն ալ՝ ինչպէս ապացուցած է Մ. Գլոտ Պէրնար՝ գործարան մըն է, որուն մէջ անդալական մեր միւս տարրերը շաքարի կը փոխուին վասն զի շաքարն ա՛յնքան ամէնակարեւոր պէտք մըն է

մեր մարմինին համար՝ որ եթէ մեր ստամոքսին մէջ շաքար չմըտնէ՝ բօրակային նիւթերէն անգամ շաքար կը զատուի մեր ներսը։ Արդ՝ երբ մանուկներուն այս ջեռուցիչ սնունդին համար ունեցած անզուսպ փափագին վրայ՝ աւելցուցնենք նաեւ այն անզուսպ զարշանքն ա՛յն սնունդներէն, որ շատ ջերմութիւն յառաջ կը բերեն իրենց թթուացումին առեն (այսինքն՝ ճարպոտ նիւթերէն) իրաւունք կունենանք ըսելու՝ թէ միուն չափազանցութիւնը միւսին չգոյութիւնը կը կշռէ. եւ մարդկային կազմածն աւելի շաքար կուզէ անոր համար՝ որ շատ ճարպ չկրնար տարրալուծել իրեն. Նոյնպէս նաեւ մանուկները կը սիրեն բուսային թթուն։ Անոնք առ հասարակ ամէն միրգերէ կախորժին. եւ եթէ շնորհքով միրգ չունենան՝ տհաս ու կանաչ հաղարջներն ու դառնահամ խնձորները կըսկսին անյագաբար թշել։ Բուսական թըթուներն հանքային թթուներու պէս կազդուրիչ են, եւ առողջարար կըլլան մանուկներուն՝ երբ չափով տրուին. մանաւանդ՝ երբ այդ միրգերն իրենց բնական վիճակին մէջ ուտուին՝ ուրիշ օգուտ մըն ալ կունենան։ Տոքթ. Անդր. Քոմպ կըսէ՝ թէ «Անգղիայէն աւելի հասուն միրգ կըսպառի ցամաքային Եւրոպայի մէջ. միրգ ուտելը շատ օգտակար է՝ մանաւանդ աւրուած աղիքը կանոնաւոր վիճակի մէջ դնելու համար»։ Մի՛տ դրէք ուրեմն՝ թէ մանուկներու բնազդական կարիքին ո՛րչափ հակառակ կը վարին այն մարդիկ, որ սովորութիւն ըրած են՝ սեղմ կանոնի մը ենթարկել անոնց ախորժակները։

Կրնանք ըսել թէ մանուկներուն՝ շաքարեղէնի եւ միրգի համար այս անզուսպ յօժարութիւնն՝ իրենց հասակին բնական անհրաժեշտ պէտքի մը ստոյգ նշանն է. եւ ծնողք ոչ միայն բանի տեղ չեն դներ անոնք իրենց մանկ-կատածութեան հրահանգներուն մէջ, այլ մինչեւ իսկ կը

հանգստավայրին անոնց ։ Իրենց խիստ կանոնը բռնած են՝ ա-ռաւօտներն անոնց կաթով հաց կամ պանիր հաց, եւ ի-րիկունները թէյով կամ կարագով կամ գարեհաց պանիրով հաց՝ եւ կամ ասոնց նման ուրիշ անհամ բաներ տալ ։ Սանիկին ուզած բանն անոր տալ չեն նայիր կամ այդպէս ընելը աղէկ չեն համարիր ։ Եւ գիտէ՞ք ասոր հետեւանքն ի՞նչ կըլլայ . երբ տօնի օրերը գան, երբ մանուկներն ա՛լ ազատ ըլլան իրենց ուզածն առնելու եւ ուտելու՝ իրենց գրպանը քիչ մը ստակ ունենալով ա՛լ կըրնան մրգավաճառներու խանութէն ծախու առնել բոլոր այն անուշահամ բաները, որոնց կարօտը կը քաշէին երկար ատենէ ի վեր . եւ կամ երբ մրգաստանի մը մէջ ազատ թողուին՝ կըսկսին այն ատեն ծայրայեղ շուայտութեամբ ուտել այն պտուղներն ու շաքարեղէններն, որոնցմէ զրկուած էին այնչափ ատեն ։ Այս առիթն՝ անկարծ բարեկենդան մը կը բերէ իրենց, կէս մը այն պատճառով որ վրանին արգիլող մը չունենին՝ ազատ են, եւ կէս մըն ալ վասն զի հետեւեալ օրը նորէն պիտի սկսի իրենց համար երկա՛ր մեծ պահք մը ։ Այս անչափութեանց երբ անմարսողութիւնն ալ վրայ հասնի՝ այն ատեն ծնողք գլուխնին տատանելով կըսեն « ա՛, պէտք չէ ուրեմն թողուլ անոնք իրենց քմական ախորժակին » ։ Ծնողք՝ իրենց այս կամայական արգելքն այս ձախող հետեւանքով պատրուակելով՝ կըսեն թէ պէտք է ուրեմն աւելի խիստ արգելքի տակ առնենք անոնք ։ Բայց մենք կըսենք՝ թէ իրենց այս ընթացքն արդարացունելու համար ծնողքին այս փաստը շատ թիւր է ։ Եւ եթէ թոյլ տան իրենց զաւակներուն՝ որ անոնք ամէն օր այս զօրացուցիչ սնունդէն կանոնաւորապէս առնեն բնականին պահանջածն՝ անշուշտ անոնք շատ քիչ անգամ պիտի շուայտին այնպէս ինչպէս հիմա կընեն՝ երբ սնունդի այս արգելքէն ազատելու առիթն ունենան ։

*Եթէ մանուկներուն «հանապազորդ կերակուրին հետ միրգեր ալ տրուէին, ինչպէս կըսէ նաեւ Տօքթ. Քոմպ (ոչ թէ կերակուրէն առաջ կամ ետքը զատ, այլ կերակուրներուն հետ) անոնք ա՛լ երբէք չպիտի վազէին ագահօրէն անհաս խնձորներ ու հաղարջներ լափելու»։ Այսպէս պիտի ըլլար նաեւ ուրիշ պարագաներուն։*

*Մանուկներուն բնական ախորժակին վստահելու սկզբնական հզօր պատճառներ կան, եւ հակառակ պատճառները շատ չնչին բաներ են. մանաւանդ պէտք է աղէկ գիտնալ որ այդ բնազդեցիկ բերումէն զատ՝ ուրիշ ոչ մէկ նշան վստահելի չէ։ Այս կերպով ինքզինքնին կանոնաւոր համարող ծնողներու դատաստանին արժէքն ինչ կրնայ ըլլալ. երբ Գ. Շարայ դեռ շատ բան կը պահանջէ ուտելու՝ անոր մայրը կամ դայեակին ի՞նչ իրաւունքով «ա՛լ չեմ տար» պիտի ըսէ. չատ չատ՝ պիտի կարծէ որ պէտք եղածին չափ տուած է, բայց այդ դրութեան հի՛մն ի՞նչ է։ Մանուկին ստամոքսին հետ աներեւոյթ յարաբերութիւն մը ունի՞ անոր պէտք եղածը գուշակելու. եւ եթէ չունի այդ յարաբերութիւնն՝ ինչպէ՞ս կրնայ վստահ ըլլալ իր որոշումին վրայ։ Զգիտէ՞ որ սնունդի որքանութեան պէտքը շատ մը խառն պատճառներէ կախուած է, եւ օդին խոնաւական ու ելեկտրական բարեխառնութեան համեմատ կը փոխուի. կը փոխուի նաեւ մանուկին կենցաղական գործունէութեան, վերջին անգամ առած սնունդին քանակութեան՝ որակին, եւ զայն մարսելու արագութեան համեմատ։ Այսչափ բաղադրածոյ պատճառներու արդիւնքն ինչպէս կարելի է չափել ճիշդ կշիռով։ Հինգ տարեկան զաւակի տէր հայր մը կըսէր մեզի՝ թէ իր այս որդին հասակին համեմատութեամբ շատ մեծ գլուխ մը ունէր, վարդափթիթ երեսով ու ժիր էր, եւ ինք հայրը չէր կրնար ինչ եւ իցէ արուեստական կանոն մը գտնել,*

*որով կարենար ճիշդ չափով մը մատակարարել մանուկին պէտք եղած սնունդն ։ «Երբ, կ'ըսէր, ինքնիրենս կ'որոշեմ թէ այսչափը բաւական է՝ գիտեմ որ լոկ ենթադրութիւն մըն է այն, որ կամ ճիշդ է կամ սխալ. ուստի՝ որովհետեւ համոզ չեմ՝ մանուկն իր ախորժակին կը թողում որ ուզածին չափ ուտէ»։ Եւ արդարեւ՝ ո՛վ որ իր գործերուն անոնց արդիւնքէն դատելու սովորած է՝ խելացութիւն պիտի համարի այս ընթացքը ։ Այն ծնողք, որ յանձնապաստանութեամբ մը իրենց զաւակներուն ստամոքսին վրայ օրէնք կը դնեն, կը ցուցնեն թէ անոնք չգիտեն բնախօսական օրէնքը. եթէ գիտնային՝ աւելի զգոյշ պիտի գործէին ։ «Գիտուններուն հպարտութիւնը խոնարհամտութիւն է՝ տգէտներուն հպարտութեան հետ բաղդատելով»։ Եթէ կուզէք հասկընալ՝ թէ ո՛րչափ տարակուսիլ պէտք է մարդկային դատումին կեղակարծ ըլլալուն եւ ո՛րչափ վստահ ըլլալ իրերու նախասահմանեալ կարգին վրայ, բաղդատեցէ՛ք անփորձ բժիշկի մը յանձնապաստանութիւնն հմուտ բժիշկի մը խոհականութեան հետ, կամ կարդացէ՛ք Պ. Ճոն Ֆորպսի* (1) Բնութիւն եւ հիւանդութիւններ բուժելու արուեստ *անուն գիրքն, եւ պիտի տեսնէք թէ մարդ՝ կեանքի օրէնքին ո՛րչափ հմտանայ, նոյնչափ նուազ վստահ կ'ըլլայ իր գիտութեան վրայ, եւ աւելի վստահ՝ բնութեան վրայ ։*

*Երբ անցնինք սնունդի քանակի խնդիրէն որակի խնդիրին՝ շատ տեղ նոյն ճգնաւորական միտումը պիտի տեսնենք ։ Մանուկներու սնունդն ոչ միայն կցիր ապա-*

(1) Ճոն Ֆորպս (1787-1861) Սկովտիացի բժիշկ մըն էր, որ գրած է բժշկական շատ մատեաններ, եւ գործնական բժշկութեան Անգղ. Հանրագիտարանին խմբագիրներէն մին եղած է ։ Սբէնսր շատ անգամ վկայութիւն կառնէ այս Հանրագիտարանէն ։ Թ.

հութեամբ մը կը ջամբեն, այլ նաեւ այդ սնունդը կը պատրաստեն ստածիչ շատ քիչ նիւթերով։ Շատերը սովորաբար այնպէս կը կարծեն՝ թէ մանուկները պէտք չունին մսեղէն սնունդի։ Կը թուի թէ ժողովուրդին մէջ՝ խնայութեան պէտքը ծնուցած է այս կարծիքն։ Կան մաս մը ծնողք ալ որ ժողովուրդին մէջէն ելած դայեակներու կարծիքին ազդեցութեամբ՝ միսի կարեւորութիւն չի տալ կը սովորին։

Սակայն երբ տղէկ մը քննենք թէ այս կարծիքն ինչի վրայ հիմնուած է՝ պիտի տեսնենք որ այդ հիմն անկարեւոր բան մըն է։ Առանց փորձի ընդունուած վարդապետութիւն մըն է այն՝ գոյնզգոյն հագուստներ հագնելու սովորութեան նման։ Շատ հաւանական է՝ որ միսը ջղային բաւական զօրութիւն դեռ չունեցող փոքր մանուկներու ստամոքսին՝ յարմար սնունդ մը եղած չըլլայ, վասն զի շատկեկ լեռումի մը կարօտ է խախացի (chyme) վերածուելէ առաջ։

Բայց այս տարբերութիւնը կոչընչանայ՝ երբ մսեղէն սնունդներու մէջէն զատուած ըլլան ջղային մասերն, եւ երբ այդ սնունդը տրուի երկու երեք տարեկան մանուկներու, որոնց ստամոքսն արդէն ջղային բաւական ոյժ առած է։ Մանուկներուն միս չի տալու դրութիւնն ընդունելի է մինչեւ երկու տարեկան մանկիկներու համար. այդ նախնական հասակէն անդին չզօ'րեր այն. բայց շատերը դարձեալ միս չեն տար մինչեւ երեք չորս տարեկան մանուկներուն։ Մենք սոր դէմ բազմաթիւ ու վճռական փաստեր ունինք, եւ գիտութեան վճիռը գլխովին հակառակ է ժողովուրդին կարծիքին։

Մենք այս խնդիրին վրայ խորհուրդ հարցուցինք Անգղիայի երկու հռչակաւոր բժիշկներուն եւ ուրիշ երեւելի շատ բնախօսներու. ամէնն ալ միաբերան ըսին մեզի՝ թէ

պէտք է մանուկներու սնունդը չափահասներու սնունդէն եթէ ոչ աւելի՝ գէթ անոր հաւասար սատածիչ ըլլայ։

Այս կարծիքին հիմն անհերքելի է, եւ պատճառներն ալ շատ մեկին են։ Երբ մանուկներու եւ չափահասներու աճումին ընթացքը բաղդատենք՝ պիտի տեսնենք որ անոնք չափահասներէն աւելի սնունդի պէտք ունին։ Չափահաս մարդիկ ինչո՞ւ կերակուր կուտեն. անոր համար որ ամէն օր իրենց մարմինն ենթակայ է տեսակ տեսակ սպառումներու, որ տեղի կունենան աղիքին վրայ ջղային շարժումներուն, մտային աշխատութեան, ներարդային դրութեան ու կենցաղի գործունէութեանց համար. եւ այս գործերուն առեն՝ մարմինի հիւսուածներուն մաշումին տեղը պէտք է լեցունել. Նաեւ՝ ամէն օր ներսի տաքը արտաքուրելով՝ անոնց մարմինը կը կորսնցունէ ջերմութեան մեծ մասը։ Արդ՝ քանի որ կենսական գործունէութիւնները չընդհատելու համար կարեւոր է պահել մարմինի ճիշդ բարեխառնութիւնը, պէտք է ջերմութեամբ լեցունել այս սպառումներուն տեղը. եւ ասոր համար մարդկային մարմինին մէկ քանի տարրական մասերն. ենթարկուած են շարունակ թթուացումի մը։ Ամէն օրուան մարմինի սպառումին ու արտաքուրեալ ջերմութեան տեղը լեցունելու համար է՝ որ չափահասները կարօտ են կերակուրի։ Իսկ մանուկներու մարմինին գալով՝ անոնք ալ իրենց գործունէութեամբը կըսպառեն իրենց մարմինը, երբ անոնց անհանդարտ ժրութիւնը դիտէք՝ պիտի հաւկընաք որ իրենց հասակին համեմատութեամբ գրեթէ չափահասներուն հաւասար նիւթ ու ջերմութիւն կըսպառեն։ Անոնք ալ արտաշնչութեամբ դուրս կուտան ներքին ջերմութիւնը. եւ որովհետեւ անոնց մարմինին մակերեւոյթն իրենց կշիռին համեմատութեամբ չափահասներու մակերեւոյթէն աւելի է, որով նաեւ աւելի՝ արագ ջերմու-

*թիւն կըսպառեն՝ անոնք աւելի շատ ածխային սնունդի կարօտ են. այնպէս որ՝ եթէ մանուկները չափահասներէն աւելի կենսական գործունէութիւն չունենային անգամ, դարձեալ իրենց հասակին համեմատութեամբ աւելի շատ կերակուրի պէտք պիտի ունենային։ Մանուկին ոչ միայն հարկ է իր մարմնական հիւսուածին ու ջերմութեան բըսպառումներուն տեղը լեցունել, այլ նաեւ կազմել նորանոր հիւսուածներ, մէկ խօսքով՝ հարկ է աճիլ։ Երբ բըսպառեալ հիւթերուն ու ջերմութեան տեղը լենայ՝ անկէ աւելցած սնունդը մարմնական շինուածին զարգացումին կը բաշխի, եւ այս աւելորդովը միայն հնար կըլլայ անոր՝ աճիլ կանոնաւոր կերպով։ Առանց այս աւելորդին եղած աճումն՝ անոր կազմաւորութեան ակներեւ տկարացում մը կը պատճառէ։ Իրաւ է թէ մեքենական տեսակ մը օրէնքով, որ հոս չենք կրնար բացատրել, փոքր կազմած մը մեծ կազմածի մը վրայ առաւելութիւն ունի ՚ի մասին այն առընչութեան՝ որ կայ ջամբող եւ սպառող զօրութեանց մէջ, եւ այս առաւելութեամբն է որ առանց աւելորդ սնունդի՝ աճումը կարելի կըլլայ. բայց այս պարագան անգամ աւելի բացայայտ կը ցուցընէ սա ճշմարտութիւնը թէ՝ թէպէտ եւ տղան իր պիտոյքին հակառակ կերակուրի սեղմ կանոնի մը կրնայ դիմանալ՝ առանց մեծ արգելք մը պատահելու իր չափազանց գործունէութեան, այս տեսակ ամէն կանոն՝ սանձելով չափազանց գործունէութիւնն՝ անոր արտաքին կազմածն ու իրանին կատատարելութիւնն ալ կը կարճէ։ Թէ մանուկին աճելու վրայ եղող գործարաններն ի՛նչ ուժգին կերպով կը պահանջեն նորագոյն սնունդներ՝ զա՛յս կը հասկըցունէ մեզի այն «դպրոցական անօթութիւնն» որ ուրիշ ոչ մէկ հասակի վրայ կերեւի. զա՛յս կը հաստատէ նաեւ մանուկներուն վրայ տեսնուած ախորժակի արագ դարձը։ Սնունդի ար-*

տաքոյ կարգի այս պէտքին ուրիշ ապացոյց մըն ալ այն է՝ որ նաւաբեկութենէ կամ ուրիշ արկածներէ ազատա-ռած սովերու ատեն՝ ամէնէն առաջ մանուկնե՛րը կը մեռ-նին անսուաղութենէ ։

Ուստի՝ այս ամենակարեւոր պէտքն ինչպէս որ հարկ է ընդունելէ ետեւ, կը մնայ միայն լուծել սա խնդիրն ալ՝ թէ այդ պէտքը կրնանք կատարել՝ տալով անոնց մեծա-քանակ անօսր սնունդ մը ։ Քանակ մը միսի տուած սը-նունդը մեծաքանակ հացով միայն հնար է առնել, եւ աւելի մեծաքանակ բաթաթէսով, եւ այսպէս շարունա-կաբար պէտք է քանակն աւելցունել՝ որակը նուազելուն չափով ։ Արդեօ՞ք աւելի աղէկ չըլլա՞ր՝ չափահասներուն տրուածին պէս՝ սնուցիչ բաւականաչափ սնունդներ տալ մանուկներուն, կամ պէ՞տք է բռնաւորել անոնց ստա-մոքսը մեծաքանակ բայց վար տեսակէ սնունդ մը տալով առանց նկատելու թէ մանկական ստամոքսն ամէն պա-րագայի մէջ պէտք ունի համեմատաբար մեծաքանակ սնունդի մը՝ որչափ չափահասները չունին ։

Շատ պարզ է ասոր պատասխանը. — մարսողական աշխատութիւնն որչափ նուազ ըլլայ՝ աճելու եւ գործե-լու կարողութեանց ոյժն այնչափ աւելի անխիազ կը մնայ ։ Պէտք է գիտնալ՝ որ ստամոքսի եւ աղիքի պաշտօններուն համար արիւնի եւ ջղային ոյժի մեծկակ սպառում մը հարկ է . չափահասներն ասոր փորձն իրենց անձին վրայ կրնան փորձել՝ նկատելով որ առատ կերա-կուրէ մը ետեւ վրանին խոնջութիւն մը կուգայ, եւ այն ատեն է որ սպառած արիւնի ու ջղային ոյժի տեղը կը լենայ՝ հանուր կազմածին տոյժովը ։ Եթէ նուազ սնուցիչ բայց մեծաքանակ սնունդներով պէտք եղած կերակուրը տալ հարկ ըլլայ, այն ատեն ընդերքն աւելի՛ կը յոգնին որչափ չպիտի յոգնէին նոյն սնունդն առնելու համար.

*երբ այդ կերակուրը փոքրաքանակ բայց աւելի սնուցիչ ըլլայ։ Ընդերքին այս աւելորդ յոգնութիւնն՝ համեմատաբար կորուստ մըն է, որուն տոյժը կը կրեն մանուկներու զօրութիւնը կամ աճումն եւ կամ երկուքը միանգամայն։ Ուրեմն՝ պէտք է այնպիսի սնունդ մը տանք մանուկներուն, որ հնար եղածին չափ սնուցիչ ու դիւրամարս ըլլայ միապէս։*

*Ստոյգ է թէ մանչերն ու աղջիկները կրնան սնանիլ բոլորովին կամ գրեթէ բոլորովին բուսական կերակուրներով։ Հարուստ դասակարգերուն մէջ կը գտնուին մանուկներ, որ շատ քիչ միս ուտելով հանդերձ՝ աղէկ կը գիրին ու քաջողջ կերեւին։ Գիւղացի աշխատաւորներու մանուկները գրեթէ բնաւ միսի երես չեն տեսներ, եւ սակայն անոնք կորովի կազմ մը կառնեն։ Բայց այս եղելութիւններն, որ ըստ երեւոյթին մեր կարծիքին դէմ են, կարծեցեալ կշիռը չունին. նախ՝ վասն զի երբ տղայ մը իր մատաղ հասակին մէջ միայն հացով ու բաթաթէսով սնանելով զարգուն կերպարանք մը առած ըլլայ, ասկէ չհետեւիր որ ապագային ալ պիտի կրնայ ձեռք բերել լաւ աճում մը, եւ երբ բաղդատենք Եւրոպացի գիւղացիներն ազնուականներուն հետ՝ պիտի տեսնենք որ բուսակերները շատ ետ կը մնան (1). Երկրորդ՝ վասն զի խըն-*

(1) Սակայն մսակեր ազնուականը բուսակեր գեղջուկէն շատ քիչ կաշխատի. եթէ աւելցունենք ասոր վրայ ազնուականին ու բարեկեցիկ միջնորդարին իրենց առողջութեան համար գիտցած եւ գործադրած առողջապահական միւս հնարքն, որոնցմէ զուրկ կը գտնուի նկարագրուած բուսակերը, պիտի համոզուինք որ հոս հեղինակին խորհրդածութիւնները զուտ կողմնակալ են։ Ու՞ր թողունք այն գլխաւոր պարագան՝ թէ մսակերներն ընդհանրապէս աւելի ընդունակ կըլլան պնդութեան, անդամալուծութեան, ատամնախտի, փտածութեան ու թոքախտութեան իսկ. ինչպէս՝ հինէրուն [illegible] գլխաւոր պատճառներէն մին

*դերը միայն երեւութական գիտութեան ու մեծութեան վրայ չէ, այլ մարմինի ուժին ալ հաշուել պէտք է։ Մարդկային մարմինին մեղկութիւնն ու պնդութիւնն՝ անոր դէմքին վրայ տարբերութեան որոշ նշան մը չեն-*

---

կրնանք համարել բուսակերութիւնը, նոյնպէս արդիներուն սակաւակեցութեան գլխաւոր պատճառներէն մին ալ կրնանք դնել մսակերութիւնը։ Եւրոպայի շատ մը գլխաւոր քաղաքներուն մէջ՝ հիմայ-ալ լոկ բուսակերներ կան, մանաւանդ կրօնական ակադեմական ու գիտուն դասէն, որ բարքի կողմէն լաւագոյն են քան միւս մարդիկն, ու երկարակեաց կրնան ընդհանրապէս։

Ցոռի դրութեան քակտումին հետ շատ լաւ հաստածներ ալ՝ նախապաշտում անունին հետ քշուելով՝ շատ հարուածներ կրած են վերջին դարերուն մէջ. բայց շատ քիչ մարդիկ կրցած են սթափիլ ալ բնական հարկի մը կարգ անցած այն հին սովորութենէն, որ այնչափ թշնամանք է բնութեան որչափ որ նոյն իսկ արդի կարգ մը գիտուններէն բնութեան համաձայն կը բռի։ Այս սովորութիւնն է՝ բնութենէն ապրելու համար միայն դուրս եկած ու անբանականութեամբ միայն մենէ տարբեր կարգ մը անասուններ մորթելն ու իմացական արարածներու կերակուր ընելը. սոսկալի է մարդ՝ երբ ինքնիր մէջ ամփոփուելով՝ մտածէ թէ իր միւս ամէն գործունէութեանց մէջ անբաններէն շատ տարբեր՝ բնական ու բանաւորական ընթացք մը բռնած ատեն՝ երբ անասուններ մորթելու եւ ուտելու գայ՝ ինչ հակաբնական բերումով մը անոնց ամէնէն վայրագներէն օրինակ կառնէ՝ սպանդի վարելու համար անոնց ամէնէն անմեղներն ու ամէնէն գեղեցիկներն, արուեստական գործիքով՝ կը մորթէ անոնք, եւ իբր նորէն բանականութեան գալով՝ կը համեմէ անոնց միսը պէսպէս հանդերձանքով «որպէս թէ ոճիրի մը կերպարանքն աչքէ սքօղելու համար» այլ եւ այլ պատրաստութեամբ եփել կուտայ եւ կը նստի անխռով ճաշակելու։ Արդի գիտուններէն շատերն՝ ինչ որ կուզեն թող առարկեն այս խնդիրին պատասխանութեան համար. չէզոք խորհուրդ մը դիւրաւ կրնայ խելամուտ ըլլալ՝ որ ամէն մարդ իր սիրտին ու միտքին անմիջական յայտնութեան մէջ իսկ ունի բուն գիտութեան նախատեսմն, եւ այս յայտնութիւնը՝ չենք կրնար ըսել թէ՝ բացարձակապէս նպաստաւոր է մսակերութեան. ո՛ւր քաղուենք որ մեր գիտուն ըսուածներն ալ շատ անգամ հասարակ ժողովուրդին պէս ենթակայ են միտք ու սկզբունք փոխելու. անոնք ալ կը փոխուին ու կը շրջին . . . ։

*դրոշմեր բնաւ. Թէպէտ եւ հարիւրանոցի դիտողի մը աչքին՝ կթուի ջիղերով մանուկ մը կորովի ջիղերով մանուկի մը նման կերեւի, սակայն երբ մօտէն քննենք՝ երկուքին մէջ մեծ տարբերութիւն պիտի տեսնենք. Երբ ամէնագէր*

---

Պատմութիւնը զերթէ բոլորովին անծանօթ է մանկերութեան, եւ առանց երթալու *իրերու ծագումին՝* բանականութեան դէմ է ըսել թէ եղած է ժամանակ երբ մարդիկ բնաւ միս չէին ուտեր. Բացի Ս. Գիրքին մէջ գտնուած նահապետական օրինակներէն, որոնց մէջ ամէնէն աչքի զարնողն՝ իր չարակրութեամբն ու անձնական ժուժկալութեամբն 240 տարի ապրող Յոբինն է (Յոբ ԻԲ. 16), Եկեղեցիին պատմութեան յիշած բազմաթիւ հայրապետներն ու Հարանց վարքին մէջ արձանագրուած ճգնողներն ալ կան, որ մեծ մասով երկարակեաց եղան իրենց բովանդակ չարքաշութեամբն հանդերձ. Անոնցմէ ամէնէն երեւելին ու խոստովանողն՝ Անտոն ճգնողն՝ 105 տարի ապրեցաւ. Արտաքին պատմութիւնը կ'ըսէ՝ թէ Պիւթագորեանները միս չէին ուտեր, եւ սակայն գիտուն մարդիկ էին ու սովորականէն աւելի կ'ապրէին. Պղատոն՝ տեսլագէտներուն նախահայրը՝ միայն կապպար կ'ուտէր ճաշ անգամ, անշուշտ համոզումով մը. զի Պղատոն բարեկեցիկ մարդ մըն էր, կրնար մսեղէն ու խմորեղէն համադամներով կերակրիլ՝ եթէ խելքի դէմ չհամարեր. ինք վաթսուն տարեկան մեռաւ՝ բայց սիրտի հիւանդութիւն ունէր. Թէոփրաստ խօսակեաց գիտուն մըն էր՝ Արիստոտէլի ամէնէն իմաստասէր աշակերտն, եւ 99 տարի ապրեցաւ. Փարիսեցիները Սադուկեցիներն ու Եսսենեաններն, ըստ Յովսեպոսի (Պտմ. *Հրեական պատեր*. Գիր. Բ. Գլ. Թ.) «Երկարակեաց կ'ըլլային. շատերը մինչեւ հարիւր տարիի կը հասնէին, վասնզի կերակուրներու մէջ պարկեշտ էին» եւ այս առանձնաւորներն իրենց ժամանակին ամէնէն գիտուն իմաստասէր ու ժուժկալ մարդիկն էին. անոնցմէ շատերը բժշկականութիւն ալ գիտէին. Թէրապէտներուն ու վերոյիշեալ Եսսենեան ըսուածներուն սրբազան սեղանին վրայ՝ արիւնաւոր ուտելիք չէր ելներ երբէք, այլ հաց եւ աղ ու տեսակ մը ծոթրին, եւ գինիի տեղ յակ ջուր կը խմէին (Տես Revue de Paris Ա. Տարի թիւ 1. Փիլոնի վրայ գրուած յօդուածը).

Անակրէոն Քերթողը միայն չամիչ կ'ուտէր, եւ խոր ծերութեան մէջ մեռաւ. Կեսար ամենաժուժկալ էր, եւ պատմիչները միաբան կը վկայեն իր ընդարձակ հանճարին ու իմաստութեան. Պօղոս առաքեալ միայն հացով բանջարեղէնով ու կաթով կ'ապրէր. Շէլլի մեծ բանաս-

*մէկը տեսնէք՝ աղէկ գիտցէք որ այդ անձը ակար կազմ մը ունի. մարզիկ իրենց ըմբշական արագընթաց վազքով իրենց ծանրութենէն կը կորսնցունեն. ուրեմն՝ այդ քսա-սակեր մանուկներուն արտաքին գիրութիւնը մեր բամբի*

---

տեղծն ոգիով չափ դէմ էր մսակերութեան. Ուէզլի բազմահմուտ գիտունն, որ առաքեալի մը պէս կենցաղեցաւ՝ բողոքական ըլլալովն հանդերձ՝ շատ անգամ պահք կը բռնէր եւ իր երկար համբորդութեանց ատեն լոկ հաց կուտէր, եւ Ուէզլի 88 տարի ապրեցաւ, 100,000 փարսախ համբորդեց, 40,000 քարոզ խօսեցաւ եւ 80,000 աշակերտ ձգեց. (Հ. Թէն Պատմ. Անգղ. Գրականութեան Գիրք Գ. Գլ. 3.)։

Կարինի մէջ Մելիքեան անուն անձնաւորութիւն մը կայ, երկար ատեն Եւրոպայի մէջ չափակերութեամբ ապրած՝ զուարթ ու իմաստասէր է, որ այժմ մենակեաց է, եւ մինչեւ 85 տարեկան՝ միս չէ կերած կըսեն։

Մասնաւորապէս Պղուտարքոս՝ ինքներուն մէջ՝ մսակերութեան ծագումին ու անոր անպատեհութեանց վրայ ուշադրութեան արժանի ճառ մը գրած ունի (Պղուտ. Բարոյականք *Յղ. Մսակերութեան*) որուն մէջ ցուցուած փաստերն իրենց մերկ պարզութեամբը կրնան համոզել նորամարտախնդիրները։ Ինք Պղուտարքոս, որ բազմահմուտ եւ աշխատող գիտուն մըն էր. 90 տարի ապրեցաւ, ըստ Վոսսիոսի, եւ չենք կարծեր որ մսակերութեան դէմ այնչափ եռանդով կռուող քերողացին՝ միս ուտող մը ըլլար. սա ինքն է՝ որ իր բովանդակ ազատամտութեամբն հանդերձ՝ հրաժարեցաւ հաւկիթ անգամ ուտելէն, երբ հաւկիթի վրայ տարօրինակ երազ մը տեսաւ։

Կան Անգղիայի մէջ բուսակերներ, որ ընկերութեամբ կը կենցաղին, բարի մարդիկ են առհասարակ եւ սովորականէն աւելի շատ կ՚ապրին, ինչպէս նաեւ Աղթամարի Սեւանի եւ միւս վանական երգեցողները։ Ասիայի մէջ շատ կը գտնուին ամէն դասակարգէ բուսակեր մարդիկ, որ իմաստասէր ու բանգէտ կըլլան սովորաբար։ Մխիթար Աբբայի յաջորդող Ստեփանոս Մելքոնեան Աբբան, որուն կծծութիւնն ու խստակրօնութիւնը չափազանց պախարակած է Հ. Սարգիս Թէոդորեան (Պատմ. Մուրատեան վարժ. Հաս. Դ. Էջ 569) 100 տարի ապրեցաւ։ Նմանապէս Հ. Մկրտիչ Աւգերեան մինչեւ խոր ծերութիւնն աշխատելով՝ հարիւր տարիի մօտ մեռաւ. Մխիթարեաններէն շատերն այսպէս։ Յակոբ Պատրիարքն, որ իր վերջին 15-20 տարիներուն միայն չամիչ կուտէր, հարիւր տարիի մօտ մեռաւ դժբաղդ արկածով մը։

*մէջ բանաւոր առարկութիւն մը չէ ։ Երրորդ՝ վասն զի ոչ միայն գիտութիւնն ու արուեստին կազմն, այլ կենսական կարգն ալ պէտք է նկատել ։ Միսով սնանող մանուկներուն եւ հացով ու բանջարեղէնով սնանող մանուկներուն*

---

Հիմայ ալ կը գտնուին մեր մէջ երկարակեաց ծերունիներ, որ պահքի վրայ շատ խիստ են, այսինքն՝ տարին գրեթէ կէսն առանց միսի կանցունեն, եւ ուտիքի օրերն ալ անոնց կերած միսն ինչ է որ ։ Հռչակաւոր Տերոյենց Պասուելին՝ իր բովանդակապէս չարքաշ կեանքին մէջ՝ պահք չէր աւրած ։ Նոյն իսկ խոր ծերութեանը մէջ ծանր հիւանդութեան մը ատեն՝ երբ չորեքշ. օր մը բժիշկը ժամերով յորդորած է զինքը գոնէ մէկ քանի դգալ արգանակ առնել, խստապահ պասուելին խոժոռելով միշտ պատասխանած է «Զէմ ուտեր, մինչեւ փողը չուտեմ նէ՝ չպիտի մեռնիմ ա». եւ պասուելին իր երկարատեւ մտային եւ մարմնական զարմանալի յոգնութիւններովն հանդերձ՝ երկարակեաց եղաւ, 92 տարի ապրեցաւ ։

Քիչ մը երկար մեր այս վկայութիւններս կրնան համոզել անկողմնակալ միտք մը՝ թէ Հեղինակին բածին պէս մսեղէն կերակուրներն անհրաժեշտ ու բնական պէտք մը չեն մարդու մարմնական լաւ աճումին, թէ իմացական ու մարմնական չափազանց յոգնութիւն մը տանելով հանդերձ՝ միս քիչ ուտողներն ու բնաւ չուտողներն անգամ կրցած են՝ երկար՝ քաջառողջ՝ գիտուն ու բարի ապրիլ, թէ արդի գիտութիւնն անգամ իր վերջին վճիռը տուած չէ 'ի նպաստ մսակերներուն, եւ թէ վերջապէս՝ ինչ որ Եւրոպայի մանաւանդ Անգղիայի մէջ կլիմային, քաղաքական բազմաբնակութեան ու կրօնական դրութեան կողմնակի պատճառներով հարկ մը դարձած է, ու անոնց գիտուններն ալ աւելի այս հարկէն քան իրենց ներքին անձկաւ կռապաշտութեամբ կը փաստաբանեն, չկրնար ամէն տեղ տիրապետել իբրեւ անհակառակելի ճշմարտութիւն ։

Եւրոպական քաղաքներուն մէջ՝ յիրաւի քիչ մը դժուարին է մսամալ չըլլալ, բայց միսի անհրաժեշտութեան գիտնական փաստ մը չէ այս ։ Երբ արդի գիտութեան մեզի իբրեւ ուղեցոյց ընծայելիքը՝ սովորութեանց քաոսի մը մէջ միայն ընթացիկ թել մը պիտի ըլլայ, այդպիսի գիտութիւն մը շատ հեռի է մեզ երջանիկ ընելէն ։ Քիչ մը պարզիլն ու ամփոփիլն աւելի աղէկ չէ. Դեղաղոս իսկ կծիկը մէկդի թողուց՝ երբ անգամ մը բաւիղէն դուրս ելաւ ։ Թ.

մէջ՝ այդ մասին աչքի զարնող ներհակ մը կայ ։ Թէ՛ մտաւ-
ջին եւ թէ՛ մարմնական կայտառութեան կողմէն՝ գիւ-
ղացի տղան քաղաքացի ազնուական տղայէն շատ վեր
կը մնայ ։ Եթէ իրարու հետ բաղդատենք կազմուածքի
զանազանակներն այլասեռ անասուններու կամ այլասեռ
մարդերու, եւ կամ համասեռ կենդանիներու եւ համա-
սեռ մարդերու, որ իրարմէ տարբեր եղանակով սնած են,
աւելի բացայայտ ապացոյց մը կը գտնենք այն ճշմարտու-
թեան՝ թէ մարմնական կազմն ա՛յնչափ կորովի կըլլայ
որչափ սածիչ ըլլայ կերակուրը ։

Երբ խոտի նման քիչ սնունդ տուող ճարակով մը
սնանող կով մը դիտենք՝ կը տեսնենք որ այդ անասունին
հարկաւոր եղած մեծաքանակ ուտելիքին համար մարսո-
ղական շատ կարողութիւն պէտք է. կովին անդամներն՝
իրանին համեմատութեամբ մանր ըլլալով՝ անոր բեռին
տակ կը հեծեն. եւ այդ անհեթեթ իրանը վեր բռնելու՝
միանգամայն այդ անհագին սնունդը մարսելու համար՝
մեծաքանա՛կ ոյժ կը սպառի. շատ քիչ ոյժ կը մնայ պա-
հեստի, որով անասունը շատ գործի չի գար ։ Եթէ կովին
հետ բաղդատենք ձին, որուն կազմածը գրեթէ նոյն է
կովին կազմածին հետ, բայց որ աւելի խիտ ճարակներու
սովորած է՝ ձիին իրանը՝ մանաւանդ փորն անդամներուն
համեմատութեամբ կովին իրանէն աւելի փոքր պիտի
գտնենք ։ Ձին՝ կովին նման խոշոր ընդերքի մը ծանրու-
թեան տակ չհեծեր, ոչ ալ այնքան առատ ճարակ մը՝
մարսելու համար ներքին ոյժ կը սպառէ. ուստի՝ աւելի
ժիր հրընթաց ու կայտառ է ։ Նոյնպէս՝ եթէ բաղդատենք
խոտակեր ոչխարներու թանձրադանդաղութիւնը շուներ-
րուն դիւրաթեքութեան հետ, որ կամ մսեղէն կամ խը-
մորեղէն եւ կամ այս երկուքէն խառն սնունդ մը կառ-
նեն, կը տեսնենք որ անոնց մէջ տեսակի նո՛յն տարբե-

տութիւնը կայ, որ դիւրաշարժութեան մասին աւելի մեծ է։ Երբ երթանք անասնաբանական պարտէզը, նկատենք հոն թէ մսակեր անասուններն որպիսի՛ անդուլ ժրութեամբ իրենց գառագեղին մէջ կերթեւեկեն, եւ միտք բերենք որ խոտաճարակ կենդանիները սովորաբար չունին այս տարապայման առուգութիւնը՝ շատ կը հասկընանք թէ խիստ ու սնուցիչ ճարակներին ինչ հզօր ազդեցութիւն մը կընեն անասուններու գործունէութեան վրայ։

Չկարծուի թէ այս տարբերութեանց պատճառն անասուններուն կազմուածքին տարբերութիւնն է. այլ անոնց առած ճարակին տեսակն է. ուղղը կրնայ փորձել զայս՝ նկատելով միեւնոյն տեսակի անասուններուն մէջ եղած տարբերութիւնները։ Այլ եւ այլ կարգի ձիեր ասոր օրինակ կրնան ըլլալ. բաղդատէ՛ սայլորդին լայնփոր ու ծանրաշարժ ձին արշաւի կամ որսի ձիի մը հետ՝ նրբին կողերով եւ հուժկու անդամներով. առաջինին առած սնունդն՝ երկրորդինէն նուազ սնուցիչ է. կամ եթէ կուզես՝ մարդկային սեռէն օրինակ մը ա՛ռ. Աւստրալիացին Հոտենդոտցին եւ միւս յետնորդ վայրենիներն, որոնց սովորական կերակուրներն են արմատներ, խոտ՝ միջատներ եւ ուրիշ անճարակ մսեղէններ՝ փոքրամարմին եւ լայնորովայն են. անոնց ջիղերը թոյլ եւ ազազուն են, ու չեն կրնար մրցիլ աղէկ սնած մարդերու հետ։ Բայց ասդին՝ Բափրատանցիներն Հիւսիսային Ամերիկայի Հնդիկներն ու Բաղակոնները՝ գեղադիտակ հուժկու եւ ժիր են, վասն զի շատ միս կուտեն։ Դէշ սնունդ առնող Հնդկաստանցին չկրնար մրցիլ լաւ սնունդ առնող Եւրոպացիի մը հետ, մտային ու մարմնական կորովի կողմէն անկէ շատ վար կը մնայ, վասն զի ասոր կերակուրն աւելի կազդուրիչ է։ Եւ պատմութիւնն ալ վկա՛յ է՝ թէ լաւ սնանող ցեղերն հզօր եղած են։

Մեր այս փաստաբանութիւնն աւելի ոյժ կառնէ՝ երբ գիտենք որ միեւնոյն անասունն իր առած սնունդին համեմատ աշխատելու շատ կամ քիչ կարող կըլլայ։ Ձիերուն վրայ փորձուած է այս. Թարմ խոտ ճարակող ձիերը թէպէտ եւ կը գիրնան, բայց ոյժերնին վրայ կուտան. ինչպէս կրնանք ստուգել զայս երբ անոնք աշխատիլ սկսին. «Թարմ խոտ ուտող ձիին ջղային կազմածն իսկոյն կը թուլնայ», «Թարմ խոտերը շատ յարմար են վաճառանոցի համար գէր կովեր պատրաստելու, բայց բնաւ օգուտ մը չունին որսի ձիեր պատրաստելու»։ Ամէն տարիի փորձով ստուգուած է՝ որ որսական ձիերուն ամառը դաշտային խոտերով ճարակեցունելէն ետեւ՝ հարկ կըլլայ նաեւ քանի մը ամիս սնուցանել անոնք ախոռներու մէջ, որպէս զի կարող ըլլան հասնիլ որսի բարակներուն, եւ հազիւ թէ մինչեւ միւս գարունին աղէկ մը կրնան զօրանալ։ Այսպիսի ձիեր տածելու համար՝ Պ. Սրբըլի սա նոր նշանակը կը ցուցնէ «առատաքոյ կարգի եւ շատ յարմար պարագաներէ զատ՝ պէտք չէ արտն հանել որսի ձիերն, այլ պէտք է միշտ ախոռին մէջ սնուցանել անոնք» եւ այս՝ ըսել է թէ պէտք չէ երբէք դէշ սնունդ մը տալ անոնց։ Շարունակ սնուցիչ ճարակ տալով միայն կարելի է կորովի եւ դիմացկուն ձիեր հասցունել. եւ այս շատ ճշմարիտ է, ինչպէս Պ. Սրբըլի ալ կըսէ, միջակ ձի մը երկար ատեն լաւ ճարակ առնելով՝ կրնայ հաւասարիլ առաջին կարգի ձիի մը։ Ամէնուն յայտնի է որ երբ հարկ ըլլայ կրկնապատիկ աշխատցունել ձի մը՝ սովորաբար բակլայ կը կերցունեն անոր, որուն բորակային հիւթն աւելի առատ է, եւ սովորաբար տրուած վարսակէն աւելի յարմար է նեարդային հիւսք կազմելու։

Գալով մարդու՝ անոր վրայ տարբեր սնունդներու ըրած տարբեր ազդեցութիւնն աւելի ակներեւ է. մէկ

*կողմ թողլով ըմբիշներուն կերակուրի կանոնն, որ կէտ առ կէտ այս դրութեան վրայ յօրինուած է. դիտենք միայն երկաթուղիներու վարիչներուն եւ իրենց գործաւորներուն վրայ տեսնուած օրինակները: Ստուգուած է որ միսով սնանող բնիկ հողկիր մը՝ խմորեղէնով սնանող այլաշխարհի հողկիրէն աւելի կրնայ աշխատիլ: Ասոր համար է՝ որ երկաթուղի կառուցանելու ձեռնարկողները լաւ կերակուրով սնած մարդիկ կաշխատցունեն. եւ այս շատ շահաւոր կըլլայ իրենց: Բնիկ գործաւորին առաւելութեան պատճառն՝ իր առած սնունդն է. երբ միւս ազգին գործաւորներն ալ լաւ սնանին, անոնք ալ՝ թէ՛ գործունէութեան թէ՛ ոյժի կողմէն բնիկներուն շատ կը մօտենան: Ներուի մեզի ասոնց վրայ մեր անձնական վկայութիւնն ալ աւելցունել. մենք վեց ամիս՝ մի միայն բուսական սնունդներով ապրեցանք, եւ այս միջոցին անձնական փորձով տեսանք թէ մարդ՝ միս չուտելով թէ՛ մարմնական թէ՛ իմացական կորովը վրայ կուտայ (1):*

*Այս զանազան օրինակները բաւական են հաստատելու մանուկներու սնունդին վերաբերեալ մեր կարծիքը: Ենթադրելով անգամ՝ թէ նուազ սնուցիչ սնունդով կարելի է աւելի աղէկ գիրութիւն մը ձեռք բերել, դարձեալ նեարդային հիւսքի որակին մէջ մեծ տարբերութիւն մը կը մնայ: Աղէկ աճելու եւ զօրանալու համար՝ անպատճառ հարկ է լաւ սնունդ: Դարձեալ մեր նշանակած օրինակները կը հաստատեն այն սկիզբն եզրակացութիւնը՝ թէ իրաւ մարմնական ու իմացական քիչ աշխատութեան*

---

(1) Իսկ մենք՝ տարի ու կէսի չափ կրցանք՝ առանց միսի եւ շատ-քիչ անգամ բուսական սնունդ առնելով՝ ապրիլ միայն մածուն հացով. առ այժմ հաւաստի բան մը չենք կրնար ըսել մարմնական ու իմացական կորովի կորուստի մասին, բայց բարոյական զգացումներու կողմէն շատ լաւ ազդեցութիւններ ունեցանք: Թ.

անթակայ մանուկները միայն խմորեղէններով կըրնան աղէկ սնանիլ, բայց ջղային ու իմացական շատ հրահանգներ ընելու սորվուած մանուկներն՝ հարկ է ամենէն աւելի շատ սնանիչ տարրեր պարունակող սնունդներ, որպէսզի բաւեն թէ՛ այդ ծանր աշխատութենէն թէ՛ նորագոյն հիւսքի կազմութեան։ Ասոր ճշմարտութեան ակներեւ նշանը կը տեսնենք երբ գիտենք՝ որ այս ամէնատարածիչ կերակուրներէն զրկուած մանուկները թէ՛ բնական աճումի թէ՛ մարմնական ոյժի եւ թէ՛ իմացական կորովի կողմէն ետ կը մնան՝ պարագաներուն եւ իրենց կազմածին համեմատ։ Կարծենք ամէն ողջամիտ մարդիկ ասոր վրայ չպիտի երկմտին. եւ հակառակը խորհողներն՝ ոչինչէն մարմնական եւ մտային զօրութիւն արտադրելու նման բան մը խորհած կըլլան։

Կերակուրի խնդիրն աւարտելէ առաջ՝ հարկ է մեզի մէկ քանի խօսք ընել կերակուրի պէսպիսացումին վրայ։ Պէսպիսութեան համար գրուած կանոնները շատ թերի են. մեր զաւակները՝ « քանի տարի շարունակ խաշած միս ուտելու » դատապարտուածներուն պէս՝ միօրինակութեան մը դատապարտուած են, որ նոյնպէս դէմ է առողջաբանական սկզբունքի։ Թէպէտ եւ ճաշի ատեն քիչ շատ պէսպիսացեալ սնունդ մը կը տրուի անոնց, որ ամէն օր բերանփոխ կըլլայ. բայց եօթնեակին ամէ՛ն օրերն, ամիսի ամէ՛ն եօթնեակներն, ու տարիին ամէ՛ն ամիսները՝ միեւնոյն պանիր հացը կամ կաթն ու հացը կամ միեւնոյն վարսակի-թեփապուրը կը նախաճաշեն։ Եւ նո՛յն յարատեւութեամբ ամէն իրիկուն կուտան անոնց՝ դարձեալ պանիր հաց կամ կաթ ու հաց եւ կամ թէյի հետ կարագով հաց՝ իբրեւ երկրորդ տպագրութիւն նախաճաշին։

Այս սովորութիւնը դէմ է բնախօսական կանոններու։ Շատերն հարեւանցի մտածութեամբ կը կարծեն՝ թէ ամէն

տանն միեւնոյն բանն ուտելէն յառաջ եկած յափրանքն, եւ երկար ատենէ հետէ չճաշակուած ուտելիքէ մը ըղձացուած ախորժը՝ նշանակութեան արժանի բաներ չեն. բայց պէտք է գիտնալ որ ասոնք խորհրդաւոր ազդումներ են, որով բնութիւնը կը դրդէ մեզի պէսպիսացունել մեր կերակուրի տեսակները ։ Շատ մը փորձերով հաստատուած ճշդութիւն մըն է՝ թէ չիկայ բնաւ ոչ մէկ տեսակ կերակուր (թո՛ղ ըլլայ ամէնէն ընտիր տեսակը) որ կեանքի կանոնաւոր գործունէութեանց պէտք եղածին չափ յարմար տարրեր հայթայթէ. ուստի՝ պէտք է պէսպիսացունել սնունդի տեսակներն, որպէս զի այդ կենսական տարրերն համեմատ չափով մը մատակարարին ։ Բնախօսները կը հաստատեն նաեւ՝ թէ շատ ախորժուած կերակուրէ մը զգացուած հաճոյքը՝ ջիղերը լաւ գործունէութեան մը կը գրգռէ, եւ մարսողութիւնն ալ կը դիւրացունէ՝ երագելով ստամոքի գործողութիւններն ու աւելի ուժգնութեամբ մղելով արիւնն իր շրջագայութեան ։ Այս ճշմարտութիւններն համաձայն են արդի անասնաբուծութեան կանոններուն, որ կը տրամադրեն անասուններուն ճարակն ալ պէսպիսացունել ։

Առողջաբանական հայեցուածով ոչ միայն սնունդի երբեմն փոփոխութիւնը շատ փափագելի է, այլ նաեւ շատ աղէկ կըլլայ՝ եթէ ամէն կերակուր խառն նիւթերով բաղադրուած ըլլայ. մէկ տեսակ կերակուրի մը մէջ անգամ այլ եւ այլ տարրերու ճիշդ խառնումն, որմէ ջղային ազդու գրգռութիւն մը կը պատճառի, պարբերական պէսպիսութեան նման աղէկ կը ներգործէ ։ Ասոր իբր ապացոյց կը նշանակենք այն՝ թէ ստամոքին համեմատաբար շատ դիւրաւ կը մարսէ Փրանսական ճաշ մը, որ ըստ քանակին չափազանց շատ է, բայց անոր բաղկացուցիչ մասերը վերջին աստիճան պէսպիսացուած են ։ Այդ քա-

նախկին չափ մի միայն տեսակէ կերակուր մը որչափ ալ աղէկ խահագործուած ըլլայ՝ անհնար է որ նոյն դիւրութեամբ մարսուի։ Ասկէ աւելի ապացոյց ուզողը՝ թո՛ղ կարդայ անասնապահական արդի գիրքերը. անասուններն աղէկ կը զարգանան՝ երբ իրենց առած ճարակը շատ բաներէ բաղադրուած ըլլայ։ Կոսի եւ Սթարքի փորձերը՝ «ստամոքսի պաշտօններուն ամէնայարմար մամայն արտադրելու համար՝ սննդական այլ եւ այլ նիւթերու խառնուածին օգտակարութեան կամ մանաւանդ հարկաւորութեան վճռական ապացոյց մը տուած են» (Հանրագիտարան անդամագիտութեան ու բնախօսութեան)։

Թերեւս ըսուի՝ թէ մանուկներու համար սնունդի փոփոխութիւնն եւ կերակուրներու պէսպէս խառնուածը՝ ծանր յոգնութեանց դուռ կը բանայ. ասոր պատասխան կուտանք որ՝ ինչպէս անոնց իմացական զարգացումին համար ամէն յոգնութիւն կը թափենք՝ նոյնպէս եւ աւելի՛ իսկ պէտք է աշխատինք անոնց մարմնական զարգացումին՝ իրենց ապագայ բարօրութեան համար։ Շիտակը՝ տրտմալի ու այլանդակ բան է՛ որ պարարտ ոչխարներ ու խոզեր հասցունելու համար ա՛յնչափ աշխատութիւն յօժարութեամբ յանձն կառնենք, եւ երբ կարգը զաւակ մեծցունելու գայ՝ յոգնութիւն կ՚իմանանք։

Մեր առաջարկած կանոնն ընդունողները պարտին նաեւ գիտնալ՝ թէ պէտք է կամաց կամաց գործադրեն կերակուրի այս փոփոխութիւնն եւ ոչ թէ յանկարծակի. վասն զի եթէ մանուկն երկար ատեն նուազ սնուցիչ սնունդներով կերակրուած է՝ մարսողական դրութիւնն ա՛յնպէս խանգարուած կըլլայ որ չկրնար անմիջապէս մարսել զօրաւոր սնունդ մը։ Արդէն՝ անբաւական սնունդն ինքնին պատճառ մըն է դժուարամարսութեան. անասուններուն վրայ իսկ կը ճշմարտի այս։ «Երբ դիեցիկ

հորթեր՝ միայն կորած կաթով կամ չխճուկով եւ կամ ուրիշ անզօր ճարակով մը սնանելին՝ իրենց մարսողութիւնը կը դժուարանայ». (Մորզոն, Երկրագործական Համրագիտարան)։ Ասոր համար է որ երբ անասունը վաղոյժ ըլլայ՝ հարկ կըլլայ քիչ քիչ վարժեցունել զայն ընտրագոյն ճարակներու. կորովն ո՛րչափ աճի՝ սնունդն ալ նոյն չափով պէտք է աճի։ Պէտք է նաեւ աղէկ միտք պահել՝ որ չափէն աւելի խճողելու չէ սնածիչ հիւթերը. ամէն կերակուրի առնելն՝ ստամոքսը լեցունելու չափ սնունդի զանգուած մը հարկ է, եւ ասկէ կը հետեւի որ կերակուրին զանգուածը պէտք է որոշեալ չափով մը ըլլայ։ Թէպէտ եւ լաւ սնունդ առնող քաղաքացիներ անձերու մարսողական գործարաններուն չափը՝ գէշ սնունդ առնող վայրենիներուն մարսողական գործարաններու չափէն փոքր է, եւ թերեւս այս չափն երթալով պիտի նուազի ալ, սակայն առ այժմ պէտք է մարսելի կերակուրներուն զանգուածն իւրաքանչիւր ստամոքսի կարողութեան համեմատ չափն ունենայ։ Կեզրակացունենք ուրեմն՝ որ այս համեմատութիւնը պահելով հանդերձ՝ պէտք է մանուկներու կերակուրը վերջին ծայր սնածիչ ըլլայ, իւրաքանչիւր տեսակ ու ամէն անգամի կերակուր՝ խառն փոփոխական ու առատ ըլլայ։

Սնունդի պէս՝ հագուստի մասին ալ անտեղի խստութեան մը կը միտինք. հո՛ս ալ ճգնաւորական տարազ մը առած ենք։ Աշխարհի վրայ սովորական կարծիք մը գոյացած է (թէպէտ եւ տարբեր կերպով եւ առանց առնելու որոշ կանոնաբանի մը կերպարանը) թէ «բանի տեղ դնելու չէ մեր զգայարանքը»։ Այս կարծիքն իր ամէնապարզ ձեւին մէջ կը նշանակէ՝ թէ զգայարանք մեր կենցաղին ուղեցոյցն ըլլալու համար հաստատուած չեն, մանա-

տանող անոնք մեզ կը վրիպեցունեն ալ։ Բայց մեծ սխալ մըն է այս․ վասնզի մեր բնական կազմուածքը կենցաղը ամէնէն օգտակար կերպով լարուած է, եւ մարմնական աղէտներու ենթակայ կըլլանք անոր համար որ զգայարանքի թելադրութեանց կընդդիմանանք՝ փոխանակ համակերպելու անոնց։ Անօթութեան ատեն բան ուտելը չէ՛ որ վնաս կուտայ, այլ կուշտ եղած ատեն ուտելը․ ոչ թէ ծարաւի եղած ատեն խմելը, այլ ծարաւն անցունելէն ետե՛ւ ալ խմելը մոլութիւն է։ Թարմ օդը չնչելէն չէ որ վատողջութիւն յառաջ կուգայ, այլ թոքերու խեղխայթիւը մտիկ չընելով՝ անմաքուր օդի մէջ շունչ առնելէ տալէն։ Բնութիւնը կը գրգռէ մեզ առողջարար մարզանքի, ինչպէս որ աւելի յայտնապէս կը տեսնենք այս բնագրըգիտը մանուկներուն վրայ․ եւ մենք դէմ դնելով այդ գրգռումներուն՝ մեր անձին խիստ վնաս կուտանք։ Մտային յօժարակամ ու ախորժ գործունէութիւնը չէ՛ որ վնասակար է, այլ այն անախորժ գործունէութիւնն, որ կը յարատեւենք գլուխի ցաւերն եւ ուղեղի գրգռութիւնները բանի տեղ չդնելով։ Դարձեա՛լ՝ մարմինի ախորժելի ինչ եւ խիստ մարզանքը չէ՛ որ վնաս կուտայ, այլ այն յամառ ու երկարատեւ մարզանքն, որ կը շարունակենք մինչ յայտնապէս կըզգանք մեր սպառիլը։ Իրա՛ւ է որ թերաառողջ կենցաղ մը վարող անձերու զգայարանքը շատ վըստահելի գրգռումներ չեն ըներ, այն մարդիկ՝ որ տարինելով ապրած են դռնփակ սենեակներու մէջ, եւ ուղեղնին չափազանց աշխատեցուցած են մարմնական գրեթէ անշարժ վիճակի մը մէջ, եւ ժամացոյցի ազդումներուն հպատակելու համար միայն բան կերած են՝ առանց անսալու ստամոքսի բնական պահանջքին՝ այդ մարդիկ ենթակայ են միշտ իրենց աւրուած զգայարանքին միջոցաւ մոլորելու․ բայց իրենց այդ անկարգ վիճակն՝ իրենց ըղ-

զգայարանքին սկզբնական թելադրութեանց չանսալնուն ճի՛շդ հետեւանքն է։ Եթէ իրենց մանկութենէն հետէ ամենեւին անհնազանդութիւն ըրած չըլլային, փիզիքական խիղճ ըսուած դրդումներուն՝ իրենց զգայարանքն այդպէս չպիտի բթանային, այլ անոնք միշտ հաւատարիմ ազդարարներ պիտի ըլլային բնական օրէնքին։

Տաքի ու պաղի զգացումներն ալ՝ բնական ուղեցոյցներ են մեզի. մանուկներն հագուեցունելու եղանակին մէջ անպատճառ հաշիւի առնելու է այս զգացումները։ Աղիտաբեր ըլլալու չափ սխա՛լ է այն սովորական կարծիքը թէ — պէտք է չարքաշութեան վարժեցունել մարմինը։ — «Չարքաշ» մեծցունելու ծայրայեղ դրութեան երեսէն շատ մանուկներ մեռած են, եւ այդ դրութեամբ մեծցածներն ալ թէ՛ վատառողջ թէ՛ աճելու անընդունակ կըլլան։ «Իրենց բորակցած դէմքին վրայ դրոշմուած է այս չարքաշութեան դալուկը, կըսէ Տօքթ. Քոմպ, եւ անոնց յաճախ հիւանդանալը խրատ մըն է անխելք ծնողքին՝ թէ իրենց բռնած ճամբան մոլոր է»։ Չարքաշութեան ի նպաստ եղած փաստերը չքոտի բաներ են. բարեկեցիկ մարդիկ՝ տեսնելով որ բաց օդին տակ գիւղացի մանուկները կիսամերկ կը խաղան, եւ անոնց ծնողքն ալ առոյգ կազմած մը ունին՝ կը հետեւցունեն թէ անոնց քաջողջութեան պատճառն անոնց թեթեւ հագուստն է։ Ուրեմն՝ կըսեն մեր զաւակներն ալ թեթեւակի հագուեցունենք. չեն մտածեր թէ գիւղերուն հրապարակներուն վրայ վազվըռտողներուն կենցաղն՝ ուրիշ շատ պարագաներով անոնց առողջութեան նպաստաւոր է, թէ անոնց բովանդակ օրերն անվերջ խաղերով կանցնին, անոնք օրն ի բուն մաքուր օդ կը ծծեն, եւ իրենց միտքը բնաւ յոգնած չէ իմացական չափազանց աշխատութեամբ։ Ուստի՝ հագուստին թեթեւութենէն չէ՛ որ անոնք առողջ կըլլան,

այլ մեր նշանակած վերջին պարագաներն են անոնց հայտառութեան պատճառներն, որով թէպէտ եւ թեթեւհագուած՝ սակայն քաջակազմ են։ Կարծենք՝ մեր այս եզրակացութիւնը ճիշդ է, եւ անոնց հագած թեթեւ լաթերուն պատճառով եղած կենսական ջերմութեան կորուստը՝ վնասակա՛ր ալ է անոնց։

Այդ լաճերն՝ եթէ իրենց կորովլի կազմին պատճառով խիստ ցուրտերու դէմ ալ դնեն, սակայն դարձեալ արագ աճումի կողմէն ետ կը մնան. անասուններուն վրայ ալ կը ճշմարտի այս։ Շէթլանտ կղզիին բոնի ըսուած երիվարներն՝ հարաւային Անգղիայի երիվարներէն աւելի կը դիմանան անհարթ օդերու, բայց ցած կը մնան. Սկովտիայի լեռներուն ոչխարներն Անգղիական ոչխարներուն քով ցածուկ արարածներ են. արջային ու հակարջային բեւեռներուն բնակիչներուն հասակը՝ մարդկային սովորական հասակէն ցած է. Լաբոնները ու Եսքիմայինները կարճուկ մարդիկ են, եւ Տարուին կըսէ՝ թէ Մաճելլան կըղզիներուն բնակիչներն, որ ցրտին կլիմային ներքեւ մերկ կը կենցաղին, ա՛յնքան տգեղ ու կարճահասակ են՝ որ «մարդ կերկմտի մարդ անուանել անոնք»։

Գիտուններուն խօսքին նայելով՝ այս կարկամութեան գլխաւոր պատճառը կենսական ջերմութեան նուազումն է՝ իրենց սնունդն ու հագուստն եւայլն հաշիւի չառնելով։ Որովհետեւ, ինչպէս վերն ըսած ենք, մարդկային մարմինէն ճառագայթեալ ջերմութեան կորուստին տեղը լեցնելու համար՝ պէտք է անդադար կարգ մը նիւթերու թթուածում մը տեղի ունենայ, ներքին ջերմութեան կորուստն ո՛րչափ մեծ ըլլայ՝ թթուածնային նիւթերուն քանակն ա՛յնչափ շատ ըլլալու է։ Բայց մարսողական գործարաններուն ոյժը չափ մը ունի. ուստի՝ մարմինը բարեխառնութիւնն անայլայլ պահելու համար, մեծաքա-

նակ նիւթեր պատրաստելու ատենն՝ կազմական զօրութեան համար շատ քիչ նիւթ կրնան հայթայթել։ Ածխային նիւթերու մեծաքանակ սպառումին պատճառով՝ ուրիշ պէտքի մը սահմանեալ կարեւոր նիւթերուն քանակը կը նուազի․ որով մարմինն 'ի հարկէ կարճ կը մնայ, կամ նեարդային հիւսքին տեսակը գէշ կըլլայ․ եւ կամ այս երկուքն ալ նկուն կը մնան։

Աստր համար անհրաժեշտ հարկ է կարեւորութիւն տալ հագուստի․ ինչպէս Լիէպիկ կըսէ «մարմինի բարեխառնութեան համար՝ հագուստը չափ մը սնունդի տեղ կը բռնէ»․ հագուստը՝ կենսական ջերմութեան կորուստը նուազեցունելով՝ մարմինի բարեխառնութեան պահպանումին համար ածխային նիւթերու պէտքն ալ կը նուազեցունէ, եւ երբ մարսելու համար ստամոքսը քիչ ածխային նիւթ ունենայ՝ աւելի ոյժով կը պատրաստէ միւս նիւթերը։

Անասնաբոյծներուն փորձովն հաստատուած է այս հետեւութիւնը․ ցուրտն՝ անասուններուն պարարտութեան, ջղային կազմածին, կամ անոնց աճումին վնաս կու տայ․ «պարարտանալու համար դաշտերը ձգուած անասուններն երբ պաղ առնեն՝ եւ եթէ անոնց սնունդը մեծ քանակութեամբ չաւելցունենք՝ շատ ուշ կը պարարտանան» (Մորգոն․ Երկրագործական հանրագիտարան)։ Գ․ Աղբիւր խառնել կը պատուիրէ թէ տաք պահելու է ոտքի ձիերուն ախոռն, որպէս զի անոնք հուժկու կազմ առնեն, եւ արջառի ձիեր տածողները միշտ կըզգուշանան՝ որպէս զի անոնք պաղ չառնեն։

Բարուագիտութեան ապացուցած եւ երկրագործներէ ու ձիապաններէ ընդունուած գիտնական այս ճշմարտութիւնը՝ մանուկներուն համար ա՛լ աւելի ազդու կերպով կը յարմարի։ Մանուկն ո՛րչափ փոքրահասակ ըլլայ եւ

որչափ արագ աճի՝ նոյն չափով ծանր կըլլայ ցուրտէ յառաջ եկած վնասը։ Կան տեղեր ուր ձմեռ ատեն աշխարհ եկած երախաները բաւական թիւով կը մեռնին՝ արձանագրուելու համար քաղաքապետութեան գրամատեանը տարուած ատեն։ Պ. Գեդըլէ (1) վիճակագրական հաշիւով գտած է՝ որ Պելճիգայի մէջ Յուլիս ամիսին մեռած մէկ նորածին երախայի դէմ երկու երախայ կը մեռնի Յունուար ամիսին, իսկ ցուրտ երկիրներու մէջ մեռած երախաներու թիւն ահագին է։ Մինչեւ իսկ՝ երբ երիտասարդը չափահաս ըլլայ՝ անոր թերակազմ մարմինն համեմատաբար դեռ անընդունակ կըլլայ անբարեխառն եղանակներուն դիմանալու, ինչպէս դժուարին ճակատներու մէջ երիտասարդ ձիաւորները շուտ շուտ կիյնան. եւ ասոր պատճառը շատ յայտնի է։ Արդէն ըսինք որ իրենց մարմինի զանգուածին անոր մակերեւոյթին խոտոր համեմատութեան պատճառով՝ տղան չափահասէ մը աւելի ներքին ջերմութիւն դուրս կուտայ. եւ հոս պէտք է դիտել տանք որ մանուկներուն կրած վնասը չափահասներէն շատ մեծ է։ Լեհման կըսէ՝ թէ երբ մանուկներու եւ մատաղ անասուններու արտաշնչած ածխային թթուն հաշիւի առնենք՝ իրենց մարմինին ծանրութեան հետ բաղդատելով՝ կը տեսնենք որ մանուկները չափահասներէն երկու անգամ աւելի ածխային թթու կարտադրեն։ Արդ՝ արտաշնչեալ թթուին քանակը բաւական ճշդութեամբ կը փոփոխի արտադրեալ ջերմութեան համեմատ։ Հետեւաբար մանուկներու կազմածն՝ յաջող պայմաններու մէջ

(1) Պ. Գեդըլէ (1796-1874) Պելճիգացի գիտունն, որ ստեղծեց ազգերու բարոյական ու նիւթական զարգացումի օրէնքին ցուցադրութիւն համարուած վիճակագրութիւնը։

անգամ՝ պէտք է կրկին չափով մատակարարէ ջերմութեան արգասաւոր հիւթերը։

Դատեցէ՛ք ուրեմն. արդեօ՛ք ծայրագոյն յիմարութիւն մը չէ՞ թեթեւ լաթեր հագցունելը։ Որ չափահաս հայրն՝ որուն հարկ է մարմնային հիւսքին հանապազորդ լրացումը միայն եւ որ իր զաւակէն շատ նուազ արագութեամբ ջերմութիւն կը կորսնցունէ՝ առողջարար բան մը կը սեպէ՝ սրունքը բաց, բազուկները բաց, վիզը բաց դուրս ելնելը։ Սակայն տե՛ս որ առանցմէ զգուշացող հայր մը՝ կենսական ջերմութեան այդ կորուստին ենթակայ կընէ իր մանրիկ զաւակները, որ բնաւ չեն կրնար դիմանալ անոր. եւ եթէ ինքն անձամբն այդ բանը չընէր ալ՝ երբ ուրիշները ընեն՝ բնաւ ձայն չհաներ։ Այդ հայրը թո՛ղ մտածէ որ անհարկի կերպով սպառած սննդական հիւթի ամէն մէկ տրամը՝ մարմինի աճումին յատկացած նիւթերէն նոյն չափով սպառում մըն է, եւ եթէ այդ մանուկներին հարբուխէ կամ պնդութենէ եւ կամ ուրիշ հետեւեան հիւանդութենէ մը չբռնուին ալ՝ իրենց աճումին կամ կազմութեան կատարելութեան կողմէն անպատճառ վրայ կուտան։

«Ուրեմն՝ պէտք է կանոն բռնել ամէն ատեն մի եւ նոյն զգեստը չհագնիլ անփոփոխ, այլ հագնիլ այնպիսի զգեստներ՝ որ թէ՛ տաքի թէ՛ խոնաւի կողմէն բաւական ըլլան մարմինը պահպանել աննշմարելի ցուրտէն անգամ։ Այս կանոնը Տօքթ. Քոմպ նոսր գիրերով կը նշանակէ, եւ ամէն գիտուն ու փորձառու մարդիկ կը հաստատեն։ Այս խնդիրին վրայ ճիշդ դատաստան ընելու անատակ մարդիկ՝ միշտ պատրաստած են մանուկներուն մատղաշ անդամները բաց օդին ենթարկելու սովորութիւնը։ Գէթ այս խնդիրին մէջ՝ անպատճառ պէտք է թօթափել նորաձեւութեան քմայքին հետեւելու մոլութիւնը։

Ցաւելու բան է որ խել մը մայրեր պատճառ կըլլան իրենց զաւակներուն հիւանդութեանց՝ խենդ ու խելառ նորաձեւութեան մը հետեւելու համար: Իսկ թէ իրենց իսկ հագուելու չքուելու եղանակին մէջ՝ խօլ մօտաներուն հետեւիլն հերիք չըլլար, իրենց զաւակներն ալ կը հագուեցունեն հոպլիտի տարազներով՝ կնիկներու սուրհանդակ ըսուած լրաթերթին թելադրութեանց համեմատ. խեղճերը չեն գիտեր որ այդ ագանելիք՝ ոչ դիւրակիր են եւ ոչ ալ բաւական. ի՜նչ այլանդակութիւն: Հէք մանուկներուն անտանելի նեղութիւններ կուտան, եւ պատճառ կըլլան անոնց հիւանդութեանց, անոնց մարմինին զարգացումը կը խափանեն կամ անոնց ներքին կազմածը կը մաշեն: Շատ անգամ ալ պատճառ կըլլան անոնց տարաժամ մահուան, վասն զի՝ անհրաժեշտ կը սեպեն մօտային համեմատ ձեւել իրենց սիրելի կերպաները: Այսպէս՝ մայրերը մօտայի մոլութեամբ վարակած՝ պէտք եղածին պէս չհագուեցունելով իրենց մանուկներն՝ ոչ միայն պատճառ կըլլան անոնց գէշութեան, այլ նաեւ քանի կը հագցունեն անոնց ա՛յնպիսի զգեստներ, որ կը խափանեն անոնց առողջաւէտ ժրութիւնը: Ակնահաճոյ ըլլալու համար այնպիսի՝ երփներանգ ու նուրբ լաթեր կընտրեն, որ մանուկներու ազատ խաղերուն մէջ հարկ եղած աննկատ շարժումներուն ամենեւին չեն յարմարիր. եւ որպէս զի այդ հագուստները չաղտոտին՝ ազատ խաղալն ալ կարգիլեն անոնց: «Շո՛ւտ, վեր ելի՛ր. նոր բաճկոնդ պիտի աղտոտես» կըսէ մայրը չարաճճի մանուկին, որ գետինն 'ի վար տապլտըկելու վրայ է. անդին «Հո՛ս եկուր, գուլպաներդ պիտի աղտոտես» կը պոռայ սպասուհին մանուկի մը, որ չիտակ ճամբայէն դուրս ելնելով՝ կաչխատի մագլցի պնալ խճայատակին վրայ. անա այս կերպով չարիքը կը կրկնապատկի: Որպէս զի անոնք

չքեղ ու սիրուն երեւին իրենց մօր ճաշակին համեմատ, եւ անմանողներն հրաման անոնց վրայ՝ կըստիպին հագնիլ կարճ՝ ու բարակ զգեստներ. եւ որպէս զի այդ բարակ հագուստները չհինան ու չաղտոտին՝ կըստիպին զսպել իրենց բնական ու հարկաւոր անհանդարտութիւնը: Ու տեսէ՛ք, ասոր հետեւանքն ի՛նչ կըլլայ. հագուստն անբաւական ըլլալուն համար՝ հարկ է անպատճառ մարմինը շարժումի մէջ դնել, եւ ծնողք՝ ճի՛շդ այս շարժումն արգիլելով է որ կրկնակի վնաս կը պատճառեն: Ի՞նչու չեն ուզեր հասկընալ՝ որ այսպիսի ընթացք մը յետին անգըթութիւն է:

Մենք համարձակ կըսենք՝ որ ամէն տարի հազարաւոր հէք արարածներ զոհ կերթան ցուցամոլութեան այս նախապաշարումին. շատերը կը կորսնցունեն առողջութիւննին ու կորովնին, եւ կենցաղի մէջ անյաջողութեան կը դատապարտին. մաս մըն ալ՝ տարաժամ մահով մայրենի նանրասիրութեան Մողոքին բագիններուն մէջ ողջակէզ կըլլայ: Մենք՝ խիստ կանոնները սիրողներէն չենք. բայց մօտայի չարիքն օր օրի այնպէս զօրանալու վրայ է՝ որ անոր առաջքն առնելու համար հարկ է ընտանիքի տէր հայրերը կտրուկ կերպով միջամտեն:

Կեզրակացունենք ուրեմն՝ մանուկները չափէն աւելի հագուստներով բեռնաւորելէն ու ծայրայեղ կերպով անոնք ջեռուցանելէն զգուշանալով հանդերձ՝ պէտք է այնպէս հագուեցունել անոնք որ սովորական ցուրտերէն ալ չվնասին: Բամպակէ կտաւի կամ հաստարակ խառն մանածներէ հագուստներու տեղ՝ աւելի աղէկ կըլլայ այնպիսի զգեստ մը հագցունել մանուկներուն, ուրկէ դիւրաւ դուրս չելնէ ներքին ջերմութիւնը. աւելի աղէկ կըլլայ անոնց հագցունել խոշոր բրդեղէն մը: Նաեւ՝ անոնց հագածը պէտք է դիմացկուն ըլլայ՝ որպէս զի դէմ

ցնէ մանկական ընդոստ խաղերուն, եւ գոյնն ալ այնպիսի գոյն մը ըլլայ՝ որ դիմանայ արեւի ու երկար գործածութեան։

Հիմա շատերն հասկցած են մարմնամարզի կարեւորութիւնը. ուստի՝ գէթ փոքրիկ մանուկներուն համար՝ թերեւս այնչափ հարկաւոր չէ մարմնական այս կրթութեան վրայ ալ խօսիլ, թողլով միւս շատ մը կարեւորագոյնները։ Հասարակ ու մասնաւոր ամէն վարժարանները մարմնամարզի քիչ շատ յարմար վայրեր ունին, ուր ուսանողները քիչ մը ատեն բաց օդին տակ խաղալու եւ մարմնամարզի կը պարապին։ Ըսել է՝ անոր կարեւորութիւնը ճանչցուած է. ճանչցուած է թէ օգտակար է պատանիներուն բնազդին հետեւիլ։ Այժմ սկսած են առաւօտի ու երեկոյեան դասերուն մէջ դադարներ որոշել, եւ այդ դադարներուն՝ քանի մը վայրկեան զբօսանքի հանել աշակերտները. այս սկսուածը նշան է՝ թէ դպրոցի կանոններն հետզհետէ աշակերտներուն ֆիզիքական զգացումներուն համակերպելու միտում մը կայ։ Ուստի՝ այս մասին մեզի շատ քիչ բան կը մնայ պահանջել կամ խորհուրդ տալ։

Որչափ որ ալ «մանչերուն համար» ճանչցուած է մարմնամարզի կարեւորութիւնն, ինչպէս մենք ալ պարտ համարեցինք վկայել, բայց աղջիկներուն համար դժբաղդաբար չենք կրնար տալ այս վկայութիւնը։ Դիպուածն այնպէս բերած է՝ որ ամէն օր այս մասին կրնանք բաղդատութիւն մը ընել մեր իսկ անձով։ Մեր բնակած տունին պատուհանին դիմաց երկու դպրոց կայ՝ մին մանչերու միւսն աղջիկներու. այս երկու դպրոցներուն մէջ աչքի զարնող ներհակ մը կայ։ Մանչերու դպրոցին պարտէզը՝ բոլորովին բաց ու խնճայարդար հրապարակի մը

վերածուած է, ուր մարմնամարզի ցիցեր եւ հորիզոնա-ղիր ձողեր դրուած են: Նախաճաշէն առաջ, ետքը ժամը տասնումէկին (Ը. Ե.) միջօրեային, երեկոյեան դէմ ու արձակուրդէն առաջ՝ ամէն օր՝ մանչերը խաղալու կիջնեն, եւ անոնց միաբերան աղաղակները չորս կողմէն կարձագանգին: Այսպէս բաց օդին մէջ խաղացած ատեն՝ իրենց աչքէն ու ականջներէն կերեւի թէ անոնք խորասուզուած են զուարճալի գործունէութեան մը մէջ, ու իրենց երակներուն ուժգնակի թնդիւն տալով իրենց բոլոր գործարաններին առողջարար եղանակով կը թէքէ: Բայց անդին խեղճ «աղջիկներուն դպրոցը» շատ տարբեր տեսարան մը կը պատկերէ. այնպէս որ եթէ գիտցողները մեզի ըսած չըլլային՝ իրենց անշարժութեան պատճառով չպիտի գիտնայինք անգամ թէ մեր տունին կից աղջիկներու դպրոց մըն ալ կայ եղեր: Հոն ալ՝ մանչերու պարտէզին չափ պարտէզ մը կայ, բայց մէջը նշան անգամ չիկայ մանկական զբօսանքի. միայն մարմանդներ, խճայարդար ուղիներ, մացառներ ու ծաղիկի ածուներ կան հոն՝ հասարակ պարտէզներու պէս: Եւ հինգ ամիսի մէջ՝ այդ կողմէն խնդալու կամ պոռչտուքի ձայն մը անգամ չհասաւ մեր ականջին: Երբեմն երբեմն կը նշմարէինք երիտասարդուհի աղջիկներ, որ նրբուղիներու մէջէն ծանր ծանր կը քալէին, ձեռուընին մէյմէկ դասագիրք բացած եւ թեւ թեւի մտած: Եւ ո՛րպէս զի ճշմարիտը կատարելապէս ըսած ըլլանք՝ կը վկայենք որ այդ հինգ ամիսին մէջ անգա՛մ մը միայն տեսանք որ աղջիկ մը ուրիշ աղջիկի մը ետեւէն կը վազէր հոն. ասկէ զատ՝ երբե՛ք չտեսանք անոնց մարմնամարզի նման շարժում մը ընելը:

Այս տարօրինակ խտրութեան պատճառն ինչ է. միթէ՝ մանչերու կազմուածքէն այնչափ տարբե՞ր է աղջիկներու կազմուածքն, որ պէտք չունենայ այդ կեն-

ամփոփայտ հրահանգներուն, եւ աղջիկները չունի՞ն արդեօք մանչերուն պէս պոռչկտելով խաղալու ախորժակը. կամ բնութիւնը՝ մանչերուն տալով այդ ախորժակը, որ անոնց աճումին պէտք եղածին չափ նպաստող գործունէութեան դրդիչ մը կըլլայ, արդեօ՞ք իրենց վարժուհիներո՞ւն միայն տուած է այդ գործունէութեան ախորժակն՝ հէք աղջիկները չարչարելու համար։ Բայց մենք՝ անաւագ սեռին դաստիարակութիւններուն այդպիսի անպատշաճ գործունէութիւն մը վերագրելով թերեւս կը սխալինք. վստահաբար չենք կըրնար ըսել՝ թէ աղջիկներու դաստիարակութիւնն աւելորդ կը սեպեն տալ անոնց մարմնական կորովի աճում մը. անոնց համար ստորին յատկութիւններ կը համարին կայտառ առողջութիւնն եւ առնական ոյժն, եւ թէ աշխարհիկ կիներու համար աւելի աղէկ կը սեպեն տկար մը նրբութիւն, մէկ կամ առ առաւելն երկու մղոնի չափ ճամբայ քալելու զօրութիւն մը, փափուկ եւ շուտ յագեցող ախորժակ մը, նաեւ տկարութեան սեպհական երկչոտութիւն մը։ Չենք կարծեր որ մէկն համարձակ ըսէ՝ թէ արդարեւ այդպէ՛ս է. բայց մեր սիրտը կը վկայէ՝ թէ վարժուհիներու միտքին մէջ բունած է մեր նկարագրածին պէս հրաշատիպ օրիորդներ հասցունելու գաղափարը. եւ եթէ ստուգիւ այսպէս է՝ պէտք է խոստովանիլ թէ այդ դրութիւնն հնարուած է ճիշդ այդ գաղափարական օրիորդը ձուլելու համար. բայց մեծ սխալ մըն է ենթադրել՝ թէ այր մարդիկ ալ այդպիսի նրբանազ դիցուհիներ կը փնտռեն ամուսնանալու համար։ Իրա՛ւ, այր մարդիկ առ հասարակ չեն ախորժիր առնադէմ կիներէն, եւ մենք աղէկ գիտենք որ անոնք աւելի կուզեն իրենցմէ անզօր արարածներու հետ կենակցիլ, որպէս զի զէթ անոնց տիրանան. սակայն՝ բնութիւնն արդէն հաստատած է այր մարդու եւ կին մարդու կորովի այդ տարբերութիւնն,

տղուն ա՛յնչափ կը ցանկան այրերն, եւ որ ինքնին երեւան կուգայ։

Եթէ այդ չինծու միջոցներով՝ սեռական այդ տարբերութիւնը բնութեան առաջադրած չափէն անդին անցնի՝ այր մարդիկ աւելի կը խրտչին քան կը ձգին այդպիսի նրբաձոյլ կիներէն։

«Ի՞նչ. ուրեմն թող տանք որ մատաղ աղջիկներն ուզածնուն պէս անառակի՛ն, եւ մանչերուն նման կոշտ արարածնե՛ր ըլլան» պիտի գոչէ ճահաւորութեանց (convenance) տատիկ նախանձաւորն. եւ վարժուհիներն ալ ճի՛շդ այս բանէն կը վախնան, կարծենք։ Իրաւէկ ե՞նք որ «աղջիկներու դպրոցներուն մէջ՝ մանչերուն տղամկալից զբօսանքին պէս խաղեր պատժելի յանցանք կը սեպուին, եւ մեղի այնպէս ըսուած է որ կարգիլեն այդպիսի խաղեր՝ վախնալով որ փոքր աղջիկներն իրենց սեռին անվայել ունակութեանց մէջ չմեծնան. բայց այդ վախը բոլորովին անտեղի է. վասն զի ինչպէս մանչերու թոյլատրուած եռանդնալից խաղերը՝ բնաւ արգելք մը չեն ըլլար որ անոնք օր մը բարեկիրթ մարդիկ ըլլան, նոյնպէս ալ այդ խաղերն ամենեւին արգելք մը չեն ըլլար որ այդ աղջիկներն օր մը շնորհքով տանտիկիններ ըլլան (1)։ Պատանիներու դպրոցական զբօսանքն որչափ ալ անհարկի բաներ ըլլան՝ երբ անոնք դպրոցէն ելնեն՝ փողոցներուն մէջ երբէք գլթիկ (culbute, Թաքլա) չպիտի գլեն կամ

(1) Երկու սեռին համար ալ երկբայելի է այդ, վասն զի սկզբնական կրթութեանց եւ ունակութեանց ազդեցութիւնը շատ անգամ կը տեւէ մինչեւ ծերութիւն, մանաւանդ որ խաղատիրութեան վարժողները գրեթէ միշտ կը սուժեն աղէկ խորհելու կողմէն. չեն ունենար սրամախոհութիւն, որ անձնիւր չափն ու վայելուչը կռահելու կարեւոր ձիրքն է։ Թ.

հիւրասենեակներու մէջ վէգ չպիտի խաղան ։ Իրենց դպրոցի բաճկոնին հանելնո՛ւն պէս , տղայական խաղերն ալ մէկդի կը դնեն , եւ ծիծաղելի ըլլալու աստիճան սաստիկ զգուշութեամբ կը քաշուին՝ չափահաս մարդու անվայել կարծուած բաներէն ։ Եթէ մանչերն որոշեալ տարիքի մը հասնելնուն պէս՝ մարդկային արժանապատուութեան զգացումով մը կը ձգեն տղայական խաղերն , աղջիկներն ալ իրենց մանկութեան խաղերէն ինչո՞ւ չպիտի հրաժարին եղեր՝ իրենց սեռին յատուկ համեստութեամբ մը , որ քանի՛ տարիքնին առնեն ա՛յնքան կը զօրանայ ։ Կնիկներն այրերէն աւելի զգուշութեամբ կը յարգեն պատշաճութեան օրէնքն , ուստի անշուշտ անոնցմէ աւելի մէտ են անհարկի ու աղմկալից վարմունքէ զգոյշ մնալու ։ Շատ անտեղի բան է կարծել՝ թէ իգական համեստութեան բնազդներն ինքնին չկրնալով ներգործել՝ անպատճառ հարկ է որ վարժուհիները խստութեամբ կրթեն աղջիկները ։

Ինչպէս ուրիշ պարագաներու մէջ՝ հոս ալ արուեստական հրահանգներէն ծագած չարիքին առաջքն առնելու համար՝ կը գործադրեն արուեստական ուրիշ հրահանգ մը ։ Բնական հրահանգներն արգիլելով երբ հասկըցան որ մանուկը բոլորովին անհրահանգ ձգել ալ չըլլար՝ մարմնամարզի արուեստական դրութիւնն ստեղծեցին . կընդունինք որ այս՝ մարմնական խաղերուն ամէնէն լաւն է , բայց համարձակ կըսենք թէ այդ դրութիւնը չկրնար խաղերուն տեղը բռնել ։ Մարմնամարզն անդէպ է թէ՛ իբր արուեստական թէ՛ իբր կողմնակի միաստակար հրահանգ ։ Նախ՝ վասն զի այդ կանոնեալ շարժումներն , որ ի հարկէ դպրոցական խաղերուն պէս բազմաձեւ չեն , հաւասար գործունէութեան մը չեն ենթարկեր մարմինի ամէն մասերն , եւ մարմնամարզի ազդեցութիւնը ջղային դրութեան

մէկ մասին վրայ միայն ներգործելով՝ այս պարագային շարժումի մէջ եղող անդամներն աւելի շուտ կը յոգնին. եւ երբ այսպէս շարունակ յոգնութեան ենթակայ ըլլան՝ մարմնոյ մէկ քանի մասերն համեմատաբար չափէն աւելի կաճին։ Բաց աստի՝ մարզանքը մարմնոյ ամէն մասերուն հաւասարապէս ոչ միայն չբաշխիր, այլ նաեւ բերկրանք կցորդուած չըլլալով անոր՝ նուազ առողջարար կըլլայ. Նոյն իսկ՝ եթէ աշակերտներն անկէ չձանձրանան ալ՝ որովհետեւ դասի ձեւով կընեն այդ միակերպ շարժումներն եւ չեն զբօսնուր՝ շուտ կը յոգնին։ Ցիրաւի՝ հոս մրցանքը զբօսանքի բնազդին տեղ անցած է, բայց այդ գրգիռը խաղի պէսպիսակներու խայծերուն պէս տեւական չէ։ Ասոնցմէ զատ՝ աւելի հզօր պատճառ մըն ալ ունինք. վասն զի մարմնամարզը շատ վար կը մնայ ազատ խաղերէն՝ ոչ միայն ջղային հրահանգի իբր factor, այլ նաեւ իբր որակ։ Մանուկները շուտ կը տաղտկան արուեստական մարզանքէն՝ անոր համար որ անոնք նուազ զբօսալի են, եւ այս պատճառաւ՝ անոնք քիչ կը ներգործեն ջղային դրութեան վրայ։ Մեծապէս սխա՛լ է այն հասարակ կարծիքը՝ թէ մարմնական ախորժ կամ անախորժ միօրինակ շարժումներն ո՛րչափ երկարատեւ ըլլան այնչափ օգտակար կըլլան։ Իմացական բերկրախառն գրգռութիւն մը՝ ամբաւապէս կազդուրիչ ազդեցութիւն կունենայ մարմնին վրայ։ Տեսէ՛ք, բարի լուր մը կամ վաղեմի բարեկամի մը այցն ինչ լաւ ազդեցութիւն կընէ հիւանդի մը վրայ. Նայեցէ՛ք, բժիշկներն իրենց ուժանիկ հիւանդներուն ի՛նչպէս կը պատուիրեն զուարթ ընկերութեանց մէջ մտնել. մտածեցէ՛ք նաեւ՝ թէ տեղափոխութիւնն ի՛նչ մեծ օգուտներ կընծայէ առողջութեան։ Զի երջանկութիւնն ամէնէն աւելի կազդուրիչ դեղն է. նա է որ երակներուն թնդիւնն երագելով՝ գործարաններու պաշ-

տօնները կը դիւրացունէ, որով առողջ մարդիկ քաջառողջ կըլլան եւ հիւանդներն ալ կառողջանան։ Ասոր համար է որ բնական խաղերը՝ մարմնամարզութենէն իսկապէս աւելի օգտակար են։ Մանուկները սաստիկ եռանդով ինքզինքնին խաղալու կուտան, անչափ ցնծութեամբ կը նետուին խօլ աւիւններու մէջ, եւ այս ախորժ հանդամանքով եղած մարմնամարզին չափ՝ անանց օգտակար կըլլան հոգեկան բերկրանքը։ Եւ որովհետեւ միայն այս բերկրանքը չի կայ մարմնամարզին մէջ՝ հիմնապէս պակասաւոր է այն։

Ուրեմն կեզրակացունենք որ՝ թէպէտ եւ կանոնաւոր մարմնամարզն անշարժ վիճակէ մը աւելի աղէկ է, եւ թերեւ յաւելուածական միջոց մը կրնայ ի հարկին գործածուիլ, բայց բնական խաղերուն տեղ չկրնար բռնել բնաւ։ Բնազդական խաղերը թէ՛ աղջիկներու թէ՛ մանչերու երջանկութեան համար կարեւոր են. ո՛վ որ անոնք խափանէ՝ մարմնական զարգացումին համար գերագոյն անօրինութեամբ մը դրուած միջոցները խափանած կըլլայ։

Քննելի կէտ մըն ալ կայ, որուն վրայ մէկ քանի խորհրդածութիւններ ընել թերեւս ամէնէն հարկաւոր է։ Շատերուն ստուգած են թէ արդի կրթեալ պատանիներն ու երիտասարդներն՝ իրենց ծնողքին պէս թիկնեղ ու զօրեղ չեն ըլլար։ Մենք՝ երբ առաջին անգամ լսեցինք զայս՝ ըսինք թէ այդպիսի կարծիք մը արդիւնք է մարդկային այն հին ունակութեան, որով տարեցները միշտ կը գովեն անցեալն ու վար կը զարնեն ներկան։ Որովհետեւ հին զէնքերուն նայելով մարդկային արդի հասակն անցեալ մարդկութեան հասակէն հասարակաբար մեծ կը գտնենք. եւ մահագրութեանց նայելով, արդի մարդիկ հիներէն աւելի երկարակեաց են՝ նախ շատ կարեւորութիւն չէինք տուած վերը յայտնուած կարծիքին. բայց մանրակրկիտ

զննութիւններ հաստատեցին զայն։ Գիւղացիները մէկդի թողլով դիտեցինք որ մանուկներուն մեծ մասն իրենց ծնողքին հասակին չեն համաներ. իրանական լեցունութեան մասին ալ՝ հասակի տարբերութիւններն ալ հաշիւի առնելով մանուկները շատ վար կը մնան իրենց ծնողքէն։ Բժիշկներն ալ կը վկայեն՝ թէ հիմակուան մարդիկ հիներուն պէս չեն կրնար դիմանալ արիւն առնելու։ Այժմ վաղահաս «կնդութիւնն» աւելի շատ է, եւ ժոռախտը (décadence des dents) զարմանալի կերպով ճարակած է նոր սերունդին մէջ. իսկ հանրական կորովի կողմէն՝ անցեալին ու ներկային տարբերութիւնը շատ աչքի կը զարնէ։ Անցեալ սերունդներն՝ իրենց ցոփակեցութեամբն իսկ՝ կըրնային դիմանալ կարգ մը չարակրութեանց, որոնց չեն կրնար դիմանալ արդի մարդիկ՝ իրենց բովանդակ ժուժկալութեամբը։ Մեր նախորդները՝ թէպէտ սաստիկ արբեցողներ էին, թէպէտ անկանոն կը կերակրէին, թէպէտ իրենց տուներն օդասուն չէին եւ իրենք ալ մաքրակենցաղ չըլլալով հանդերձ՝ կրնային սակայն մինչեւ խոր ծերութիւն անկուն կերպով տոկալ երկար աշխատութեան. ատենական ու մահազդական տարեգիրները վկա՛յեն ասոր։ Իսկ մենք, որ մեր առողջութեան աւելի խնամ կը տանինք, որ չափով կուտենք ու չափով կարքենանք եւ միշտ օդ կը փոխենք եւ յաճախակի բաղնիք կերթանք. մենք, որ ամէն տարի ուղեւորութիւններ կընենք եւ կը վայելենք յառաջդէմ բժշկականութեան մը բարիքն, ամէն օր սակայն տկարութեամբ կը հեծենք մեր աշխատութեան բեռին ներքեւ։ Մենք մեր հայրերէն աւելի զգուշութեամբ կը հետեւինք առողջապահական օրէնքին, բայց անոնցմէ վատոյժ ենք. եւ մեր հայրերը բանի տեղ չէին դներ այդ օրէնքը։ Եւ հաւանական է որ մեր յաջորդ սերունդն ալ մենէ աւելի տկար պիտի ըլլայ՝

եթէ անոր կազմին արտաքին երեւոյթին ու հիւանդկախութեանը նայինք ։

Ի՞նչ է սոոր պատճառը . արդեօ՞ք այն տանջի մանուկներուն եւ չափահասներուն տարօրինակ շատակերութիւնը՝ մեր օրերուն սովորական տակաւապիտութենէն նուա՞զ վնաս կուտար առողջութեան . արդեօ՞ք հիմակուան մեր թեթեւ հագուստնե՞րն են սոոր պատճառ, որ ծագում առած են չարքաշութեան թիւր վարդապետութենէն . կամ ճահաւորութեանց դէմ չգործելու համար պատանիներու խաղերն արգիլելնի՞ս է այս չարիքին պատճառը ։ Մենք կենթադրենք որ այս ամէն պատճառները քիչ շատ մաս ունին այդ մեծ չարիքին մէջ . բայց ուրիշ վճռական պատճառ մըն ալ կայ, որ ամէնէն աւելի ուժգնութեամբ կը ներգործէ, եւ այս պատճառն է՝ մտային ծայրայեղ գործունէութիւնը ։

Արդի տաժանելի կենցաղն օր օրի ծանրանալու վրայ է թէ՛ երիտասարդներուն թէ՛ ծերերուն վրայ . հիմա՝ ամէն գործի եւ արուեստի մէջ սաստիկ մրցում մը կայ . որ կը ստիպէ չափահասներն իրենց բովանդակ ոյժն ու կարողութիւններն սպառել, եւ երիտասարդներն ալ՝ օր մը այդ մրցումին դիմանալու համար՝ օր օրի աւելի սաստիկ աշխատութեանց վարժուելու դատապարտուած են ։ Զարիքն երկու կողմէն ալ կը տեւէ . հայրերն՝ արուեստական ու առեւտրական ասպարէզին մէջ՝ ետ չմնալու համար ոգի ի բռին կաշխատին, ու միեւնոյն ատեն իրենց տունին շատ ծախքին հանելու հարկադրուած ըլլալով՝ կը ստիպին գործել երեք հարիւր վաթսունեւհինգ օր՝ օրը տասներկու ժամ եւ երբեմն ա՛լ աւելի, զրկուելով մարմնական մարզանքէ եւ չկրնալով հանգիստ անգամ առնել ։ Այս ծայրայեղ աշխատութեան համար՝ իրենց մարմնական տկարութիւնն իրենց զաւակներուն կանցնի, որոնց կազմութիւնն

ի բնէ տկար է եւ ընդունակ են անչափ աշխատութեան տակ ընկճելու, եւ որոնց հարկ կըլլայ նախ անցնիլ նաեւ դասընթացքէ մը, որ անբաւապէս ընդարձակ է իրենց քաջակազմ հայրերուն անցած դասընթացքէն։

Ամէն տեղ կերեւին ասոր աղետալի հետեւանքը. ամէ՛ն տեղ իմացական ծայրայեղ աշխատութեան զոհ գացող երիտասարդներուն վրայ կը խօսին։ Հոս կը տեսնեմ՝ որ բժիշկը տարի մը գեղջկական անհոգ կենցաղի դատապարտած է՝ այսպիսի յոգնութիւններէ տկարացած անձ մը. անդին մէկը կը տառապի ուղեղային պարբերական խռախուռէ մը (congestion du cerveau) որ շատ ամիսներէ հետէ կը չարչարէ զայն, եւ մէկ քանի ամիսէն անցնելու երես ալ չունի։ Ա՛լ անդին՝ դարձեալ դպրոցական խիստ կանոնապահութեան պատճառով ուրիշ մը բռնուած է գործարանական գրգռութեան ջերմի. այլուր դարձեալ երիտասարդ մը, որ բժիշկները դադրեցուցած էին ուսումնական աշխատութենէ՝ նորէն ինքզինքն աշխատութեան տալով դասարանին մէջ յաճախ նուաղում կուգայ վրան։

Ասոնք շօշափելի եղելութիւններ են, որ առանց մասնաւոր զննութեան հանդիպած են մեզի երկու տարիէ հետէ՝ ասդին անդին մեզի ծանօթ տեղուանքն, եւ մեր տեսածներն ամէնն ալ դեռ չյիշեցինք։ Դեռ մօտերս առիթ ունեցանք աղէկ մը դիտելու՝ թէ այս կազմական չարիքն ի՛նչպէս ժառանգական կըլլայ. կորովակազմ ծնողքէ սերած տիկին մը, որուն ջղային կազմուածքը շատ վնաս կրած էր երիտասարդութեան ատեն՝ սկովտական գիշերօթիկ վարժարանի մը կարգ ու կանոններէն՝ թէ՛ սնունդի անբաւականութեան թէ՛ չափազանց աշխատութեան պատճառով, ամէն առաւօտ անկողինէն ելնելու ատեն ուղեղային դալուկով մը կը չարչարուէր։ Այս տկարութիւնն իր զաւակներուն ալ անցաւ, որ երբ չա-

փուտ աշխատութիւն մըն ալ ընեն՝ անմիջապէս գլուխ ցաւ կիմանան եւ տեսակ մը ապշութիւն կու գայ վրանին։ Այս օրերս մեր մօտն իսկ երիտասարդ տիկին մը կայ, որուն առողջութիւնն անբուժելի կերպով եղծած է՝ դպրոցական դասերուն չափազանց աշխատելէն. իր դասերուն խոնջութեան պատճառով՝ մարմնամարզ ընելու ժամանակ եւ զօրութիւն չէ ունեցած. Թէպէտ եւ հիմա ուսումն աւարտած է, բայց խեղճը կը տառապի յամառ հիւանդութեամբ մը։ Այսպիսի անընդհատ աշխատութեանց ետեւէն շուտ կը հասնին գրեթէ միշտ՝ ախորժակի յեղյեղուկ տկարութիւն, մսեղէնէ զարշանք, չափէն աւելի մաշում՝ նոյն իսկ ամառ ատեն, քալելու անկարողութիւն, սանդուղքէն ելնելու ատեն սիրտի բաբախում, աչքի տկարութիւն, մարմնային անկատար աճում եւ ջղային ընդհանուր թուլութիւն։ Մեր յիշած տիկինին մէկ բարեկամն ալ գրեթէ նոյն վիճակին մէջ է, եւ ա՛յն աստիճան ինկած է որ ամէնէն հանդարտ դպրոցական ակումբներու մէջ անգամ՝ դէշութիւն կու գայ վրան. իր բժիշկն ուսումնական ամէն աշխատութիւն արգիլած է անոր։

Եթէ աչքի զարնող վատառողջութիւններն այսչափ շատ են, ո՛րչափ շատ ըլլալու են ուրեմն այն փոքր վատառողջութիւններն, որ յարամրի կաճին։ Ծայրայեղ աշխատութենէ յառաջ եկած մարմնական ակներեւ մէկ հիւանդութեան վրայ՝ անոր կընկերին հաւանաբար վեց ծածուկ հիւանդութիւններ, եւ կը ճարակին առանց ակներեւ նշանի մը։ Հիւանդութիւններ, որոնց ձախողաբար պատճառ կը համարուին օտարոտի բաներ կամ կազմուածքի փափկութիւն մը, այսպիսի աներեւոյթ հիւանդութիւնները մարմնական աճումը կուշացունեն, եւ շատ անգամ կը խափանեն ալ՝ ներքին գործարաններուն մէջ թաքուն հիւծումի մը սերմը ձգելով ու տածելով, եւ կանուխէն

կը պատրաստեն ուղեղային այն խօթութիւններն, որ մեր օրերն՝ աշխատողներուն վրայ այնչափ յաճախ երեւան կուգան չափահասութեան ատեն ։ Գրասենեակներու եւ արուեստանոցներու մէջ սաստիկ աշխատողներուն աստէպ հիւանդանալէն կրնանք մակաբերել՝ թէ ծայրայեղ աշխատութիւնն ո՛րչափ աւելի վտանգաւոր կրնայ ըլլալ մանուկներու տարրական կազմուածքին՝ յաճախ ծածկաբար մաշելով այսպէս անոնց առողջութիւնը ։ Մանուկներն՝ հասակաւորներուն պէս՝ ո՛չ այնչափ մարմնական ճիգի ո՛չ ալ այնչափ մտային աշխատութեանց չեն կրնար դիմանալ ։ Արդ՝ եթէ հասակաւորներն իրենց կազմուածքին աճեցուն վիճակին մէջ անգամ՝ իրենց մտային ծայրայեղ ճիգերուն երեսէն այնչափ կը տառապին յայտնապէս, անտիական արարածներն այդպիսի չափազանց աշխատութեան պատճառով՝ անոնցմէ քանի՛ պատիկ աւելի պիտի չարչարին վաղահաս հիւանդութիւններով . դատեցէք ու վճռեցէք ։

Երբ ակնարկ մը ձգենք կարգ մը դպրոցներու ուսումնական կանոնագրութեանց վրայ՝ անտարակոյս պիտի զարմանանք ոչ թէ անոնց այնչափ չարիք պատճառելուն համար, այլ թէ ինչպէս դեռատի հէ՛գ ուսանողները կրնան դիմանալ այդ խստութեանց ։ Առէ՛ք ու աչքէ անցուցէք Ճօն Յորպսի ցուցած օրինակն, որ իր անձնական փորձառութեան արդիւնքն է . ինք այցելով աղջիկներու վարժարան մը՝ տեսած է հոն հետեւեալ կանոնագրութիւնն, որ՝ իր վկայութեան նայելով յօրինուած է Անգղիայի գրեթէ բոլոր միջնակարգ դպրոցներուն համար ։ Օրուան քսան ու չորս ժամերուն համեմատ բաժնուած՝ աշխատութեանց պատկերն է այս, որուն մէջ զանց ըրած ենք ժամանակի մանրամասն բաժանումները ։

Քունի համար տնօրինուած . . . . . . 9 ժամ
(կրտսերագոյնները 10 ժամ)

Դպրոցի մէջ սերտելու եւ դասատուութեան 9 »

Դպրոցի կամ տունի մէջ երիցագոյններու ազատ ուսումնասիրութեան կամ գործելու, կրտսերագոյններուն ալ զբօսնելու համար . . . . . . . . . . . . . . $3^1/_2$ »
(կրտսերագոյններն $2^1/_2$ ժամ)

Կերակուրի համար . . . . . . . . . . $1^1/_2$ »

Բացօթեայ մարզանք, այսինքն՝ տեսակ մը պտոյտ, որ՝ յաճախ դասագիրք ի ձեռին եւ միայն եթէ եղանակը ներէ՝ տեղի կունենայ . . . . . . . . . 1 »

Գումար 24 ժամ

Եւ այս «զարմանալի կանոնագրութեան արդիւնքն ի՞նչ կըլլայ, գիտէ՞ք։ Անշո՛ւշտ, տկարութիւն, թալկութիւն, անհոգի կենդանութիւն եւ առհասարակ վատողջութիւն»։ Բայց Ճոն Թօրպս իր դիտողութեան մէջ աւելի յառաջ երթալով կըսէ թէ միայն իմացական զարգացումին համար մարմնական հանգիստն այսպէս ետ ձգելն, եւ առանց մարմնամարզի ուղեղի այդ երկարաձիգ գործունէութիւնն՝ ոչ միայն կաւրեն գործարաններն, այլ նաեւ պատճառ կըլլան իրանի տձեւութեան։ «Վերջերս, կըսէ նոյն անձը, մեր գլխաւոր քաղաքներէն միուն գիշերօթիկ վարժարանն այցելեցինք, ուր քառասուն ուսանող կար, եւ ուշադիր ու ճիշդ քննութիւն մը ընելով իրազեկ եղանք թէ այդ ուսանողներուն մէջ չի կար հոգի մը անգամ, որուն արտաքին կերպարանը քիչ շատ խեղաթիւրած չըլլար իր երկամեայ ուսանողութեան ատեն»։

Այն ատենէն մինչեւ այսօր՝ անշուշտ մէկ քանի բարեփոխութիւններ եղած են ։ Բայց անձնապէս կը վկայենք որ նոյն դրութիւնը դեռ շատ տեղ կը տեւէ , մանաւանդ տեղ տեղ ալ ծայրայեղութեան հասած է ։ Դեռ շատ չընէր՝ որ մենք իսկ այցելեցինք ուսուցչական կրթարան մը , որ ընտիր ուսուցիչներ հասցունելու համար հաստատուած էր ։ Հոն ալ տեսանք՝ որ հետեւեալ անցուկ կանոնագրութիւնը կը գործադրէին այնպիսի պաշտօնական անօրէնութեան մը հսկողութեան ներքեւ , որ անշուշտ աղջիկներու վարժարանի մը դաստիարակուհիներէն աւելի հմտութիւն եւ դատողութիւն ունենալ պարտ էր ։

| | | |
|---|---|---|
| Ժամ 6 ին | | Զարթում ու պատրաստութիւն ։ |
| » 7 էն | 8 | Սերտողութիւն ։ |
| » 8 էն | 9 | Ընթերցում Ս. Գիրքի , աղօթք ու նախաճաշ ։ |
| » 9 էն | 12 | Սերտողութիւն ։ |
| » 12 էն | $1^1/_2$ | Հանգիստ եւ իբր թէ պտըտելու կամ մարմնական ուրիշ մարզանքի սահմանուած , բայց յաճախ դարձեալ ուսումի վատնուած ։ |
| » $1^1/_2$ էն | 2 | Ճաշ , բայց ճիշդ կերակուրի առենը սովորաբար 20 վայրկեան է ։ |
| » 2 էն | 5 | Սերտողութիւն ։ |
| » 5 էն | 6 | Թէյ ու հանգիստ ։ |
| » 6 էն | $8^1/_2$ | Սերտողութիւն ։ |
| » $8^1/_2$ էն | $9^1/_2$ | Մասնաւոր սերտողութիւն հետեւեալ օրուան դասերուն ։ |
| » 10 ին | | Ննջարան ։ |

Այս կանոնագիրին համեմատ՝ 24 ժամին 8 ժամը

քունի կերթայ, չորս ժամ տասնեւհինգ վայրկեանն՝ աղօթելու, կերակուրի, հագուելու չքուելու եւ վայրկեանական դադարներու, $10^1/_2$ ժամը՝ սերտողութեան, եւ մէկ ժամ տասնեւհինգ վայրկեանն ալ՝ կամայական մարզանքի, որ շատ անգամ ալ զանց կընեն ։ Կանոնադրուած $10^1/_2$ ուսումի ժամերն ոչ միայն ժամ մը եւս կաւելնան (վասն զի աշակերտները պառկելէն նախընթեր կընեն ուսանելն) այլ նաեւ սաներէն մէկ քանին երկու ժամ առաջ կելնեն առաւօտին որոշեալ ատենէն՝ իրենց դասերը պատրաստելու համար, եւ վարժապետներն ալ կը խրախուսեն անոնց այս կանխումը ։ Որոշեալ ժամանակամիջոցի մը աւարտելի դասընթացքն ա՛յնչափ ընդարձակ է, եւ ա՛յնչափ խստապահանջ են դասատուները. (որոնց անձնասիրութեան մեծ պարծանք մըն է աշակերտաներուն պայծառ քննութիւններ անցունելն) որ շատ անանգամ հէք պատանիներն օրը 12–13 ժամ մտային աշխատութեանց կը դատապարտին ։

Հարկ չի կայ մարգարէական ոգի ունենալ հասկընալու համար՝ թէ առողջութիւնն ո՛րչափ կը վնասի այսպիսի ուսումնամոլութենէ մը ։ Աշակերտներէն մին խոստովանեցաւ մեզի թէ առողջ ու թարմ կերպարանքով այդ դպրոցը մտնողները քիչ ատենէն կը խամրին, եւ յաճախ հիւանդութիւններ կը պատահին. դպրոցին հիւանդներու–ցանկին մէջ անպակաս մէկը կայ նշանակուած. ամէնուն վրայ անորժակի տկարութիւն ու անմարսողութիւն կայ. փորհարութիւնը միշտ կա՛յ ու կա՛յ, որմէ շատ անգամ կը բռնուին աշակերտներուն երրորդ մասը ։ Ամէնն ալ գլուխի ցաւ ունինք կըսեն, եւ կան որ ամիսներով կը տառապին անգարէ ։ Շատերը չդիմանալով ասոնց՝ կըստիպին ա՛լ դպրոց չի գալ ։

Ո՞վ չզարմանար այսպիսի դպրոցական կանոնագրու-

թեան մը վրայ, որ տնօրինուած է տիպար ու առաջնակարգ կրթարանի մը մէջ։ Այս սպառիչ դրութիւնը գործադրելու պատճառ եղած են խիստ քննութիւններն, որոնց պատրաստուելու համար քանի մը տարին կամ քանի մը ամիսը նեղ կուգայ փութկոտ ուսանողներուն, եւ այս վիճակն՝ ողբալի է աշակերտներուն համար։

Չենք երկմտիր որ այսպիսի կանոնագրութիւն մը մեծ մասով բացառութիւն մըն է, ու թերեւս միայն նման ուրիշ բարձրակարգ հաստատութեանց մէջ կը գործադրուի։ Բայց քանի որ կայ այն՝ մեզի բաւական նշան մըն է թէ նոր սերունդին միտքը ծանր աշխատութեանց ներքեւ կը հեծէ. այս կանոնագրութիւնը՝ կրթական խնդիրներու վրայ ուսումնական դասակարգին մէջ տիրող գաղափարը կը պատկերէ, եւ ուսուցչական կրթարաններու մէջ եղած այս խստապահանջութիւններն՝ ինքնին առանց ուրիշ ապացոյցի մը՝ կը ցուցընեն թէ անխորհուրդ միտում մը կայ ժամ առաջ գիտութիւններ մթերելու։

Մինչ մէկ կողմէն շատերն հասկըցած են տղայութեան ատեն չափազանց ուսումին վտանգը, միւս կողմէն դեռ հասկըցուած չէ երիտասարդներուն միտքն այսչափ ծանր աշխատութեանց ենթարկելու վտանգը. ասոր վրայ ո՛րչափ զարմանանք քիչ է։ Շատ ծնողք մինչեւ սահման մը գիտեն թէ ի՛նչ գէշութիւններ կը ծագին մանուկներու կանխահաս զարգացումէն։ Շատերն իրաւապէս կը պախարակեն անոնք, որ շատ կանուխէն կըսկսին իրենց մանուկներուն իմացականութիւնը գրգռել. վասն զի այս տարաժամ գրգռութեան հետեւանքն աղիտաբեր է, եւ զայս քանի՛ հասկընան ա՛յնքան սոսկումով անկէ ետ կը կենան. ասոր իբր վկայութիւն յիշենք հոս մեր մեծանուն բնախօս–բարոյականներէն միոյն կարծիքն, որ կըսէր մեզի թէ իր զաւակը մինչեւ որ ութ տարեկան

չըլլար՝ դպրոց չպիտի ղրկէր ։ Աշխարհ գիտէ՝ թէ մանուկներու միտքը շատ կանուխէն բանի ուսանելու ստիպելը՝ պատճառ կըլլայ անոնց կամ մարմնական տկարութեան կամ ապշութեան եւ կամ երբեմն մահուան անգամ. շատ քիչերն հասկըցած են, կարծենք, թէ երիտասարդներու համար ալ նոյն ընթացքին նո՛յն ցաւալի հետեւանքը կըսպառնայ, բայց ճշմարտութիւնն հոս ալ անխուսելի է ։ Բնուստ անօրինուած կարգ մը եւ անստուստ անօրինուած չափ մը կայ, որո՛ւն մէջ միայն կարողութիւնները կրնան առանց վտանգի զարգանալ. եթէ ուսումի ընթացք այս կարգին ու չափին համակերպ ըլլան, բարի՛ է. բայց եթէ՝ ընդհակառակն՝ ուսանողին բարձր կարողութիւնները բռնաւորենք անոր բանականութենէն վեր բարդ եւ աւելի վերացեալ գիտելիք ներկայացունելով անոր, կամ եթէ՝ ծայրայեղ ուսումնասիրութեամբ մը՝ անոր իմացականութիւնն իր հասակին բնուստ յարմար զարգացումէն բարձր զարգացումի մը ստիպենք, այս եղանակով ձեռք բերուած արտաքոյ կարգի բարիքին փոխարէն՝ կշի՛ռ պիտի վրայ հասնի հաւասարապէս ու թերեւս աւելի մեծ չարիք մը ։

Բնութիւնն անողոք ու ճշգրիտ է իր հաշիւներուն մէջ. եթէ մէկ կողմէն իր անօրինածէն աւելի բան պահանջես անկէ, միւս կողմէն հաւասարակշիռ տոյժ մը կառնէ քենէ ։ Եթէ իր ազատ ընթացքին հետեւիս՝ միտ դնելով միայն հայթայթել ու տալ անոր մարմնական ու իմացական անարդ տարրերն՝ ամէն հասակի պահանջած չափով՝ նա ճիշդ ատենին պիտի հասցունէ քեզի համար քիչ շատ ներդաշնակ զարգացումով մը կազմակերպուած արարած մը ։ Եթէ՝ ընդհակառակը՝ բռնադատես բնութիւնն որ ատենէն առաջ կամ անկանոն աճում մը տայ այդ արարածին մէկ կէտի մը մէջ միայն՝ նա մեղմաբար կը

թողուքէ նախ իր յատուկ նշաններովն եւ ապա կը համակերպի այդ բռնադատութեան . բայց պէտք է աղէկ գիտնալ՝ որ նա ինք բնութիւնը քու այդ տարապարհակիդ ձգնելուն ատեն՝ անշուշտ անոլին չպիտի կատարէ իր կարեւորագոյն մէկ գործը :

Պէտք չէ բնաւ մոռնալ՝ թէ կեանքի ամէն շրջանին համար կենսական ոյժերը ճշգրիտ չափով սահմանուած են՝ եւ այս սահմանէն աւելի արդիւնք չեն կրնար տալ : Մանուկներու եւ երիտասարդներու վրայ՝ այս կենսական ոյժերն ի հարկէ արագ ու բազմահետ կը գործեն . ինչպէս վերն ըսած ենք ամէն օր մարմնական շարժումով սպառած հիւսքին տեղը լեցունել պէտք է , պէտք է հանապազորդ ուսումին պատճառով յոգնած ուղեղի ջիղերուն հիւթ ջամբել . պէտք է մարմինի աւելորդ աճումին եւ ուղեղի. աւելորդ զարգացումին ալ ճարակ հասցունել . եւ ասոնցմէ զատ՝ դարձեալ հա՛րկ է այս կարգ մը պէտքը ջամբելու համար պահանջուած մեծաքանակ կերակուրը մարսելու գացած զօրութեան տեղն ալ լեցունել : Ամէն մարդ ի յառաջագոյն խորհրդածութեամբ եւ ի յետնագոյն փորձառութեամբ գիտէ՝ որ այս կազմական խողովակներէն միուն աւելի զօրութիւն հասցունելու համար՝ անպատճառ հարկ է նոյնչափ զօրութիւն նուազեցունել ուրիշ խողովակ է մը : Աշխարհ գիտէ թէ , օրինակի համար , ծանր կերակուր մը մարսելու ատեն մարմինին եւ ուղեղին վրայ թմրութիւն մը կուգայ , որուն շատ անգամ վրայ կը հասնի քունը . դարձեալ ո՞վ չգիտէ թէ մարմինի ծայրայեղ աշխատութիւնը կը նուազեցունէ մտքի հզօրութիւնը , թէ անհնարին ճիգերու կամ երկար ուղեգնացութեան պատճառով յառաջ եկած պարբերական յոգնութիւնն ու անկումը կը յուլացունէ միտքը , թէ ամիս մը անդադար հետի ճամբորդելէն ետեւ՝ միտքին վրայ ա՛յն—

պիսի անշարժութիւն մը կուգայ, որուն առաջքը միայն երկար ջանքով հնար է առնել, եւ թէ ջղային աշխատութեամբ օրերնին անցունող գեղջուկներն՝ իմացական շատ քիչ գործունէութիւն կունենան։ Դարձեալ ծանօթ ճշմարտութիւն մըն է՝ թէ մանկութեան ատեն երբեմն երբեմն պատահած արագ աճումին պատճառով զօրութեան չափազանց սպառումին՝ անպատճառ կը յաջորդէ մարմնական ու մտային անկում մը։ Անգա՛մ մըն ալ ըսենք՝ թէ կերակուրէն անմիջապէս ետեւ ջղային բուռն գործունէութիւն մը կը խափանէ մարսողութիւնն, եւ մատաղ մանուկներն՝ երբ ծանր աշխատութեանց ենթարկին՝ կարճ ու կարկամ կը մնան. որով միայն մէկ կողմէն չափազանց գործունէութիւնը միւս կողմէն գործունէութեան նուազում կը պատճառէ։ Եւ արդ, արտաքոյ կարգի դէպքի ատեն այսպէս բացայայտ երեւցած օրէնքն՝ ամէն պարագայի մէջ եւ միշտ կայ ու ճշմարիտ է։ Գործարանական ոյժի այս խոտոր սպառումներն՝ ինչպէս բուռն եւ յանկարծական կերպով եղած ատեն մեծ վնաս կը պատճառեն՝ նոյնպէս մեծ վնաս կուտան՝ երբ անզգալաբար ու անընդհատ կատարին։ Ուստի՝ երիտասարդութեան ատեն իմացական աշխատութեանց գործածուած ոյժն՝ եթէ բնութեան տրամադրած չափէն աւելի սպառի, միւս պէտքը լեցունելու համար մնացած ոյժերու գումարն հարկաւոր չափէն նուազ կը մնայ, եւ ասկէ ամէն տեսակ չարիք յառաջ կուգան։ Քննե՛նք հոս թէ որո՛նք են այդ տեսակ տեսակ չարիքը։

Եթէ ուղեղին արտաքոյ կարգի գործունէութիւնն իր կանոնաւոր գործունէութեան չափէն շատ քիչ աւելի ըլլայ՝ մարմինի զարգացումը շա՛տ քիչ ետ կը մնայ. առառաւելն հասակը քիչ մը կարճ կը մնայ կամ մկաններն այնչափ չեն մեծնար, եւ կամ հիւսքն անօսր որակով մը կը

տարրանայ. ասոնցմէ մին կամ աւելին անպատճառ պիտի պատահի: Մտային գործունէութեան՝ որով նաեւ ուղեղի հիւսքին նորոգուելու ատեն՝ ուղեղին գացած յաւելուածական մասն այն արիւնն է, որ եթէ այդ պէտքին չծառայեր՝ անդամներուն եւ ընդերքին մէջ պիտի շրջագայէր. ուստի այս արիւնին բուն գործն եղող մարմնային աճումն ու հիւսքին տածումն ետ կը մնայ: Արդ՝ քանի որ ֆիզիգական այս խստորումն ստոյգ է՝ խնդիրն այն կըլլայ թէ արդեօ՞ք մտային չափազանց աշխատութենէ եկած օգուտն՝ այսպէս եղած կորուստը կը կշռէ՛, եւ ձեռք բերուած աւելորդ գիտելիքն՝ հասակի թերութիւնը կամ մարմինին ոյժ եւ տոկունութիւն տուող կազմուածքի կատարելութեան պակասը կարժէ՛:

Երբ իմացական աշխատութիւնը շատ մեծ ըլլայ՝ աւելի ծանր անպատեհութիւններ յառաջ կուգան. ոչ միայն ամբողջ մարմինն, այլ ուղեղն ալ կը վնասի անկէ: Առաջին անգամ Պ. Իզիտոր Սէն-դ-Իլէր նշմարեց՝ որ աճումի եւ զարգացումի մէջ բնախօսական օրէնքով ներհակ մը կայ, եւ Պ. Լիւիս այս խնդիրին վրայ դարձուց գիտուններուն ուշն իր Թզուկք եւ Հսկայք գրուածովը. եւ աճում ըսելով՝ հոս կիմանանք հասակի աճումը. զարգացում ըսելով յօրինուածի աճումը: Բնախօսական օրէնքին համեմատ՝ աճումի կողմէն չափազանց գործունէութիւն մը զարգացումը կուշացունէ կամ մինչեւ իսկ կը խափանէ, եւ փոխադարձաբար: Թրթուրն ու հարսանեակ որդն (chrysalide) այս օրէնքին կատարեալ օրինակ մը կընծայեն. Թրթուրին վրայ հասակի շատ արագ աճում մը կերեւի, բայց անոր յօրինուածական կազմն երբ երիտասարդական աճումին հասնի՝ փոքրկութեան քարդութենէն շա՛տ քիչ աւելի բարդութիւն մը կառնէ: Հարսանեակ որդին հասակը չմեծնար բնաւ. այլ

քանի տարի ա՛յնքան կը կորսնցունէ իր կշիռէն, բայց իր յօրինուածը սաստիկ արագութեամբ կը զարգանայ։ Այս օրինակներուն մէջ ներհակն ակներեւ է, բայց բարձրագոյն արարածներու վրայ այնչափ յայտնի չերեւիր այն. վասն զի աճումն ու զարգացումն անոնց վրայ միեւնոյն ժամանակ տեղի կունենան։ Սակայն մարդկային ազգիս վրայ կրնանք նշմարել այս ներհակն՝ երկու սեռերն իրարու հետ բաղդատելով. աղջիկները թէ՛ ֆիզիգապէս թէ՛ բարոյապէս արագ կը զարգանան, բայց անոնց աճումն համեմատաբար կանուխ կը կասի։ Մանչերը ֆիզիգապէս ու բարոյապէս աւելի յամր կը զարգանան. բայց շատ կաճին, եւ այս աճումն երկար կը տեւէ։ Երբ աղջիկներն հասնին իրենց որոշեալ հասակին՝ անթերի ստացած կըլլան արբունքն ու միւս ամէն կարողութիւնները. իսկ մանչերն, որոնց կենսական ոյժերն աւելի իրենց հասակին աճումին կըսպասաւորեն՝ նոյն հասակին մէջ յօրինուածի կողմէն համեմատաբար դեռ պակասաւոր կըլլան, եւ այս պակասութեան նշաններն են՝ իրենց ձախարդ շարժուածքն ու իմացական խամութիւնը։ Այս օրէնքն ինչպէս մարմինին լրութեան՝ նոյնպէս յօրինուածին իւրաքանչիւր մասին վրայ ալ կը ճշգրտի։ Յօրինուածի կողմէն գործարանական արագ ու անկարգ զարգացում մը՝ հասակի աճումին կանուխ խափանուելուն պատճառ կըլլայ, եւ այսպէս կը պատահի թէ՛ ուղեղի թէ՛ միւս գործարաններուն մէջ։ Ուղեղն, որ փոքր հասակի մէջ համեմատաբար մեծ է ըստ քանակին՝ բայց անկատար է կազմի կողմէն, երբ կըստիպի տարաժամ գործունէութեամբ իր պաշտօնները կատարել՝ հասակէն վեր արագութեամբ կը կազմաւորի. բայց հուսկ ուրեմն չպիտի կրնայ ժամանել ա՛յն չափին ու զօրութեան, որոնց պիտի հասնէր եթէ այնպէս տարաժամ ու չափէն աւելի

գործած չըլլար ։ Եւ այս է մէկ պատճառը — թերեւս գըլ-խաւոր պատճառն — որ կանխաւարտ պատանիներն եւ ատեն մը իրենց հասակակիցներէն գերազանց ձիրքով գլող երիտասարդները՝ չուտ մը բթանալով կանգ կառնեն, եւ անոնց ծնողքին բարձր ակնկալիքն ալ իսկոյն կ'ոչընչա-նան ։

Բայց չափէն աւելի աշխատասիրութեան այս աղե-տալի հետեւանքն՝ առ հասարակ հանրական առողջու-թեան կրած վնասներէն թերեւս նուազ ողբալի են ․ զի մարմնական կազմը կը ծնգի ուժերը կը նուազին եւ զգա-ցումները կը վատթարին ։ Բնախօսական նոր գիւտերը կը ցուցընեն՝ թէ ուղեղը մարմնի գործերուն վրայ ամբաւ ազդեցութիւն ունի ։ Ուղեղի գրգռութիւնը խորապէս կազդէ մարսողութեան արիւնի շրջագայութեան եւ ա-նոնց կցորդ բոլոր գործարանական պաշտօններուն վրայ ։ Ո՛վ որ մեզի պէս տեսած է առաջին անգամ Վեպէրի մի-ջոցով կատարուած փորձին կրկնութիւնն, փորձ՝ որ ուղեղն ընդերքին կցորդող ճղճղկէն ջիղին (nerf vagus) գրգռութենէն յառաջ եկած արդիւնքը կը յայտնէ, ո՛վ որ տեսած է այս ջիղին գրգռելովը սրտին յանկարծ դադ-րիլը, գրգռութիւնը դադրելուն պէս նորէն ծանր ծանր գործել սկսիլն եւ անոր նորէն սկսելուն վերստին կենալը, այնպիսին յայտնապէս պիտի հասկընայ՝ թէ ծանրաբեռնեալ ուղեղ մը մարմնոյն վրայ ի՜նչ ընկճող ներգործութիւն մը կ'ընէ ։ Սովորական փորձերն ալ կը հաստատեն բնախօսա-բար բացատրուած այս եղելութիւնները ։ Ո՞վ չէ զգացած յոյսի, երկիւղի, բարկութեան, ուրախութեան ատեն իր սրտին բաբախելը ․ ո՞վ չէ դիտած թէ այս զգացումնե-րուն ուժգնութեան ատեն սիրտն ի՜նչ դժուարութեամբ իր գործը կը կատարէ ․ Թէպէտ եւ շատերը փորձն առած չեն այն ծայրայեղ սրտայուզութեանց, որ սրտի չար-

ժումները կը կեցուննեն ու նուաղում կը պատճառեն, սակայն ամէն մարդ գիտէ՝ որ ասոնք իրարու պատճառ եւ արդիւնք են։ Նոյնպէս ամէնուն ծանօթ բան մըն է թէ մարսողութեան խանգարումներն՝ ուղեղին չափէ դուրս գրգռութենէն յառաջ կու գան. ախորժակի պակասութիւնն ալ միտքին չափազանց ցնծութեան ու չափազանց տըրտմութեան հետեւանքն է։ Երբ կերակուրէն անմիջապէս ետեւ՝ միտքի ցնծութիւն կամ տրտմութիւն բերող դէպք մը վրայ հասնի՝ ստամոքսը շատ անգամ դուրս կու տայ կերածը կամ մեծ դժուարութեամբ եւ ընդդիմութեամբ կը մարսէ։ Ով որ չափէն աւելի յոգնեցուցած է իր ուղեղը՝ պիտի ձայնակցի մեզի վկայելու համար թէ երբեմն միայն իմացական չափազանց գործունէութիւն մըն ալ կրնայ պատճառել այսպիսի տգեղ հետեւանք։ Արդ՝ այս կարգէ դուրս պատահարներուն ատեն՝ ուղեղին ու մարմնին մէջ յայտնապէս երեւցած յարաբերութիւնն՝ աննշան պարագաներու մէջ ալ նոյնպէս կայ եւ կը մնայ. ինչպէս ուղեղային բուռն բայց վաղանցիկ գրգռումներն՝ ընդերքի բուռն բայց վաղանցիկ խանգարումներու պատճառ կըլլան, այնպէս ալ ուղեղային նուազ բայց տեւական գրգռումներն՝ ընդերքի նուազ բայց պարբերական խանգարումներ յառաջ կը բերեն։ Չկարծուի թէ սոսկ մակածութիւն մըն է այս, այլ այնպիսի ճշմարտութիւն մըն է, որ բոլոր բժիշկներն եւ մենք իսկ մեր անձին երկար ու ցաւալի փորձովն ստուգած ենք։ Միտքի երկարատեւ յոգնութենէ յառաջ եկած ամէն տեսակ մարմնական հիւանդութիւնները բուժելու համար՝ շատ անգամ հարկ կըլլայ տարիներով ակամայ հանգիստի դատապարտուիլ։ Երբեմն ալ սիրտի ծանր հիւանդութիւն մը կը պատճառէ. յաճախ տրոփումներ տեղի կունենան, երակներու թնդիւնը կը տկարանայ եւ շատ անգամ բաբա-

խփումը վաթսուներկուքէն մինչեւ յիսուն եւ աւելի պակաս կը նուազի։ Երբեմն ստամոքսն ալ ամէնէն աւելի կը տառապի, գժուարամարսութիւն մը վրայ կը հասնի, որ անտանելի կ'ընէ կեանքն, եւ բուժուելու համար շատ տարիներու կարօտ է։ Շատ անգամ՝ սիրտն ու ստամոքսը միանգամայն կախտանան. քունը կարճատեւ ու ընդհատ կըլլայ գրեթէ միշտ, եւ ընդհանրապէս իմացականութիւնն իր բնական կորովը ալ քիչ շատ կը կորսնցունէ։

Ասոնցմէ դիւրին է հասկընալ թէ իմացական չափազանց գրգռութիւնը՝ պատանիներու եւ երիտասարդներու համար որչա՛փ գէշ է. բնական չափէն աւելի ուղեղային ճիգերուն անխուսելի հետեւանքը կըլլայ մարմնական կազմին խանգարում մը, եւ եթէ որոշ հիւանդութիւն մը չպատճառի ալ՝ անտարակոյս ֆիզիքական յամր նուազում մը տեղի կունենայ։ Երբ ախորժակը թոյլ ու նուաղկոտ ըլլայ, մարսողութիւնը թերի, ու արիւնի շըրջագայութիւնը տկար՝ անշուշտ մարմինն ալ կը վատթարի ու չաճիր։ Որպէս զի մարմինի կազմաւորութիւնն իր պաշտօնն անթերի կատարէ՝ ընտիր ու յորդ արիւն պէտք է։ Եթէ երակներուն մէջ որոշ չափ մը ընտիր արիւն չըլլայ՝ մարմինին ոչ մէկ գեղձը պէտք եղածին պէս կրնայ հիւթերն առնել ու բաշխել. ոչ մէկ ընդերք կրնայ կատարել իր սեպհական գործն, եւ եթէ բաւական ընտիր արիւն չըլլայ՝ նեարդերը, ջիղերը, թաղանթները կամ հիւսքն՝ ասոնց ոչ մին կրնայ բաւականապէս լեցունել իր սպառածին տեղը։ Եթէ կանոնաւոր բաղադրութեամբ մը արիւն չըլլայ՝ կանոնաւոր ու բաւական աճում չըլլար։ Մտածեցէ՛ք ուրեմն՝ մարդկային կազմաւորութիւնն ի՛նչ գէշ վիճակի մը կը հասնի՝ երբ տկարացած ստամոքսն՝ աճումի վրայ եղող մարմինին թէ՛ քանակի թէ՛ որակի կողմէն յոռի արիւն բաշխէ, եւ ոյժէ ինկած

մարմինին ալ անբնական յամառութեամբ մը շրջեցունէ այս անհոտ ու անգօր արիւնը ։

Այս խնդիրը մօտէն զննողները կը հաստատեն՝ որ մարմնական անկումն իմացական չափազանց աշխատութեան հետեւանքն է . ուստի պէտք է հալածել մտային անչափ յոգնութեան դրութիւնն , որուն օրինակ մը տուինք վերը ։ Որ կողմէն ալ նայինք՝ այս դրութիւնը առողջի սխալ մըն է . — Սխա՛լ է առանալի գիտութեանց հայեակէտ (point de vue) վրան զի մարմինին պէս՝ միտքն ալ որոշեալ չափէն աւելի սնունդ մը չկրնալով իրեն ստորացնել՝ իրեն մատուցուած սպարապայման նիւթերն ի՛սկոյն կը զզուէ ։ Այս նիւթերը՝ փոխանակ իմացական յարկին կառուցական քարեր ըլլալու՝ յիշողութեան մէջ հարեւանցի կերպով կը թառին ու անմիջապէս կը թռչին՝ երբ աւարտին քննութիւններն , որոնց համար միայն կուտակուած էին ։ Այդ դրութիւնը սխա՛լ է դարձեալ՝ որովհետեւ կը տաղտկացունէ ուսումէ . մտային չարաչար աշխատութենէ յառաջ եկած գաղափարներու անտանելի խռնութեան՝ որով նաեւ ուղեղի անկանոն վիճակին պատճառով՝ աշակերտն ա՛լ գիրքերէն նողկալ կըսկսի . ինչպէս բանաւոր դաստիարակութիւն մը ճամբայ կը բանայ ինքնայօժար ու յառաջդէմ զարգացումի , այս չափազանցութիւնն ալ դուռ կը բանայ յետադիմութեան , որուն առաջքն առնելը շա՛տ դժուար է ։ Վերջապէս այդ դրութիւնը սխա՛լ է՝ կըսենք՝ որովհետեւ այնպէս մը կարծել կուտայ թէ գիտութեանց ստացումն ամէն բան ըսել է՝ մոռնալով որ ամէնէն կարեւոր բանն այդ գիտութիւնները դասաւորելն է , եւ այդ դասաւորութեան համար երկու բան հարկաւոր են . — ժամանակ եւ միտքի յօժար գործունէութիւն . ինչպէս որ Հիւմպոլդ ալ՝ իմացական յառաջդիմութեան վրայ խօսելով՝ գիտել կուտայ «քննութեան բացատրութիւնները կը մթագ-

նին՝ երբ նկարագրութիւնը վատի ուրոյն նիւթերու չափազանց կուտակութեան ներքեւ ». Նմանապէս անհատական իմացականութեան յառաջացումը մասին կրնայ ըսուիլ՝ թէ յոռի կերպով մարսուած տեղեկութեանց ծանրութենէն միտքը կը տառապի ։ Ուղեղին մէջ իմացական ճարպի պէս կուտակուած գիտելիքը մեծ արժէք մը չունին . արժէք ունեցող գիտելիքն անոնք են՝ որ իմացական ջիղերու փոխուած են ։ Այդ սխալ դրութիւնն ա՛լ աւելի անդին կը ներգործէ . վասն զի եթէ իմացական ստոյգ կերպով մը արտադրէ անգամ՝ որ անկարելի է՝ դարձեալ յոռի՛ է այն . որովհետեւ ինչպէս ապացուցինք՝ վնաս կուտայ մարմնական ոյժին , որով միայն հնար է կենցաղի կռիւին մէջ օգտակար կերպով գործածել իմացական.ոյժը ։ Իրենց մանուկներուն միտքը զարգացնելու եռանդով նախապաշարեալ ծնողք ու կրթիչներ՝ անոնց մարմինը բանի տեղ չդնելով՝ չեն մտածեր որ աշխարհի մէջ կանոնաւոր ապրելու համար՝ գիտութիւններէ աւելի մարմնական կորով պէտք է . չեն մտածեր որ իմացական չափազանց աշխատութեամբ՝ անշուշտ մարմինն հիւանդութեամբ վատելու կը պատրաստի ։ Մինչեւ անգամ՝ իմացական դաստիարակութեան մեծ պակասութեանց տեղը կրնան լեցունել ա՛յն հզօր կամեցողութիւնն ու անխոնջ գործունէութիւնն , որ մարմինի յորդ կորովին պտուղներն են . եթէ այս բարեմասնութիւնները լծորդին՝ առանց առողջութիւնը վրայ տալու ստացուած բաւականաչափ իմացական կրթութեան մը հետ՝ այն ատեն կրնան դիւրաւ յաղթել անչափ աշխատութեամբ ակարացած մրցակիցներու դէմ՝ մինչեւ իսկ եթէ ասոնք գիտութեան Պրօմէթէօսներ եղած ըլլան ։ Փոքր ու պակասաւոր մեքենայ մը՝ որ շատ արագ կը բանի՝ մեծ ու արուեստակերպ մեքենայէ մը աւելի գործ կրնայ տեսնել , վասն զի այս

երկրորդը ծանր ու գէշ կերթայ։ Ուրեմն՝ յիմարութիւն չէ՞ մեքենան կատարելագործելու համար այնպէ՛ս աւրել ջեռուցարանն, որ ա՛լ չկրնայ շոգի արտադրել։ Մեր բանաքննած դրութիւնը սխա՛լ է դարձեալ, վասն զի կենցաղական բարեբաստութեան վրայ թիւր ըմբռնում մը կուտայ։ Եթէ առողջութիւնը կործանի՝ հետեւանքը կըլլայ այնպիսի՝ մեծ աղէտ մը, որ մարդկային ուրիշ յաջողութիւն մը չկրնար բուժել։ Եթէ մարդ հարստութեան հետ շարունակ տառապանք ալ ունենայ՝ ի՞նչ շահ այդ հարստութենէն։ Աշխարհի մէջ յաջողութեան ու պատիւի տիրանալն ի՞նչ արժէք կունենայ՝ եթէ այդ յաջողութիւնն ու պատիւն իրենց հետ բերած ըլլան ախոնդանոտ թախծութիւն մը։ Աշխարհ կը վկայէ՝ թէ լաւ մարսողութիւն մը զօրաւոր երակներ ու զուարթ բնաւորութիւն՝ երջանկութեան այնպիսի տարրեր են, որոնց տեղը չեն կրնար բռնել արտաքին ինչ եւ իցէ բարեմասնութիւններ։

Մարմինին պարբերական հիւանդութիւնները՝ կը մթագնեն ամէնէն պայծառ ակնկալութիւններն անգամ. իսկ առողջ մարմինի մը կենսախայտ կորովը՝ կը գեղազարդէ դժբաղդութիւնն անգամ։ Իրաւունքով ուրեմն կը պնդենք՝ թէ այսպիսի բռնազբօս կրթութիւն մը ամէն կերպով յոռի՛ է. յոռի՛ է, որովհետեւ այնպէս կաւանդէ գիտութիւններն որ ի՛սկոյն կը մոռցուին. յոռի՛ է, որովհետեւ չդասաւորեր գիտութիւններն, եւ այս դասաւորութիւնը նոյն իսկ գիտութիւններէն աւելի՛ կարեւոր է. թերի՛ եւ յոռի՛ է, որովհետեւ կը խամրեցունէ կամ կեղծանէ ա՛յն կորովը, առանց որու իմացական կրթութիւնն անօգուտ է. թերի՛ եւ յոռի՛ է վերջապէս, վասն զի պատճառ կըլլայ վատողջութեան մը, որուն տուած վնասը չկրնար զոցել աշխարհի մէջ ինչ իցէ յաջողութիւն մը,

եւ որ եթէ անյաջողութիւն մը պատահի՝ պատճառ կըլլայ կրկին ու դառնագոյն թշուառութեան մը։

Իմացական այս բանի կրթութիւնն՝ իգական սեռին վրայ թերեւս աւելի գէշ ազդեցութիւն կընէ։ Աղջիկներն՝ այս գէշ ազդեցութիւնն իր ամէն կողմերովը կրել ընտրուած են, որովհետեւ անոնք գրեթէ բոլորովին գըրկուած են զօրացուցիչ ու ախորժելի այն մարմնական մարզանքէն, որով մանչերը կը բարեխառնեն իրենց ուսումնամոլութեան անպատեհութիւնները. ատոր համար է որ շա՛տ քիչ աղջիկներ հուժկու եւ առողջ վիճակի մը կը ժամանեն։ Լոնտրայի սալոններուն մէջ կրնանք տեսնել այս անագորոյն կրթամոլութեան զոհերը — դեղնա՛ծ ցցուամարմի՛ն տափարակ կուրծքով օրիորդներ — որ երբէք չեն ամոքած իրենց տաժանելի աշխատութիւնները երիտասարդական խաղերով. իրենց ձեռք բերած տաղանդները չեն բաւեր սքօղել իրենց մարմնական այդ ապականութենէն յառաջ եկած անյաջողութիւններն, եւ աւելի կանյաջողին։ Անոնց մայրերն՝ անոնց յանկուցիչ կրթութիւն մը տալու եռանդով չէին կրնար ընտրել աւելի գէշ եղանակ մը, որ մարմինը կը զոհէ միտքին։ Խեղճե՛րը, կամ այրերու ճաշակը բանի տեղ չեն դներ, կամ շատ սխալ կըմբռնեն այդ ճաշակը։ Պէտք է գիտնալ որ մարդիկ շատ չեն փափաքիր բազմահմուտ կիներ ունենալ, այլ կը փափաքին ունենալ գեղեցիկ լաւաբարոյ ու խելացի ամուսիններ։ Պատմական լայնատարր հմտութիւն ունեցող կին մը՝ քանի՞ առնական գլուխ խոնարհեցուցած է իր պատարուն գլուխին. ո՛ր այրը սիրահարած է կնոջ մը՝ անոր Իտալերէն գիտնալուն համար. արդեօ՛ք Հյաուինի պէս իմաստասէր տարփածու մըն ալ կա՞յ որ Անճելինայի մը ուզէ իյնալ անոր գերմաներէն խօսելուն համար։ Բայց վարդագոյն այտերն ու

չողչողուն աչքն են որ կը յանկուցանեն այրերը. լուսինի նման կլոր դէմք մը կը յաջողի ձգել իրեն զմայլական ակնարկներ։ Առողջ աղջիկներու զուարթութիւնն ու բարեբարոյութիւնը՝ շատ անգամ պատճառ եղած են անոնց ամուսնութեան. շատ մարդիկ վկայ են թէ ուրիշ բարեմասնութիւններէ զուրկ աղջիկներու մարմնական կատարելութիւնները միայն՝ կրցած են ներշնչել անյաղթելի սէր մը, բայց շատ քիչ մարդիկ կրնան վկայել՝ թէ բարոյական ու մարմնական արժանիք չունեցող օրիորդներու իմացական յառաջդիմութիւնը միայն՝ կրցած է ներշնչել այդպիսի աննուաճելի համակրութիւն մը։

Ճշմարիտն այն է որ սէր ըսուած մանուածոյ սըրտայուզութիւնն յառաջ բերելու համար՝ մարդկային սիրտին մէջ ներդաշնակօրէն իրար համբուրող բոլոր տարրերէն հզօրագոյնները նախ անոնք են, որ արտաքին գեղեցկութիւններէ յառաջ կուգան. ուժգնութեան կարգով ապա անոնք կուգան, որ կը ծնին բարոյական յատկութիւններէ, եւ ամէնէն անզօրներն անոնք են, որ իմացական գեղեցկութիւններէն յառաջ կուգան. եւ ասոնք ոչ այնչափ ստացական գիտութեանց որչափ աւելի՝ բնական կարողութեանց արգասիքն են, այսինքն՝ միտքի ժրութեան խորագիտութեան ու սրութեան։ Այս մեր ըսածին մէջ՝ եթէ մէկը մարդկային արժանապատուութեան դպչելիք բան մը տեսնելով՝ զայրանայ թէ ինչպէս կըլլայ որ առնական խրոխտ բնաւորութիւնն այդպիսի չարժառիթներու ցանցին մէջ կը բռնուի, մենք կը պատասխանենք անոր՝ թէ բնութեամբ հաստատուած կարգին վրայ խօսած ատեն՝ դժբաղդաբար չգիտէ ինչ է ըսածը։ Եթէ այդ գերագոյն կարգին իմաստը մեզի ան բեւոյթ եղած ալ ըլլայ՝ կրնայինք վստահ ըլլալ թ այդպիսի ամէնակարեւոր դիտումի մը համար կարգ.

կայ եւ կը մնայ։ Բայց այս իմաստը բոլորովին մերկ է խորհող արարածներու աչքին։ Երբ մտածենք թէ բնութեան դիտաւորութիւններէն մին ալ՝ մանաւանդ անոր գերագոյն դիտաւորութիւնը՝ գալիք սերունդին երջանկութիւնն է. երբ մտածենք թէ մարմինի յոռի կազմուածքի մը վրայ խարխափած իմացական բարձր կրթութիւն մը՝ գալիք սերունդներուն երջանկութեան համար դրեթէ անպէտ բան մըն է, վասն զի այդ ձախող կերպով յղկուած անձին յաջորդները՝ ժառանգական անառողջութեան պատճառաւ մէկ կամ երկու սերունդ անդին պիտի սպառին, եւ ասոր հակառակ՝ մարմինի գեղեցիկ եւ հուժկու կազմուած մը՝ որչափ ալ իմացական արժանիքի կողմէն խեղճ ըլլայ՝ իրաւունք ունի ապրելու, վասն զի անոր յաջորդներուն իմացականութիւնը կրնայ ամբաւապէս զարգանալ. այս ամէնէն կը հասկընանք որ վերն յիշուած կանացի արտաքին բարեմասնութեանց ազդեցութեամբ՝ այրերու՝ բնազդներուն առած շաւիղն ո՛րչափ հարկաւոր է։ Սակայն առնական բնազդներու այս ներդաշնակութենէն յառաջ եկած օգուտները մէկդի դընելով ալ՝ յիմարութիւն է շարունակել այնպիսի դրութիւն մը, որ կը քանդէ աղջիկներու առողջութիւնն՝ անոնց յիշողութիւնը բեռնաւորելու համար։ Կըրցածնուդ չափ բարձր կրթութիւն տուէք ձեր աղջիկներուն, ասոր խօսք չունինք. բայց պէտք է հսկէք որ այդ կրթութիւնը վնաս չի տայ անոնց առողջութեան, եւ անցողակի ըսենք նաեւ՝ որ եթէ յիշողութիւնը նուազ կրթի պաշկայի պէս, եւ մարդկային ճշմարիտ կարողութեանց աւելի՛ խնամ տարուի, ու դաստիարակութիւնը շարունակէ՛ աեւ դպրոցէ ելնելէն մինչեւ ամուսնանալու ատեն կորուած ժամանակամիջոցին՝ կարելի պիտի ըլլայ բաւական արձր կրթութիւն մը ձեռք բերել. բայց մարմինին նիւ-

թական կազմը խանգարելու տարրական իմացական կարողութիւններն յղկելն՝ ուղղակի դէ՛մ գործել է այն նպատակին, որուն համար այնչափ խնամք այնչափ ծախք ու այնչափ սիրտ հատնում կը վատնենք։ Ծնողք՝ այս խիստ ճնշումին ենթարկելով իրենց աղջիկները՝ յաճախ պատճառ կըլլան անոնց ապագային քակտելուն։ Ոչ միայն կը կաշկանդեն անոնք վատթար առողջութեամբ մը, որուն անմեկին կցորդներ կըլլան թախծութիւն եւ անկարողութիւն, այլ յաճախ նաեւ պատճառ կըլլան անոնց մշտնջենաւոր ամուրիութեան։

Ըսենք ուրեմն վերջապէս՝ թէ մանուկներուն մարմնական դաստիարակութիւնը շատ կողմէ պակասաւոր է. պակասաւո՛ր է՝ վասն զի անոնց կերակուրն անբաւակա՛ն է, վասն զի անոնց հագուստը դէ՛շ է, վասն զի աղէկ մարմնամարզ չե՛ն ըներ (մանաւանդ աղջիկները) եւ անոնց միտքը չափէն աւելի՛ կը յոգնի։ Մեր դպրոցներու կանոնադրութիւնը սաներէն շատ բան կը պահանջէ, բայց փոխարէն շատ քիչ արդիւնք կու տայ։ Չափէն աւելի սպառելով կենսական ոյժերն՝ երիտասարդներուն կեանքը չափահասներուն կեանքին կը նմանցունեն, որ շատ անտեղի բան է։ Այդ կանոնադրութիւնն հակառակ է սա ճշմարտութեան թէ՝ ինչպէս մանկութեան առաջին տարիներուն կենսական ոյժերը գրեթէ ամբողջապէս բուն մարմինին աճումին կըսպառուին՝ այնպէս որ նիւթական ու բարոյական գործերուն համար անկէ շատ քիչ բան կաւելնայ՝ նոյնպէս ալ թէ՝ մանկութեան թէ՝ պատանեկութեան ատեն մարմինի աճումը գործարաններուն ամէնէն մեծ պահանջքն է, որուն ենթարկել պէտք է միւս բոլոր պահանջքը. որպէս զի այդ աճումն աղէկ յաջողի՝ պէտք է շատ զօրութիւն տալ գործարաններուն,

եւ քիչ զօրութիւն տանել անոնցմէ ։ Տղան ո՛րչափ արագ աճի՝ նոյն չափով պէտք է նուազեցունել անոր իմացական ու մարմնական գործունէութիւնն , եւ միայն անոր աճումին նուազելուն չափով աւելցունելու է այդ գործունէութիւնը ։

Մեր դաստիարակութեան այս չափազանց երագընթացութեան բուն պատճառը՝ քաղաքակրթութեան ընական հոսանքն է . երեւոյթ մըն է այն , ուրկէ հարկա՛ւ պիտի անցնինք ։ Նախնական ժամանակները՝ կրթութեան էական նպատակը միայն մարմինը զօրացունել էր , ուստի այն ատեն դաստիարակութիւնը բոլորովին մարմնական էր ։ Այն ատեն՝ բանի տեղ չէին դներ մտքի կրթութիւնն , եւ միջին դարերու ատենն ալ՝ այդ իմացական կրթութիւնն անարգ բան մըն էր ։ Բայց հիմա՝ որ աշխարհի մէջ համեմատաբար խաղաղ վիճակ մը կը տիրէ , հիմա՝ որ մարմնական ոյժը շատ քիչ անգամ պէտք կըլլայ ձեռքի գործերէ զատ աշխատութեանց , եւ կենցաղի մէջ յաջողելու համար անպատճառ պէտք է գրեթէ միայն իմացական կորով մը ունենալ , մեր դաստիարակութիւնը գրեթէ մի միայն իմացական դաստիարակութիւն մը դարձած է ։ Առաջ՝ մարմնին ամէն խնամք կը տանէին եւ անխնամ կը ձգէին միտքը . հիմա՝ մեր բոլոր ճիգերով կը անուցանենք միտքը եւ կը լքանենք մարմինը ։ Երկու չափազանցութիւններն ալ վնասակար են . դեռ աղէկ հասկըցած չենք սա ճշմարտութիւնը՝ թէ՛ որովհետեւ մարմնոյ կեանքն հիմն է մտքի կեանքին՝ պէտք չէ մարմնին տոյժովը զարգացունել միտքը ։ Պէտք է գործենք՝ դաստիարակութեան հին ու նոր ոգիներն իրար լծորդելով ։

Երբ պէտք եղածին պէս՝ շատերն հասկընան թէ առողջութեան պահպանումը մեր անհրաժեշտ պարտքն է ,

թերեւս այն ատեն մարմինն ու միտքն հաւասարապէս մեր հոգածութեան նիւթ պիտի ըլլան։ Քիչ մարդ կայ՝ որ գիտնայ թէ աշխարհի վրայ ֆիզիգական բարոյական ըսուած բան մըն ալ կայ. շատերը կը կարծեն թէ ազատ են ուզածնուն պէս վարել իրենց մարմինը. երբ բնութեան օրէնքին հակառակ գործելով՝ չարիք մը պատահի, «դժբաղդութիւն եկաւ» կըսեն. չեն հասկընար որ այդ չարիքն իրենց իսկ մոլոր գործերուն ճիշդ հետեւանքն է։ Թէպէտ եւ այս մոլոր գործերուն գէշ հետեւանքը թէ՛ գործողներուն թէ՛ անոնց զաւակներուն աղիտաբեր կըլլայ ոճիրի մը չափ՝ դեռ անոնք ոչ մէկ կերպով ինքզինքնին ոճրագործ չեն համարիր։ Իրա՛ւ՝ գինովներէն շատերն, օրինակի համար, գիտեն թէ արբեցութիւնը մոլութիւն մըն է, բայց ոչ ոք ասկէ կը հետեւցունէ որ՝ եթէ գինովութիւնն առողջապահական օրէնքին դէմ մեծ մեղք մըն է՝ նոյն օրէնքին ամէն զանցումներն ալ մեղք են նոյնպէս։ Պէտք է աղէկ գիտնալ թէ առողջութեան դէմ ամէն կամայական վնաս՝ մեղք մըն է բնութեան դէմ. եւ երբ ամէնն ալ հասկընան այս ճշմարտութիւնն՝ այն ատեն եւ թերեւս միա՛յն այն ատեն մարդիկ պէտք եղած կարեւորութիւնը պիտի տան՝ երիտասարդներու մարմնական դաստիարակութեան։



# ԳԻՐՔԻՍ ՄԷՋ ԳՈՐԾԱԾՈՒԱԾ ՆՈՐ ԲԱՌԵՐԸ

(Աստղանիշ կրողները նոր յերիւրուած են, իսկ միւսները նոր առումով գործածուած).

---

